# ԴԱՇՆԱԿԱՀԱՐ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺ
# ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
# ԿԵԱՆՔԻ ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆԸ

**(ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)**

Հաւաքեց եւ պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

---

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ը.

ԳԱՀԻՐԷ
2017

# ԴԱՇՆԱԿԱՀԱՐ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺ
# ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
# ԿԵԱՆՔԻ ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆԸ
## (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)

Հաւաքեց եւ պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ը.

ԳԱՀԻՐԵ
2017



**ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ**

Լուսանկարիչ՝ Շաքէ Ալպան (Photo Alban)

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Բեղմնաւոր ճանապարհ անցած է եգիպտահայ դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեան (Աղեքսանդրիա, 1910 - Գահիրէ, 2004), որ, բազմաթիւ այլ սփիւռքահայ դէմքերու նման, տակաւին կը սպասէ իր արժանաւոր տեղը գրաւել հայկական մշակոյթի պատմութեան մէջ:

Իր մահէն կարճ ժամանակ առաջ, Տամատեան ինծի յանձնեց երկու ծաւալուն տետրակներ, ուր մէկտեղած էր իր գործունէութեան հետ կապուած յայտագիրներ եւ հայերէն ու ֆրանսերէն յօդուածներ: Այս նիւթերը ամբողջութեամբ օգտագործած եմ սոյն հրատարակութեան մէջ, իմ կողմէս կատարելով անհրաժեշտ լրացումներ:

Տամատեանի ծանօթները քաջ գիտեն՝ որ, իբրեւ մանկավարժ, ան իր ամբողջ էութեամբ կ'ապրէր իւրաքանչիւր աշակերտի հետ: Թէեւ դասաւանդումը իրեն համար ապրուստի *միակ* միջոցն էր՝ իր «մասնագիտութիւն»-ն էր, բայց ան միշտ ենթակայական սերտութիւն մը կը զգար աշակերտին հանդէպ: Տամատեանի համար դասաւանդումը իրական հաճոյք մըն էր:

Այս պատճառով, սոյն հրատարակութեան մէջ նախընտրեցի ընդգրկել նաեւ Տամատեանի սկզբնական շրջանի աշակերտներուն կատարողական գործունէութիւնները, ինչպէս՝ Աստրա Մսրլեան (մենահանդէսներով (recital) ելոյթ ունեցած իր առաջին աշակերտը), Այտա Թահթաճեան, Մարօ Պօղիկեան, Շուշիկ Խաչատուրեան եւ Հռիփսիմէ Պալճեան:

Յետագային, երբ Տամատեան հրաւիրուեցաւ դասաւանդելու Գահիրէի նորաբաց Երաժշտանոցին մէջ, իր հսկողութեան տակ կազմաւորուեցան բազմաթիւ եգիպտացի դաշնակահարներ, որոնք մինչեւ այսօր կը ծաւալեն կատարողական գործունէութիւն, ինչպէս՝ Իման Սամի, Ղատա Շաքէր, Իման Շաքէր, Ահմատ Ապու Զահրա եւ ուրիշներ, որոնց ամբողջական ընդգրկումը այստեղ անկարելիութիւն մըն է: Անկարելի է նաեւ իր հայ աշակերտներուն գործունէութեան ներառումը, ինչպէս՝ Արփի Ճանիկեան, որ մինչեւ այսօր Գահիրէի մէջ կը ծաւալէ երաժշտական ուշագրաւ գործունէութիւն:

Հ. Ա.

INSTITUT DE MUSIQUE

UNIVERSITÉ AMÉRICAINE

# AUDITION

## DE FIN D'ÉTUDES

## NEVART DAMADIAN
## MISBACH ALI - HAIDAR

Samedi, 13 Juin 1931 à 16 heures

Dimanche. 14 Juin 1931 à 16 h. 30

N. B. Conservez votre programme pour demain.

# Samedi, 13 Juin 1931

| NEVART DAMADIAN | MISBACH ALI-HAIDAR |
| --- | --- |
| 1. BACH<br>Prélude et Fugue No. 21 | 1. BACH<br>Prélude et Fugue No. 16 |
| 2. MOZART<br>Andante | 2. MOZART<br>Adagio |
| 3. BEETHOVEN<br>Sonate No. 17 | 3. BEETHOVEN<br>Sonate No. 21 |
| 4. SCHUMANN<br>Essor de l'âme | 4. SCHUMANN<br>*a.* Pourquoi ?<br>*b.* Hallucinations |
| 5. CHOPIN<br>Ballade No. 3 | 5. CHOPIN<br>Fantaisie Impromptue |
| 6. GLAZOUNOV<br>Variations | 6. SAINT-SAENS<br>Etude en Forme de Valse |
| 7. RAVEL<br>Sonatine<br>*a.* Allegro<br>*b.* Menuet<br>*c.* Finale | 7. BALAKIREV<br>Fantaisie Orientale "ISLAMEY" |
| 8. LISTZ<br>Rhapsodie No. 12 | 8. LISTZ<br>Méphisto Valse |

**Intervalle 10 Minutes**

## Dimanche, 14 Juin 1931

# (Musique d'ensemble)

1. GRIEG

Sonate Première Partie

**R. Kouguell** *(Violoncelle)*

**Nevart Damadian** *(Piano)*

2. GRIEG

Concerto en La Mineur

**Nevart Damadian**

3. MENDELSSOHN

Sonate

**R. Kouguell** *(Vion'oncelle)*

**Misbach Ali-Haidar** *(Piano)*

4. LISTZ

Fantaisie Hongroise

**Misbach Ali-Haidar**

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՄՆԵՐ WEST HALL-Ի ՄԷՋ

Ամերիկեան Համալսարանի երաժշտանոցը սարքեց իր ամավերջի հանդէսները անցեալ Շաբաթ եւ Կիրակի, Վէսթ Հօլի մէջ, հանրութեան ներկայացնելով իր երկու շրջանաւարտուհիները, Օրիորդներ Ն. Տամատեան եւ Մ. Ալի Հայտար:

Քննիչ յանձնախումբին, պաշտօնական անձերու եւ հոծ բազմութեան մը ներկայութեան, երկու շրջանաւարտուհիներն ալ ցոյց տալով երաժշտական շնորհները արժանացան համակրելի ցոյցերու:

Օր. Ն. Տամատեան որ առաջնութիւնը շահելու հազուադէպ բախտը ունեցաւ, յայտագիրը բացաւ Bach-ի Prélude-ով եւ Fugue-ով: Յաջորդաբար, զգայնութեամբ եւ շնորհքով նուագելով Mozart-ի *Andante*-ն, Beethoven-ի թիւ 17 Sonate-ը, Chopin-ի թիւ 3 *Ballade*-ը, Glazounov-ի *Variation*-ները, Ravel-ի Sonatine-ը, Liszt-ի թիւ 12 *Rhapsodie*-ն, հասարակութենէն խլեց խանդավառ ու բուռն ծափեր:

Օր. Մ. Ալի Հայտար նուազ յաջող չեղաւ Bach-ի թիւ 16 Fugue-ին եւ Prélude-ին մէջ: Mozart-ի *Adagio*-ն, Beethoven-ի թիւ 21 Sonate-ը, Liszt-ի *Méphisto valse*-ը եւ Balakirev-ի *Islamey*-ը ան նուազեց գեղեցկօրէն, իր խաղին մէջ դնելով ըմբռնում ու զգացում:

Կիրակի օր երկու շրջանաւարտուհիներն ալ դաշնակի վրայ ընկերանալով Քուկէլ եղբայրներուն յայտնաբերեցին իրենց երաժշտական յատկութիւնները:

*Ազդակ*, օրաթերթ, Պէյրութ, Յունիս 1931

## LES DERNIERS MANIFESTATIONS MUSICALES DE WEST-HALL

DICRAN TOSBATH

L'Institut de Musique organisait, Samedi 13 et Dimanche 14 Juin, son audition de fin d'études, en présentant Mlles N. Damadian et M. Ali Haïdar. Le public se pressait dans une salle comble.

Mlle Damadian affronta la première le jury officiel, en ouvrant le programme par le Prélude et la Fugue No. 21 de Bach, suivis de l'*Andante* de Mozart. Elle interpréta avec sentiment Beethoven dans la Sonate No. 17. Chopin, qu'elle joua avec une exquise délicatesse, dans le *Ballade* No. 3 hâtive et énervée, d'une touche tout-à-fait dans le style à saccades, où les transitions entre le staccato et le légato accentué se faisaient avec une méthode de doigté merveilleuse, lui valurent de vifs applaudissements.

Dans les *Variations* de Glazounov où elle montra une dextérité remarquable; dans la claire interprétation de la Sonatine de Ravel, au cachet moderne; enfin, dans la fameuse *Rhapsodie* No. 12 de Liszt, où avec une grande agilité, elle sut donner le fini des nuances qui reflètent une profonde sensibilité, Mlle Damadian fit preuve de virtuosité.

Mlle Misbach Ali-Haidar lui succéda dans l'interprétation du Prélude et de la Fugue No. 16 de Bach, elle sut dans ces morceaux faire des trilles d'une belle réussite. L'*Adagio*, de Mozart, joué simplement, fut suivi de la Sonate No. 21 de Beethoven où une touche habile soutenait un jeu varié. Dans Schumann, Mlle Ali-Haidar sut donner à chaque note sa valeur et un subtil cachet de tendresse aux deux morceaux artistiquement rendus.

La *Fantaisie impromptue*, de Chopin, ne lui fut par heureuse, car une hésitation vint troubler un jeu qui ne laissait rien à désirer. Saint-Saëns fut admirablement exécuté et l'*Etude en forme de valse* enthousiasma la salle. Balakirev et sa *Fantaisie orientale 'Islamey'* ainsi que la *Méphisto valse* de Liszt, en mettant en évidence les nombreuses qualités de Mlle Misbach montrèrent une fois de plus sa technique.

On aurait à reprocher à Mlle Ali-Haidar d'avoir mis en un morceau tout l'art d'un jeu parfait, ce qui entraîna une monotonie d'expression.

Dimanche, dans la Musique d'ensemble, on put mieux apprécier les qualités artistiques des nouvelles diplômés.

Mlle Damadian se révéla accompagniste merveilleuse, dans la Sonate 1ère partie de Grieg, où M. R. Kouguell, le cello si estimé, se fit entendre, et ses qualités ressortirent davantage dans le Concerto en La mineur de Grieg, où au côtés de M. A. Kouguell, elle eut un jeu d'une parfaite égalité.

Mlle Ali-Haidar, non moins brillante accompagniste, dans la Sonate de Mendelssohn, se montra excellente dans la *Fantaisie hongroise* de Liszt, où son jeu communiait très harmonieusement avec celui de M. A. Kouguell.

*L'Orient*, Beyrouth, 19 juin 1931

## ՊԷՅՐՈՒԹԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ

Պէյրութի Ամերիկեան Համալսարանի տարեվերջի վկայականներու բաշխման հանդէսը տեղի ունեցած է ներկայութեամբ Բ. Քօմիսէրութեան եւ տեղ. կառավարութեան ներկայացուցիչներուն եւ խուռն բազմութեան մը:

Այս տարի բացառիկ պարագայ մըն էր երաժշտական ճիւղի շրջանաւարտ-

ներուն ձեռք անցուցած յաջողութիւնը որ հիացում պատճառած է հանդիսական-ներուն: Երկու շրջանաւարտուհիներէն մէկն էր Օր. Նուարդ Տամատեան:

Բժշկական ճիւղէն շրջանաւարտ եղան երեք հայ բժիշկներ՝ Սամուէլ Սէմէր-ճեան, Հրանդ Չաղլացեան եւ Խորէն Երէցեան: Առաջին երկուքը պատուոյ յիշա-տակութեամբ:

Դեղագործական ճիւղը մէկ հայ շրջանաւարտ ունեցած է՝ Պ. Հմայեակ Հմայ-եան, նմանապէս պատուով:

Պ. Սոկրատ Աւետիսեան շրջանաւարտ ելած է ատամնաբուժական ճիւղէն, փայլուն յաջողութեամբ:

Վաճառականական ճիւղէն վկայական ստացած են ՊՊ. Յակոբ Գարաօղլան-եան, Գառնիկ Ներսէսեան, Ալպէրթ Սէլվիէրեան եւ Օր. Վերժին Աւետիսեան:

Տօքթօրներ Չաղլացեան եւ Սէմէրճեան, ինչպէս նաեւ Գարաօղլանեան արդէն հրաւէր ստացած են համալսարանի տնօրէնէն, յառաջիկայ տարի համալսա-րանի մէջ պաշտօնավարելու համար:

*Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 2 Յուլիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3779, էջ 1

## ԱՐՁԱԳԱՆԳ ՊԷՅՐՈՒԹԷՆ

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՒԱՐՏ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԱՃԱՌԷՆ

Հաճոյքով կ'իմանանք որ Տէր եւ Տիկին Մ. Տամատեանի դուստր Օր. Նուարդ Տամատեան Պէյրութի Ամերիկեան Համալսարանի Երաժշտա-կան Կաճառին դաշնամուրի ամավերջի հրապարակային մրցումին մասնակցած եւ փայլուն ունկնդրութենէ մը յետոյ ստացած է իր ուսումնաւարտի վկայականը:

Ահաւասիկ թէ ի՛նչ կը գրեն տեղական թերթերը.

«Պէյրութի Երաժշտական Կաճառը իր քննութեանց շարքը աւարտեց շաբաթ եւ կիրակի, 13 եւ 14 Յունիսին, ներկայացնելով երկու աշակերտ ուսումնաւարտի վկայականին համար: Անոնք են Օրիորդներ Նուարդ Տամատեան եւ Միզպահ Ալի-Հայտար:

«Այս երկու ունկնդրութիւնները նշանակալից եղան եւ երիտասարդ *վիր-թուօզ*ները արուեստագէտի իրական յաջողութիւններ ցոյց տուին: Օր. Ն. Տամատեանի մօտ մասնաւորաբար գնահատեցինք յստակութիւն, հասկացողու-թիւն, արտայայտութեան նրբութիւն...: Այս երկու մրցորդները արուեստագէտի խառնուածքով բոլորովին տարբեր, կրցան հաւասարապէս հանդիսականներուն

խանդավառ ցոյցերուն արժանանալ:

«Առաջին անգամն է որ Պէյրութի մէջ այսպիսի աշակերտներ կը ներկայացուին: Յայտագիրը կը կազմէին Պախի, Մօձարի, Պէթհովէնի, Շումանի, Շօբէնի, Կլազունովի, Պալաքիրէվի, Րավէլի, Լիսթի, Սէն-Սանի, Կրիկի, Մենտելսընի գործերը, առանձինն, ընկերակցութեամբ եւ քօնսէրթօ:»

Իսկ *Լ'Օրիան* կ'ըսէ.

«...Խուռն բազմութիւն մը կը լեցնէր սրահը: Օր. Ն. Տամատեան, պաշտօնական քննիչներուն ներկայացաւ առաջին անգամ եւ յայտագիրը սկսաւ Պախի թիւ 21 Բրէլիւտ եւ Ֆիւկով որուն յաջորդեց Մօձարի *Անտանթէ*ն: Զգացումով թարգմանեց Պէթհովէնի թիւ 17 Սօնաթը եւ Շօբէնէն թիւ 3 *Պալլատ*ը զոր նուագեց նուրբ փափկութեամբ մը. թիւ 3 *Պալլատ*ը, արագ եւ ջղայնոտ, ընդհատ ոճով մը ուր *սթաքաթօ*ն եւ *լէկաթօ*ն իրարու կը յաջորդէին հրաշալիօրէն գործածուած մատներու դրութեամբ մը, բուռն ծափահարութիւններ խլեցին:

«Կլազունովի *Վարիասիօն*ներուն մէջ ուր ցոյց տուաւ նշանակելի ճարպիկութիւն մը, Րավէլի արդիական կնիք ունեցող Սօնաթինին յստակ թարգմանութեամբ, վերջապէս Լիսթի հռչակաւոր թիւ 12 *Րաբսօտի*ով ուր մեծ՝ արագաշարժութեամբ կրցաւ խորունկ զգայնոտութիւն մը ցոլացնող գոյներու նրբութիւնը տալ, Օր. Տամատեան *վիրթուօզ*ի ապացոյցները տուաւ:

«Կիրակի օրուան համանուագի ունկնդրութեան մէջ նոր պսակաւորներուն արուեստագիտական յատկութիւնները առաւել եւս գնահատուեցան:

«Օր. Տամատեան յայտնուեցաւ իբր հրաշալի ընկերակցող մը Կրիկի Սօնաթին առաջին բաժինով, Պ. Ռ. Քուկէլի, այնքան յարգուած թաւջութակահարին հետ եւ իր յատկութիւնները երեւան եկան Կրիկի Լա մինէօռ Քօնսէրթօյին մէջ ուր Պ. Քուկէլի հետ խազի կատարեալ ճշդութիւն մը դրաւ:»

Աւելորդ է ըսել որ այս գնահատումները ուրախութեամբ կը լեցնեն Օր. Ն. Տամատեանի բոլոր ազգականները եւ բարեկամները որոնք այնքան շատ են Եգիպտոսի մէջ: *Արեւ* բոլորին հետ փայլուն ապագայ կը մաղթէ դեռատի բայց արդէն յայտնուած արուեստագէտին:

*Արեւ*, 1 Սեպտեմբեր 1931, ԺԷ. տարի, թիւ 3831, էջ 3

# ՊԷՅՐՈՒԹ

## ԵՐԵՔՇԱԲԹԻ, 23 ՅՈՒՆԻՍ 1931

## ՎԿԱՅԱԿԱՆ՝ ՊԷՅՐՈՒԹԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻ



American University of Beirut

Institute of Music

This Diploma witnesses that

Nevarte Damadian

has satisfactorily completed the studies prescribed

in the curriculum of the

Institute of Music

of the

American University of Beirut

Piano

Given at Beirut,

the 23rd day of June 1931.

Bayard Dodge
President of the University

Leslie W. Leavitt
Secretary of the Faculty

Director of the Institute

## ECOLE NORMALE DE MUSIQUE,
## SALLE DE CONCERTS, ՓԱՐԻԶ

## ԿԻՐԱԿԻ, 14 ՓԵՏՐՈՒԱՐ 1932

## ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# ÉCOLE NORMALE DE MUSIQUE

**SALLE DE CONCERTS : 78, Rue Cardinet** - (Métro Malesherbes ou Monceau)

## Audition du Dimanche 14 Février 1932, à 21 heures

### Classe de M. MANUEL

Mlle Grad — *Etude N° 7 op. 25*. . . . Chopin
— *Gavotte en rondeau*. . . . . . Lully
» Patoureau — *Rondeau brillant*. . . Weber
M. Teplitzky — *St-François de Paule*. . . . Liszt
Mlle Lamy — *Concerto en ré mineur* (Première partie). . . . . . . . . Mozart
M. Carlier — *2e Rhapsodie* . . . . . . Brahms
— *La Fille aux cheveux de lin* Debussy
Mlle Ramstein — *Final de la Sonate en si min.* Chopin

### Classe de Mlle Alicita FELICI

Mlle Bourgouin — *Les Noces de Figaro* . . Mozart
— *Les Roses d'Ispahan*. . . Faure
» Fabiato — *Nina*. . . . . . . . . Pergolèse
— *Nuit de Printemps*. . . —
— *Premiers Bourgeons*. . Schumann
» Voisin — *Prière* . . . . . . . . . Haendel
» Chopin — *A ma Fiancée*. . . . . Schumann
— *Chanson de Parassia*. . Moussorgsky
» Martorella — *Les vieilles de chez nous*. Levadé
— *La Bohême* (air de Mimi). Puccini
» Lacroze — *Air d'Elsa*. . . . . . . . Wagner

### Classe de Mme GALANTI-KASTLER

Mlle Barbet — *Intermezzo op. 117*. . . . Brahms
» Damadian - *Sonate op. 81 a. Les Adieux, l'Absence et le Retour*. . Beethoven
« Lagoutte — *Jeux d'Eau de la Villa d'Este*. Liszt
» Viel — *Scherzo et Valse* . . . . . Chabrier
» De Ladebat — *Carnaval de Vienne*. Schumann
Mme Lefèvre — *2e Ballade*. . . . . . Chopin
Mlle Malachkine - *Polonaise en la bémol*. . Chopin
» Black — *Toccata et Fugue en ré min.* . Bach
» Odier — *3e Scherzo*. . . . . . . . Chopin
» Wahl — *7e Nocturne*. . . . . . . . Fauré
M. Perrin — *4e Ballade*. . . . . . . . . Chopin
Mlle Evain — *Triana*. . . . . . . . . Albeniz
» Arnoux — *Leghinska* . . . . . Liapounow

**INVITATION POUR PLUSIEURS PERSONNES**

ՓԱՐԻԶ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 11 ՅՈՒԼԻՍ 1932

ՎԿԱՅԱԿԱՆ՝ ՓԱՐԻԶԻ ECOLE NORMAL DE MUSIQUE-Ի ԴԱՇՆԱԿԻ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻ


ECOLE NORMALE DE MUSIQUE DE PARIS

Fondée en 1919 avec l'approbation du Ministère de l'Instruction Publique et des Beaux-Arts
Placée sous le Patronage du Ministère des Affaires Etrangères

DIPLOME D'ENSEIGNEMENT

du Piano.

décerné à Mademoiselle Nevart Damadian

à la suite des Examens de l'Année 1932

Mention: ——

Paris, le 11 Juillet 1932

Le Directeur,

Le Président,

Վկայական
Ձախ կողմի ստորագրությունը՝ August Mangeot
Աջ կողմի ստորագրությունը՝ Alfred Cortot

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Բարիզէն հասած մասնաւոր հեռագրէ մը հաճոյքով կ'իմանանք թէ Օր. Նուարդ Տամատեան, դուստրը մեր յարգելի աշխատակցին, որ Պէյրութի Ամերիկեան Քօլէճի Երաժշտանոցի ընթացքը յաջողապէս աւարտելէ յետոյ Բարիզ Էքօլ Նօրմալ տը Միւզիքի կ'աշակերտէր երաժշտութեան իր ուսումը կատարելագործելու համար, ներկայ ամսոյ 11-ին, յաջող քննութենէ մը վերջ, ստացած է դաշնակի ուսուցչութեան վկայական (*Տիբլօմ տ'անսէնեըման*): Նոյնպէս կ'իմանանք որ շնորհալի օրիորդը Բարիզէն վերադարձին Պէյրութի Ամերիկեան Համալսարանի Երաժշտանոցին մէջ պաշտօնավարելու հրաւիրուած է, իբրեւ դաշնակի ուսուցչուհի:

*Արեւ*, 14 Յուլիս 1932, ԺԷ. տարի, թիւ 4100, էջ 1

## BEYROUTH

DANY BRUNSCHWIG

De passage à Beyrouth cet hiver, j'ai eu le plaisir d'y être reçu fort amicalement par M. A. Kouguell qui assume la direction de la musique à l'Institut Americain. J'ai pu me rendre compte du magnifique enseignement donné à tous ces jeunes élèves. Les classes de piano, spécialement, sont remarquables (Professeurs: Mme et M. A. Kouguell.)

Citons les noms de Mlles Karakasch, Waldman, Gulbenkian, etc. La classe de violoncelle dont le professeur est le frère de M. Kouguell, possède déjà des sujets très dignes d'intérêt. Félicitons également Mme Sonia Alny, dont les élèves de chant forment une pléiade de jolies voix, bien dirigées, à la prononciation très distincte.

Grâce à M. Kouguell la musique française est connue et aimée en Syrie et au Liban. Tous les artistes français, des plus illustres aux plus humbles, lui doivent une grande reconnaissance. C'est un grand ami de notre pays.

Différents élèves de l'Institut de Beyrouth viennent continuer leurs études à l'Ecole Normale de Musique de Paris et, aux derniers examens de diplôme d'Enseignement au piano nous avons le plaisir de constater le succès obtenu par Mlle Damadian, qui, dès octobre prochain, repart à Beyrouth y fonder une classe sous l'éminente direction de M. Kouguell.

*Le Monde musical*, Paris, juillet 1932

## A L’ECOLE NORMALE DE MUSIQUE DE PARIS

Nous apprenons que Melle N. Damadian, ancienne lauréate de l’Institut de Beyrouth, vient d’obtenir son diplôme à l’Ecole Normale de Musique de Paris, après un examen où elle a obtenu le meilleur classement.

La réussite de cette excellente pianiste atteste une fois de plus la valeur de l’enseignement à l’Institut de Musique.

Nous félicitons avec plaisir maîtres et élève de ce brillant succès.

*L’Orient*, 2 août 1932

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Ինչպէս գրած էինք ժամանակին, Օր. Նուարդ Տամատեան, որ առաջին շրջանաւարտուհին եղած էր Պէյրութի Institut de Musique-ի, ղրկուած էր սոյն հաստատութեան կողմէ Փարիզ, շարունակելու համար իր ուսումը Ecole Normale de Musique-ի մէջ:

Հաճոյքով կ’իմանանք որ Օր. Տամատեան Laurèate եղած է Փարիզի մէջ իր հետեւած վարժարանէն եւ առաջին հանդիսացած իր դասարանին մէջ: Փարիզի թերթերէն շատերը գնահատանքով արտայայտուեցան Օր. Տամատեանի յաջողութեան մասին, մանաւանդ *Le Monde musical* հանդէսը մեծ գովասանքով խօսեցաւ: Տեղւոյս ֆրանսերէն թերթերն ալ առանձնապէս արտայայտուեցան եւ շնորհաւորեցին շնորհալի օրիորդը:

Ուրախութեամբ կը տեղեկանանք որ Օր. Տամատեան յառաջիկայ շրջանին համար հրաւիրուած է Պէյրութի Institut de Musique-ի Տնօրէնութեան կողմէ, որպէս ուսուցչուհի:

Մենք որ բազմաթիւ առիթներով գնահատած ենք Օր. Նուարդը, կը շնորհաւորենք զինք իր վերջին յաջողութեան համար, որ պատիւ կը բերէ հայ իգական սեռին եւ բարի գալուստ կը մաղթենք:

*Ազդակ*, օրաթերթ, Պէյրութ, 9 Սեպտեմբեր 1932

INSTITUT DE MUSIQUE

de

l'Université Américaine de Beyrouth

# WEST HALL

*Lundi 3 avril 1933, à 21 h.*

## RECITAL de PIANO

donné par

# *Mlle Nevarte Damadian*

**diplomée de l'Institut de Musique de l'A.U.B., et de l'Ecole Normale de Musique de Paris**

**PROGRAMME**

| | | |
|---|---|---|
| 1. | **J. S. Bach** | Capriccio sur le départ de son frère bien aimé.<br>a. Exhortations de ses amis afin de le détourner de son projet de départ<br>b. Représentation des divers accidents qui peuvent arriver dans les pays étrangers<br>c. Plaintes unanimes de ses amis<br>d. Les amis voyant que leurs éxhortations sont inutiles prennent congé<br>e. Air du Postillon<br>f. Fugue à l'imitation du cornet du Postillon |
| 2. | **L. Van Beethoven** | Sonate. Op. 81<br>a. Les Adieux<br>b. L'Absence<br>c. Le Retour |
| 3. | **F. Chopin** | Impromptu No. 2 En Fa dièse majeur<br>Etude. Op. 10, No. 3 |
| 4. | **G. Fauré** | Premier Nocturne en Mi bémol mineur |
| 5. | **Arkadie Kouguell** | Pièce en forme d'Etude, No. 6<br>(Dediée à M. A. Cortot) |
| 6. | **I. Albeniz** | Sérénade Espagnole |
| 7. | **F. Liszt** | Rhapsodie Hongroise No. 12 |

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Հ. Ա.

Անցեալ երկուշաբթի երեկոյեան Ամերիկեան Համալսարանի West Hall սրահին մէջ Օր. Նուարդ Տամատեան՝ հոծ բազմութեան մը ներկայութեան, տուաւ իր ռէսիթալը՝ խնամուած եւ ճաշակով ընտրուած յայտագրով մը:

Համաձայն յայտագրի, նախ նուագեց J. S. Bach-ի *Capriccio՝ իր եղբօրը մեկնումին առթիւ*ը՝ չափաբերութեան եւ կշռոյթի անհրաժեշտ բծախնդրութեամբ, որ հոգին կը կազմէ Պախի երաժշտութեան: Այս կտորին մէջ, ան դրաւ մեքենականութեան եւ զգացումի անթերի առաւելութիւններ:

L. van Beethoven-ի Sonate Op. 81-ի երեք մասերը, F. Chopin-ի *Impromptu* No. 2 եւ *Etude* Op. 10, No. 3-ը, G. Fauré-ի *Premier nocturne* en Mi bémol mineur-ը եւ I. Albeniz-ի *Sérénade espagnole*-ը նուագուեցան ուշագրաւ երանգաւորումով եւ նրբութեամբ:

Ապա բուռն ծափերու տակ, կատարեալ ըմբռնումով եւ զգացումով նուագեց իր ուսուցչին՝ Arkadie Kouguell-ի *Pièce en forme d'étude*, No. 6-ը սիրուն եւ ճարտարօրէն ներդաշնակուած կտորը՝ ուր Օր. Տամատեան այս կտորի նուագումով՝ արժեցուց ուսուցչին արժանիքը:

Յայտագրի վերջին կտորը եղող F. Liszt-ի *Rhapsodie hongroise* No. 12-ը՝ իր ամենատպաւորիչ կտորներէն մէկը եղաւ: Ան գիտցաւ իր լրութեան հասցնել չափազանց դժուարին եւ հրաշալի այս կտորը: Այս եղանակին նուագումը արտայայտիչ ու նրբերանգ էր: Բուռն ծափեր կրկնումը կը պահանջէին: Օրիորդը դարձեալ ստիպուեցաւ բեմ գալ եւ յայտագրէն դուրս նուագել նոյնքան յաջող ուրիշ կտոր մը:

Հազուադէպ պարագաներու մէջ արդէն հաճոյքով լսած էինք Օր. Ն. Տամատեանը: Այս երգահանդէսով ճանչցանք կարող դաշնակահարուհի մը: Մեր անկեղծ շնորհաւորութիւնները:

Օր. Ն. Տամատեան բեմին վրայ ընդունեց բազմաթիւ ծաղկեփունջեր:

*Ազդակ*, 6 Ապրիլ 1933

## LE RECITAL NEVARTE DAMADIAN

DICRAN TOSBATH

Le récital de piano donné par Mlle Nevarte Damadian, au West Hall, le lundi 3 Avril, a été une véritable révélation. Le premier concert d'une jeune pianiste qui s'est imposée par son style.

Dans le *Capriccio sur le départ de son frère bien aimé*, de Bach, qui ouvrait le programme et qui est une œuvre abstraite, mathématique dès le prélude au sentiment profond, suivi d'un style de fugue et d'une phrase plaintive – la plus impressionnante de l'œuvre -, tout ce morceau, qui exigeait du rythme et de l'expression, a fait valoir la personnalité de la concertiste et la netteté de son jeu.

La Sonate Op. 81, de Beethoven. Le poème du départ.

Un thème à l'introduction et qui revient tout le long de la sonate; l'expression de 'l'Absence,' douloureuse et qui reflète en même temps des souvenirs heureux; la joie et la chaleur du 'Retour,' ont montré autre chose que la clarté du jeu de Mlle Damadian, on y a vu une merveilleuse interprétation qui a donné toute la profondeur beethovenienne.

C'est surtout dans L'*Impromptu* No. 2 en Fa dièze majeur et l'*Etude* Op. 10, No. 3, que Mlle. Damadian s'est dessinée plus clairement, elle a fait preuve de qualité de chopiniste: souplesse, sonorité, doigté feutré dans les par partitions tristes, fraîcheur dans les thèmes jeunes et allègres, toute une gamme d'interprétation! Du rêveur G. Fauré le *Premier nocturne* en Mi bémol mineur est le poème de ses rêveries; mais des rêveries mélodieuses dans le premier thème, majestueuses dans la deuxième phrase, et enfin floues dans le finale.

Toute l'harmonie du nocturne français fui rendu le plus heureusement possible.

La *Pièce en forme d'étude*, No. 6, de M. Arkadie Kouguell, remporta un vif succès, tant à cause de la compréhension avec laquelle elle fut rendue que par la présence de l'auteur.

La *Sérénade espagnole* d'Albeniz, aux motifs de vieille Espagne, où l'on sent la musique d'un lourd fondango, des partitions de guitare et de castagnette, bref, tout le piment espagnol.

Mlle Damadian dans la *Rhapsodie hongroise*, No. 12 de Liszt, dont le thème populaire tzigane est difficile à rendre, a interprété d'une façon magistrale avec une parfaite agilité, l'accent de la steppe, la flèvre et la tierté qui forment le morceau.

On peut conclure par l'impression qui s'est dégagée, tout le long du programme, que Mlle Damadian, à part une interprétation qu'elle colore à volonté et qu'elle assouplit à chaque motif différent, a un mécanisme stylé, une méthode de doigté remarquable, et

une personnalité dans l’esthétique de son jeu.

*L’Orient*, 8 avril 1933

## ԿԱՊՈՅՏ ՅԱՅՏԱԳՐԷՆ
(Տպաւորութիւններ Օր. Տամատեանի րէսիթալէն)

Բ.

Մե՜ղմ՝ մեղմ, դանդաղ՝ հանդարտ: Գարնան անձրեւներու առաջին ցանցառ կաթիլներ, հատ հատ, խոշոր, ծանր: Գետինը ծարաւ է, նուագը՝ կաթի՜լ կաթիլ:

Առաջին տպաւորութի՞ւնս - չունիմ: Ձեռքերը ձեռքերուն դէմ, մատները մատներուն հետ, շարքին մէջ, շարքէն դուրս. կը հպին, կը սահին, կ’ոստնուն, կը պարեն, վեր վար աջ ու ձախ, օդին մէջ առկախ: Հարուա՜ծ մը *տօ*ին, ու *սօ՜լ*ը: Եւ այսպէս:

Եւ առուակներու հոսանքը, եւ թռչուններուն երգը, ու մայրիներուն հեծեծանքը: Երբեմն ամպեր կը գոռան: Ու ճամբորդը. անկախ, քարքարուտ ուղիներէն կը մագլցի. զգոյշ զգոյշ, կը տեղաւորէ ոտքերը՝ մէկիկ մէկիկ, այսպէս, այսպէս, քայլ առ քայլ, վեր ու վար. հիմա լման, հիմա ազա՜տ, բա՜ցը, հիմա առատ ու լիութեամբ լի, մեծ ու հզօր վազք: Նուագը կը ծաւալի՝ կը մեծնայ՝ կ’ուռի կը լեցնէ ամբողջութիւնդ: Օդը պատռած՝ հսկայ ձայներ վրադ կը փլչին:

Ծովուն թաւալուն ալիքները որ եզերքի խճաքարերուն հետ նուագ կը հիւսէին, ժայռերուն հանդիպեցան: Փըշ-շ-շուր-րր... կ’իյնա՜յ կը տարածուի: Փրփուր, փրփուր: Սպիտակ ըղձանոյշ: Նուա՜գդ սիրուն, հո՜գի:

Հրաշալի պար մատներու: Ուղեղին *քինէսթէթիք* եւ *օտիթ*ով կեդրոնները ո՜րքան զարգացած ըլլալու են: Շնո՜րհք շարժումներու: Կլոր, կիսաշրջան շարժումներ թեւերէն մինչեւ մատները: Այնշթայնեան լուսոյ կամարաձեւ սլացքով: Ալի՜ք ալիք թող լեցուի հոգիներէն ներս:

Կը զուրգուրայ դաշնակին: Ատոր հետ մտերմացած՝ մոռցած է մեր ներկայութիւնը: Փսիկին հետ քիթ քթի խօսակցող մանուկը: Թընկ-թընկ, թիթի-թոնկ, աաաի, աու-աա-ընկ: Ու եփենոսը կը խօսի, կը կոչէ հեռուէն հեռու:

Ու կու գան մեծ վարպետները. մատներու շարժումէն ուրուականներ կը գծուին: Տողանցք փառաւոր, մուտք մեծավա՜յել: Կու գան մեծ վարպետները. սա Պախն է. սա Պեթովէնը, Լիստը, ու Շոփէ՜նը՝ կոչնակային քայլքով: Կու գան բոլորն ալ, կեանք կ’առնեն. կը ծանօթանանք վերստին, ու կը հալին կ’անհետին. մութին՝ մութը:

- Հայ վարպետները վարագոյրի ետեւ կը սպասեն, կ’ակնարկէ ընկերս:
Բուն նուագահանդէսը նոր կը սկսի: Կը ծափահարեն. մրափէ՞ կ’արթննան. աւելի՛, ե՛ւ աւելի: Կը խոնարհի, նորէ՛ն կը ծափահարեն: Նորէն կը խոնարհի փափուկ Օրիորդը, ու նորէ՛ն: Բարեկամներ, թո՛ղ տուէք, երթայ հանգչի: Երաժշտութիւնը ա՞յքան միայն կը յարգենք:
Ծաղկեփունջերը վեր ու վար: Ի՞նչ հպարտ՝ կրող տղան: Ո՞վ կը ղրկէ: Անծանօթէն. ա՛յդ է վայելը: Գեղարուեստը՝ տուրք անծանօթին, գնահատումը՝ անծանօթէն:
Ծափ ծափ ծափ: Պէտք է կտոր մը եւս շնորհէ:
Վերջացա՞ւ. ո՞վ: Դեռ ե՞րբ սկսաւ որ: Բայց կը մեկնին: Օ՜, ժամ ու կէս:
Մեզք որ եկողները շատ են ու սրահին լռութիւնը կը խանգարեն: Միջնանուագները՝ խօսակցութեանց աղմուկ, իսկ հիմա խենթերու պէս կը վազեն ձեռք սեղմել:
Իրա՞ւ բարեկամներ, ձեր հոգւոյն մէջ ալ ծնա՞ծ է այս իրիկուն նուագ մը: Ինչո՞ւ ուրեմն՝ լուռ, առանց խանգարելու հոգւոյն երգը, չէք ելլեր սրահէն, ու կը շաղակրատէք կը ցուցադրուիք դռներուն առջեւ: Ինչո՞ւ կ’աղմկէք, իրարու կը փաթթուիք: Հանդարտ, լռ՛ւռ, ակնածանքով քաշուեցէք ու տարէք երաժշտութիւնը մինչեւ ձեր խցիկները: Չէ՞ք լսեր նուագը որ կը շարունակուի: Մտի՛կ ըրէք ձեր ներսը:

*Ազդակ*, 8 Ապրիլ 1933

## ՕՐ. ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ ՊԷՅՐՈՒԹԻ ՄԷՋ

ԹՂԹԱԿԻՑ

Ապրիլ 3, երկուշաբթի օր, Օր. Տամատեան դաշնակի նուագահանդէս մը տուաւ Ամերիկեան Համալսարանի West Hall-ին մէջ: Արուեստագէտ Օրիորդը շրջանաւարտ է Ամերիկեան Համալսարանի երաժըշտական բաժնէն եւ Բարիզի Ecole Normale de Musique-էն:
Ընտրեալ հասարակութեան մը համակրալից ծափերը քաղելէ վերջ, Օրիորդը սկսաւ իր յայտագրին, որ զարդարուած էր տիեզերահռչակ եւրոպացի երաժիշտներու անուններով: Օրիորդը զգացումի եւ արուեստի կատարեալ գեղեցկութեամբ նուագեց իր ընտրած կտորները: Ամէն գովասանքի արժանի էր մանաւանդ Կ. Ֆօրէի *Բրըմիէր նօքթիւրն* ան Մի պէմօլ մինէօրը:
Արուեստագիտուհին նուագեց առանց աչքին առջեւ ունենալու ձայնանիշերը:
Կէտ մը սակայն:

Օրիորդը հայկական ոչինչ դրած էր իր յայտագրին մէջ ու ասիկա աչքառու թերի մըն է ինքնին: Հայ հասարակութեան մը հրամցուած նուագահանդէսը պէտք է ունենայ նաեւ շերտ մը հայկական սիրտէն: Հեռու մեզմէ արուեստը ազգութեան մէջ սահմանափակելու տափակ մտածումը: Սակայն մեր հին եկեղեցական երաժշտութիւնը եւ արդի երաժշտութիւնը այնքան գնահատուած օտար դժուարահաճ քննադատներէն, չունէ՞ն Օրիորդ Տամատեանի նուագահանդէսին մէջ այնքան մը զրաւելու չափ գեղարուեստական արժանիք: Երբ մենք ուրախութեամբ կ'ողջունենք Հայաստանի մէջ կատարուած գեղարուեստական ստեղծագործութիւնները, որոնք Մոսկուայի եւ Թիֆլիսի հասարակութենէն կը գնահատուին, ինչո՞ւ մեզի պատեհութիւնը չտրուի զանոնք ըմբոշխնելու հայուհիի մը ճարտար մատներէն:

Նուագահանդէսի ընթացքին եւ վերջը Օր. Տամատեան ընդունեց ծաղկեփունջեր եւ ներկաներուն ջերմ շնորհաւորութիւնները, որոնց լիովին արժանի էր:

*Արեւ*, 11 Ապրիլ 1933, ԺԷ. տարի, թիւ 4329, էջ 3

## MLLE NEVARTE DAMADIAN

V. A.

Il est toujours difficile d'affronter le public pour la première fois. Pourtant les débuts de Mlle Damadian ont été un petit triomphe, et c'est avec plaisir que nous avons apprécié chez la nouvelle pianiste le grand talent et les véritables qualités: grande précision dans le jeu netteté de l'interprétation, beaucoup d'intelligence enfin dans les différents morceaux.

Après le *Cappricio* de Bach, et la classique Sonate (op. 81) de Beethoven qui fut rendue, la dernière partie surtout, avec beaucoup de grâce et d'expression, l'*Impromptu* No. 2, et l'*Etude* (op. 16) de Chopin, sont les morceaux qui ont été les plus appréciés. Peut être fera-t-on à Mlle Damadian le même reproche que certains ont déjà formulé contre Casadesus.

Doit on jouer Chopin avec grâce ou avec vigueur ou au contraire, avec abandon? Et pourquoi imagine-t-on Chopin toujours comme un poète et un malade, même dans ses œuvres? Je félicite chaudement la pianiste, qui a été sûrement influencée par le jeu de Casadesus, d'avoir eu le courage de donner une telle interprétation à Chopin. Beaucoup de fougue dans cette *Etude*, beaucoup de force mêlée de contrastes.

Le *Premier nocturne* de Fauré et la *Sérénade espagnole* d'Albeniz ont à leur tour

ravi le public, et je regrette l’absence d’autres compositeurs modernes dans le programme, car Mlle Damadian, d’après son jeu, s’annonce une meilleure interprète d’œuvres modernes que d’œuvres classiques. Et Dieu sait s’il est difficile de bien rendre et de bien faire sentir les œuvres modernes!

N’en doutons pas dans quelques années, Mlle Damadian sera une pianiste de valeur.

*La Syrie*, 14 avril 1933

## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻՆԵՐ
## ՕՐԻՈՐԴ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ

Օր. Նուարդ Տամատեան ծնած է Աղեքսանդրիա եւ յաճախած է տեղւոյն Ազգային Վարժարանը ու զայն աւարտած է։ Ապա յաճախած է տեղւոյն Lycée Français-ն եւ որուն շարունակութիւնը կատարած է Պէյրութի մէջ ու աւարտած։

Աղեքսանդրիոյ մէջ դաշնակի դասեր առած է նախ Էօժէն Բաբազեանէն եւ երեք տարի ալ Տիկին Bonucci Carlesimo-էն։ Պէյրութի մէջ մասնաւոր դասեր առած է տաղանդաւոր դաշնակահար Arkadie Kouguell-էն, եւ յետոյ մտած է Ամերիկեան Համալսարանի Institut de Musique-ը եւ 1931-ին յաջող կերպով աւարտած է։ Ապա գացած է Փարիզ եւ մէկ տարի յաճախած է Ecole Normale de Musique եւ փայլուն կերպով աւարտած, ստանալով Etude d’enseignement-ի վկայական։

Ներկայիս կը պաշտօնավարէ Պէյրութի Ամերիկեան Համալսարանի Institut de Musique-ին մէջ, տալով դաշնակի եւ solfège-ի դասեր։ Օր. Նուարդ Տամատեան՝ 1933-ի գարնան տուաւ իր առաջին Récital-ը West-Hall-ի մէջ, միջազգային երաժշտասէր հասարակութեան մը առջեւ, դասական կտորներու ճոխ եւ դժուարին յայտագրով մը։

*Կեանք եւ արուեստ*, տարեգիրք, Փարիզ, 1935, Ե. տարի, էջ 42-43

## ՊԷՅՐՈՒԹ

## ՈՒՐԲԱԹ, 16 ՅՈՒՆԻՍ 1933

## ԱՐՔԱՏԻ ՔՈՒԿԷԼ ԿԸ ՅՕՐԻՆԷ *DEUX PAGES D’ALBUM* ԴԱՇՆԱԿԻ ՀԱՄԱՐ ԵՒ ԿԸ ՁՕՆԷ ՏԱՄԱՏԵԱՆ ԸՆՏԱՆԻՔԻՆ

Առաջին տպագրութիւն՝
Արքատի Քուկէլ, *Էջեր ալպոմէն եւ Հայկական պար*,
դաշնակի համար,
Գահիրէ, 2000




Arkadie Kouguell, *Deux pages d’album*
Առաջին տպագրութեան առաջին էջը

# ՈՒԷՍԹ ՀՕԼ

## ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

*Շաբաթ, 30 Նոյեմբեր, ժամը 9-ին*

# ՀԱՄԵՐԳ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

Մասնակցութեամբ

**ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ**

**Soliste des Grands Concerts Symph. de Paris**

ԵՒ

**ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ**

80 ՀՈԳԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ ԵՒ ՍԷՆՖՕՆԻԿ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

ՂԵԿԱՎԱՐ՝ **Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ**

---

# West Hall

## UNIVERSITE AMERICAINE

*Samedi, le 30 Novembre à 9 heures*

# CONCERT

Avec le concours de

**Mme Rose Patmagrian**

**Soliste des Grands Concerts Symph. de Paris**

*et de*

**Mlle Damadian** (Pianiste)

Chœur et orchestre Symphonique

—o— 80 EXÉCUTANTS —o—

Chef d'orchestre: **A. Patmagrian**

# ՑԱՑՏԱԳԻՐ

## I

| | | |
|---|---|---|
| 1. Ձէյթունցիներ | (ԽՈՒՄԲԸ) | ԻՊ. ԻՎԱՆՈՎ |
| 2. Ա) Ասմեք | | ՀԷՆՏԵԼ |
| Բ) Ֆռայշիւց | | ՎԵՊԵՐ |
| | ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆ | |
| 3. Ռեքուիեմ | (ՄԵՆԵՐԳ, ԵՐԳՉԱԽՈՒՄԲ և ՆՈՒԱԳ) | ՄՈՑԱՐԴ |
| 4. Լուչիօ Սիլլա | ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ | » |
| 5. Լուիզ | ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆ | ՇԱՐԲԱՆԹԻԷ |
| 6. «Փանթազիէ» | Դաշնակ Սօլօ՝ ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ<br>ԵՐԳՉԱԽՈՒՄԲ և ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ | ՊԵԷԹՀՈՎԸՆ |

## II

| | | |
|---|---|---|
| 1. Եար Կիւլա | (ԽՈՒՄԲԸ) | Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ |
| 2. Ա) Օրօր | | Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆ |
| Բ) Տիլպար | ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆ | Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ |
| Գ) Սիրերգ | | Վ. ՄՐԻԱՆՋՏԵԱՆ |
| 3. Ցուսուլ | (ԽՈՒՄԲԸ) | Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ |
| 4. Նազ Պար | (ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ) | Ս. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ |
| 5. Ա) Գարուն ա | | ԿՈՄԻՏԱՍ |
| Բ) Քելէ, Քելէ, | ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆ | » |
| Գ) Ձինչ ու Ձինչ | | » |
| 6. Նինամի հարսնիքը | (ՀԱՅԿԱԿԱՆ ՖԱՆԹԷԶԻ 3 ՄԱՍ) | Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ |

# PROGRAMME

## I

| | | |
|---|---|---|
| 1. *Les Braves de Zeytoun* | (Chœur) | *Ip. Ivanoff* |
| 2. A) *Admete* | | *Héndet* |
| B) *Freischutz* | (Air d'Agathe) | *Weber* |
| | ROSE PATMAGRIAN | |
| 3. *Requiem* | (Lacrymosa) | *Mozart* |
| 4. *Lucio Silla* | | » |
| *a) Allegro* | | |
| *b) Andante* | | |
| *c) Allegre Molto* | | |
| 5. *Air de Louise* | ROSE PATMAGRIAN | *Charpentier* |
| 6. *Fantaisie* Piano Solo: Mlle. N. DAMADIAN | | *Beethoven* |
| | Chœur et Orchestre | |

## II

| | | |
|---|---|---|
| 1. *Yar Gula* | (Chant pop. Armenien) | *A. Patmagrian* |
| 2. *a) Berceuse* | | *A. Bartevian* |
| *b) Dilbar* | | *A. Patmagrian* |
| *c) Chanson d'Amour* | | *V. Servantztian* |
| 3. *Doudoule* | (Chant pop. Arm. Chœur) | *A. Patmagrian* |
| 4. *Naz Par* | (Danse pop. Arm. Orchestre) | *S.Barkhoudarian* |
| 5. *a) «Karoun a»* | | *Komitas* |
| *b) Keleh Keleh* | (Chants pop. Arm.) | » |
| *c) Zintch ou Zintch* | | » |
| | ROSE PATMAGRIAN | |
| 6. *Les Noces de Niname* | (Fantaisie Armenien) | *A. Patmagrian* |

## LE CONCERT PATMAGRIAN AU WEST-HALL
(հատուած)

Le chœur et l'orchestre dirigés par M. Patmagrian ont réussi à conserver cet ensemble si difficile à obtenir dans le *Requiem* de Mozart et la *Fantaisie* de Beethoven, où Mlle Damadian, dans sa partition solo, s'est surpassée, prouvant une fois de plus sa mécanique et sa compréhension musicale.

*L'Orient*, 5 décembre 1935

## ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՊԱՏՄԱԳՐԵԱՆՆԵՐՈՒ ՀԱՄԵՐԳԸ
(հատուած)

Է. ՄԱԼՈՅԵԱՆ

Մասնաւոր յիշատակութեան եւ գնահատանքի արժանի է Օր. Ն. Տամատեան իր համեստ բայց ամենակարեւոր եւ դժուարին դերին մէջ: Արդարեւ Օր. Տամատեան գիտցաւ կատարեալ Maestria-ով մը դաշնակով ընկերանալ թէ Սօլիստ Տիկ. Պատմագրեանին թէ երգախումբին եւ թէ նուագախումբին: Պէթհովէնի *Ֆանթէզի*ին մէջ Օր. Տամատեան յայտ բերաւ թեքնիքի ըմբռնում, մատներու ճկունութիւն եւ խաղարկութեան նրբութիւն: Տիկ. Պատմագրեանի հետ յարգելի օրիորդը կը բաժնէ օրուայ յաջողութիւնը:

*Ազդակ*, 5 Դեկտեմբեր 1935

## AU WEST-HALL
## UN CONCERT SANS PRECEDENT
## M. PADMAGRIAN ET SA TROUPE
(հատուած)

ONNIK

La *Fantaisie* de Beethoven trouva sa belle expression dans l'interprétation au piano de Mlle Damadian, à qui était dévolue une partie touffue en difficultés, est qu'elle put surmonter avec une éloquence tant musicale que poétique. Elle

formulait l'élan et la passion des phrases, qu'elle sentait elle-même, pour nous les communiquer sur un clavier chantant. Un prélude de basse déroulait les thèmes que le piano, l'orchestre et le chœur répétaient tour à tour. Au final le chœur entonnait un chant, qui par la fusion du verbe et de la mélodie exalte la grandeur de l'art. Cette œuvre méditée longtemps par le maître, n'est qu'une esquisse, qui donnait naissance plus tard, par une échappée magistrale, à la 9e Symphonie.

*Le Jour*, 7 décembre 1935

THE NORTH SYRIA SCHOOL FOR BOYS
"KHANDEK" - ALEP

Samedi 28 Décembre 1935 à 21 heures

# RÉCITAL DE PIANO

DONNÉ PAR

## Mlle NEVARTE DAMADIAN

**Diplômée de l'Institut de Musique de l'A. U. B.**
**et de l'École Normale de Musique de Paris**

## PROGRAMME

| | | |
|---|---|---|
| 1. | **J. S. Bach** | Toccata et Fugue en Ré mineur |
| 2. | **L. van Beethoven** | Sonate Clair de Lune op. 27 no. 2<br>1. Adagio sostenuto<br>2. Allegretto<br>3. Presto agitato |
| 3. | **F. Chopin** | Ballade en Sol mineur<br>Impromptu en La bémol majeur<br>Deux Valses : en Sol bémol maj.<br>et en Mi mineur |
| 4. | **F. Liszt** | Rêve d'Amour |
| 5. | **A. Kouguell** | Pièce en forme d'Étude no. 8 |
| 6. | **C. Debussy** | Jardin sous la pluie |
| 7. | **Manuel de Falla** | Danse Espagnole de la Vie Brève |
| 8. | **Barkhoudarian** | Danse (Naz-Bar)<br>Esquisse et Aquarelle |

## LE RECITAL DE MLLE DAMADIAN

Mlle Nevarte Damadian a donné samedi dernier, à la salle de la North Syria School, un récital de piano.

Les amateurs de musique ne sont pas suffisamment gâtés à Alep, pour faire la fine bouche lorsqu'ils apprennent le passage d'un artiste dans cette ville.

Cependant le programme particulièrement difficile, quant à son exécution, auquel s'attelait courageusement une jeune musicienne récemment sortie de l'Institut de Musique, était bien fait pour décourager les moins pessimistes.

En effet, Mlle Damadian avait inscrit sans sourciller la Fugue en Ré de Bach en tête de ce programme. La célèbre pièce de Bach, bien faite pour piquer la curiosité des quelques initiés disséminés dans la salle, lesquels auguraient peut-être sans indulgence des piteux résultats que devait donner l'audacieuse exécution au piano d'une pièce composée exclusivement pour orgue.

La jeune pianiste servie par un métier déja fort habile et par une personnalité nettement marquée, ne déçut point les connaisseurs et enthousiasma les profanes. Résultat dont peu de débutants peuvent s'enorgueillir.

L'interprétation de la Sonate en Ut majeur de Beethoven, dans laquelle la jeune artiste refoula volontairement sa personnalité pour suivre aveuglément et dans la mesure de ses moyens, l'exécution sèche de Paderewski, fut longuement applaudie.

La suite du programme, comportant entre autres, une pièce de Liszt et une de Cl. Debussy, fut chaudement encouragée. Mais ce fut indiscutablement l'exécution de *Nazbar* et *Esquisse et aquarelle*, du célèbre compositeur arménien Barkhoudarian fermant le programme, qui obtint l'unanimité des suffrages: La jeune artiste, longuement applaudie et acclamée fut tenue par le public désormais conquis, de les "bisser".

*L'éclair du Nord*, Alep, 1 janvier 1936

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

*Եփրատ*ի 4 Յունուարի թիւին մէջ կը կարդանք.

«28 Դեկտեմբեր շաբաթ իրիկուն տեղի ունեցաւ Օր. Տամատեանի նուագահանդէսը Արաբ բողոքականաց ժողովարահին մէջ, ու Հալէպի արուեստասէր ժողովուրդին համար մեծ հաճոյք մը եղաւ լսել այս արուեստագիտուհին որ մեծ յաջողութեամբ կրցաւ հրապուրել եւ դիւթել հանդիսականները, անոնցմէ քանիցս խլելով բուռն ծափահարութիւններ եւ ոգեւորութեան արտայայտու-

թիւններ։

«Օր. Տամատեան դաշնակի վրայ նուագեց այնպիսի կտորներ, որոնք ցոյց տուին Օրիորդին տաղանդը, գնահատութեան արժանանալով ոչ միայն հայ արուեստագէներէն այլ նաեւ օտար արուեստագէտներէն։

«Ներկաները խանդավառ բացագանչութիւններով եւ բուռն ծափահարութիւններով յայտնեցին իրենց հիացումը։»

*Արեւ*, 8 Յունուար 1936, Ի. տարի, թիւ 5171, էջ 1

## ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԳԷՏՆԵՐ ՀԱԼԷՊԻ ՄԷՋ

ՕՆՆԻԿ ԷՄԻՆԵԱՆ

Դէյրութէն Հալէպ ժամանելով, Օր. Ն. Տամատեան դաշնակի *ռէսիթալ* մը տուաւ Դեկտեմբեր 28-ին Ամերիկեան վարժարանի սրահին մէջ։ Սրահը ամբողջովին լեցուած էր արդէն՝ երբ Օր. Տամատեան *ռէսիթալը* սկսաւ բուռն ծափերու մէջ։ Երկու ժամ շարունակ, ներկաները վերացած ունկնդրեցին տաղանդաւոր հայ օրիորդին նուագած գլուխ գործոցները՝ ինչպէս Պէթօվէնի Sonate *Au clair de lune*-ը, Շօբէնի *Ballade* en Sol mineur-ը եւն., նոյնպէս հիանալի նուագեց Liszt-ի *Rêve d'amour*-ը, Debussy-ի *Jardin sous la pluie*-ն եւ *ռէսիթալը* վերջացաւ Բարխուդարեանի *Նազ պար*ով որ կրկնել տրուեցաւ։ Բազմութիւնը խոր հիացումով մեկնեցաւ սրահէն։

*Արեւ*, 10 Յունուար 1936, Ի. տարի, թիւ 5173, էջ 2

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՄԵՄՈՐԻԸԼ ՀՈԼ, ՊԷՅՐՈՒԹ

ՈՒՐԲԱԹ, 17 ՅՈՒՆՈՒԱՐ 1936

ՏԱՐԵԿԱՆ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ
ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀԱԿԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

# ՏԱՐԵԿԱՆ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

## ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀԱԿԵԱՆ ՎԱՐԺ.Ի

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

**ՏԻԱՐ Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ**

8—14 տարեկան 70 երկսեռ սան—սանուհիներու

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

**ՏԻԿ. ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ՝**

**ՕՐ. ՏԱՄԱՏԵԱՆԻ (ԴԱՇՆԱԿ)**

ԵՐԿՍԵՌ ԿԱՐՈՂ ՈՒԺԵՐՈՒ

ԵՒ

**ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻ**

17 Յունվար 1936 Ուրբաթ իրիկուն ժամը 8.30 ին,

Ամերիկեան Մեմօրիըլ Հօլ-Մօրիս Պարէս փողոց:

# CONCERT ANNUEL

## DE L'ECOLE NATIONALE ARM. SAHAGUIAN

SOUS LA DIRECTION DE

**MR. A. PATMAGRIAN**

Chœur mixte de 70 élèves de 8 à 14 ans

AVEC LE CONCOURS DE

**MME PATMAGRIAN,** (SOLISTE DE PARIS)

**MLLE N. DAMADIAN (PIANO)**

d'un chœur mixte d'amateurs et d'orchestre

Le 17 Janvier 1936 à 20 h. 30 au

MEMORIAL HALL, RUE MAURICE BARRES

# ՅԱՅՏԱԳԻՐ

I

1. Գարուն — Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ
2. Հրաւէր — »
3. Որսորդներ — ՎԷՊԷՐ

ԵՐԳՉԱԽՈՒՄԲ-ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

4. Քասթա Տիվա "Նորմա" Օբերայէն — ՊԵԼԷՆԻ

ՏԻԿ. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ

5. Ժանթէզի — ՊԵԷԹՀՕՎԷՆ

ԴԱՇՆԱԿ ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ. ԵՐԳՉԱ-ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

II

6. Օրաթօրիում — Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ
   Ա. Փառք Քեզ Տէր
   Բ. Արծաթսիրութեամբն մոլեալ Յուդա
   Գ. Նորաստեղծեալ (սաղ)
   Դ. Որ արարեր (շարական)
   Ե. Այսօր ձայն հայրական

ՄԵՆԵՐԳ ՏԻԿ. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ. ԵՐԳՉԱ-ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

7. Լիզ "Փիքովայա Տամա" օբերայէն — ՉԱՅՔՈՎՍՔԻ
8. Լուսնակն անոյշ — ԿՈՄԻՏԱՍ ՎՐԴ.
9. Քէլէ, քէլէ — » »

ՏԻԿ. ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆ

10. Նիննամի հարսանիքը — Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ

ԵՐԳՉԱԽՈՒՄԲ-ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

# PROGRAMME

## I

| | |
|---|---|
| *1. Le printemps* | *A. Patmagrian* |
| *2. Invitation* | » |
| *3. Les chasseurs* | *Weber* |

CHŒUR & ORCHESTRE

| | | |
|---|---|---|
| *4. Casta Diva* | de l'Opéra "Norma,, | *Belleni* |

Mme PATMAGRIAN

| | |
|---|---|
| *5. Fantaisie* | *Beethoven* |
| *Piano solo Mlle N. Damadian* | *Chœur & orchestre* |

## II

| | | |
|---|---|---|
| *6. Oratorium* | | *A. Patmagrian* |
| *Solo Mme Patmagrian* | | *Chœur & Orchestre* |
| *7. Liz* | de l'Opéra «Pikovaya Dama» | *TChaykovskié* |
| *8. La lune douce* | | *Komitas* |
| *9. Kélé kélé* | | » |
| *10. La noce de Niname* | | *A. Patmagrian* |

CHŒUR & ORCHESTRE

# HOTEL SAINT - GEORGES

Mardi 18 Février 1936 à 21 heures

## RÉCITAL DE CHANT

# ROSE PATMAGRIAN

Soliste des Grands Concerts Symphoniques de Paris

**Organisé par le journal " L'ORIENT "**

## PROGRAMME

### I

| | |
|---|---|
| 1. **Largo** | **HAENDEL** |
| 2. **Alleluja** | **MOZART** |
| 3. **Air d'Agathe** (Freischütz) | **WEBER** |
| 4. **Casta Diva** | **BELLINI** |
| 5. **DICHTERLIEBE** | **SCHUMANN** |
| a) **Im wunderschönen Monat Mai** | — |
| b) **Aus meinen Traenen spriessen** | — |
| c) **Die Rose, die Lilie, die Taube** | — |
| d) **Wenn ich in deine Augen seh'** | — |
| e) **Ich will meine Seele tauchen** (sans interruption) | — |
| 6. **Meine Liebe ist grün** | **BRAHMS** |
| 7. **Sayat - Nova** (chant populaire Arménien) | **A. PATMAGRIAN** |
| 8. **Doudoule** — | **A. PATMAGRIAN** |

### II

| | |
|---|---|
| 1. **La Dame de Piques** | **TCHAYKOWSKY** |
| 2. **Chanson Parassia** | **MOUSSORGSKY** |
| 3. **Chanson de Lel** | **RIMSKY - KORSAKOFF** |
| 4. **Thaïs** | **MASSENET** |
| 5. **Nocturne** (chant populaire Arménien) | **KOMITAS** |
| 6. **Zintch ou Zintch** — | — |
| 7. **Kéleh - Kéleh** — | — |

Au Piano Mlle N. DAMADIAN

Billet en vente : à " L'ORIENT " et à l'Hôtel St-Georges

UNIVERSITÉ AMÉRICAINE DE BEYROUTH

SALLE D'ASSEMBLÉE

VENDREDI LE 15 MAI 1936 A 21 H.

**RÉCITAL DE VIOLON**

DONNÉ PAR

# TINA MANTEUFEL

SOLISTE DES CONCERTS, LAMOUREUX, PASDELOUP
AVEC LE CONCOURS DE:

**Mlle. N. DAMADIAN (Piano)**

(PROFESSEURS A L'INSTITUT DE MUSIQUE)

## PROGRAMME

| | |
|---|---|
| 1. BACH | SCICILIENNE |
| 2. BRUCH | 2me. CONCERT en RÉ MINEUR<br>a. Adagio ma non troppo<br>b. Recitativo - Allegro<br>c. Finale - Allegro molto |
| 3. GRIEG | SONATE en DO MINEUR<br>a. Allegro molto et appassionato<br>b Aiiegro espressivo alla Romanza<br>c. Allegro Animato |
| 4. CHOPIN | NOCTURNE en MI MINEUR |
| PAGANINI | SONATE No. 13 |
| A. KOUGUELL | BERCEUSE |
| L. BOULANGER | NOCTURNE |
| " | CORTÈGE |
| 5. TSCHAIKOWSKY | MÉLODIE |
| " | SCHERZO |

# LA VIE FEMININE, LITTERAIRE ET ARTISTIQUE CHEZ MLLE NEVART DAMADIAN

ARSINE KHATCHADOURIAN

"DE LA MUSIQUE AVANT TOUTE CHOSE"
VERLAINE (*ART POETIQUE*)

Le soleil tape dur, ce soleil d'Aley qui a peur de s'en aller, mais je ne me plains pas d'attendre qu'on m'ouvre, puisque tout cela est largement compensé par les accords légers d'une musique ailée...

...On joue du piano... On joue très bien, avec une profonde musicalité; et c'est si léger et si vaporeux...

La porte s'ouvre; et je m'installe sur une terrasse fleurie, près de la famille Damadian réunie qui me réserve un accueil des plus aimables.

J'aimerais bien continuer à écouter, à écouter sans cesse. De la musique, toujours de la musique! Qui s'en lasserait?

Mais bientôt Mlle Damadian vient nous rejoindre.

- Que jouiez vous de si joli?

- Ce morceau vous plaît? A moi aussi. Il s'appelle *Esquisse et acquarelle*, une des dernières œuvres de Barkhoudarian.

- Cela porte bien son nom!... Je vois d'ailleurs que je tombe bien à propos. Vous jouez du piano, juste l'atmosphère qu'il faut pour parler musique. Car c'est pour cela que je viens: une interview, sil vous plaît!

Evidemment, ma visite est intéressée!

- Une interview? moi? En quoi puis-je vous intéresser?

**Bourse de Cortot et Ecole Normale de Musique à Paris**

- En quoi! Je sais fort bien que Mlle Damadian, la première diplômée du Conservatoire de Beyrouth en 1931, a gagné la Bourse offerte par Cortot et en a profité pour poursuivre ses études musicales à l'Ecole Normale de Paris. Elle a ainsi ouvert la voie à ses camarades; et, depuis 1931, tous les ans, des jeunes filles diplômées du Conservatoire bénéficient d'un Bourse après concours. Certaines en profitent, comme Melles Waldman, Caracachian, Scrini, qui sont allées parachever leurs études. D'autres, comme Mlle Baltaïan, gardent leur bourse pour une occasion favorable.

Et c'est de ses camarades que Mlle Damadian me parle d'abord; c'est elles qu'elle met en relief en se plaçant au second plan.

Connaissant notre milieu rigoriste, je lui demande:

- Et vos parents vous ont laissée partir? Peut-être parce que votre sœur vous accompagnait!

- Bien sûr! sans cela, j'étais bien en peine. Ce n'est que sur l'instance de mon professeur, M. Kouguell, qui est intervenu auprès de mes parents, que ceux-ci ont commencé à fléchir. L'offre gracieuse de ma sœur a fait le reste. Mais tout cela a retardé mon départ, je n'ai pu arriver à Paris que fin novembre et commencer en décembre mes études. Rien que six mois pour arriver à l'examen!

Mlle Damadian est toute au souvenir de ces mois d'étude musicale et elle me confie:

- Quel milieu intéressant, que cette Ecole Normale de Musique! Une atmosphère d'étude: de la musique, encore et partout. On ne parle que de musique; on ne pense qu'à cela. On en est pénétré. C'est M. Cortot lui-même qui dirige cette Ecole: je n'oublierai jamais ses cours d'harmonie. Et les concerts que nous écoutions si souvent! M. Cortot nous disait de les entendre tous, bons ou mauvais. "Cela vous profitera toujours!" affirmait-il.

- Et depuis votre retour?

- Depuis, je suis engagée par le Conservatoire de Beyrouth.

- Avez-vous beaucoup d'élèves?

- Oui! Mais je les préfère très jeunes. Les défauts peuvent être plus facilement corrigés et on peut leur inculquer la bonne méthode. Pendant quelque temps, j'ai aussi donné des leçons de solfège.

**Les grands maîtres de la musique et le cinéma**

- Quels sont vos auteurs favoris?

- Favoris? Mais je les aime tous!

- On a toujours ses préférences!

- Oui .. Chopin, Beethoven, Haydn, mais je préfère de beaucoup Chopin, peut-être parce qu'il est romantique!

- Et Wagner?

- Oh! Wagner, c'est un compositeur d'orchestre. Mais j'aime bien sa musique...

- Quoi qu'elle donne l'impression de faux... Mais n'est-ce pas lui qui a fait une révolution dans le monde musical! Je crois que depuis, cela continue, et nos modernes...

- Oh! pour les modernes, il y a toujours des plus modernes!

Debussy, qui était considéré comme tel, devient presque classique, maintenant! Il y a d'autres innovateurs. Ravel, par exemple.

- Et que pensez vous de la musique du cinéma?

- Cela dépend des films! Dans les *Misérables*, c'est Honegger lui-même qui avait composé l'accompagnement musical et la fuite de Jean Valjean pouvait presque être comprise sans images, rien que par les phrases musicales qui reproduisaient

merveilleusement les divers sentiments du moment.

- On y vient, au cinéma! C'est comme Colette qui, après l'avoir dénigré, à écrit elle-même "Divine" pour le septième art.

- Eh! oui, et d'ailleurs, grâce au concours des bons écrivains et des bons compositeurs, le cinéma pourra faire beaucoup de progrès.

- Pour en revenir à vous, comptez-vous poursuivre encore vos études musicales?

- Oui, j'aimerais bien aller un ou deux ans à Paris, pour écouter des concerts et me perfectionner.

Se perfectionner! N'avons-nous pas constaté la technique au West-Hall de Mlle Damadian, qui, en excellente musicienne, a donné lors de son retour de Paris, un concert des plus appréciés?

Ce que nous lui souhaitons, c'est d'avancer, encore et encore.

*Le Jour*, 31 juillet 1937

ERRATUM

Nous avions relaté dans notre article sur Mlle Damadian que notre musicienne avait fait ses études au Conservatoire de Beyrouth. C'est à l'Institut de Musique de l'Université Américaine de Beyrouth, que Mlle Damadian a obtenu son diplôme. Nous prions nos lecteurs d'excuser cette erreur.

## ՊԷՅՐՈՒԹ

## ԵՐԵՔՇԱԲԹԻ, 11 ՆՈՅԵՄԲԵՐ 1937

## ՅԱՆՁՆԱՐԱՐԱԿԱՆ ՆԱՄԱԿ՝ ԱՐՔԱՏԻ ՔՈՒԿԷԼԻ ՍՏՈՐԱԳՐՈՒԹԵԱՄԲ

Յանձնարարական նամակ մը՝ ուր կը նշուի, թէ Նուարդ Տամատեան հինգ տարի (1932-1937) դաշնակ դասաւանդած է Պէյրութի Ամերիկեան Համալսարանի Institut de Musique-ին մէջ

**INSTITUT DE MUSIQUE**
**DE L'UNIVERSITÉ AMÉRICAINE**
**BEYROUTH, LIBAN**

*Beyrouth, le* 11 novembre 1937
ADR. TEL. AMUNOB

ARKADIE DOUGUELL
Directeur

Je suis heureux de recommander Mademoiselle Nevart Damadian ancienne elève diplomée de l'Insitut de Musique et de l'Ecole Normale de Musique de Paris. Mademoiselle Nevart Damadian a donné pendant cinq ans les cours de piano à l'Institut de Musique de l'Université Américaine de Beyrouth.

Par ses réelles qualités de pedagogue, par ses connaissances et son intelligence musicale Mlle. Nevart Damadian a produit pendant toute la période de son enseignement de brillants elèves et de bons musiciens.

A. Douguell

Le Directeur de l'Institut de Musique

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1937

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ

Ռ. Ա. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ "ՄԱՍԻՍ" ՄԻՈՒԹԻՒՆ

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՔԵՂ ՑԵՐԵԿՈՅԹ

Կիրակի, 12 Դեկտ. 1937, ժամը 6 ին (յ.մ.)

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
19, Շարլ Տուպրէ, 19

## ՓՈՔՐԻԿ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ (ՀԻՆԳ ՈՒ ԿԷՍ ՏԱՐՈՒ)

## ՕՏԷԹ ՍԻՄՈՆ (ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ)

Կ'ԵՐԵՒԻ ԲԵՄԻՆ ՎՐԱՅ 7 ԱՆԳԱՄ՝ ՊԱՐՈՎ ՈՒ ԵՐԳՈՎ

**Նուագ, Մեներգ, Արտասանութիւն՝**
ընկերակցութեամբ երաժշտութեան, եւն.

ՑԵՐԵԿՈՅԹԷՆ ԵՏՔ՝ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

— ՑԱՅՏԱԳԻՐ —

— Ա. ՄԱՍ —

1.— Դաշնակ (Ռաքզօֆի Հօնկրուազ, թիւ 11, Լիսթ)
Օր. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ

2.— ա) Պէլլա Ռաֆազինա (ԹԻՆՕ ՌՕՍԻ)
բ) Զինի » »
Փոքրիկն ՕՏԷԹ ՍԻՄՕՆ

3.— Արտասանութիւն (Արեւին, Մ. Մեծարենց)
*Դաշնաւորում՝ Հ. ՊԷՐՊԷՐԵԱՆԻ,*
*դաշնակի ընկերակցութեամբ,* Պ. ԱՐԱՄ ՍԱՆՏԱԼԵԱՆ

4.— ա) Մառինէլլա (ԹԻՆՕ ՌՕՍԻ)
բ) Բրուքէր (ՄՕՐԻՍ ՇԸՎԱԼԻԷ)
ՕՏԷԹ ՍԻՄՕՆ

5.— Աֆորտէօն (Նուագ) Պ. ՏԻԳՐԱՆ ՃԷՐԱՀԵԱՆ

— ՑԱՅՏԱԳԻՐ —

— Բ. ՄԱՍ —

6.— Ջուգերգ (Ոսկի երազ)
*Խօսք՝ Մ. ՏԱՄԱՏԵԱՆԻ,*
*Երաժշ. Հ. ՊԷՐՊԷՐԵԱՆԻ*
Օր. Ա. ՋԱՔԱՐԵԱՆ եւ Պ. Ե. ՍԻՄՕՆԵԱՆ

7.— ա) Բօնքօն Ռուժ
բ) Տանս Մաքլօթ
ՕՏԷԹ ՍԻՄՕՆ

8.— Դաշնակ Փոքրիկն՝ ՆՈՒՊԱՐ ՁՕՐՊԱՃԵԱՆ

9.— Արմօնիքա (Նուագ) Պ. ՇԱՒԱՐՇ ԱՀԱՐՈՆԵԱՆ

.— Ռուսական Պար ՕՏԷԹ ՍԻՄՕՆ

— Ցերեկոյթէն ետք՝ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ —

ՄՈՒՏՔ 10 Եւ 5 Ե.Դ.

(Վճարումները մուտքի պահուն)

Տոմսերուն համար դիմել Ռ.Ա. “Մասիս„ Սրահը ամէն օր:

Տպարան ՍԱՀԱԿ-ՄԵՍՐՈՊ, Գահիրէ

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՈՒՐԲԱԹ, 11 ՄԱՐՏ 1938

## ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳ

# ORIENTAL HALL

UNIVERSITÉ AMERICAINE - 65, Rue Cheikh Rihane - LE CAIRE

**VENDREDI 11 MARS 1938, à 9 h. 15 p.m. très précises**

## RECITAL de PIANO

donné par

# Nevarte DAMADIAN

Diplômée de l'Institut de Musique de l'Université Américaine de Beyrouth
et de l'Ecole Normale de Musique de Paris

### PROGRAMME

| | | |
|---|---|---|
| MOZART | — | Sonate en la majeur. |
| SCHUMANN | — | Pourquoi ?. |
| „ | — | Essor de l'âme. |
| CHOPIN | — | Ballade en la bémol majeur. |
| „ | — | Valses en Sol bémol majeur et en Mi mineur. |
| „ | — | Etudes op. 10 No. 3 - No. 5 |

**INTERVALLE**

| | | |
|---|---|---|
| M. DE FALLA | — | Danse espagnole de "La Vie brève". |
| DEBUSSY | — | Jardins sous la pluie. |
| „ | — | La fille aux cheveux de lin. |
| BARKHOUTARIAN | — | Esquisse et Aquarelle. |
| LISZT | — | Rhapsodie Hongroise No. 11. |

Piano de Concert "BECHSTEIN"

***Prix des Places : Fauteuil P.T. 30 - 20 - Stalle P.T. 10 (taxe en sus)***

Location à la Maison PAPASIAN & Co. 9. Rue Maghraby et le soir du Concert à la SALLE de l'ORIENTAL HALL.

Les membres de la Société de Musique d'Egypte bénéficient d'une réduction de 25°/o sur les prix des Fauteuils.

Les portes seront fermées à 9 h. 15 précises et pendant l'éxécution des morceaux.

Imp. V. & M MOTTA

# ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Ուրբաթ գիշերուան դաշնակի շարանուագը յաջողութիւն մը եւ եթէ բառը մեծ չէ՝ յաղթանակ մը եղաւ Օր. Նուարդ Տամատեանի համար, որուն առաջին երեւումն էր ասիկա եգիպտական հանրութեան մը առջեւ:

Պիտի ուզէի որ իմ տեղս երաժշտագէտ մը ըսէր ինչուն եւ ինչպէսը այդ յաջողութեան, բացատրէր, ձեռնհասօրէն, այդ նուագածութենէն մեր ստացած նուրբ ու բարձր հաճոյքը: Բայց քանի որ յաջողութեան ու հաճոյքին վրայ համաձայն էին անցեալ երեկոյ թէ՛ անոնք որ կը սիրեն միայն եւ թէ անոնք որ սիրելէ զատ *գիտեն* նաեւ երաժշտութիւնը, կրնանք առանց յանդգնութիւն մը ըրած ըլլալու յայտարարել՝ թէ Նուարդ Տամատեան կը գրաւէ, այժմէն եւ եթ, պատուոյ տեղ մը Եգիպտոսի դաշնակահարներուն մէջ, եւ թէ բարեբախտութիւն մըն է, յատկապէս հայ գաղութին համար, այս շնորհալի ուժին յաւելումը միեւնոյն արուեստին նուիրուած ուրիշ արդէն ծանօթ ուժերու վրայ, - բարեբախտութի՛ւն այն պայմանով անշուշտ, որ գաղութը գիտնայ օգտուիլ անոնցմէ, փափաքի ծաղկած տեսնել գեղարուեստական կեանք մը իր մէջտեղ, փոխանակ փուշերով խեղդուած եւ գնդախաղով կոխկռտուած պահելու գետինը ուր պիտի կրնար այդ կեանքը ծաղկիլ...:

Գալով իմ պարզ տպաւորութեանս Օր. Տամատեանի արուեստէն, սա է՝ թէ ան կը միացնէ իր մէջ փափկութիւնը զօրութեան, կը պահէ յստակութիւնը ձայներուն զանգուածեղութեան մէջ, կարող է, հողին վրայ ամենամեղմ քայլերը առնելէ վերջ ու առաջ՝ սլանալ ու ճախրել բարձրերը երգն ստեղծող զգացումին:

Յետոյ, դատելով իւրաքանչիւր կտորի գործադրութեան իր տուած բոլորանուէր ուշադրութենէն, իր ուղղահայեաց՝ պիտի ըսէի՝ սուզումէն անոր մէջ, կը կարծեմ թէ ան երկարօրէն ջանացած է ու այդ պահուն կը ջանայ տակաւին՝ ըլլալ հլու թարգմանը հեղինակին, թափանցողը անոր ամենափոքր դիտաւորութիւններուն, առանց ինքնիրմէ բան մը աւելցնելու անոնց վրայ կամ բան մը անոնցմէ մէկ կողմ ձգելու:

Մոցարդի Սոնաթը (*ան լա մաժէօր*) որով սկսաւ շարանուագը, ա՛յնքան ճոխ եւ այլազան, որ զուտ եւ ջինջ երաժշտութիւն է ինչպէս ամբողջ Մոցարդը ու կը պահանջէ, նոյնպէս գրեթէ ամբողջ Մոցարդը, նոյնչափ խոր զգացում որչափ խոր *թէքնիք* իր գունագեղ ու զօրեղ թեթեւութիւնը արտայայտել կարենալու համար, այդ կտորը կու գար մէկ անգամէն յայտնել բոլոր կարողութիւնները թարգմանարուեստագէտին:

Շումանի երկու կտորներէն՝ առաջինը, *Ինչո՞ւ*, բանաստեղծներու սրտին

ամենէն մօտ այդ երգահանին *լիտ*երէն կը թուի ըլլալ, որոնց յիշատակով Ալպէռ Սամէն կ՚ըսէ իր մէկ քերթուածին մէջ.

Եւ Շումանի հոգին, միջոցին մէջ թափառայած,
Անդարմանելի վիշտ մը հեցել կը թուի...:

Երկրորդը՝ *Հոգիի սլացք*, զոր կը լսէի առաջին անգամ ըլլալով, եղաւ այդ գիշերուան իմ մեծագոյն վայելքս, նոյնքան կտորին գեղեցկութեան որքան համապատասխան մաքուր (*նէթ*) եւ կապակից (*լիէ*) զարնուածքին պատճառաւ: Լուվրի աննման արձանակտորը՝ *Սամոթրակէի յաղթանակ*ն էր կարծես երաժշտութեան վերածուած, իր շնչալից թրթռումովը բոլոր *նօթ*երուն, բոլոր *աքօռ*ներուն, իր կարճ վարանումներովն ու խոնարհումներովը եւ իր վերստին դէպի վեր թռիչքովը:

Յայտագրին առաջին մասը կը վերջանար Շոբէններով, որոնցմէ *Էթիւտ*ները ինծի թուեցան աւելի հաճելի քան *Պալլատ*ն ու *Վալս*երը, ու կարծեցի թէ *Էթիւտ*ներուն մէջ էր, որ Օր. Նուարդ Տամատեան լաւագոյնս գտած էր իր աշխատալից գուրգուրանքին վարձատրութիւնը:

Երկրորդ մասը կը պարունակէր՝ տը Ֆալլայի մէկ սպանիական պարէն ետք՝ Տըպիւսիի *Անձրեւին տակ պարտէզներ*ն ու *Քթանէ մազերով աղջիկ*ը, որոնց վերջինը Օր. Տամատեան նուագեց ամենամեծ փափկութեամբ եւ խորհուրդով: Յետոյ կու գար Բարխուդարեանի *Ուրուագիծ եւ ջրաներկ* (*Էսքիզ է աքուարել*) կտորը, զոր հայ ունկնդիրներէն շատեր առաջին անգամ լսեցին ու գնահատեցին ջերմօրէն՝ նոյնչափ, թերեւս, հեղինակին ազգութեան որչափ արեւելեան *մօթիֆ*ին վրայ դրուած արեւմտեան բաւական նուրբ արուեստին համար:

Եւ երեկոյթը վեջացաւ Լիսթի *Ռափսոտի հոնկրուազ* թիւ 11-ով, ուր հայ արուեստագէտը դարձեալ առիթը տուած էր ինքզինքին՝ իր զարգացած *թէքնիք*ին հետ յայտնաբերելու իր թափանցման կարողութիւնը մեծ վարպետներու անձնական ու նաեւ ցեղային հոգիին:

Խանդավառ ծափերու ստիպումին ներքեւ Օր. Տամատեան նուագեց, յայտագրէն դուրս, Քուբըրէնի զմայլելի *Պուաթ ա միւզիք*ը եւ ստացաւ, ինչպէս իրական ծաղիկներ բարեկամներէ՝ նոյնպէս իր հին ու նոր հիացիկ բարեկամներուն ծաղկեալ շնորհաւորութիւնները, յաւարտ հանդէսին:

Եւ երկու հարիւր քսան աթոռները Օրիէնթըլ Հոլի՝ պարապ չէին բարեբախտաբար:

*Արեւ*, 16 Մարտ 1938, ԻԲ. տարի, թիւ 5839, էջ 2-3

# ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ
# ԴԱՇՆԱԿԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԻՆ ԱՌԹԻՒ

ԶԱՊԷԼ ԶԱՔԱՐԵԱՆ

Օրիէնթըլ Հօլի մէջ տեղի ունեցաւ 11 Մարտ 1938, երեկոյեան ժամը 9.15-ին Օրիորդ Տամատեանի *րէսիթալը*։ Ժամանակին արդէն երաժշտասէր հասարակութիւնը սրահը գրաւած էր ամբողջութեամբ։ Անոնք որ լսելու բախտը չունեցան շնորհալի արուեստագիտուհին, գեղարուեստական մեծ վայելք մը կորսնցուցին։ Հակառակ ձոխ յայտագրի մը, երբ վերջին կտորը նուագեց, *Ռաքսօտի հօնկրուազ* թիւ 11, տակաւին կշտացած չէինք զգար ինքզինքնիս, ոչ իսկ յոգնած լսելէ, կ'ուզէինք որ ան դեռ երկար ատեն շարունակուէր, որպէսզի մեր վայելքի գինովութենէն չսթափէինք։ Անտարակոյս այս զգացումը մեզ կը փոխանցէր ոչ միայն օրիորդին տաղանդը, այլ նաեւ իր անձին հմայքը։

Իմ կարողութեանս սահմանին մէջ չէ անշուշտ իր նուագած կտորները մի առ մի վերլուծել եւ անոնց շուրջ գնահատանքներ հիւսել. այդ գործն է երաժշտութեան վարպետներուն։ Ես կ'ուզեմ առիթը օգտագործել եւ սխալ մը մատնանշել, սխալ մը, որ բաւական ծաւալած կը գտնեմ հասարակութեան մէջ եւ որուն մասին երկար ատենէ ի վեր մտադրած էի գրել։ Այսօր պահը յարմար կը նկատեմ։

Բայց նախ քան նիւթին անցնիլը, ես պիտի ուզէի հասարակութեան ներկայացնել Օր. Տամատեանը իր մէկ տարբեր երեսէն։

Նախ ըսեմ թէ Տամատեան ազնիւ ընտանիքին հետ բարեկամութիւնս նոր չէ, ես կը ճանչնամ Օր. Տամատեանը իր մանուկ հասակէն, շատ մօտիկէն, ամիսներով իրենց տունը հիւր եղած եմ Աղեքսանդրիա, երբ առաջին անգամ Եգիպտոս ոտք դրած եմ։ Ինք տակաւին փոքրիկ աղջիկ, Լիսէ Ֆրանսէի մէջ ուսանող, երբ դպրոցէն կը վերադառնար, կը մտնէր իր աշխատանոցը եւ կ'աշխատէր։ Կը թողուր աշխատութիւնը այն ատեն միայն երբ բոլոր դասերը խղճմտօրէն պատրաստած էր։ Յետոյ փոխանակ հանգստանալու ուէ խաղով մը, ինչպէս պիտի ընէր իրեն տարեկից ուէ մէկը, կ'անցնէր դաշնակին գլուխը իր նուագի դասը պատրաստելու։ Այն ատենէն ես արդէն հիացող մըն էի իր վրայ։ Արդէն շատ կանուխէն, 6 տարեկան հասակէն իր տաղանդը ցոյց տուած է եւ իր խելացի ծնողքն ալ զինք յանձնած է վարպետ դաշնակահարուհիի մը խնամքին, իտալուհի մը, որ այնքան սիրուած ու փնտռուած ուսուցչուհին էր օրուան հարուստ ընտանիքներու մէջ, զի իր պայմանները միայն հարուստներու մատչելի էին։ Յետոյ իր հայրը՝ Պ. Մ. Տամատեան գործով Պէյրութ փոխադրուելով, ստիպուած եղաւ ընտանիքը միասին տանիլ։ Օր. Նուարդ, այն ատեն դեռատի աղջիկ, հոն իր ուսումը եւ իր դաշնակի դասը մեծ եռանդով մը շարունակեց, միշտ յայտնաբերելով իր տաղանդը, այնպէս որ կրցաւ վկայուիլ տեղւոյն Ամերիկեան

Institut de Musique-էն եւ Բարիզի Ecole Normale de Musique-էն: Բարիզէն դարձին հրաւիրուեցաւ իբր երաժշտութեան ուսուցչուհի Համալսարանին մէջ: Մեծ արժանաւորութեամբ իր պաշտօնը շարունակեց եւ պիտի շարունակէր անտարակոյս, եթէ պարագաները չստիպէին իր ծնողքը Գահիրէ հաստատուելու:

Օր. Տամատեան իր տաղանդին կը միացնէ առաւելութիւն մը, որ զինքը կը դասէ առաջնակարգ ուսուցչուհիներու կարգին, այն է թէ՝ Բարիզի մէջ սորված է նաեւ մանկավարժութիւնը երաժշտութեան, որ զինքը արժանաւոր ուսուցչուհին կը դարձնէ նաեւ փոքրիկներուն: Փոքրիկներու համար մէթոտը անհրաժեշտ է, անոր շնորհիւ մանուկը աշխատութեան դժուարութիւնները դիւրացած կը գտնէ եւ շուտով մեծ յառաջդիմութիւն ձեռք կը բերէ: Իսկ իր դասաւանդութեան մէջ այնքան քաղցր է, այնքան համբերող, ճշմարիտ մանկավարժի մը պէս:

Մտնենք հիմա մեր միւս նիւթին մէջ, այն է տարածուած սխալի մը մասին մեր կարծիքը յայտնել: Առիթը ունեցած եմ լսելու շատ մը ընտանիքներ, որոնք սա սխալ գաղափարը ունին թէ՝ քանի որ *ռատիօ* կայ, այնքան անհրաժեշտ չէ գործիական երաժշտութիւն սորվիլը: Պատասխանս. եթէ երաժիշտները գոյութիւն չունենային, ինչպէ՞ս պիտի կրնային ապրիլ *ռատիօ*ները: Եթէ երաժշտասէր հասարակութիւն մը գոյութիւն չունենայ, ո՞վ պիտի գնահատէ արժէքաւոր կտորները: Ո եւ է գեղարուեստ անհրաժեշտութիւն մըն է դաստիարակուած անհատի մը համար: Անոր շնորհիւ է որ պիտի կրնանք ունենալ ազնուական ապրումներ, պիտի կրնանք նաեւ ապրեցնել գեղարուեստը եւ բարձրացնել զայն: Ուրեմն ուսման բոլոր ճիւղերուն հետ պէտք է մշակուի նաեւ երաժշտութիւնը. եթէ չկարենանք տաղանդ մը ըլլալ, գոնէ ըլլանք գնահատող մը, այս արդէն պիտի բաւէ կարեւոր նպաստ մը բերելու երաժշտութեան բարձրացման:

*Արեւ*, 18 Մարտ 1938, ԻԲ. տարի, թիւ 5841, էջ 2-3

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՍԱՒԱՌՆԱԿ
[ԵՐՈՒԱՆԴ ՄՍՐԼԵԱՆ]

Անցեալ Ուրբաթ երեկոյ, 11 Մարտ, Ամերիկեան Համալսարանի շքեղ եւ շողարձակ սրահը միսթիք տաճարի մը երեւոյթը ստացած էր, ուր եկած էր քաղաքիս ընտրանին, ըմբոշխնելու համար Օր. Նուարդ Տամատեանի դաշնակի ռէսիթալը, որ իր ճոխ յայտագրով սահմանուած էր հոգեկան ճշմարիտ վայելք մը ըլլալու:

Սրահին խորհրդաւոր լռութեան մէջ Օր. Տամատեանի հրաշագործ մատնե-րուն հմայքին տակ հոյակապ «ա քէօ»ի ստեղնաշարէն հետզհետէ դուրս եկան Մօցարթէն, Շումանէն եւ Շօբէնէն ընտիր կտորներ, որոնք երանաւէտ պահեր ապրեցուցին ներկաները։

Րէսիթալին երկրորդ մասը մանաւանդ խիստ հաճելի մթնոլորտ մը սփռեց սրահին մէջ, ուր Օր. Տամատեան հետզհետէ հրամցուց ունկնդիրներուն Մ. Տը Ֆալլայի *Լա վի պրէվ*ը, Տէպիւսիի *Ժարտէն սու լա բլիւի*ն եւ *Լա ֆիլ օ շըվօ տը լէն*ը, Բարխուդարեանի *Էսքիզ*ը եւ *Աքուարէլ*ը, Լիցթի *Ռաբսօտի հօնկրուազ*ը, բոլորն ալ մէկզմէկէ ոգեւորիչ եւ հրապուրիչ։

Ներկաները սկիզբէն մինչեւ վերջ խոր լռութեան մէջ ունկնդրեցին րէսիթալին բոլոր կտորները եւ ակամայ բաժնուեցան սրահէն։

Շնորհաւորելի է Օր. Տամատեան իր այս առաջին րէսիթալով ձեռք բերած փայլուն յաջողութեան համար, որով նուագի անմոռանալի երեկոյթ մը հրամցուց Գահիրէի գեղարուեստասէր ընտրանիին։

*Սաւառնակ*, շաբաթաթերթ, Գահիրէ, 19 Մարտ 1938, 20-րդ տարի, թիւ 11, էջ 10

ԱՐՔԱՅԱԿԱՆ ՕՓԵՐԱ, ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 29 ՄԱՅԻՍ 1938

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

## Ա. ՄԱՍ

1. ԵԳԻՊՏԱԿԱՆ ԲԱՅԼԵՐԳ — Նուագախումբ

2. ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

3. ՊԱՏԿԵՐ
   (Աղքատը եւ Աղքատախնամը)
   Աղքատը՝ Պրն. Մ. Միքայէլեան
   Աղքատախնամը՝ Պրն. Վ. Գալբագեան
   Յղացում եւ բեմադրութիւն՝ Բ. Զէքիճեանի

4. Ouverture "Barbier de Seville" - Rossini — Նուագախումբ

5. ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ
   «Հայաստանին» Ե. Չարենց — Պրն. Լ. Յովհաննէսեան

6. «ԲԱՂՐ» (Gounod.ի Mireille operaէն)
   թարգմ. Պրն. Մ. Տամասեանի — Բեմադրութիւն՝ Տիկ. Ճ. Իփէկեանի

**Նուագախումբը 20 հոգիէ բաղկացած է** Նուագախումբը 20 հոգինոց դեկավար

## Բ. ՄԱՍ

7. ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ
   Suite Caucasienne — I. Ivanoff — Նուագախումբ

8. «ՀՈՎՈՒՈՒՀԻ ՄԸ ԿԱՐ ԱՏԵՆՕՔ...»
   Թատերական պատմուածք (մէկ արար) — Իշխանուհի՝ Օր. Ս. Երզնկացեան
   Ա. Բիվուար — Հովուուհի՝ Տիկ. Ա. Պօյաճեան
   Հովիւ՝ Պրն. Ն. Աբրահամեան

9. ԾԱՂՐԱՆԿԱՐ
   (Հայկական պատկեր) — Բեմադրութիւն՝ Տիկ. Ժ. Ա. Պօլեաքինի

10. ԴԱՇՆԱԿ Concerto en do mineur de Beethoven
   (avec cadence de G. Fauré) — Սօլօ՝ Օր. Ն. Տամատեան
   Երկրորդ դաշնակ՝ Տիկ Ճ. Իփէկեան

11. ԿԱԶԲԵԿ (Կովկասեան երգախառն պատկեր) — Օր. Ս. Չիլեան
   Պրն. Հ. Տէր-Յարութիւնեան
   Բեմադրութիւն Տիկ Ժ. Ա. Պօլեաքինի

Խմբավար՝ Պր. Ն. ՊՕԼԵԱՔԻՆԻ

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԵՐԵԿՈՅԹ ՄԸ ԱՐՔԱՅԱԿԱՆ ՕԲԵՐԱՅԻ ՄԷՋ

(հատուած)

ՀՐԱՀԱՏ

Յաջորդող պահը եղաւ գեղագիտական-երաժշտական բարձրագոյն հրճուանքի պահ մը, երբ նուագուեցաւ, երկու դաշնակներու վրայ, Պէթօվէնի Քօնչէրթօ ան տօ մինէօրը (Ֆօրէի *քատանս*ով)։ Կը նուագէին տաղանդաւոր դաշնակահար Օր. Ն. Տամատեան եւ իր քոյրը՝ Տիկ. Շաքէ Իփէքեան, Պէթօվէնեան երաժշտութեան ամբողջ քնքշութիւնն ու զօրեղութիւնը արտայայտելով հարազատօրէն։ Օր. Տամատեան կը նուագէր հիանալի *էզան*ով եւ տիրականութեամբ։ Տիկ. Իփէքեան չէր նսեմանար իր տաղանդաւոր քրոջ քով, ինչ որ մեծ արժանիք է։

*Արեւ*, 1 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5903, էջ 3-4



* 7.30 Samedi 10 Déc. 1938

PIANO RECITAL
by
NEVARTE DAMADIAN

Naz-Bar (esquisse-aquarelle) (*Barkhoutarian*), Nocturne in E Flat Major (*Fauré*), Clair de lune (*Debussy*), Sonatine (*Ravel*).

* 8.00

Ֆրանսերէն լրագիրի մը յայտարարութիւնը

ՌԱՄԿԱՎԱՐ ԱԶԱՏԱԿԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ

# "ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ"

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

ԳԱՀԻՐԷԻ, ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ ԵՒ ԵՐԻՏ. "ՄԱՍԻՍ" ԱԿՈՒՄԲՆԵՐՈՒՆ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

## ԸՆԿԵՐ ՄԻՀՐԱՆ ՏԱՄԱՏԵԱՆԻ

---

ԽՕՍՔ ՊԻՏԻ ԱՌՆԵՆ

ԸՆԿԵՐՆԵՐ՝ Մ. ՏԱՄԱՏԵԱՆ, Վ. ԹԷՔԷԵԱՆ, Է. ԲԱԲԱՋԵԱՆ
ԵՒ ՄԵԹՐ Տ. ՍԵՒՅՈՆՔԵԱՆ

ՆԻՒԹ ՈՒՆԵՆԱԼՈՎ՝

1. — Մեր դիրքը օրուան պահանջներուն հանդէպ:

2. — Ժողովուրդին հետ՝ Ազգին եւ Հայրենիքին համար:

3. — Ինչու կուսակցական ենք:

---

ԿԸ ԼՍՈՒԻՆ ՀԱՅ ԵՐԳԸ ԵՒ ՀԱՅ ՄԻՏՔԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ԸՆՏԻՐ ՅԱՅՏԱԳՐՈՎ ՄԸ

ԿԻՐԱԿԻ
**18**
ԴԵԿՏ.
1938

ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 5.30ԻՆ

ԼԻՍԷ ՖՐԱՆՍԷԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԳԱՀԻՐԷ

# Ա. ՄԱՍ

1. **Քայլերգներ՝**

   *ա)* Եգիպտականն

   *բ)* Ռամկ. Ազատ. Կուսակցութեան

2. **Բացման խօսք** ԸՆԿ. ՄԻՀՐԱՆ ՏԱՄԱՏԵԱՆ

3. **Խմբերգ**

   *ա)* Տէր Կեցո

   *բ)* Տաւուրիկ

   Հայ Գեղ. Միութեան Երգչախումբ

   ՂԵԿ. Պ. Լ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆԻ

4. **Արտասանութիւն**

   *ա)* Վաղը

   *բ)* Ներկայ Հայաստանին

   Վահան Թէքէեանի Պ. Ս. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

5. **Մեներգ**

   «Անոր» — Համբ. Պէրպէրեանի

   ՕՐ. ՍՐՄԻՆԷ ՁԱՔԱՐԵԱՆ

6. **Խօսք** ԸՆԿ. ԷՕԺԷՆ ԲԱԲԱՋԵԱՆ

7. **Զուգերգ**

   «Ոսկի Երազ» — Համբ. Պէրպէրեանի

   ՕՐ. ԱՐՄԻՆԷ ՁԱՔԱՐԵԱՆ

   ԸՆԿ. ԵՐՈՒԱՆԴ ՍԻՄՈՆՈՖ

# Բ. ՄԱՍ

1. **Խմբերգ**

   *ա)* Ո՛վ Մեծասքանչ

   *բ)* «Էն սարի»

   Հայ Գեղ. Միութեան Երգչախումբը

   ՂԵԿ. Պ. Լ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆԻ

2. **Արտասանութիւն**

   Մեր լեռները — Սիլվա Կապուտիկեանի

   ՕՐ. ՇԱՔԷ ԹԷՔԷԵԱՆ

3. **Դաշնակ**

   *ա)* Նազ-պար

   *բ)* Էսքիզ

   *գ)* Ախուարէլ — Ա. Բաբախուդարեանի

   ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ

4. **Խօսք** ԸՆԿ. ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

5. **Մեներգ**

   «Հայաստան»

   Պ. ԱՐՄԱՆ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

6. **Զուգերգ**

   «Երբոր բացուին»

   ՊՊ. ԼՈՒԹՖԻԿ ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ

   ԵՒ ԷՏՄՕՆ ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ

7. **Խօսք** ԸՆԿ. ԾԱԽԱՐԾ ՍԵՒՅՕՆՔԵԱՆ

8. **Խորհրդապատկեր՝**

   «Ռամկ. Ազատ. Կուսակցութեան Գաղափարականը»

9. **Եգիպտական Պարեր**

# ՌԱՄԿԱՎԱՐ ԱԶԱՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ

**ՆՇԱՆԱԲԱՆ.—**

Ժողովուրդին հետ՝ Ազգին եւ Հայրենիքին համար:

**ՆՊԱՏԱԿ.—**

Հայ ազգին ֆիզիքական, տոհմային, մշակութային, տնտեսական եւ քաղաքական գոյութեան պահպանումը եւ զարգացումը:

Ժողովրդային կամքին գերիշխանութիւնը եւ ռամկավար ազատական սկզբունքներուն կիրարկումը հայ հանրային կեանքին մէջ:

**ՈՒՂԻՆ՝ ԴԷՊԻ ԱՅԴ ՆՊԱՏԱԿԸ.—**

Հայաստանի զարգացումն ու բարգաւաճումը:

Արտասահմանի հայ զանգուածներուն ազգապահպանումը եւ կեդրոնացումը հայ հողի վրայ:

Հայոց Թուրքիոյ մէջ ունեցած իրաւունքներուն եւ շահերուն հետապնդումը:

Հայաստանի եւ գաղութահայութեան միջեւ յարաբերութեանց ամրապնդումը:

Գաղութներու ֆիզիքական եւ տնտեսական զարգացումն ու անոնց մէջ հայ մշակոյթի պահպանումն ու զօրացումը:

Մշակումը բարւոք յարաբերութեանց այն երկիրներու ժողովուրդներուն հետ ուր Հայերը կ'ապրին, զանոնք հաւատարիմ պահելով իրենց բնակած երկիրներուն:

# «ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»-Ը ՏՕՆՈՒԵՑԱՒ ԽԱՆԴԱՎԱՌ ՄԹՆՈԼՈՐՏԻ ՄԷՋ

(հատուած)

ՀՐԱՀԱՏ

Յաջորդեց տաղանդաւոր դաշնակահարուհի Օր. Ն. Տամատեան, որ նուագեց Ս. Բարխուդարեանի *Նազ-պար*, *Էսքիս* եւ *Աքուարէլ* կտորները, երաժշտական խոր հրճուանքի մէջ թաթաւելով հանդիսականները։

*Արեւ*, 21 Դեկտեմբեր 1938, ԻԲ. տարի, թիւ 6075, էջ 2

# SALLE PAPASIAN

**6, RUE FOUAD 1er - ALEXANDRIE**

Jeudi 23 Février 1939, à 9 h. 15 p.m.

## RÉCITAL DE VIOLON

donné par



# PHILIPPE AGHAZARIAN

**avec le concours de**

Mlle NEVARTE DAMADIAN

PIANISTE

ENTRÉE : Prix unique P.T. 30 (Taxe en sus)

**Location à la maison Papasian & Co., 6, Rue Fouad 1er.**

Imp. V. & M. MOTTA - Le Caire

# PROGRAMME

| | | |
|---|---|---|
| I. | a) La Folia . . . . . . . . . | CORELLI |
| | b) Rondo . . . . . . . . . . | MOZART |
| II. | a) Chaconne . . . . . . . . | VITALI |
| | b) Prélude & Presto (violon seul) | MAZAS-AGHAZARIAN |
| III. | a) Mélodie arménienne . . . | PH. AGHAZARIAN |
| | b) Rondalla aragonesa . . . | GRANADOS |
| | c) Légende . . . . . . . . . | WIENIAWSKI |
| | d) Hopak . . . . . . . . . . | MOUSSORGSKI |

**INTERVALLE**

| | | |
|---|---|---|
| IV. | a) Tempo di Minuetto . . . | PUGNANI-KREISLER |
| | b) Les Chérubins . . . . . | COUPERIN-SALMON |
| | d) Nigun . . . . . . . . . . | E. BLOCH |
| | e) Guitare . . . . . . . . . | MOSZKOWSKI |
| V. | a) Berceuse . . . . . . . . . | PH. AGHAZARIAN |
| | b) Jota . . . . . . . . . . . | M. de FALLA |
| | c) Airs bohémiens . . . . . | SARASATE |

Piano de concert "BECHSTEIN" de la Maison Papasian & Co.

## Quelques extraits de la Presse
### française et espagnole

**" Lyrica " ( Henri Collet ) Juin 1929.**

L'un des meilleurs violonistes internationaux, Philippe Aghazarian, a donné, salle Erard, un récital remarqué. Tous les dons semblent départis à cet artiste à la fois brillant et souple, puissant et exquis.

**" Le Ménestrel " ( Georges Baudin ) Mars 1930.**

...Nature passionnée, vibrante, s'il en fut, exerçant sur le public une incontestable influence, Aghazarian joue en souriant, et, pour lui, les pires acrobaties semblent faciles. On se dit, en l'écoutant, que le violon doit être un instrument aisé... Hélas ! ... Au résumé, l'un des violonistes les plus variés et complets de l'heure.

**" Le Monde Musical " ( A. P. ) le 31 Mars 1930.**

... Nous pouvons dire, à présent, que Philippe Aghazarian peut être classé parmi les meilleurs violonistes de sa génération. Sonorité chaude, caressante, douce et vibrante, sensibilité communicative, technique mieux qu'excellente, car on en constate seulement les effets sans sentir les efforts. Variété d'expression et sens musical des plus développés.

**" Le Foyer " ( Marguerite Babaïan) 1er Avril 1930.**

...La composition de son programme dénote déjà le musicien raffiné qu'il est, et qui domine l'excellent virtuose. Aucun cabotinage dans son jeu qui est réfléchi, équilibré, plein de grâce et de nuances, vigoureux dans la douceur et dans le finesse, et animé d'un intense sentiment poétique.

**" Le Ménestrel " ( Claude Delvert ) 20 Février 1931.**

Le récital donné par le violoniste Philippe Aghazarian fut de tout premier ordre. Nous sommes, évidemment, en présence d'un maître absolu de l'instrument : sensibilité exquise, son prenant, archet facile, mécanisme net et précis, et le musicien est à la hauteur de l'instrumentiste. Le goût qui préside è l'élaboration du programme en est la preuve.

## ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ, ԳԱՀԻՐԷ

## ՈՒՐԲԱԹ, 21 ԱՊՐԻԼ 1939

## ՄՈՑԱՐԴԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ՀԱՅ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

2, Շարէ Տուպրէ

# ՄՈՑԱՐԴԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

## ԲԱՑԱՌԻԿ ՇՔԵՂՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՃԱՆԴԻՍՈՒԹԵԱՄԲ

ՏԵՂԻ Կ՚ՈՒՆԵՆԱՅ

Ուրբաթ, 21 Ապրիլ 1939, Երեկոյեան ժամը 9.15-ին

ՄԻՈՒԹԵԱՆՍ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՍԻՐԱՅՕԺԱՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

ԳԱՂՈՒԹԻՍ ՍԻՐՈՒԱԾ

ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻՆԵՐՈՒ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ

# ՅԱՅՏԱԳԻՐ

1. AVÉ VERUM Քառաձայն խմբերգ
   Ղեկավար Պ. Լ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ

2. MOZART Կեանքն ու Գործը
   Համառօտ խօսք՝ Պ. Է. ԲԱՐԱՋԵԱՆ

3. LA FLUTE ENCHANTÉE Եռաձայն
   ՊՊ. Է. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ
   Լ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ
   Ա. ՀԱՎԼՈՒՃԵԱՆ

4. LA VIOLETTE Մեներգ
   Տիկ. Ա. ԲԱՐԱՋԵԱՆ

## ՄԻՋՆԱԴԱԴԱՐ

5. BERCEUSE Խմբերգ
   Կը Մեներգէ Տիկ. Ա. ԲԱՐԱՋԵԱՆ
   Ղեկավար Պ. Լ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ

6. CONCERTO Ռէ մինէօր Քառաձայն
   Allegro. Romance Finale
   ա. Դաշնակ Օր. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ
   բ. Դաշնակ Տիկ. Ճ. ԻՓԷՔԵԱՆ

7. ա. DON JUAN
   բ. LA FLUTE ENCHANTÉE — Զուգերգ
   Տիկ. Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ
   Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

8. ա. DON JUAN
   բ. NOCES DE FIGARO — Մեներգ
   Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

9. MENUET Պար
   Օրդ. Ն. ԻՓԷՔԵԱՆ
   Ա. ԲԱՐԱՋԵԱՆ

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՄՈՑԱՐԴԵԱՆ ԵՐԵԿՈՅԹԸ
(հատուած)

ՀՐԱՀԱՏ

Քօնչէրթօն (Ռէ մինէօր) զոր քառաձեռն նուագեցին երկու դաշնակներու վրայ Օր. Նուարդ Տամատեան (ա. դաշնակ) եւ Տիկ. Շ. Իփէքեան (բ. դաշնակ), երեկոյթին *քլու*ներէն մէկը եղաւ, նուագումին խոր ուշադրութեամբ հետեւող ունկնդիրները ողողելով դաշնութեան ալիքներով։

*Արեւ*, 28 Ապրիլ 1939, ԻԳ. տարի, թիւ 6181, էջ 2-3

## EWART MEMORIAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 10 ՅՈՒՆԻՍ 1939

## ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆՔ Ի ՊԱՏԻՒ ՄԵԾԱՆՈՒՆ ԳՐԱԳԷՏ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻ

ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆՔ

Ի ՊԱՏԻՒ

ՄԵԾԱՆՈՒՆ ԳՐԱԳԷՏ

# ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻ

ԻՐ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՅԻՍՆԱՄԵԱԿԻՆ
ԱՌԻԹՈՎ

10 Յունիս 1939, Շաբաթ
Երեկոյեան ժամը ճիշդ 9-ին

---

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՍՐԱՀ
— EWART MEMORIAL HALL —
67, Սուլթան Հիւսէյն Փողոց (Նախկին Շէխ Րիհան)
ԳԱՀԻՐԷ

## — Ա. ՄԱՍ —

1.— Եգիպտական Քայլերգ

2.— Բացման Խօսք — Պ. Ս. ՍԱՀԱԿԵԱՆ
Կարգադիր Յանձնախումբին կողմէ

3.— Մեներգ Տափաղ կու տայ — Օր. ԱՐՄԻՆԷ ՋԱՔԱՐԵԱՆ
*(Ռ. Մելիքեանի)*

4.— Արտասանութիւն — Պ. ԱԼԲԵՐ ԳԱՐԱՃԵԱՆ
Մայր Հայաստանին *(Ա. Չօպանեանի)*

5.— Բանախօսութիւն — Պ. ԱՐՇԱՄ ՏԱՏՐԵԱՆ

6.— Դաշնակ — Օր. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ

a) Le Rossignol (Alabieff-Liszt)
b) Rondella Aragonesa (Granados)

## — Բ. ՄԱՍ —

7.— Մեներգ — Գ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

ա) Մայր Հայաստանին (*Ա. Զօպանեանի*)

*երաժշտ. Փրօֆ-Գալֆայեանի*

բ) Գիւղին ճամբան (*Ռ. Որբերեանի*)

*երաժշտ. Շահան Պէրպէրեանի*

8.— Արտասանութիւն — Պ. ՎԱՐԴԳԷՍ ԳԱՐՏԱՇԵԱՆ

Գեղօն ի պատիւ Հայ Լեզուի

(*Ա. Զօպանեանի*)

9.— Բանախօսութիւն — Պ. ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

10.— Մեներգ — Օր. ԱՐՄԻՆԷ ՋԱՔԱՐԵԱՆ

Կ'անձրեւէ, տղաս (*Վ. Թէքէեանի*)

*երաժշտ. Համբ. Պէրպէրեանի*

11.— Դաշնակ — Օր. Թ. ՋԱՔԱՐԵԱՆ

Beethoven — Sonata op.27 No.2

Adagio sostenuto

Allegretto

Presto agitato

12.— Փակման խօսք — ՆԱԽԱԳԱՀ ՍՐԲԱԶԱՆ

## ՀՈՎԱՆԱՒՈՐԱՑ ՄԱՐՄԻՆ

Գեր. ՄԱՄԲՐԷ Ս. ԵՊՍ. ՍԻՐՈՒՆԵԱՆ
Արհ. ՅԱԿՈԲ Ս. ԱՐՔԵՊՍ. ՆԷՍԻՄԵԱՆ
Ն.Վ. ՈՍԿԱՆ ՊԷՅ ՄԱՐՏԻԿԵԱՆ
Պ.Պ. ՃԱՆԻԿ ՉԱԳԸՐ
ԿԱՐԱՊԵՏ ՍԷՖԷՐԵԱՆ
ՄԻՀՐԱՆ ՏԱՄԱՏԵԱՆ
ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ
ՏՕՔԹ. Ն. ՊԱՂՏԻԿԵԱՆ

## ԿԱՐԳԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

Պ.Պ. Ա. ՊԱՏՐԻԿ Ատենապետ
Ս. ՍԱՀԱԿԵԱՆ Ատենադպիր
Ա. ՏԱՏՐԵԱՆ
Բ. ԱՐԱՄԵԱՆ
Ա. ԳԱՐՏԱՇԵԱՆ

ՀԱՆԴԷՍԸ ԿԸ ''ԿՍԻ ՃԻՇԴ ԺԱՄԸ 9ԻՆ
ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՃՇԴԱՊԱՀ ԸԼԼԱԼ
ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ԵՐԱԽԱՆԵՐ ՉԲԵՐԵԼ

**ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է**

# ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻ ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ

(հատուած)

ՀՐԱՀԱՏ

Յայտագրին առաջին մասը վերջացաւ Օր. Ն. Տամատեանի դաշնակի նուագածութեամբ. - Ալապիէֆ-Լիսթի *Լը Ռօսինեօլ*ը եւ Կրանատօսի *Ռօնտէլլա արակօնէզա*ն։

Մեղմ, յստակ, զուարթ ու ոստոստուն նօթերը՝ քաջավարժ մատներով խլուած դաշնակէն արուեստագիտուհիին կողմէ, հրճուանք, թեթեւութիւն ու զուարթութիւն բերին ունկնդիր հասարակութեան։

*Արեւ*, 14 Յունիս 1939, ԻԳ. տարի, թիւ 6221, էջ 2-3



Photo : Alban

**NEVARTE DAMADIAN**

**Pianoforte recital at 9 p.m. today (Sunday).**

Dim. 24 Sept. 1939

9.00

PIANOFORTE RECITAL

by

NEVARTE DAMADIAN

Gavotte et Musette (*Bach*), Sonata Op. 27, Nº 2 (*Beethoven*), Rossignol (*Liszt*), Rondalla Aragonesa (*Granados*)

9.30

Ֆրանսերէն լրագիրի մը յայտարարութիւնը

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԲՆԱԿԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

## ԿԻՐԱԿԻ, 4 ՓԵՏՐՈՒԱՐ 1940

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՌՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ



Programme 4/2/40

1. Sona Mouradian : Les Plaintes d'une Poupée — César Franck
2. Astra Messerlian : Menuet : J.S. Bach
   Impromptu Hongrois : Cramer
3. Armine Mouradian : Sur la Prairie Verte — Gretchaninoff
   Sicilienne : Schumann
4. Lucie Chorbadjian : La Styrienne : Burgmuller
5. Astra Messerlian / Nubar Chorbadjian : Quatre Mains — Danse Norvégienne : Grieg
6. Nubar Chorbadjian : Menuet : Handel
   Le Soir (valse) : Beethoven
7. Joan Giddings : Scherzo in B Bemol — Shubert
8. Mme V. Kassardjian : Moment Musical — Shubert
9. Nora Ipekian : Chimères — Schumann

Յայտագիրը՝ Նուարդ Տամատեանի ձեռագիրով

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՄԸ

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Անցեալ կիրակի հաճոյքն ունեցանք ներկայ գտնուելու տաղանդաւոր դաշնակահարուհի Օր. Ն. Տամատեանի աշակերտներուն մէկ նուագահանդէսին (audition), զոր համակրելի Օրիորդը կազմակերպած էր իր բնակարանին մէջ:

Ներկաները, մեծամասնութեամբ ծնողներ, առիթը ունեցան այդ օր տեսնելու եւ վայելելու իրենց զաւակներուն յառաջդիմութիւնը նուագի մարզին մէջ, եւ միեւնոյն ատեն գիտցան գնահատել Օրիորդ Տամատեանի յարատեւութեամբ եւ հաճոյակատարութեամբ տարած աշխատանքը:

Օր. Տամատեան գիտցած է ամէն մէկ աշակերտի ձիրքերը ի յայտ բերել, եւ ինչ որ աւելի յատկորոշ է, անոնց ամէն մէկուն ներշնչած է իր musicalité-ն:

Յայտագիրը, խնամքով պատրաստուած, կը սկսէր César Franck-ի *La Plainte d'une poupée*-ով զոր փոքրիկն Օր. Սօնա Մուրատեան այնքան վարժ կերպով նուագեց: Պզտիկ Օրիորդը ցոյց կու տայ երաժշտական լաւ ըմբռնում: Իրեն կը յաջորդէ Օր. Աստրա Մսրլեան Bach-ի *Menuet*-ով եւ Cramer-ի *Impromptu hongroise*-ով: Այս երկու կտորները Օրիորդը կը նուագէ նուագածուի մը վարժութեամբ: Օր. Արմինէ Մուրատեան Gretchaninoff-էն եւ Schumann-էն երկու գեղեցիկ հատուածներ մեզ կը հրամցնէ գեղեցիկ կերպով: Կարգն է Օր. Լիւսի Չօրպաճեանի, զոր հաճոյքով կը լսենք Burgmüller-ի *La Styrienne* կտորին մէջ: Շատ յաջող:

Դարձեալ Օր. Աստրա Մսրլեան եւ Պ. Նուպար Չօրպաճեան քառաձեռն կտոր մը կը նուագեն Grieg-էն, հասկացողութեամբ եւ ճարտարութեամբ:

Պ. Նուպար Չօրպաճեան խոր հասկացողութեամբ կը նուագէ Beethoven-էն եւ Haendel-էն երկու կտոր: Այս փոքրիկը ունի լաւ խմոր, եւ կարող է ապագային զարմացնել մեզ:

Պզտիկ Անգլուհի մը՝ Օր. Joan Giddings վարժ կերպով Schubert-ի *Scherzo* en Si bémol կտորը կը նուագէ, որուն մէջ կը դնէ բաւական զգայնութիւն:

Տիկ. Վ. Գասարճեան, բաւական լաւ ըմբռնումով կը նուագէ Schubert-ի *Moment musical*-ը:

Եւ վերջապէս Օր. Նօրա Իփէքեան ճշդութեամբ եւ դիւրութեամբ կը նուագէ Schumann-ի *Chimères* կտորը, այսպէսով փակելով յայտագիրը: Ներկաները իրենց բուռն ծափահարութիւններով յայտնեցին իրենց խանդավառութիւնը եւ անվերապահ հիացումը:

Յայտագրէն դուրս, եւ յայտնուած փափաքին ընդառաջ երթալով՝ Օր. Տամատեան մեզ պարգեւեց երկու գեղեցիկ կտորներ, զորս համակրելի Օրիորդը

նուագեց շատ յաջողապէս եւ զգայնութեամբ։
Կը շնորհաւորեմ Օր. Նուարդը իր այս արդիւնաւոր աշխատանքին համար։ Փափաքելի է որ յառաջիկայ տարի առիթը ընծայէ մեզի, զինքը եւ իր աշակերտները լսելու, ընդարձակ սրահի մը մէջ, եւ ոչ միայն ծնողներու ներկայութեան այլ հանդիսականներու հոծ բազմութեան մը առջեւ։

*Արեւ*, 9 Փետրուար 1940, ԻԵ. տարի, թիւ 6421, էջ 2

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 17 ՄԱՐՏ 1940

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԵՒ ԲԱՑԱՌԻԿ
ԵՐԵԿՈՅԹ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՊԷԹՈՎԷՆԻ ԵՒ
ՇՈՒՊԷՐԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ

## ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԵՒ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՒԻՐՈՒԱԾ

# ՊԷԹՈՎԷՆԻ ԵՒ ՇՈՒՊԷՐԻ

## ԳՈՐԾԵՐՈՒՆ

ԿԻՐԱԿԻ 17 ՄԱՐՏ 1940, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9.15ԻՆ

ՄԻՈՒԹԵԱՆՍ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԻՐԵՆՑ ՍԻՐԱՅՕԺԱՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԵՐԵՆ ԳԱՂՈՒԹԻՍ ՍԻՐՈՒԱԾ
ԵՒ ԾԱՆՕԹ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԷՆ

**ՏԻԿՆԱՅՔ ԱԼԻՍ ԲԱԲԱՋԵԱՆ, ՇԱՔԷ ԻՓԷՔԵԱՆ ԵՒ Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ**

**ՕՐԻՈՐԴՔ ԱԼԻՍ ԽԱՆԴԱՄՈՒՐ ԵՒ Ն. ՏԱՄԱՏԵԱՆ**

**ՊԱՐՈՆԱՅՔ Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ, Ա. ՔՐԸՏԵԱՆ, ՄԵԹՐ Ե. ՍԻՄՈՆԵԱՆ**

**ԵՒ Լ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ**

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Ա. ՄԱՍ

I. BEETHOVEN

Ակնարկ մը իր կեանքին ու գործին վրայ:

Պ. Է. ԲԱԲԱՋԵԱՆ

2. Դաշնակ — Concerto en Si *b* majeur (op. 19)

1° Piano ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ
2° Piano d'accompagnement ՏԻԿ. Ճ. ԻՓԷՔՃԵԱՆ

3. Զուգերգ — Nuit d'azur ՏԻԿ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ
Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

4. Ջութակ — Menuet Պ. Ա. ՔՐԸՏԵԱՆ

5. Դաշնակ — Sonate Clair de Lune (op. 27 N° 2)
ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ

6. Մեներգ

*a)* Ariette
*b)* Ave Maria Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

7. Եռանուագ — Andante de 1re Symphonie

Ջութակ՝ Պ. Ա. ՔՐԸՏԵԱՆ
Թաւջութակ՝ Պ. Ե. ՍԻՄՈՆԵԱՆ
Դաշնակ՝ ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ

## Բ. ՄԱՍ

I. SCHUBERT

Ակնարկ մը իր կեանքին ու գործին վրայ:

Պ. Է. ԲԱԲԱՋԵԱՆ

2. Symphonie inachevée — Երկու դաշնակ՝ զոյգ քառաձեռն

1° Piano: ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ, ՏԻԿ. Ճ. ԻՓԷՔՃԵԱՆ
2° Piano: ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ, ՏԻԿ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ

3. Մեներգ

*a)* Sérénade
*b)* Impatience

Պ. Լ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ

4. Եռանուագ

Ջութակ՝ Պ. Ա. ՔՐԸՏԵԱՆ
Թաւջութակ՝ Պ. Ե. ՍԻՄՈՆԵԱՆ
Դաշնակ՝ ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ

5. Մեներգ — Ave Maria
ՏԻԿ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ

6. Ջութակ — Moment musical
Պ. Ա. ՔՐԸՏԵԱՆ

7. Մեներգ — La Belle Meunière
ՏԻԿ. Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ
(հատուած)

Յ. Ա.

Օր. Նուարդ Տամատեան, որուն ձեռնհասութիւնը ծանօթ է եւ տաղանդաւոր դաշնակահարուհիի համբաւը հաստատուած, նուագեց Պէթովէնի Սօնաթ *Քլէր տը լիւն*ը (op. 27, No. 2) արժանանալով ջերմ ծափահարութեանց:

Օրուան *քլու*ն էր հարկաւ *Սէնֆօնի ինաշըվէ*ն (Շուպէրի) ութնաձեռն (ա. դաշնակ՝ Օր. Տամատեան եւ Տիկին Իփէքեան, բ. դաշնակ՝ Օր. Խանդամուր եւ Տիկ. Ալիս Բաբազեան) որ ներկաներուն մեծ հրճուանքը կազմեց:

*Արեւ*, 23 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6458, էջ 3

ԵԳԻՊՏԱԿԱՆ ՌԱՏԻՕ

ԵՐԵՔՇԱԲԹԻ, 23 ՅՈՒԼԻՍ 1940

ԵՐԳԻ ԵՒ ԴԱՇՆԱԿԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ՝
ԱԼԻՍ ԲԱԲԱՋԵԱՆ (ՄԵԾԾՕ-ՍՈՓՐԱՆՕ) ԵՒ
ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ (ԴԱՇՆԱԿ)

* 8.25 Mardi 23 juillet 1940
VOCAL AND INSTRUMENTAL CONCERT
Alice Papasian (*mezzo-soprano*)
Nevart Damadian (*piano*)
L'harmonieux forgeron (*Handel*), Vergin tuto amor (*Durante*), Pastorale (*Scarlatti*), Danza, danza ! (*Durante*), Sento nel core (*Scarlatti*), Jardin sous la pluie (*Debussy*), Le temps des Lilas (*Chausson*), Vieille boite à musique (*De Sévérac*), Après un rêve (*Fauré*).

Ֆրանսերէն լրագիրի մը յայտարարութիւնը



Mardi 23 juillet 1940
à 8h25 [illegible] E.S.B.

Programme PAPASIAN & DAMADIAN

CHANT & PIANO

1er partie

| | | | |
|---|---|---|---|
| 1 | L'harmonieux forgeron | Haendel | 6 minutes |
| 2 | Vergin tutto Amor | Durante | 3 " |
| 3 | Pastorale | Scarlatti | 3,5 " |
| 4 | Danza,danza fanciulla | Durante | 2 " |
| 5 | Prélude et fugue en fa min. | Bach | 4,5 " |
| 6 | Sento Nel Core | Scarlatti | 4 " |

2nd.partie

| | | | |
|---|---|---|---|
| 1 | (Jandins sous la pluie<br>(la fille aux cheveux de lin | Debussy<br>" | 4 minutes<br>2,5 " |
| 2 | Le Colibri | Chausson | 2 " |
| 3 | Le temps des Lilas | " | 4 " |
| 4 | (Berceuse (extrait de Dolly)<br>(où l'on entend une vieille boîte à musique | Fauré<br>de Severac | 3,5 "<br>2 minutes |
| 5 | Après un rêve | G. Fauré | 3 " |

Total........ 45 minutes.-

Մեքենագրուած յայտագիրը

ԵԳԻՊՏԱԿԱՆ ՌԱՏԻՕ

**ՇԱԲԱԹ, 26 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1940**

ԵՐԳԻ ԵՒ ԴԱՇՆԱԿԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ՝
ԳՈՀԱՐ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ (ՍՈՓՐԱՆՕ) ԵՒ
ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ (ԴԱՇՆԱԿ)


Samedi 26 Oct. 1940

* 8.20
VOCAL ET INSTRUMENTAL
CONCERT
Kohar Khatchadourian (*Soprano*)
Nevarte Damadian (*piano*)
* 9.00

Ֆրանսերէն լրագիրի մը յայտարարութիւնը, որուն վրայ
Նուարդ Տամատեան մատիտով գրած է իր մենանուագի գործը՝
“*Valses* de Chopin”

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 22 ՄԱՐՏ 1941

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԵՒ ԲԱՑԱՌԻԿ
ԵՐԵԿՈՅԹ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՇՈՒՄԱՆԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԵՒ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՒԻՐՈՒԱԾ

# ՇՈՒՄԱՆԻ

## ԳՈՐԾԵՐՈՒՆ

ՇԱԲԱԹ 22 ՄԱՐՏ 1941, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9.15ԻՆ

ՄԻՈՒԹԵԱՆՍ ~~ՇՔԵՂԱԶԱՐԴ~~ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԻՐԵՆՑ ՍԻՐԱՅՕԺԱՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԵՐԵՆ ~~ԳԱՂՈՒԹԻՍ ՍԻՐՈՒԱԾ~~

~~ԵՒ ԾԱՆՕԹ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԷՆ~~

ՏԻԿՆԱՅՔ ԱԼԻՍ ԲԱԲԱՋԵԱՆ, ՇԱՔԷ ԻՓԷՔԵԱՆ ԵՒ Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ

ՕՐԻՈՐԴՔ ԱԼԻՍ ԽԱՆԴԱՄՈՒՐ ԵՒ Ն. ՏԱՄԱՏԵԱՆ

ՊԱՐՈՆԱՅՔ Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ ԵՒ ՄԵԹՐ Ե. ՍԻՄՈՆԵԱՆ

## Ա. ՄԱՍ

○

1. Երկու խօսք Շումանի եւ իր գործին մասին

Պ. Է. ԲԱԲԱՋԵԱՆ

2. Զուգերգ — *Օ Սալութարիս* ՏԻԿ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ

Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

3. Դաշնակ — *Թիթեռնիկներ* ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ

4. Մեներգ — *ա) Ըսէ՛, թռչնիկս*

*բ) Երբ ցաւս յայտնէի*

ՏԻԿ. Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ

5. Մեներգ — *ա) Ջինուորը*

*բ) Երկու Կրընատիէները*

Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

## Բ. ՄԱՍ

○

1. Պար — *Բ. Վալս* ՕՐ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ

2. Թաւջութակ — *Երազանք* Պ. Ե. ՍԻՄՈՆԵԱՆ

3. Մեներգ — *ա) Ներեցի*

   *բ) Դողդոջ եւ կասկածոտ ի սիրտս*

   ՏԻԿ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ

4. Դաշնակ — *Բարեկենդան* ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ

5. Բանաստեղծին սերը ՏԻԿ. Ռ. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ

## A L'UNION ARTISTIQUE ARMENIENNE

L'Union Artistique Arménienne a repris son cycle de manifestations musicales.

Un public nombreux et enthousiaste y assistait.

La causerie que M. Papasian fit sur Schumann fut d'un intérêt réellement captivant.

Il eut le rare mérite de nous faire connaître et apprécier ce grand compositeur autant que cela était possible en vingt minutes de temps. Le mérite de M. Papasian est d'autant plus grand qu'il parvint à créer d'emblée l'ambiance voulue.

Comme de coutume, Mlles A. Khantamour et N. Damadian, deux pianistes accomplies dont les éloges ne sont plus à faire et dont on a à maintes reprises vanté les qualités musicales, rallièrent tous les suffrages pour avoir respectivement interprété à la perfection le *Carnaval* et les *Papillons*.

Mme Tourchedjian qui possède une voix au timbre doux et agréable, conquit l'auditoire pour sa manière compréhensive et surtout simple de chanter, qui convient si bien aux œuvres de Schumann.

Quant à Mme A. Papasian et M. A. Okosdinossian, ils sont trop connus – leurs émissions radiophoniques en sont pour quelque chose – pour qu'il faille les présenter encore. Ils furent parfaits tant en solo qu'en duo. C'est donc tout dire.

Mlle Papasian, fut une révélation pour le public pour sa façon gracieuse et rythmée à la fois d'improviser un pas sur l'air de valse joué au piano par sa mère.

Enfin M. Y. Simonian, accompagné au piano par Mme C. Ipekian, dont on ne saurait assez vanter ses qualités d'accompagnatrice, interpréta brillamment au violoncelle la *Rêverie* de Schumann et dût bisser sur la demande du public.

Ce fut donc, en tous points, une soirée des plus réussites.

*La Caravane*, 27 mars 1941

# ՇՈՒՄԱՆԻ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ
(հատուած)

Յ. ԹԻՒԹԻՒՆՃԵԱՆ

Տաղանդաւոր դաշնակահարուհի Օր. Ն. Տամատեանի նուագած *Թիթեռնիկները*, ունկնդրուեցաւ հետաքրքրութեամբ եւ զգանչացումով: Միրային այդ քնքուշ վիպակը որպէսզի պահէր իր գեղեցկութիւնը, կը պահանջէր Օր. Ն. Տամատեանի չափ ձայներու թէքնիքին ու խաղերուն մտերմացած ու քաջ ծանօթ դաշնակահարուհի մը: Դաշնակի ստեղներուն վրայէն թիթեռնիկի թեթեւութեամբ սահող ու ոստոստող իր մատները խօսուն ձեւով մը եւ հաւատարմութեամբ կ'արտայայտէին որքան դժուարութիւնը կտորին նոյնքան նուագողին խոր հմտութիւնը: Զգացումով թաթաւուն իր զարկերը այնքան վճիտ ու կտրուկ են, որ երկարաձգուող արձագանգի եւ յետոյ լռողական յիշատակի կրնան փոխուիլ:

*Արեւ*, 28 Մարտ 1941, ԻԵ. տարի, թիւ 6768, էջ 2

ԱՐՔԱՅԱԿԱՆ ՕՓԵՐԱ, ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 4 ՄԱՅԻՍ 1941

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՒ ԹԱՏԵՐԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ
ԵՒ
# ԹԱՏԵՐԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

## ԱՐՔԱՅԱԿԱՆ
## ՕԲԷՐԱՅԻՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ՆՈՐԻՆ ՎՍԵՄՈՒԹԻՒՆ ԳԱՀԻՐԷԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ

**ՄՕԶԱՄԷՏ ՍԱՅԻՏ ՇԱՀԻՆ ՓԱՇԱՅԻ**

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**Ն. Գ. ԱՐՀԻԱՊԱՏԻԻ ՅԱԿՈԲ ՆԷՍԻՄԵԱՆԻ**

●

**ԿԻՐԱԿԻ 4 ՄԱՅԻՍ**

1941

երեկոյեան ժամը ճիշդ 5.30ին

●

Ի ՆՊԱՍՏ

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

## Ա. ՄԱՍ

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

1. *ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ (Դաշնակ)*

   *ա)* Նազպար
   *բ)* Էսքիզ
   *գ)* Արուարեւ — ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ

2. *ԱԼԷՄՇԱՀ՝* «Իմ Երգը» *(Մեներգ)* — ՕՐ. Գ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

3. *Ա. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ՝* Պար *(Ջութակ)*
   *ՍԷՆ ՍԱՆՍ՝* Ռօնտօ Գափրիչիօզօ *(Ջութակ)* — Պ. ԱԼՊԷՐ ԳՐԸՏԵԱՆ

4. *ՄԵՆԵՐԳ* — Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

5. *ԴԱՆԻԷԼ ՎԱՐՈՒԺԱՆ՝ (Արտասանութիւն)*
   «Դէպի Աղբիւրը Լոյսին» — Պ. ԱԼՊԷՐ ԳԱՐԱՃԵԱՆ

6. *ԱԼԷՄՇԱՀ՝* «Իմ Եարը» *(Մեներգ)* — ՏԻԿ. Ա. ԲԱԲԼԱՆԵԱՆ

7. *ՄՕԶԱՐԹ՝* Ռէ Մինեօր Գօնչերթօ *(Զոյգ դաշնակ)*
   ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ
   ՏԻԿ. Ճ. ԻՓԷՔԵԱՆ

8. *ՄԵՆԵՐԳ* — ՏԻԿ. Ա. ԲԱԲԱՋԵԱՆ

9. *ՋՈՒԹԱԿ* — Փոքրիկն Ժ. ՔԱՆԹԱՐՃԵԱՆ

ԹԱՏԵՐԱԿԱՆ
ԲԱԺԻՆ

Բ. ՄԱՍ

Ղ. ՄԵԼՈՅԵԱՆԻ

# ԱՐՄԵՆՈՅՇ

ՏՐԱՄ 4 ԱՐԱՐ

ԽԱՂԱՐԿՈՒԹԵԱՄԲ

ՏԻԿԻՆ Ա. ՕՀԱՆԵԱՆԻ, ՏԻԿԻՆ ԱՍՏՂԻԿԻ
ՕՐ. Մ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ
Պ.Պ. Կ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ, Ա. ՕՀԱՆԵԱՆԻ
Ս. ԵԿԷՆԵԱՆԻ

ԲԵՄԱՎԱՐ

Պ. ՎԱՀԱՆ ՀԱՊԷՇԵԱՆԻ

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԶՈՂԱՏԱՐ ՄԱՐՄԻՆ

Հ. Գ. Վ. ԳԱՐԱՆՖԻԼԵԱՆ
ՄԵԹՐ ԱՂԱՋԱՐՄ ՅԱԿՈԲ
ԲԱԲԱՋԵԱՆ ԷՕԺԷՆ
ՏՕՔԹ. ԽԱԹԱՆԱՍԵԱՆ ԵՐՈՒԱՆԴ
» ԿԻՐԻԻՆԼԵԱՆ ՅԱԿՈԲ
ԿՈԿԱՆԵԱՆ ԼԵՒՈՆ
ՄԱԹՈՍԵԱՆ ԿՐԷԿՈՒԱՐ
ՏՕՔԹ. ՄԻՍԱՔԵԱՆ ՊԵՏՐՈՍ
ՆԱՍԻՊԵԱՆ ՀՐԱՆՏ
ՊՕՂԻԿԵԱՆ ԱՍԱՏՈՒՐ
ՏՕՔԹ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ ՊԵՏՐՈՍ
ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ ՍՏԵՓԱՆ
ՏՕՔԹ. ՕՀԱՆՋԱՆԵԱՆ ՀԱՄՕ

## — ԳԻՆԵՐ —

| | | |
|---|---|---|
| Ավանսէն | Ե.Դ. | 250 |
| Պէնեուար | » | 200 |
| Օրեակ Ա. | » | 150 |
| Օրեակ Բ. | » | 100 |
| Թիկնաթոռ Ա. | » | 30 |
| » Բ. | » | 20 |
| » Գ. | » | 15 |
| Ամփիթատրոն (թուագրեալ) | » | 10 |
| » (անթիւ) | » | 5 |

# ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՀԱՆԴԷՍԸ
(հատուած)

Գ. Ս. Մ.

Օր. Նուարդ Տամատեան դաշնակի վրայ նուագեց Հայաստանի երաժիշտներէն Բարխուդարեանի *Նազպարը*, *Էսքիզը* եւ *Աքուարէլը*, տալով հայ երաժշտին զգացական շեշտն ու ոգին:

*Արեւ*, 10 Մայիս 1941, ԻԵ. տարի, թիւ 6803, էջ 3-4

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 17 ՄԱՅԻՍ 1941

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ
ԵՒ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ
ՆՈՒԻՐՈՒԱԾ ՄԷՆՏԷԼՍՈՆԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԵՒ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՒԻՐՈՒԱԾ

# ՄԷՆՏԷԼՍՈՆԻ

ԳՈՐԾԵՐՈՒՆ

ՇԱԲԱԹ 17 ՄԱՅԻՍ 1941. ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9.15ԻՆ

ՄԻՈՒԹԵԱՆՍ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԻՐԵՆՑ ՍԻՐԱՅՕԺԱՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԵՐԵՆ
ՍԻՐՈՒԱԾ ԵՒ ԾԱՆՕԹ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐ

ՏԻԿՆԱՅՔ ԱԼԻՍ ԲԱԲԱՋԵԱՆ, ԹԱԳՈՒՀԻ ԱՐԱՄԵԱՆ
ԵՒ Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ

ՕՐԻՈՐԴՆԵՐ Ն. ՏԱՄԱՏԵԱՆ, Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ, Ա. ՋԱՔԱՐԵԱՆ
Գ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ ԵՒ ԼԱՈՒՐԷԼԼԱ

ՊԱՐՈՆՆԵՐ Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ, ՄԵԹՐ Ե. ՍԻՄՕՆԵԱՆ
Ա. ԳՐԸՏԵԱՆ ԵՒ "ԿՈՄԻՏԱՍ" ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Ա. ՄԱՍ

○

1. Երկու խօսք Մենտէլսոնի եւ իր գործին մասին
   Պ. Է. ԲԱՐԱՋԵԱՆ

2. Խմբերգ — *ա) Պանդուխտ թռչուններ*
   *բ) Լիւթեններու պարը*
   **"Կոմիտաս" Երգչախումբ**
   ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ Պ. Լ. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆԻ

3. Դաշնակ — *Ռոնdo Կապրիչիոզո*
   ՕՐ. Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ

4. Զուգերգ — Maiblümchen und glöskchen
   ՏԻԿՆԱՅՔ Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ
   Ա. ԲԱՐԱՋԵԱՆ

5. Ծաղկեփունջը — ՏԻԿ. Ա. ԹՈՒՐՇՈՒՃԵԱՆ

6. Պար — *"Գարունը"* — ՕՐ. ԼԱՈՒՐԷԼԼԱ

## Բ. ՄԱՍ

○

1. Trio — *Re min., Ա. մաս*
   Դաշնակ՝ ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ
   Ջութակ՝ Պ. Ա. ԳՐԸՏԵԱՆ
   Թաւջութակ՝ Պ. Ե. ՍԻՄՈՆԵԱՆ

2. *ա) Երազը*
   *բ) Պարխաղ*
   *գ) Ինչպէս անյայտացան* — ՕՐ. Գ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ
   Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

3. Դաշնակ — *Վիպերգներ առանց խօսքի*
   *Op.* 30 No. 6
   *Op.* 53 No. 5 — ՏԻԿ. Թ. ԱՐԱՄԵԱՆ

4. Երգ — *Երգը թեւեր առած* — ՏԻԿ. Ա. ԲԱՐԱՋԵԱՆ

5. Concerto — *Op.* 43, *Ա. մաս*
   Solo ՏԻԿ. Թ. ԱՐԱՄԵԱՆ
   բ. Դաշնակ ՕՐ. Ա. ՋԱՔԱՐԵԱՆ

# ՄԷՆՏԷԼՍՈՆԵԱՆ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ
(հատուած)

Վ. Պ.

Եւ յայտագրին երկրորդ մասը բացուեցաւ եռանուագով մը, Ré min., Ա. մաս, որ գործադրուեցաւ Օր. Ն. Տամատեանի (դաշնակ) եւ Պ. Պ. Ա. Գրըտեանի (ջութակ) եւ Մսթր Եր. Սիմօնեանի (թաւջութակ) կողմէ եւ հանդիսացաւ երեկոյթին ամենէն առինքնող եւ յաջող թիւերէն մէկը:

*Արեւ*, 24 Մայիս 1941, ԻԶ. տարի, թիւ 6815, էջ 3

# Audition Musicale

donnée par quelques élèves de

## Mlle. Nevarte Damadian

### Professeur de Piano

**SALLE DE L'UNION ARTISTIQUE ARMÉNIENNE**

**2, Rue Doubreh, Le Caire**

**DIMANCHE, 15 JUIN 1941 À 10 H. 30 A. M.**

## PROGRAMME

| | | | |
|---|---|---|---|
| 1.— | Mihranig Tourchoujian<br>Sona Mouradian | *à quatre mains* | **Wohlfahrt** |
| 2.— | Sonig Hanessian | *Rondo* | **Clementi** |
| 3.— | Eugène Papasian | *Pour Elise* | **Beethoven** |
| 4.— | Sona Mouradian | *Valse en Si mineur* | **Chopin** |
| 5.— | Lucie Chorbajian | *Mazurka* | **Chopin** |
| 6.— | Arminé Mouradian<br>Noubar Chorbajian | *Marche militaire à quatre mains* | **Schubert** |
| 7.— | Alice Papasian | *Sonate en Sol maj. 1er mouvement* | **Beethoven** |
| 8.— | Arminé Mouradian | *Scherzo en Si bém. majeur* | **Schubert** |
| 9.— | Astra Messerlian | *Bagatelle en Mi bém. majeur* | **Beethoven** |
| 10.— | Noubar Chorbajian | *Tarentelle* | **Heller** |
| 11.— | Mme. V. Kassarjian | *Impromptu op. 90 No. 4* | **Schubert** |
| 12.— | Nora Ipékian | *Concerto en Sol mineur 1er mouv.* | **Mendelssohn** |

*au seconde piano d'accompagnement*
*Mlle. N. DAMADIAN*

**INVITATION**

Imp. Vosguedar - Tél. 50881



Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն, 15 Յունիս 1941
Ունկնդրութեան մասնակցողներու խմբանկար
Առաջին շարք, ձախէն աջ՝ փոքրիկներ Միհրանիկ Թուրշուճեան, Սօնիկ Հանէսեան
Երկրորդ (մէջտեղի) շարք, ձախէն աջ՝ Լիւսի Չօրպաճեան, Սօնա Մուրատեան, Աստրա Մսրլեան, Արմինէ Մուրատեան, Նուպար Չօրպաճեան
Երրորդ (ետեւի) շարք, ձախէն աջ՝ Էօժէն Բաբազեան, Վ. Գասարճեան, Ալիս Բաբազեան, Նորա Իփէքեան, Նուարդ Տամատեան, անյայտ

# ԴԱՇՆԱԿԻ ՌԻՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Անցեալ Կիրակի առաւօտ, Գեղարուեստասիրացի Սրահին մէջ տեղի ունեցաւ Օր. Նուարդ Տամատեանի մէկ քանի աշակերտներուն տուած դաշնակի ունկնդրութիւնը ի ներկայութեան ծնողներու եւ երաժշտասէր հանդիսականներու հոծ բազմութեան մը:

Յայտագիրը սկսաւ քառաձեռն կտորով մը՝ զոր նուագեց փոքրիկն Միհրանիկ Թուրշուճեան 6 տարեկան, միայն 2 ամսուան աշակերտ, որ ցոյց տուաւ իմացականութիւն եւ մեծ ուշադրութիւն. իրեն կ՚ընկերանար Սօնա Մուրատեան ճկուն եւ խելացի կերպով:

Փոքրիկն Սօնիկ Հանէսեան շնորհալիօրէն նուագեց Քլէմէնթիի *Ռօնտօ*ն ուղիղ կշռոյթով եւ յստակ նուագածութեամբ մը:

Էօժէն Բաբազեան փափուկ մատնաչափութեամբ եւ զգացումով նուագեց Պէթովէնի *Բուռ Էլիզ*ը:

Սօնա Մուրատեանի Շօբէնի *Վալս* ան Սի մինէօրը նշանակելի էր իր յստակ հասկացողութեամբ:

Լիւսի Չօրպաճեան Շօբէնի *Մազիւրքա*ին մէջ ի յայտ բերաւ անհատականութիւն եւ տուաւ կտորին պահանջած երանգը:

Արմինէ Մուրատեան եւ Նուպար Չօրպաճեան փայլուն եւ հաւասար յաջողութեամբ նուագեցին Շուպէրի *Մարշ միլիթէր*ը՝ քառաձեռն:

Ալիս Բաբազեան Պէթովէնի Սօնաթ ան Սօլ մաժէօրին մէջ ճշգրիտ կերպով արտայայտեց հեղինակին երաժշտական ոճը:

Արմինէ Մուրատեան Շուպէրի *Սքերձօ* ան Սի պէմօլ մաժէօրին մէջ գիտցաւ դնել կտորին պահանջած չարաճճի եւ սրամիտ արտայայտութիւնը:

Ասթրա Մարլեան Պէթովէնի *Պաւկաթէլ*ը նուագեց կատարեալ հասկացողութեամբ, բոլոր նրբութիւնները զգալով եւ զգացնել տալով ունկնդիրներուն:

Նուպար Չօրպաճեան Հէլլէրի *Թառանթէլ*ին մէջ ի յայտ բերաւ երաժշտական ջիղ, ուժ, յստակութիւն եւ ճշգրիտ կշռոյթ եւ այս դժուար կտորին մէջ ունեցաւ աչքառու յաջողութիւն մը:

Տիկ. Վ. Գասարճեան Շուպէրի *Էմբրօմթիւ*ն նուագեց կտորին տալով պէտք եղած արագութիւնը եւ թեթեւութիւնը:

Օր. Նորա Իփէքեան Մէնտէլսօնի Քօնչերթօ ան Սօլ մինէօրին մէջ ցոյց տուաւ ինքնավստահութիւն եւ փայլուն նուագածութիւն, դիւրութեամբ յաղթելով անոր պէսպիսի դժուարութիւններուն: Իրեն կ՚ընկերանար երկրորդ դաշնակի վրայ իր ուսուցչուհին Օր. Նուարդ Տամատեան:

Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն այս յաջող նուագահանդէսը ի յայտ կը բերէ՝ անոր արդէն իսկ լաւ հաստատուած երաժշտական տաղանդին քով՝ իր ուսուցչական կարողութիւնը եւս։

*Արեւ*, 24 Յունիս 1941, ԻԶ. տարի, թիւ 6841, էջ 2

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՕՏԻՍԻՕՆԸ

ՍԱԻԱՌՆԱԿ
[ԵՐՈՒԱՆԴ ՄՍՐԼԵԱՆ]

Յաւալի թերացումով մը՝ մեր անցեալ շաբթուան թիւով չկրցինք նկարագրականը տալ ծանօթ դաշնակահարուհի Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն կողմէ տրուած դաշնակի «Օտիսիօն»-ին որ այնքան փայլուն յաջողութեամբ տեղի ունեցաւ նախանցեալ Կիրակի օր, 15 Յունիս, առաւօտեան ժամը 10.30-ին, Գեղարուեստասիրացի Սրահին մէջ։

Սոյն դաշնակի նուագահանդէսին ներկայ եղող ծնողքներու եւ երաժշտասէրներու ստուարաթիւ բազմութիւնը, ինչպէս ուրիշ առթիւ, այս անգամ եւս լիովին համոզում գոյացուց ճարտար եւ դիւրըմբռնելի մասնայատկութեանը կիրարկըւած մեթոտին՝ որով Օր. Ն. Տամատեան կը մարզէ իր աշակերտները՝ նուագահարութեան եւ երաժշտութեան ուսումը հիմնականօրէն իւրացնել տալով անոնց։

Այսպէս, ըստ Յայտագրի, քառաձեռն՝ դասական կտոր մը նուագեցին փոքրիկն Միհրանիկ Թուրշուճեան եւ Սօնա Մուրատեան։ Փոքրիկն Սօնիկ Հանէսեան նուագեց Քլէմէնթիի *Ռօնտօ*ն, Էօժէն Բաբազեան՝ Պէթօվէնի *Բուռ Էլիզ*ը, Սօնա Մուրատեան՝ Շօբէնի *Վալս* ան Սի մինէօրը, Լիւսի Չօրպաճեան՝ Շօբէնի *Մազիւրքա*ն, Արմինէ Մուրատեան եւ Նուպար Չօրպաճեան՝ քառաձեռն՝ Շուպէրի *Մարշ միլիթէր*ը, Ալիս Բաբազեան՝ Պէթովէնի Սօնաթ ան Սօլ մաժէօրը, Արմինէ Մուրատեան՝ Շուպէրի *Աքերգօ* ան Սի պէմօլ մաժէօրը, Ասթրա Մսրլեան՝ Պէթովէնի *Պակաթէլ*ը, Նուպար Չօրպաճեան՝ Հէլլէրի *Թարանթէլ*ը, Տիկ. Վ. Գասարճեան՝ Շուպէրի *Էնբրօմթիւ*ն եւ վերջապէս Օր. Նորա Իփէքեան՝ Մէնտէլսօնի Քօնչէրթօ ան Սօլ մինէօրը, ընկերակցութեամբ Օր. Ն. Տամատեանի։

Նուագահանդէսին մասնակցող բոլոր աշակերտներն ալ ունեցան ճկուն եւ յստակ նուագահարութիւն եւ ցոյց տուին գիտակից ըմբռնում եւ հասկացողութիւն իրենց նուագած կտորներուն պահանջման, ի յայտ բերելով իրենց տաղանդաւոր ուսուցչուհիին դասաւանդական կարողութիւնը։

«Օտիսիոնի»-ն աւարտման՝ Տիպար Մանկապարտէզի վարիչ-տնօրէնուհի

Օր. Զապէլ Զաքարեան հակիրճ բառերով գովքը ըրաւ երաժշտութեան՝ իբրեւ գեղարուեստ մը՝ որ կ՚ազնուացնէ մեր զգացումները ու բարքերը, հետեւաբար սիրով ու գուրգուրանքով պէտք է մօտենալ անոր, գնահատեց Օր. Նուարդ Տամատեանի երաժշտական կարողութիւնը եւ իր աշակերտներուն ուսուցման համար ցոյց տուած ջանասիրութիւնը, որով կրցած է կարճ ժամանակի մէջ այնքան փայլուն արդիւնքի մը հասնիլ։

Ժամը 1-ին ներկաները սկսան մեկնիլ Սրահէն՝ գոհ տպաւորութեան տակ, շնորհաւորական եւ շնորհակալական խօսքեր ու ձեռքի սեղմումներ փոխանակելէ յետոյ Օր. Նուարդ Տամատեանի հետ։

*Սաւառնակ*, 28 Յունիս 1941, 23-րդ տարի, թիւ 25


Vendredi 5 Dec. 1941

**NEVARTE DAMADIAN**
**who will play Glazounov's Theme and Variations (opus 72) at 1.05 p.m. on Friday**

* 1.05
THEME AND VARIATIONS, OP. 72
(*Glazounov*)
played by
Nevarte Damadian
Glazounov was one of the romantic composers of pre-war (the last war) Russia, and was writing serious music in his early teens.

Անգլերէն լրագիրի մը յայտարարութիւնը



* 8.00 Lundi 5 janvier 1942

RECITAL ON TWO PIANOS
with
Guigui Waldman-Urwand
and
Nevarte Damadian
Fantasy "The Wanderer"
(*Schubert-Liszt*)

In 1816 when he was nineteen years old, Schubert wrote a song called "The Wanderer." Most of his songs became popular only posthumously, but this one achieved success during his lifetime. In 1822 he took the second theme of the song (beginning at the words "The sun himself shines wan and cold...") and used it as the material for a fantasia for pianoforte. In 1856 Liszt arranged this Fantasia for pianoforte and orchestra. In this programme the Wanderer Fantasia will be heard played on two pianofortes, the orchestral parts of Liszt having been arranged for a second pianoforte.

Անգլերէն լրագիրի մը յայտարարութիւնը

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 19 ԱՊՐԻԼ 1942

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ
ԵՒ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ
ՆՈՒԻՐՈՒԱԾ ՇՈՊԷՆԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ

## ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

2, Տուպրէ փողոց — Գահիրէ

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԵՒ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՒԻՐՈՒԱԾ

# ՇՈԲԷՆԻ

ԳՈՐԾԵՐՈՒՆ

ԿԻՐԱԿԻ, 19 ԱՊՐԻԼ 1942, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9.15ԻՆ

**ՄԻՈՒԹԵԱՆՍ ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

ԻՐԵՆՑ ՍԻՐԱՅՕԺԱՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԵՐԵՆ

ԳԱՂՈՒԹԻՍ ՍԻՐՈՒԱԾ ԵՒ ԾԱՆՕԹ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԷՆ

**ՕՐԻՈՐԴՔ՝ ԱԼԻՍ ԽԱՆԴԱՄՈՒՐ, ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՍԵԱՆ, Զ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ,**

**Ն. ՎԱՐԴ-ՊԱՏՐԻԿ ԵՒ Ն. ԻՓԷՔԵԱՆ**

**ՊԱՐՈՆՆԵՐ՝ Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ, ԺԻՐԱՅՐ ԳԱՆԹԱՐՃԵԱՆ ԵՒ Յ. ԱՍԼԱՆԵԱՆ**

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Ա. ՄԱՍ

1. Երկու խօսք Շոբէնի եւ իր գործին մասին

   Պ. Է. ԲԱԲԱՋԵԱՆ

2. Շոբէնի հոգիին պանծացումը

   ԽՕՍՔ — ՕՐ. Ն. ՎԱՐԴ-ՊԱՏՐԻԿ

   ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ — Պ. Յ. ԱՍԼԱՆԵԱՆ

3. Ջութակ — Nocturne Op. 9 No. 2

   Պ. Ժ. ԳԱՆԹԱՐՃԵԱՆ

4. Դաշնակ — Impromptu Fa dièze maj.

   ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ

5. Երգ — La Tristesse

   Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

## Բ. ՄԱՍ

1. Դաշնակ — Berceuse

   ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ

2. Արտասանութիւն

   «ՄԱՀԱԲԱՑԼԵՐԳ ՇՈԲԷՆԻ» — Վ. ԹԷՔԷԵԱՆԷ

   ՕՐ. Ն. ԻՓԷՔԵԱՆ

3. Դաշնակ — Ballade en Sol min.

   ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ

4. Երգ — Chant Polonais

   ՕՐ. Հ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

5. Դաշնակ — Polonaise en La bémol maj.

   ՕՐ. Ա. ԽԱՆԴԱՄՈՒՐ

Տպ. "ՈՍԿԵՏԱՌ" ԳԱՀԻՐԷ

# ՄԱՀԱՔԱՅԼԵՐԳ ՇՈԲԷՆԻ

«Հրաշալի Յարութիւն»էն

Մարդ մը մեռաւ...: Մարդը որ էր՝ յամրօրէն
Դէպի անդունդ կը գլորի ու կ՚երթայ.
Յուղարկաւորք՝ արեւին լո՛յսը իրեն,
Օդը՝ անշարժ եւ հողն՝ ոչ ե՛ւս ճամբայ...:

Անդունդին մէջ իր զահավէժ գընացքին՝
Ընդհատ-ընդհատ, այս՝ աղմուկն է հեռաւոր.
Ա՛յս՝ երկրի վրայ իր արձագանգն է վերջին.
Իր հուսկ վանկերն են լռութեան հետ կռուող...:

. . . . . . . . . .

Բայց հազիւ թէ վիհին յատակը հասած՝
Ձինք կ՚որոնեն վերը հովերը թրթռուն,
Եւ այն ճամբան ուրկէ անցաւ սըրընթաց՝
Կ՚ոգեկոչէ տըրոփին իր թունդ քայլերուն...

Յիշատակներ դեռ կը ծըփան փոսին վրայ,
Յիշատակնե՛ր շինուած լոյսէ ու ծաղկէ...,
Երբոր յանկարծ Յաւէրժութիւնը կուգայ
Եւ բըրտօրէն փոքր մարդուն կը հարթէ...:

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

## ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆ

| | | |
|---|---|---|
| ԱԹՈՌ Ա. . . . | Ե.Դ. | 15 |
| ԱԹՈՌ Բ. . . . | » | 10 |

## ՇՈՊԷՆ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՄԷՋ
(հատուածներ)

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Եւ առաջին մասը վերջացաւ Օր. Ն. Տամատեանի նրբօրէն մանրամասնած *Էնբրոնբթիւ*էն ետք՝ Պ. Օգոստինոսեանի կողմէ ա՛յնքան ճիշդ եւ երանգաւոր զգացմամբ մը երգուած *Լա Թրիսթէս* շոբէնական երգով:

[...]

Գեղեցիկ նորութիւն մը եղաւ հին քերթուածի մը - Շոբէնի *Մահաքայլերգին վրայ* - նոր արտասանութիւնը Օր. Նորա Իփէքեանէ, ընկերակցութեամբ Օր. Ն. Տամատեանի զատորոշած եւ անոր կողմէ նուագուած նոյն *Մահաքայլերգ*էն մասերու: Բառերը կ'իյնային միայն հոն ուր պէտք էին, խռովելով, իրենց իմաստէն աւելի, իրենց շեշտի ու կշռոյթի ճշդութեամբը: Միակ «թերութի՛ւն» մը արտասանողին տարիքն ու շնորհն էր, որոնք կը մեղմէին մահուան սոսկումը, - բա՛ն մը որուն համար եւս սրահը խանդավառ ընդունելութիւն մը պէտք էր ընել եւ բրաւ Օր. Իփէքեանի:

Օր. Ն. Տամատեան այս անգամ ներկայացուց «պալլատ»-ներու Շոբէնը՝ *պոհի*յով մը, որ յաղթահարուած թեքնիքի մը մէջէն կու տար երգահանին կարօտահար եւ միեւնոյն ատեն յուսալից հոգիին ժայթքումները: Հոս ալ, հասկցող հանրութիւնը - որ եղած էր ամբո՛ղջ ունկնդիր ժողովուրդը, ա՛յնքան հաղորդական էին արուեստները երգահանին եւ իր թարգմանին - դղրդալից ծափերով ընդգծեց կտորին վերջաւորութիւնը:

*Արեւ*, 24 Ապրիլ 1942, ԻԶ. տարի, թիւ 7095, էջ 2

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

Oriental Hall (Université Américaine)

65, Rue Sheikh Rihan - Le Caire

Samedi, le 6 Juin 1942 à 6 h. p.m.

---

Le Programme Sert d'Invitation

*Sira Okosdinossian* . . Tyrolienne . . . . . . . . Lack

*Hilary Hoare* . . . . . Sonatine . . . . . . . . . Clementi

*Sonig Hanessian* . . . Rondo - Vivace . . . . . Kulhau

*Liliane Guiragossian*. . Fancy - dance . . . . . . . Schumann

*Eugène Papasian* . . . Menuet . . . . . . . . . . Mozart

*Sona Mouradian* . . . Nocturne op. 54 No. 4 . . Grieg

*Lucie Chorbajian* . . . Barcarolle . . . . . . . . Mendelssohn

| | | |
|---|---|---|
| *Alice Papasian* . . . . | Passacaille . . . . . . . | Haendel |
| *Arminé Mouradian* . . | Finale de la Sonate en Fa | Mozart |
| *Astra Messerlian* . . . | L'harmonieux forgeron . . | Haendel |
| *Noubar Chorbajian* . . | Sonate en la Ier mouvement | Mozart |
| *Azadouhe Sevhonkian* . | Invitation à la Valse . . . | Weber |
| *Nora Ipékian* . . . . | Sonate " Pathétique " Ier mouvement . | Beethoven |



Ամերիկեան Համալսարանի պարտէզը, 6 Յունիս 1942
Ունկնդրութեան մասնակցողներու խմբանկար
Առաջին շարք (գետինը նստած), ձախէն աջ՝ Միրա Օգոստինոսեան, Սօնիկ Հանէսեան, Սեդա Սարուխան
Երկրորդ շարք (նստած), ձախէն աջ՝ Արմինէ Մուրատեան, Լիլիան Կիրակոսեան, Նուարդ Տամատեան, Ալիս Բաբազեան, Նորա Իփէքեան
Երրորդ շարք (կանգնած), ձախէն աջ՝ Էօժէն Բաբազեան, Աստրա Մարլեան, Hilary Hoare, Լիւսի Չօրպաճեան, Սօնա Մուրատեան, Նուպար Չօրպաճեան

# ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

ՆՈՒԱՐԴ ՎԱՐԴ-ՊԱՏՐԻԿ

Յառաջդիմութիւնը որ ունեցած են Օր. Ն. Տամատեանի աշակերտները անցեալ տարւոյ ունկնդրութենէն ի վեր (որուն ներկայ էի) մեծապէս յուսադրիչ ու գովելի է, ըլլայ իբր գիտակցութիւն իւրաքանչիւր հեղինակի, ըլլայ իբր արուեստի (technique) հասունութիւն։

Առաջին մասը սահմանուած էր փոքրերուն. ան անցաւ շատ հաճելի։ Օր. Սիրա Օգոստինոսեան նուագեց Lack-ի *Tyrolienne*-ը, վստահ ու սիրուն կերպով։ Օր. Hilary Hoare ցոյց տուաւ Clementi-ի Sonatine-ին մէջ մատներու գեղեցիկ հպում մը (un joli toucher)։ Օր. Սօնիկ Հանէսեան հիանալի վստահութեամբ, դիւրութեամբ ու բնածին կշռոյթով նուագեց Kulhau-ի *Rondo-Vivace*-ը։ Օր. Լիլիան Կիրակոսեան Schumann-ի *Fancy-dance*-ին մէջ ունեցաւ յստակ նուագածութիւն մը ու կրցաւ երեւան հանել ձախ ձեռքի մեղեդին (mélodie)։ Պ. Էօժէն Բաբազեան Mozart-ի *Menuet*-ին մէջ դրաւ երանգ (nuance), փափկութիւն ու զգացում ու այդպէս թարգմանը եղաւ հեղինակին ինքնատիպ ոճին։ Օր. Սօնա Մուրատեան յստակօրէն նուագեց Grieg-ի *Nocturne* op. 54 No. 4-ը, ցոյց տալով վարժ ու գիտակից զարնուածք մը։ Օր. Լիւսի Չօրպաճեան յառաջդիմած է. Mendelssohn-ի *Barcarolle*-ին մէջ՝ իր դաստակներու ճկունութիւնը նկատելի էր։

Ունկնդրութեան երկրորդ մասը որ յատկացուած էր աւելի մեծերուն, զարմանալիօրէն յաջող էր։ Օր. Ալիս Բաբազեան, Haendel-ի *Passacaille*-ին մէջ, յայտ բերաւ ուժականութիւն (dynamisme), վստահութիւն (aisance) ու կրցաւ քաղել դաշնամուրէն օռկի (orgue) հնչականութիւն (sonorité)։ Օր. Արմինէ Մուրատեան, սահուն արագութեամբ, յստակօրէն ու գիտակցութեամբ նուագեց Mozart-ի Finale de la Sonate en Fa-ն։ Օր. Աստրա Մարլեան, Haendel-ի *L'harmonieux forgeron*-ին մէջ ցուցուց մեծ ուժականութիւն, ներդաշնակութիւն ու երաժշտական ըմբռնում։ Պ. Նուպար Չօրպաճեան փայլուն կերպով նուագեց Mozart-ի Sonate en La 1er mouvement-ը։ Ան ունի կշռոյթ, հնչականութիւն ու բնածին երաժշտական ըմբռնում։ Օր. Ազատուհի Սեւյօնքեան, Weber-ի *Invitation à la valse*-ի դժուարին կտորին մէջ կրցաւ դնել լրջութիւն, ճշգրտութիւն ու զգացում։ Օր. Նորա Իփէքեան երեւան եկաւ իր լաւագոյն ձեւին տակ։ Ան ունի խորունկ երաժշտական հասկացողութիւն ու հաճելի հնչականութիւն, որոնք կատարելապէս ցուցադրուեցան Beethoven-ի Sonate *Pathétique*-ի 1er mouvement-ի մէջ, զգալ տալով մեզ այն եղերական տխրութենէն մաս մը, զոր հեղինակը դրած է հոն։

Բուռն ծափահարութիւններով գնահատուեցան իւրաքանչիւր աշակերտի աշխատանքն ու կարողութիւնը, ընտրեալ բազմութեան կողմէ որ հաւաքուած էր

Ամերիկեան Համալսարանի Օրիէնթալ Հօլին մէջ, ծափահարութիւննե՛ր որոնք ուղղուած էին նաեւ իրենց տաղանդաւոր ու խղճամիտ ուսուցչուհւոյն Օր. Նուարդ Տամատեանի, առ ի գնահատութիւն իր անխոնջ ու գիտակից աշխատութեան: Եւ իբր գրաւական սիրոյ եւ մեծարանքի, բեմին վրայ բերուեցաւ ծաղիկներու գեղեցիկ կողով մը նուիրուած ազնիւ Օրիորդին իր աշակերտներուն կողմէ: Կը շնորհաւորենք զինքը ու իր աշակերտները իրենց սոյն մեծ յաջողութեան համար:

*Արեւ*, 13 Յունիս 1942, ԻԷ. տարի, թիւ 7138, էջ 3

## ԴԱՇՆԱԿԱՀԱՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻ ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ «ՕՏԻՍԻՕՆ»-Ը

Ա.

Անցեալ Շաբաթ օր, 6 Յունիս, երեկոյեան ժամը 6-ին, ծնողքներու եւ հրաւիրեալներու երկսեռ հոծ բազմութիւն մը ամբողջութեամբ լեցուցած էր Ամերիկեան Համալսարանի ընդարձակ հանդիսասրահը, ուր տեղի ունեցաւ տաղանդաւոր եւ համակրելի դաշնակահար-ուսուցչուհի Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն դաշնակի նուագահանդէսը:

Ինչպէս ուրիշ անգամներ, այս անգամ եւս գեղարուեստասէր ծնողքներ հաճոյքով եւ սրտի գոհունակութեամբ նկատեցին այն զգալի յառաջդիմութիւնը զոր ցոյց տուին իրենց փոքրիկները դաշնակի նուագահարման մէջ, շնորհիւ իրենց ուսուցչուհիին կիրարկած հիմնական մեթոտին եւ տարած ջանքերուն:

Եւ պէտք է ըսել նաեւ թէ՝ աշակերտական այդ դաշնակի «օտիսիօն»-ը իրապէս գեղարուեստական հաճելի վայելք մը եղաւ բոլոր ներկաներուն համար, ունկնդրելով դասական թէ արդիական համբաւաւոր երաժշտագէտներու գործերէն ընտիր ու դժուարին կտորներ, որոնց բոլորն ալ նուագուեցան անթերի ու ճկուն մատնահարութեամբ, տիրապետած նուագին եւ ձայնագրութեանց պահանջին:

Ժամը 8-ին վերջ գտաւ նուագահանդէսը եւ ծնողք ու հրաւիրեալներ հետզհետէ սկսան մեկնիլ սրահէն ձեռքի սեղմումներով ջերմօրէն շնորհաւորելով համակրելի ուսուցչուհին՝ իր ձեռք բերած փայլուն արդիւնքին համար:

*Սաւառնակ*, 13 Յունիս 1942, 24-րդ տարի, թիւ 25, էջ 3

MUSIC FOR ALL, ԳԱՀԻՐԷ

ՈՒՐԲԱԹ, 26 ՅՈՒՆԻՍ 1942

ԵՐԳԻ ԵՒ ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳ



# MUSIC FOR ALL

Music and Leisure Centre for All Ranks

3, SHARIA MAAROUF

---

FRIDAY JUNE 26th 1942 at 9-00 p.m.

---

Song & Piano Recital

ALICE PAPASIAN (Soprano)

NEVARTE DAMADIAN (Piano)

at the Piano Ernest Baker

# PROGRAMME

Piano Solos.

| | |
|---|---|
| Sonata in A. Major | SCARLATTI |
| Moonlight Sonata Op. 27 No. 2. | BEETHOVEN |
| Adagio sostenuto | |
| Allegretto | |
| Presto agitato | |

Songs.

| | |
|---|---|
| Se tu m'ami | GIORDANI |
| Verguie tutto amor | DURANTE |
| On Wings of Song | MENDELSSOHN |

INTERVAL

Piano Solos

| | |
|---|---|
| Le Rossignol | LISZT |
| Valse in E. minor | CHOPIN |
| Ballade in G. major | CHOPIN |

Songs

| | |
|---|---|
| Echo | LORD HENRY SOMERSET |
| Mélisande in the woods | ALMA GOETZ |
| The Widow Bird | E. BAKER |
| I hear a Shepherd's Pibgorn | GWYNNE WILLIAMS |

ՀԱՅ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (ՊԷՅՐՈՒԹ)

ԳԱՀԻՐԷԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

# ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ՀԱՆԴԷՍ-ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ՝ ԳԵՐ. Տ. ՄԱՄԲՐԷ Ս. ԵՊԻՍԿ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

## — ՅԱՅՏԱԳԻՐ —

1. ԲԱՑՄԱՆ ԽՕՍՔ — *ԲԺ. ԳՐԻԳՈՐ ՏԷՐ ԳԷՈՐԳԵԱՆ*
2. ՄԵՆԵՐԳ, «Ուռին» (Կանաչեան)
   «Ծաղիկ էի» (Ալեմշահ) — *ՕՐ. ԳՈՀԱՐԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ*
   Դաշնակի ընկերակցութեամբ՝ ՕՐ. ԱՍՏՂԻԿ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ
3. ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ
   (Պէյրութի Կեդր. Վարչութեան կողմէ) — *Պ. ՆՈՒՊԱՐ ՊԷՐՊԷՐԵԱՆ*
4. ՋՈՒԹԱԿ, «Gluck— Melody»
   «Brahms — Valse» — *Պ. ԱԼՊԵՐ ԳՐԵՏԵԱՆ*
   Դաշնակի ընկերակցութեամբ՝ ՏԻԿ. ՅԱՒԷՐԺ ԱԲՐԱՀԱՄԵԱՆԻ
5. ՄԵՆԵՐԳ, «Վայրի Ծաղիկ»
   «Այս վարդ իրիկուան,..» — *Պ. ԼՈՐԻՍ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ*
   Դաշնաւորում՝ Պ. ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆԻ
6. ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ
   (Գահիրէի Մասնաճիւղին կողմէ) — *ԲԺ. ՇԱՀԱՆ ՍԵՒՅՕՆՔԵԱՆ*
7. ՄԵՆԵՐԳ, «Կռունկ» (Կ. Վարդապետ)
   «Ես սիրեցի» (Ալեմշահ) — *ՕՐ. ԳՈՀԱՐԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ*
   Դաշնակի ընկերակցութեամբ՝ ՕՐ. ԱՍՏՂԻԿ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ
8. ԴԱՇՆԱԿ, «Scarlatti — Sonate»
   «Schumann: Essor de l'âme» — *ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ*
9. ՓԱԿՄԱՆ ԽՕՍՔ — *ՄԵԹՐ. ԳԱՐԵԳԻՆ ՏԻՐԿԷՐԵԱՆ*

ԿԻՐԱԿԻ, 4 ՀՈԿՏ. 1942, Կ. Վ. ԺԱՄԸ 5.15-ԻՆ

**ԼԻՍԷ ՖՐԱՆՍԷԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

Տպ. «Նուպար»



# ԹԱՏՐՈՆ "ՌԻՑ"

ԿԻՐԱԿԻ, 11 ՀՈԿՏ 1942, ԺԱՄԸ 11 ին (կ.ա.)

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

Հովանաւորութեամբ

ԳԵՐ. Տ. ՄԱՄԲՐԷ ԵՊՍԿ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

"ԿՈՄԻՏԱՍ" ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

Պրն. ԼՈՒԹՖԻԿ ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆԻ

ԵՒ

ԲԱՐԵՀԱՃ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

Օրդ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ

ԵՒ

Պրն. ԱՐՄԱՆ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆԻ

Ի Նպաստ

ՍՈՒՐԻՈՅ ԵՒ ԼԻԲԱՆԱՆԻ ԿԱՐՕՏ ՀԱՅԵՐՈՒՆ

# Ա. ՄԱՍ

| | | |
|---|---|---|
| ՕՐՀՆԵՐԳ ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ | *Երգչախումբ* | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| ՍՈՒՐԲ, ՍՈՒՐԲ. | « | Ե Կ Մ Ա Լ Ե Ա Ն |
| ՕՐՀՆԵԱԼ, Է ԱՍՏՈՒԱԾ | | Ե Կ Մ Ա Լ Ե Ա Ն |

*Մեներգ Պրն. Ա. Օգոստինոսեան ընկերակցութեամբ Երգչախումբին*

| | | |
|---|---|---|
| Ո՛Վ ՄԵԾԱԶԿԱՆՔ | *Երգչախումբ* | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |

---

ԵՐԿՈՒ ԽՕՍՔ — *Պրն. Ալեքս. Սարուխան*

---

| | | |
|---|---|---|
| ԵՐԵՒԱՆ ԲԱՂ ԵՄ ԱՌԵԼ | *Երգչախումբ* | Վ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ |
| ՍԱՐԵՐԻ ՎՐՈՎ ԳՆԱՑ | « | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| ԾԱՌԻՍ ՏԱԿԸ ԿԱՆԱՉԷ | « | Գ. ՂԱԶԱՐԵԱՆ |
| ԾԻՐԱՆԻ ԾԱՌ | *Քառեակ եւ Երգչախումբ* | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| Լ Ո Ր Ի Կ | *Մեներգ եւ Երգչախումբ* | Ա. ՄԱՅԻԼԵԱՆ |
| ՎՈՒՇ՛, ՎՈՒՇ՛. | *Երգչախումբ* | Գ. Ս Ի Ւ Ն Ի |

— Դ Ա Դ Ա Ր —

# Բ. ՄԱՍ

| | | |
|---|---|---|
| ԴԱՇՆԱԿ. | *Նաղպար – Խոքիս և Աքուառէլ*<br>Օրդ. Նուարդ Տամատեան | Ս. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ |
| ՃԱԽԱՐԱԿԻ ԵՐԳԸ. | *Մեներգ.*<br>Պրն. Երուանդ Սիմօնօֆ. | Ա. ՏԷՐ ՂԵՒՈՆԴԵԱՆ |
| ԻՄ ԵՐԳԸ | *Մեներգ.*<br>Օրդ. Ա. Այրանեան | Գ. Մ. ԱԼԵՄՇԱՀ |
| ՍԱՐԵՆ ԵԼԱՒ. | *Զուգերգ*<br>Օրդք. Նուարդ Ճէպէճեան<br>Աշխէն Եուսուֆեան. | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| ՎԱՐԴԸ. | *Մեներգ.*<br>Պրն. Ա. Օգոստինոսեան. | Ռ. ՄԵԼԻՔԵԱՆ |
| ԴԻԼՄԱՐ. | *Զուգերգ*<br>Օրդ. Ա. Այրանեան<br>Պրն. Է. Փիլիպպոսեան. | Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ |

ԴԱՇՆԱԿՈՎ Կ'ԸՆԿԵՐԱՆԱՅ ԽՄԲԵՐԳՆԵՐՈՒ ԵՒ ՄԵՆԵՐԳՆԵՐՈՒ

**Օրդ. ՄԱՅՏԱ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ**

## Գ. ՄԱՍ

| | | |
|---|---|---|
| ՍԻՓԱՆԱՅ ՔԱՋԵՐ | *Երգչախումբ* | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| Ա՛Խ ՄԱՐԱԼ ՋԱՆ - ԷՍ ԳԻՇԵՐ<br>*Զուգերգ եւ Երգչախումբ* | | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| ԵԱՐ ՋԱՆ ԱՐԻ | *Երգչախումբ* | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| ԿՈՂԲԱՅ ԵԼԱՆ | *Երգչախումբ* | |
| ՆԻՆԱՄԻ ԶԱՐՄՆԻՔԸ | *Երգչախումբ* | Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆ |
| ՕՐՕՐ ԱԴԻՆՕ - ՍՈՆԱ ԵԱՐ | | ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ |
| ՁԷՅԹՈՒՆՑԻՆԵՐ | | ԻՎԱՆՕՖԻ |

---

Դաշնակը բարեհաճօրէն տրամադրուած է
ԲԱԲԱՋԵԱՆ ՏԱՆ կողմէ.

## ԲԱՐԵՀԱՃՕՐԷՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԻՐԵՆՑ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ ԲԵՐԱԾ ԵՆ ։

ՏԻԿԻՆ Մ. ԳԱԲԻԿԵԱՆ
« Հ. ՍԻՄՈՆՈՖ
ՕՐԴՔ. Ա. ԱՅՐԱՆՃԵԱՆ
« Ն. ՃԷՊԷՃԵԱՆ
« Ծ. ԳԷԼԼԷԵԱՆ
« Ա. ԿԻՐԵՂԵԱՆ
« Ա. ԵՈՒՍՈՒՖԵԱՆ
« Ս. ԾԱՀՊԱՋԵԱՆ
« Վ. ՄԷԼԻՔՕՖ
« Ս. ՏԷՏԷԵԱՆ
« Ա. ԾԱՀՐԻԿԵԱՆ
« Ր. ՊԱՐՈՆԵԱՆ
« Հ. ՊՈՒՏԱԳԵԱՆ
« Ջ. ԳԱԲԻԿԵԱՆ
« Վ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ
« Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ
« Լ. ՆԱԳԱԾԵԱՆ
« Ա. ԴԱՐԲԻՆԵԱՆ

ՏԵԱՐՔ. Խ. ՏԷՏԷԵԱՆ
» Է. ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ
« Ե. ՍԻՄՈՆՈՖ
« Ա. ԳԱՐԱՃԵԱՆ
« Ա. ՀԱՎԼՈՒՃԵԱՆ
« Ջ. ԹԱԾՃԵԱՆ
« Կ. ԾԱՀՐՈՋԵԱՆ
« Ա. ՁՕՐՊԱՃԵԱՆ
« Օ. ՁՕՐՊԱՃԵԱՆ
« Ա. ՏԱՏՈՒՐԵԱՆ



ՅԱՅՏԱԳԻՐՆԵՐԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՆ
**"ԳԱԼՖԱ"** ՏԱՆ ԿՈՂՄԷ.

## «ԿՈՄԻՏԱՍԻ» ԵՐԱԺՇՏԱՀԱՆԴԷՍԸ
(հատուած)

ՀՐԱՀԱՏ

Յայտագրին մեծ հրապոյրներէն մէկն էր ծանօթ արուեստագիտուհի Օր. Նուարդ Տամատեանի դաշնակի նուագումը՝ կատարուած վարպետութեամբ: Հաւատարիմ օրուան յայտագրին ընդհանուր նկարագրին, հայկականութեա՛ն, ան ընտրած էր հայադրոշմ կտորներ - Ս. Բարխուդարեանի *Նազպարը* եւ *Էսքիզ*ն ու *Աքուարէլը*:

*Արեւ*, 17 Հոկտեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7244, էջ 2



# MUSIC FOR ALL

Music and Leisure Centre for All Ranks

**3, SHARIA MAAROUF**

WEDNESDAY, NOVEMBER 11th 1942 at 6-30 p.m.

Piano Recital

## NEVARTE DAMADIAN

———oOo———

# PROGRAMME

| | |
|---|---|
| Scarlatti - | Sonate en La majeur |
| Mozart - | Sonate en La avec variations<br>Andante Grazioso<br>Menuetto Trio<br>Alla Turca |
| Schumann - | Pourquoi ?<br>Essor de l'âme<br>Papillons |
| Chopin - | 2e impromptu en Fa majeur<br>Vales en Re b majeur<br>Valse en Sol b majeur |
| Liszt - | Le rossignol |
| Debussy - | Jardins sous la pluie<br>La fille avec cheveux de lin |
| Albeniz - | Seguidillas |

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ՔՍԱՆԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ՄԻՈՒԹԵԱՆՍ ԱՏԵՆԱՊԵՏ **Պ. Է. ԲԱԲԱՋԵԱՆԻ**

Կիրակի, 31 Յունուար 1943, կէսօրէ վերջ ժամը 5.30ին

***ԻՐ ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ,*** *2 ՏՈՒՊՐԷ ՓՈՂՈՑ*

## ՅԱՅՏԱԳԻՐ

### *Ա. ՄԱՍ*

1.— *Եգիպտական Քայլերգ* — Դաշնակ
*Քամ Քարտամ* (Կանաչեան) — «Կոմիտաս» Երգչախումբ
2.— *Բացման խօսք* — Նախագահ
3.— ա) *Սար Սար*
բ) *Անձրեւ Եկաւ* — Կոմիտաս Վրդ. — «Կոմիտաս» Երգչախումբ
4.— *Արտասանութիւն* — Օր. Ն. Իփէքեան
5.— *Մեներգ* ա) *Մի Դպիր* (Եղ. Ցակոբեան)
բ) *Ալ Սիրունիս* (Արուանձտեանց) — Տիկ. Ա. Բաբազեան
6.— *Խօսք* — Պ. Ալ. Սարուխան
7.— *Դաշնակ* — Սօնաթ, (Սքարլաթի) — Օր. Ն. Տամաթեան

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 30 Յունուար 1943, ԻԷ. տարի, թիւ 7330, էջ 4



Բ. ՄԱՍ

1.— ա) Լուսնակն Անուշ
բ) Շողեր ջան — Կոմիտաս Վրդ. «Կոմիտաս» Երգչախումբ

2.— Ակնարկ մը Գեղարուեստասիրացի կեանքին ու գործին — Բանախօսութիւն Պ. Ս. Թիւրապեան

3.— Մեներգ — Մի Լար (Ռ. Մելիքեան) Օր. Ա. Այրանեան

4.— Արտասանութիւն Պ. Յ. Թիւքիւնեան

5.— Մեներգ — l'Homme et la mer (A. Flégier) Պ. Ա. Օգոստինոսեան
Դաշնակի ընկերակցութեամբ Օր. Մ. Օգոստինոսեանի

6.— Խօսք Մեթր Շաւարշ Սեւյօնեան

7.— ա) Խումար Պաւկեր բ) Ինչու Բլնկեօլ
գ) Հով Լինի — Կոմիտաս Վրդ. «Կոմիտաս» Երգչախումբ

8.— Ներկայացում «Յաւիտենական ներկայութիւնը»
Օր. Փ. Շահրօզեան, Պ. Վ. Թերզիպաշեան

ՄՈՒՏՔԸ ՀՐԱՒԻՐԱՏՈՄՍՈՎ

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՔՍԱՆԱՄԵԱԿԻՆ ՀԱՆԴԷՍԸ
(հատուած)

Թ.

Հանդէսին առաջին մասը կը վերջանար որոտընդոստ ծափերով որոնք ընդունեցին Օր. Ն. Տամատեանի ներկայացումը Սքարլաթիի Սոնաթին, արուեստի իր բնատուր եւ ստացիկ հմայիչ կարողութիւններով նուագուած։

*Արեւ*, 3 Փետրուար 1943, ԻԷ. տարի, թիւ 7333, էջ 2

MAISON DES ARTS

5ème CONCERT D'ABONNEMENT

Samedi 20 Février 1943 à 5h.p.m.

Audition de Musique populaire arménienne
donnée par le
CHOEUR GOMIDAS

Conducteur Ludwig Philippossian

Solistes :

| | | |
|---|---|---|
| Mlles. | ~~Arax Ayrandjian~~ Kohar Katchadourian | Soprano |
| " | Shaké Kélleyan | " |
| " | Nevarte Damadian | Piano |
| " | Queeny Messikian | Danse |
| " | Mayda Okosdinossian | Piano d'accompagnement |
| Mrs. | Edmond Philippossian | Ténor |
| " | Armand Okosdinossian | Baryton |

Ière PARTIE

| | | |
|---|---|---|
| 1) | a) Chant de Battage | K. Suni |
| | b) A.Erivan | P. Gomidas |
| | c) Clair de Lune | " " |
| | Choeur Mixte | |
| 2) | Barcarolle | P. Gomidas |
| | Choeur Mixte | |
| 3) | Sous la Feuillée | Ghazarian |
| | Choeur Mixte | |
| 4) | Les pleurs du Rossignol | Mélodie Populaire |
| | Solo de Tenor.M° E.Philippossian | |
| 5) | a) Pastorale | K. Suni |
| | b) Sur les Monts d'Alakiaz | |
| | Choeur Mixte | |
| 6) | Berceuse | P. Ganatch |
| | Solo Shaké Kélleyan & | |
| | Choeur Mixte | |

## 2ème PARTIE

| | |
|---|---|
| 1) Air de danse | Den Ghévontian |
| Choeur Mixte | |
| 2) Ma Chanom | K.Alemchah |
| Solo Soprano Mlle.A.Ayrandjian | |
| 3) Elégie | K.Suni |
| Choeur Mixte | |
| 4) a) Esquisse | Parhoutarian |
| b) Aquarelle | |
| Solo piano Mlle.N.Damadian | |
| 5) Chant de l'Emigré | P.Gomidas |
| Solo Baryton Mr.A.Okosdinossian | |
| 6) Danse populaire donnée par | |
| Mlle.A.Messikian | |
| 7) Sona la Belle | P.Gomidas |
| Solo & Choeur Mixte | |

## ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԱՐՈՒԵՍՏԻ ՏԱՆ ՄԷՋ

(հատուած)

Ա.

Հանդիսութեան փայլը կ՚աւելցնէր Օր. Ն. Տամատեան՝ դաշնակի վրայ իր նուագած երեք հայկական կտորներով։

*Արեւ*, 27 Փետրուար 1943, ԻԷ. տարի, թիւ 7354, էջ 3

# ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

# ՇԱԲԱԹ, 29 ՄԱՅԻՍ 1943

# ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

**Mlle. Nevarte Damadian**

*Oriental Hall (Université Américaine)*

*12, Rue Sultan Hussein - Le Caire*

*Samedi, le 29 Mai 1943 à 6 h. p.m.*

---

Le Programme Sert d'Invitation

| | | |
|---|---|---|
| *Miranig Tourchoujian* | Sur la prairie verte | Gretchaninoff |
| *Alfred Salvati* | Ecossaise | Hummel |
| *Aïda Tahtajian* | Sonatine | Clementi |
| | Le gai laboureur | Schumann |
| *Patrice Gavasi* | Arabesque | Burgmüller |
| *Sira Okosdinossian* | Les plaintes d'une poupée | C. Franck |
| *Seta Saroukhan* | Danse des sylphes | Grieg |
| *Sonig Hanessian* | Le chant de l'alouette | Tschaikowsky |
| *Manouchag Yanbeguian* | Pour Elise | Beethoven |
| *Liliane Guiragossian* | Menuet | Beethoven |

| | | |
|---|---|---|
| *Eugène Papasian* . . . | Tarantelle . . . . . . . . | Heller |
| *Sona Mouradian* . . . | Papillon . . . . . . . . . | Grieg |
| *Alice Papasian* . . . . | Golliwogg's cake - walk . | Debussy |
| *Arminé Mouradian* . . | Sonate op. 2 No. 1 Ier mouv. | Beethoven |
| *Astra Messerlian* . . | Sonate . . . . . . . . . . | Scarlatti |
| | Valse op. 64 No. 2 en Do dièze mineur | Chopin |
| *Noubar Chorbajian* . . | Sonate op. 31 No. 2 en Ré min. Ier mouv. | Beethoven |
| *Azadouhie Sevhonkian* | Cordoba . . . . . . . . . | Albeniz |
| *Nora Ipékian* . . . . . | Carnaval de Vienne, Allegro . | Schumann |



Ամերիկեան Համալսարանի պարտէզը, 29 Մայիս 1943
Ունկնդրութեան մասնակցողներու խմբանկար

Առաջին շարք (գետինը նստած), ձախէն աջ՝ Alfred Salvati կամ Patrice Gavasi, Սօնիկ Հանէսեան, Patrice Gavasi կամ Alfred Salvati, Միհրանիկ Թուրշուճեան, Միրա Օգոստինոսեան

Մէջտեղի շարք (նստած), ձախէն աջ՝ Լիւսի Չօրպաճեան, Ասթրա Մարլեան, Ալիս Բաբազեան, Նուարդ Տամատեան, Լիլիան Կիրակոսեան, Արմինէ Մուրատեան, Նորա Իփէքեան

Երրորդ շարք (կանգնած), ձախէն աջ՝ Մանուշակ Եանպէկեան, Աիտա Թահթաճեան, Սօնա Մուրատեան, Էօժէն Բաբազեան, Սեդա Սարուխան, Նուպար Չօրպաճեան

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԼՍԱՀԱՆԴԷՍԸ

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Անցեալ շաբաթ, կէս օրէ վերջ, Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահին (Օրիէնթըլ Հոլ) մէջ ներկայ եղանք Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն տարեկան լսահանդէսին (*ռէսիթալ*), լսելով անոնց իւրաքանչիւրին յատկապէս պատրաստած դաշնակի կտորը կամ կտորները։

Աշակերտներու լսահանդէս մը դատելու համար՝ նախ պէտք է անոնց ուսման տարիները, յետոյ անոնց տարիքը նկատի առնել (որոնք յայտնի կ՚ըլլան յայտագրին վրայ իրենց գրուած տեղովը եւ բեմին վրայ իրենց կերպարանքովը). հաշուել ուրեմն՝ թէ ի՞նչքան հասած են իրենցմէ սպասուած «դասային» յաջողութեան եւ ի վերջոյ տեսնել թէ ի՛նչ անձնական յատկութիւն երեւան կը հանէ ամէն մէկ աշակերտ իր աշխատութեան արդիւնքին մէջ։ Ու երբ կ՚ընէք այս ամէնը առ հասարակ ամէնուն մասին, գտած կ՚ըլլաք թէ ի՛նչ է արժանիքը ուսուցչին՝ իր մեթոտին եւ զայն կիրարկելու իր կարողութեան, իր խղճմտութեան եւ՝ վերջի՛ն բայց ոչ յետին՝ երաժշտութեան համար իր ունեցած հարազատ, խոր սիրոյն։

Օր. Տամատեանի բոլոր աշակերտները յայտնեցին, անցեալ շաբաթ, թէ լաւ աշխատած էին իրենց ուսուցչին հետ եւ ոմանք՝ շատ լաւ աշխատած։

Ուրիշներ՝ յայտնեցին թէ իրական ընդունակութիւններ ունին դաշնակի արուեստին համար։

Բայց մէկ քանիներ ասկէ աւելին ըրին, ցոյց տուին թէ օժտուած են բացառիկ արժէքով մը որ արդէն իսկ կը տպաւորէ եւ նոյն իսկ *կը յուզէ* ունկնդիրը՝ ներկայէն զատ ապագայի բարձր ժամանումները տեսնել տալով։

Խօսինք անուններով, մեր ընդհանուր դատաստանը հաստատել աշխատելով պզտիկ մը մասնագիտական փաստերու վրայ՝ զորս խնդրեցինք եւ ստացանք մասնագէտէն, քանի որ չէինք դժբախտաբար անիկա։

Փոքրիկն Միհրանիկ Թուրշուճեան նուագեց իր պզտիկ թռչտուն կտորը (*Կանանչ մարգագետնին վրայ*՝ Կրէչանինօֆի) անկեղծութեամբ եւ լրջութեամբ։

Ալֆրէտ Սալվաթի պատանին, որ միայն երեք ամսուան աշակերտ մըն է եղեր, ի յայտ բերաւ զարմանալի ինքնավստահութիւն մը իր նուագումին մէջ։

Այտա Թահթաճեան պարկեշտօրէն գործադրեց իր սորված, եւ հետեւաբար լա՛ւ սորված երկու պզտիկ կտորները Քլէմանթիէն եւ Շումանէն։

Բաթրիս Կավասի պատանին նուագեց իր *Առապէսք*ը՝ ինքնավստահութեան հետ ուժով մըն ալ, որ գոյն կու տար իր խաղին։

Սիրա Օգոստինոսեան ցոյց տուաւ, Սէզար Ֆրանքի *Պուպրիկի մը տըրտունջք*ին մէջ, բնածին երաժշտականութիւն մը, որ սպասելով ուրիշ յատկու-

թիւններու զարթումին, քաղցրութիւն կու տայ իր աշխատութեան պտուղին։

Սեդա Սարուխանի նուագին գլխաւոր յատկանիշն է կշռոյթի զգայութիւնը, որ նոյնպէս լաւ խորք մըն է գալիք յաւելումներու համար։ Իր Կրիկի *Պայիկներու պարը* կը տրուէր այդ մշակուած զգայութիւնով։

Սոնիկ Հանէսեան նուագեց շնորհով եւ խոր թափանցումով։ *Արտոյտին երգը* (Չայքովսքի) իր մատներուն տակ եղաւ իրապէս ճռուողում մը։

Մանուշակ Եանպէկեան զգայուն զարնուածք մը ունեցաւ Պէթովէնի կտորին մէջ (*Էլիզի համար*)։ Գէշ չէր նաեւ իր պարզ թէքնիքը։ Կը մնայ մշակել ուրիշ անհրաժեշտ պայմաններ։

Լիլիան Կիրակոսեան կը փակէր լսահանդէսին առաջին մասը Պէթովէնի *Մընիւէ*ով, զոր տուաւ իր արտայայտիչ խաղովը, խոհուն եւ ծփուն միանգամայն՝ ինչպէս է գրուածքը։

Երկրորդ մասը կը սկսէր Էօժէն Բաբազեան կրտսերի *լաւ նուագուած* Հէլլէրի *Թարանթէլ*ով։

Սոնա Մուրատեան անոր յաջորդեց Կրիկի *Թիթեռնիկ*ով՝ որուն մէջ դրաւ *թեթեւութիւն եւ յստակութիւն*։

Ալիս Բաբազեան կրտսերի աշխատած Տըպիւսիի «Քէյքուոք»ը (*Չըլտրըն'ս Քորնըր*էն) եղաւ զարմանալիօրէն գրաւիչ՝ որովհետեւ աշակերտը հոն կը դնէր նշանակիչ (*քարաքթէրիսթիք*) խաղ մը՝ կշռոյթի եւ ուժաւորութեան (*տինամիսմ*) գլխաւոր յատկութիւններով։

Արմինէ Մուրատեան հասկացողութեամբ (եւ նուազ շեշտուած ուրիշ կարողութիւններով) տուաւ Պէթովէնի մէկ Սոնաթին սկզբնաւորութիւնը։

Եւ կը հասնինք հիմա չորս վերջիններուն, որոնց առաջինը Աստրա Մսըլեանն է իր Սքարլաթիի Սոնաթով եւ Շոբէնի *Վալս*ով։ Իր նուագման *դիւրասահութիւնը* (*էզանս*), հոն դրած *նրբերանգութիւնը, թեթեւաթռչութիւնը եւ զգայնութիւնը*, խոստումէ մը աւելին են արդէն իր ուսուցչուհիին եւ ուրիշ հասկցողներու համար՝ թէ ան կանգ պիտի չառնէ կէս ճամբան երաժշտութեան լայնասփիւռ միջոցին մէջ։

Նուպար Չորպաճեան խորութիւն ունի, արուեստագիտական հոգի մը ունի եւ ողբերգականի (*թրաժիք*) զգայարանքը։ Իր Պէթովէնի Սոնաթը (Op. 31 No. 2 en Ré min. 1er mouv.) խռովիչ էր պարզապէս՝ վերարտադրուելով, այսքան տիրաբար խորացուած, 16 ամեայ դեռահասակ տղու մը կողմէ։

Օր. Ազատուհի Սեւյօնքեանի *Քորտովա*ն (Ալպէնիսի) լիովին ցայտեցուց նուագողին թափանցման այս տարի աւելի եւս զարգացած կարողութիւնը՝ այդ դժուարին կտորին ամբողջ գործադրութեանը ընթացքին։

Իսկ Օր. Նորա Իփէքեան Շումանի *Քարնավալ տը Վիէն*ի երկար Ալէկռոյին մէջ յայտնեց՝ անգամ մըն ալ՝ երաժշտութիւնը իր երանգներովն հասկնալու եւ երանգաւորումով գործադրելու իր ձիրքը։

Անկեղծօրէն կը շնորհաւորենք Օր. Տամատեանը իր խնամած եւ միշտ գեղեցկօրէն հասցուցած գեղարուեստական հունձքին համար:

*Արեւ*, 5 Յունիս 1943, ԻԸ. տարի, թիւ 7437, էջ 3

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ «ՕՏԻՍԻՕՆ»-Ը

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Շաբաթ երեկոյ, 29 Մայիս, Ամերիկեան Համալսարանի Օրիանթալ Հօլի շքեղ սրահին մէջ տեղի ունեցաւ Բրօֆ. Օր. Ն. Տամատեանի 19 երկսեռ աշակերտներու Դաշնակի «Օտիսիօն»-ը, ի ներկայութեան ծնողքներու եւ հրաւիրեալներու ստուար բազմութեան մը, մօտ 300 հոգի:

Հաճելի ապրում մը եղաւ արդարեւ ունկնդրութիւնը բոլոր երաժշտական կտորներուն, որոնք ըստ Յայտագրի մի առ մի դաշնակի վրայ նուագուեցան աշակերտներուն կողմէ, ճկուն, վարժ եւ գիտակից մատնահարութեամբ: Մասնաւորաբար ի յայտ կու գար խոր եւ ճշգրիտ ըմբռնումը բոլոր աշակերտներուն կողմէ իրենց նուագած դասական թէ արդիական կտորներուն, ինչ որ արդիւնքն էր Օր. Տամատեանի կիրարկած ուսուցումի հիմնական մեթոտին:

Ինչպէս ըսինք, բոլոր աշակերտներն ալ փայլուն յաջողութեամբ նուագեցին իրենց վստահուած կտորները: Անոնցմէ յիշենք մասնաւորապէս Օր. Իփէքեան, Պ. Չօրպաճեան, Օր. Աստրա Մսրլեան, Օրք. Մուրատեան քոյրերը եւ Փոքրիկն Հանէսեան, որոնք իրենց քաջավարժ նուագահարութեամբ զմայլանքի մատնեցին ունկնդիրները, ի մեծ ուրախութիւն իրենց ծնողաց:

«Օտիսօն»-ին աւարտումին բոլոր ներկաները ձեռքի ջերմ սեղմումներով շնորհաւորեցին յարգելի Բրօֆէսէօրը իր ձեռք բերած այս արդիւնաւոր յաջողութեանը համար, արդարացնելով իր ստանձնած գործին անվրէպ արդիւնաւորումը:

*Սաւառնակ*, 5 Յունիս 1943, 25-րդ տարի, թիւ 26, էջ 8

## ԼԻՍԷ ՖՐԱՆՍԷԻ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ԿԻՐԱԿԻ, 17 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1943

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

**ՀԱՅ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ**
**(ՊԷՅՐՈՒԹ)**
**ԳԱՀԻՐԷԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ**

# ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐ. Տ. ՄԱՄԲՐԷ ԵՊԻՍԿ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ**

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏՐԵՆՑ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ**

ԿԻՐԱԿԻ, 17 ՀՈԿՏ. 1943, Կ. Վ. ԺԱՄԸ 5-ԻՆ

## ԼԻՍԷ ՖՐԱՆՍԷԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՀՐԱՒԻՐԱՏՈՄՍ 2 ԱՆՁԻ ՀԱՄԱՐ

**Ծանօթ.**— Դուռները պիտի փակուին ժամը 5-ին եւ միայն մերթ ընդ մերթ պիտի բացուին:

# ՅԱՅՏԱԳԻՐ

| | | | |
|---|---|---|---|
| Բացման խօսք | | | Բժ. Գրիգոր Տէր Գէորգեան |
| Խմբերգ | 1.— Եար ջան արի | (*Կոմիտաս Վարդապետ*) | Կոմիտաս Երգչախումբ |
| | 2.— Լորիկ | (*Ա. Մայիլեան*) | Ղեկավար՝ Պ. Լ. Փիլիպպոսեան |
| Արտասանութիւն | Պատիժը | (*Աղեքսանդր Գրիբոյեդով*) | Պ. Վարդգէս Թէրզիպաշեան |
| Մեներգ | 1.— Աղուորներուն համար | (*Ալէմշահ*) | |
| | 2.— Օրօր | (*Եղուարդ Յակոբեան*) | Օր. Գոհար Խաչատուրեան |
| Ջութակ | 1.— Dance No. 2 | (**Brahms**) | |
| | 2.— Perpetuum mobile | (**Novaček**) | Պ. Ալպէռ Գրեցեան |
| Բանախօսութիւն | (Վարչութեան կողմէ) | | Բժ. Շահան Սեւյօնեան |

## ԳԱԴԱՐ

| | | | |
|---|---|---|---|
| Խմբերգ | 1.— Ծառիս տակը կանաչ է | (*Գ. Զարպուքեան*) | |
| | 2.— Ալագեազ | (*Գ. Սիւնի*) | Կոմիտաս Երգչախումբ |
| Արտասանութիւն | Հայու Հոգին | (*Վահան Թէքէեան*) | Օր. Նորա Իփէքեան |
| Դաշնակ | 1.— Etude en Fa Majeur | (**Chopin**) | |
| | 2.— 3 Ecossaises | ” | Օր. Նուարդ Տամասեան |
| Մեներգ | 1.— Քէլէ Քէլէ | (*Կոմիտաս Վարդ.*) | |
| | 2.— Serenade de Don Juan | (**P. Tchaïkovsky**) | Պ. Ա. Օգոստինոսեան |
| | Դաշնակի ընկերակցութիւն՝ | | Տիկ. Շամէ Իփէքեան |
| Զուգերգ | Օր. Գոհար Խաչատուրեան եւ Պ. Արման Օգոստինոսեան | | |
| Փակման խօսք | Նախագահ՝ | | Պ. Երուանդ Տրենց Մարգարեան |

# ՀԱՅ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆԸ

(հատուած)

ՍԻՓԱՆ

Շոբէնի այն երկու զմայլելի կտորները զոր դաշնակի վրայ Օր. Նուարդ Տամատեան նուագեց այնքան ճարտարութեամբ, խոր տպաւորութիւն ձգեցին մեր վրայ։

*Արեւ*, 23 Հոկտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7554, էջ 3

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 20 ՄԱՅԻՍ 1944

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՌԻՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

*Oriental Hall (Université Américaine)*

*12, Rue Sultan Hussein - Le Caire*

*Samedi, le 20 Mai 1944 à 6 h. p.m.*

---

*Le Programme tient lieu d'Invitation*

| | | |
|---|---|---|
| *Nevarte Chaldjian* . . | Bernoise . . . . . . . . . | Kozeluch |
| *Sarkis Sarkissian* . . | Sicilienne . . . . . . . . | Schumann |
| *Miranig Tourchoujian* . | Chanson du moissonneur | Schumann |
| *Berge Gulanian* . . . | Sonatine en sol (1er. mouv.) | Beethoven |
| *Sira Okosdinossian* . | Le tambourin . . . . . | Rameau |
| *André Athanassiadès* . | Menuet - Bourrée - Gigne | Bach |
| *Aïda Tahtajian* . . . | Sonatine en fa (1er. mouv.) | Beethoven |
| *Seta Saroukhan* . . . | Sonatine en fa (2me. mouv.) | Beethoven |
| *Sonig Hanessian* . . . | Sonate en do (1er. mouv.) | Mozart |
| *Alfred Salvati* . . . . | Croque - mitaine . . . . | Schumann |
| *Ivy Mavroyianni* . . . | Dernière pensée . . . . | Weber |
| *Sirvarte Boghossian* . | Oisillon . . . . . . . . . | Grieg |
| *Manouchag Yanbeguian*<br>*Kévork Yanbeguian* . . | 4 mains - Marche Militaire . . | Schubert |

| | | |
|---|---|---|
| *Iris Nakachian* | Le coucou | Daquin |
| *Liliane Guiragossian* | Moment musical | Schubert |
| *Eugène Papasian* | Sonate en la (1er. mouv.) | Mozart |
| *Lucie Chorbajian* | Marche turque | Mozart |
| *Sona Mouradian* | Air varié | Haendel |
| *Arminé Mouradian* | Finale de la 3e Sonate | Beethoven |
| *Astra Messerlian* | Rondo a capriccio op. 129 | Beethoven |
| *Noubar Chorbajian* | Concerto italien (1er. mouv.) | Bach |
| *Azadouhie Sevhonkian* | Jour de noces | Grieg |
| *Nora Ipékian* | 11e Rhapsodie | Liszt |

# ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ ԵՒ ԻՐ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Մէկդի դնելով անոր ներքնուրոյն արժէքը, նուագահանդէս մը վայելելը կամ ոչ՝ յաճախ տրամադրութեան խնդիր է։ Սուր գլխացաւ մը կամ նիւթական մտահոգութիւններ՝ երաժշտական ունկնդրութեան մը համար գէշ ընկերներ են։ Պէտք է խորհիլ թէ մասնաւորապէս լաւ տրամադրուած էի անցեալ շաբաթ օր, քանի որ այնքան լաւ ճաշակեցի դեռաբուսիկ արուեստագէտներու մեզի ընծայած երաժշտական ցուցադրութիւնը։

Ատոր համար փութանք շնորհակալ ըլլալ Օր. Նուարդ Տամատեանի եւ շնորհաւորել զինք։ Որովհետեւ իրեն կը պարտինք սոյն բոլոր թարմ տաղանդներուն փթթումը։

Այս երկու նուագալից ժամերը՝ ամբողջ տարուան մը աշխատանքին, ջանքին եւ զոհողութիւններուն լրումն էին։ Ես կը հասկնամ յուզումը որ կը գրաւէ ուսուցիչը, ա՛յն պահուն ուր իր աշակերտները հանրութեան առջեւ պիտի ելլեն։ Օր. Տամատեան այն ուսուցիչներէն է, արդարեւ, որք զինուած արուեստագիտական զօրաւոր մշակոյթով մը, առաքեալի խանդավառութեամբ կը նուիրուին իրենց աշակերտներուն։

Պէտք է ըսել թէ Օր. Տամատեանի աշակերտները յուսախաբ չըրին ո՛չ իրենց ուսուցիչը եւ ոչ ալ զիրենք լսելու եկած ստուարաթիւ հասարակութիւնը։

Գրեթէ ամենքն ալ լաւ շարժեցան - շարժեցին իրենց փոքր մատները - հակառակ պարտադրուած կտորներուն դժուարութեան, եւ ոմանք մասնաւորաբար գնահատուեցան՝ իրենց յայտնապէս ցոյց տուած արուեստագիտական խառնուածքին համար։

Տասներեքէն վար տարեկանները շատ աղէկ տպաւորութիւն թողուցին։ Փոքրիկ Նուարդ Շալճեանը նուագեց ամենամաքուր կերպով, բան մը որ աւելի գնահատելի կը դառնայ երբ կը լսենք թէ հինգ ամիսէ ի վեր միայն սկսած է աշխատիլ։ Սարգիս Սարգիսեանի միակ թերութիւնը քիչ մը շատ աճապարելն էր եւ Պերճ Կիւլանեանինը՝ քիչ մը շատ «չոր» ըլլալը։ Միհրանիկ Թուրշուճեան կշռոյթի եւ երանգի լաւ ըմբռնում մը կը յայտնէ։ Սիրա Օգոստինոսեան յառաջդիմած է։

André Athanassiadès նուագեց Պախի *Մընիւէ-Պուռէ-Ժիկ*ը շատ լաւ հասկացողութեամբ, աղէկ հասկցնելով շարժանցումներու (*մուվըման*) տարբերութիւնները։

Հաճելի մատնահարում (*թուշ*) մը կը յատկանշէ Այտա Թահթաճեանը եւ մեծ դիւրաշարժութիւն մը (*աժիլիթէ*) Սեդա Սարուխանը, որ սակայն քիչ մը չափազանց արագ նուագեց։

Սոնիկ Հանէսեան շատ լաւ էր։Ան ունի սքանչելի մատնախաղ մը (*տուաթէ*) եւ աշխատասէր աշակերտ մը ըլլալ կ'երեւի՝ որմէ գեղեցիկ արդիւնքներ կը սպասուին։ Ան մեզի նուագեց Մոզարի Սոնաթ ան տօն, ճիշդ զգացուած շարժումի մը մէջ։

Շումանի *Քրոք-միթէն*ը ուժեղօրէն նուագուեցաւ Alfred Salvati-ի կողմէ, որ շահեկան դաշնակահարութիւն մը ունի՝ հակառակ երկու տարիէ պակաս իր դասառութեան։

Ivy Mavroyianni եւ Սիրվարդ Պօղոսեան առաջին անգամ ըլլալով կը նուագեն եղեր հրապարակաւ։ Գալ տարի աւելի լաւ պիտի ներկայանան անշուշտ։ Եանպէկեան քառաձեռն զոյգին կը պակսէր յարակցութիւնը։ Իռիս Նազաշեան ճիշդ նուագեց։ Լիլիան Կիրակոսեան, Էօժէն Բաբազեան եւ Լիւսի Չորպաճեան կրնային շատ աւելին տալ եթէ աւելի ճիգ ըրած ըլլային։

Ի փոխարէն, Սոնա Մուրատեանի աշխատուած նուագածութիւնը իրեն շատ օգտակար եղաւ՝ դժուարին գործ մը յաջողութեամբ կարենալ աւարտելու համար։ Ան ունի յատկութիւններ՝ որոնք մօտիկ ապագայի մը մէջ իրեն մեծ յառաջացումներ ընել պիտի տան։

Արմինէ Մուրատեան արդէն իսկ խոշոր յառաջդիմութիւն մը կատարած է։ «Քաջալաւ»-ը իրեն վայլող մակդիրն է։ Իր կատարեալ *թէքնիք*ը, իր զօրեղ եւ երանգաւոր նուագումը անվերապահօրէն սիրցուցին մեզի Պեթովէնի թիւ 3 Սօնաթին վերջամասին իր թարգմանութիւնը։

Աստրա Մարլեան ապահով արժէք մը ունի։ Իր գեղեցիկ հնչականութեամբ մը յայտնուող նուագումը զինք աւելի պիտի նպաստաւորէր նուազ ծանր կտորի մը մէջ։ Բայց ան կը մնայ միշտ ամենէն լաւ օժտուածներէն մէկը։

Գալով Նուպար Չորպաճեանի, ան նորահաս մըն է շատ խորահաստատ երաժշտական խառնուածքով, որ կրնայ ձգտիլ ամենագեղեցիկ ապագայի մը։ Ունի ժուժկալ (*սապրը*) եւ ճշդակառոյց, ըմբռնուած եւ երանգաւոր նուագում մը, որ զինք կ'ընէ արդէն իսկ անհունօրէն հաճոյքով ունկնդրուող դաշնակահար մը։ Իր թարգմանութիւնը Պախի *Քոնչէրթօ իթալիէն*ի (1er mouv.) լի էր զգայնութեամբ։ Ան արժանի է որ մօտէն իրեն հետեւինք եւ լրջօրէն զբաղինք իրմով։

Ազատուհի Սեւյօնքեանի խնամքով պատրաստուած *Ժուռ տը նոս*ը (Կրիկի) կը յայտնէր արժէքաւոր յատկութիւններ, որոնց մէջ եթէ աւելի շեշտուած ըլլար ճկունութիւնը՝ կտորը աւելի շահեկանութիւն պիտի ստանար։

Ի վերջոյ եւ փակելու համար այս շատ յաջող ունկնդրութիւնը, Նորա Իփէքեան մեզի տուաւ Լիսթի *11-րդ Ռաբսոտի*ին մէկ լաւագոյն նուագածութիւնը, գունագեղ եւ նրբերանգ նոյն ատեն։

Օգտակար է ատեն-ատեն ներկայ ըլլալ աշակերտական ունկնդրութեան մը։ Նոր հասնող սերունդին հետ շփումը՝ խրախուսիչ բան մը ունի իր մէջ։ Պարզութիւնը նուագածուներու - որոնք դեռ չեն գիտեր սեթեւեթը, - իրենց եռանդը, իրենց

պատրաստակամութիւնը կը նմանի թարմ օդի շունչի մը որ թափանցուած է գարնանային բուրմունքներով:

Ներկաներուն մէջ՝ նա՛խ բազմաթիւ ծնողքնե՛ր անշուշտ, որոնք եկած են տեսնելու թէ իրենց զաւակները կորսնցուցած չեն իրենց ժամանակը. բայց յետոյ, նաեւ, ճշմարիտ երաժշտասէրներ:

Եւ ոչ մէկ *տիլէթանթ* աւելի ուշադիր՝ պիտի հետեւէր Հիւպէրմանի մը կամ Քորթոյի մը նուագածութեան որքան սա՛ ժպտաշուրթ տիկինը որ լարուած կը հետեւի իր աղջկան աշակերտներուն, չծածկելով իր զգացած ուրախութիւնը անոնց ըրած յառաջդիմութենէն, ինչպէս եւ իր ճաշակած վայելքը լաւ տրուած կտորէ մը, - ինչ որ յայտարար նշանն է ճշմարիտ արուեստագիտական մշակոյթի մը, որուն գործած ընտանեկան ազդեցութիւնն ալ մաս ունի, թերեւս, սքանչելի ուսուցիչ Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն կատարած արագ յառաջդիմութեան մէջ:

*Արեւ*, 27 Մայիս 1944, ԻԹ. տարի, թիւ 7734, էջ 3

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ «ՕՏԻՍԻՕՆ»-Ը

ՍՏԵՓԱՆ ՀԱՄԱՄՃԵԱՆ

Գեղարուեստական հաճելի վայելք մը եղաւ դաշնակի Բրոֆէսէօր Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն դաշնակի «օտիսիօն»-ը, անցեալ Շաբաթ երեկոյ, Ամերիկեան Համալսարանի Օրիանթալ Հօլի մէջ:

Ժամը 6-ին հանդիսասրահը ամբողջովին լեցուած էր արդէն ծնողքներու եւ հրաւիրեալներու ընտրանի բազմութեամբ մը, երբ ընդհանուրի սպասումին մէջ բեմին վրայ՝ համարձակ քայլերով դէպի վիթխարի դաշնակը յառաջացաւ փոքրիկն Նուարդ Շալճեան մեզի հրամցնելու համար Քօզըլիւխի *Պէրնուազ*ը, յաջող նուագահարութեամբ:

Ու հետզհետէ դաշնակին առջեւ երեւցան.

Փոքրիկն Սարգիս Սարգիսեան՝ որ նուագեց Շումանի *Սիսիլիէն*ը, յստակ մատնահարութեամբ:

Միհրանիկ Թուրշուճեան՝ որ նուագեց Շումանի *Շանսօն տիւ մուասօնէօր*ը. ան քանիցս շփոթեցաւ թէեւ, բայց ուղղեց սխալը եւ լաւ վերջացուց:

Փոքրիկն Պերճ Կիւլանեան՝ որ համեմատաբար իր տարիքին՝ յաջող կերպով նուագեց Պէթհովէնի Սօնաթին ան Սօլի Ա. մուվըմանը:

Փոքրիկն Սիրա Օգոստինոսեան քաջալաւ էր եւ ճկուն՝ Ռամօի *Լա Թամպու-րէն*ի նուագահարումին մէջ:

Յաջող նուագեցին՝ Անտրէ Աթանասիատիս՝ Պախի *Մընիւէթ*ը, Այտա Թահ-թաճեան՝ Պէթհովէնի Սօնաթինի Ա. մուվըմանը եւ Սեդա Սարուխան՝ նոյնին Բ. մուվըմանը:

Հիանալի էր փոքրիկն Սօնիկ Հաննէսեան իր Մօցարթի Սօնաթի նուագահա-րումին մէջ, յստակ եւ ճկուն մատնահարութեամբ:

Լաւ էին Ալֆրէտ Սալվաթիի *Գրօզ միթէն*ը (Շումանի), Իվի Մավրօյեանիի *Տէրնիէր բանսէ*ն (Վէպէրի), Սիրվարդ Պօղոսեանի *Ուազիյօն*ը (Կրիկի):

«Օտիսիօն»-ի Ա. մասը վերջ գտաւ Մանուշակ եւ Գէորգ Եանպէկեաններու քառաձեռն *Մարշ միլիթէռ*ով (Շուպէրթի), զոր քոյր եւ եղբայր նուագեցին հաւա-սար ճկունութեամբ եւ ուժեղ մատնահարումով:

Կարճ դադարէ մը յետոյ սկսաւ «Օտիսիօն»-ի Բ. մասը, ուր մեզ վերա-պահուած էր իրապէս հաճելի նուագահանդէսի մը վայելքը, երբ քիչ մը աւելի տարեց աշակերտներ՝ քաջավարժ նուագահարումներով հրամցուցին երաժըշ-տական ընտիր կտորներ:

Իրիս Նազաշեան նուագեց Տագէնի *Լը Քուքու*ն, Լիլիան Կիրակոսեան՝ Շուպէրթի *Մօման միւզիքալ*ը, Էօժէն Բաբազեան (Որդի)՝ Մօցարթի Սօնաթ ան Լա Ա. մուվըմանը, Լիւսի Չօրպաճեան՝ Մօցարթի *Մարշ թիւրք*ը, բոլորն ալ ճկուն մատնահարութեամբ:

Հիանալի էին Սօնա Մուրատեանի *Էր վարիէ*ն (Հանտէլի) եւ Արմինէ Մուրատեանի Ֆինալ տը լա թրուազիէմ Սօնաթը, սահուն մատնահարումներով:

Աստրա Մսրլեան նուագեց Պէթհովէնի *Ռօնտօ ա Գաբրիչչիօ* օբ. 129 դժուա-րին կտորը, զոր տարաւ փայլուն յաջողութեամբ. ան յայտնօրէն ցոյց տուաւ երաժշտութեան խոր ըմբռնում, համարձակ խոյանք եւ տիրապետում նուագի:

Նուպար Չօրպաճեան նուագեց Պախի *Գօնչէրթօ իթալիէն*ը, Ա. մուվ., սահուն մատնահարումով:

Ազատուհի Սեւյօնքեան եւս սահուն եւ քաջավարժ մատնահարումով նուա-գեց Կրիկի *Ժուր տը նօս*ը:

«Օտիսիօն»-ին վերջաբանը վիճակած էր Նորա Իփէքեանի, որ այնքան հիա-նալիօրէն նուագեց Լիցթի *11-րդ Ռաբսօտի*ն, խոր երազանքի աշխարհները տանելով ունկնդիր ներկաները:

Ժամը 8-ին վերջ գտաւ նուագահանդէսը եւ ներկաները կը սպասէին ու կը յուսային լսել նաեւ համակրելի Բրօֆէսէօրուհին, որ չերեւցա՛ւ սակայն բեմին վրայ:

Ջերմօրէն շնորհաւորելի է Օր. Նուարդ Տամատեան իր ձեռք բերած փայլուն արդիւնքին համար:

*Սաւառնակ*, 27 Մայիս 1944, 26-րդ տարի, թիւ 24, էջ 3

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 13 ՄԱՅԻՍ 1945

ՍԳԱՀԱՆԴԷՍ ՆՈՒԻՐՈՒԱԾ
ՄԵԾ ԲԱՆԱՍՏԵՂԾ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾԻՉ
ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ



# ՍԳԱՀԱՆԴԷՍ

ՆՈՒԻՐՈՒԱԾ ՄԵԾ ԲԱՆԱՍՏԵՂԾ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾԻՉ

## ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ

ԻՐ ՄԱՀՈՒԱՆ ՔԱՌԱՍՈՒՆՔԻՆ ԱՌԹԻՒ

կազմակերպութեամբ

Ռ. Ա. ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԵՒ ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ ԱԿՈՒՄԲՆԵՐՈՒՆ

ԵՒ ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

*Հովանաւորութեամբ Եգիպտահայոց Առաջնորդ*

ԳԵՐ. ՏԷՐ ՄԱՄԲՐԷ ԵՊՍ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

Նախագահութեամբ ԸՆԿ. ԷՕԺԷՆ ԲԱՐԱԶԵԱՆԻ

ԿԻՐԱԿԻ, 13 ՄԱՅԻՍ 1945, Կ. Վ. ժամը 6ին

Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Սրահին մէջ

*Կը բանախօսեն՝ ԱՐՍԷՆ ԵՐԿԱԹ (Նիւթ՝ Թէքէեան բանաստեղծը) և ՅԱԿՈԲ ԱՐԱՄԵԱՆ՝ (Թէքէեան հրապարակագիրը և հանրային գործիչը)։*

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ*

Կը հրաւիրուին մեծանուն բանաստեղծ-հրապարակագրին յիշատակը յարգող բոլոր ազգայիններ։

Յայտարարութիւն
*Արեւ*, 5 Մայիս 1945, ԻԹ. տարի, թիւ 8021, էջ 1

## ԱՆՄԱՀ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ՔԱՌԱՍՈՒՆՔԸ
(հատուած)

Իր քերթուածներէն արտասանեցին Օր. Նորա Իփէքեան, Օր. Լ. Քարբերդեան եւ Պ.Պ. Վ. Թէրզիպաշեան ու Յ. Համբիկեան՝ զգացուած, ըմբռնուած կերպով եւ ճիշդ ու յուզիչ շեշտաւորումով:

Օր. Ն. Տամատեան, որ սկիզբը նուագած էր Շոբէնի մահաքայլերգը, ընկերացաւ բոլոր արտասանութեանց դաշնակի մեղմ եւ խորհրդապահ նուագումով, անտեսանելիօրէն, սպիտակ շղարշներու ետեւէն, ինչ որ տարօրէն եւ տրտմանուշ մթնոլորտ մը կը ստեղծէր:

*Արեւ*, 14 Մայիս 1945, Լ. տարի, թիւ 8027, էջ 1

## ՈՂԲ ԹԷՔԷԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ ՊԱՆԾԱՑՈՒՄԸ
(հատուած)

Տեղի ունեցան արտասանութիւններ Օրիորդներ Իփէքեանի եւ Գարբերդեանի եւ Պրք. Թէրզիպաաշեանի եւ Յ. Համբիկեանի կողմէ, զիրար գերազանցող ուժգնութեամբ եւ արուեստով: Օր. Նուարդ Տամատեան, մեր աննման դաշնակահարուհին, մեղմ եւ դաշն նուագածութեամբ մը ընկերացաւ բոլոր արտասանութեանց:

*Արաքս*, Աղեքսանդրիա, շաբաթաթերթ, 19 Մայիս 1945

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 26 ՄԱՅԻՍ 1945

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
## ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

**Mlle. Nevarte Damadian**

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

Samedi, le 26 Mai 1945 à 5 h. 15 p.m.

Le Programme tient lieu d'Invitation

| | | |
|---|---|---|
| *Alice Barzankian* | 4 mains | Wohlfahrt |
| *Chaké Orak* | 4 mains | Wohlfahrt |
| *Annie Chaldjian* | Sur la place de jeux | Lichner |
| *Hrayr Boghourian* | 1ère Sonatine (3ème mouv.) | Clementi |
| *Mireille Tavridakis* | Menuet | Pleyel |
| *Norma Garin* | Air cosaque | Kozeluch |
| *Maro Boghiguian* | 3me Sonatine (3me mouv.) | Clementi |
| *Grazia Veneti* | Les plaintes d'une poupée | César Franck |
| *Nevarte Chaldjian* | Rondo Vivace | Kuhlau |
| *Miran Tourchoujian* | 3me Sonatine (1er mouv.) | Clementi |
| *Berdj Gulanian* | 6me Sonatine (1er mouv.) | Clementi |
| *Sarkis Sarkissian* | Danse des Sylphes | Grieg |
| *Aïda Beylerian* | Valse | Grieg |
| *Chaké Garabedian* | Ballade | Burgmüller |
| *Sira Okosdinossian* | Prélude en ut min. | Pachulski |
| *Maro Merdjanian* | Le désir (valse) | Beethoven |
| *Sona Hanessian* | Sonate en Sol maj. (1er mouv.) | Beethoven |

| | | |
|---|---|---|
| *Janet Ward* | Sarabande | Haendel |
| *Manouchag Yanbeguian* | Romance sans paroles No. 9 | Mendelssohn |
| *Lucie Der Ohanessian* | Le voyageur Solitaire | Grieg |
| *Seta Saroukhan* | Gavotte et Musette en sol min. | Bach |
| *Alfred Salvati* | La Chasse | Mendelssohn |
| *Aïda Tahtajian* | 6 Variations | Beethoven |
| *Sirvart Boghossian* | Scherzo en Si bem. maj. | Schubert |
| *Arminé Kutnérian* | Rondo en ut maj. | Beethoven |
| *Iris Nakachian* | La fileuse | Mendelssohn |
| *Eugène Papasian* | Chimères | Schumann |
| *Astra Messerlian* | Fantaisie Impromptu | Chopin |
| *Noubar Chorbajian* | Pourquoi ? | Schumann |
| | Essor de l'âme | » |
| *Nora Ipékian* | Clair de Lune | Debussy |
| | Seguidillas | Albeniz |

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
# ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՌԻՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Մեծ օրը եկած է վերջապէս։

Եւ ո՛րքան աշխատանք ո՛րքան մտահոգութիւններ եւ ո՛րքան յուզումներ վերջ կը գտնեն այդ վայրկեանին։

Շուշաններու, նուիկներու (arums), կարմիր վարդերու եւ ազնուական թրաշուշաններու հոյակապ փունջերու բուրումնաւէտ մթնոլորտի մը մէջն է որ կը սկսի ունկնդրութիւնը, զետեղուած՝ երիտասարդութեան եւ գարնան կրկնակի նշանին տակ։

Մանկական շնորհով թաթաւուն փոքրիկն Ալիս Պարծանքեանի երեւումը՝ քնքուշ խոնարհումով, իսկոյն լաւ տրամադրութեան մէջ կը դնէ ձեզ։

Շաքէ Օրագ, Աննի Շալճեան եւ Հրայր Պօղուրեան կը յաջորդեն անոր, եւ գոհացուցիչ կերպով կը նուագեն՝ տրուած ըլլալով իրենց տարիքը եւ դասընթացքին կարճ տեւողութիւնը։

Մասնակցող տասներեք տարեկաններու մէջէն մասնաւորապէս ուշադրութիւն գրաւեցին Նորա Կարին, նրբերանգ եւ կշռաւոր նուագումով, Պերճ Կիւլանեան՝ ճկուն մատնահարութեամբ եւ լաւ հնչականութեամբ եւ մանաւանդ փոքրիկն Միհրան Թուրշուճեանը՝ իրական դաշնակահարի շարժումներով իր տարիքին համար ան ռիթմ, հարազատ արտայայտութիւն, զգայնութիւն, հնչականութիւն եւ սքանչելի հասկացողութիւն մը ունի, ինչպէս նաեւ՝ մատներու լաւ խաղարկութիւն մը։ Նուազ մտացրուումով եւ մշտական աշխատանքով ան քանի մը տարիէն կրնայ լաւ արդիւնքներ տալ։

Կարելի չէ խստապահանջ ըլլալ Միրէյ Թավրիտաքիսի, Մարօ Պօղիկեանի, Կրացիա Վէնեթիի եւ Նուարդ Շալճեանի հանդէպ. անոնք ճշգրիտ կերպով նուագեցին։

Սարգիս Սարգիսեան յառաջդիմութեան մէջ է. ան աւելի հասկացողութիւն ցոյց տուաւ չափին (mesure) հանդէպ։

Այտա Պէյլէրեան եւ Շաքէ Կարապետեան աւելի լաւ արդիւնքներու պիտի հասնէին մեղմացնելով իրենց մատնահարութիւնը։ Մինչդեռ Սիռա Օգոստինոսեան եւ Մարօ Մերճանեան աւելի հետաքրքրական պիտի դարձնէին իրենց նուագումը աւելի կարեւորութիւն տալով երանգին։

Սօնա Հաննէսեան լաւ նուագեց, բայց գալ տարի իրմէ աւելի կը սպասեմ։

Ժանէթ Վարտ՝ Հէնտըլի *Սարապանտ*ի մէջ եռանդով սկսաւ, մեղք որ չկրցաւ պահել զայն մինչեւ վերջ։

Մանուշակ Եանպէկեան եւ Սեդա Սարուխան յառաջդիմութեան մէջ են: Անոնք տիրացած են աւելի մեծ չափով ռիթմին եւ երանգին: Բայց Սեդայէն պիտի խնդրէի աւելի յստակութիւն արտայայտութեան մէջ:

Լիւսի Տէր Օհաննէսեան պարկեշտօրէն նուագեց. քիչ մը աւելի աշխատանքով ան պիտի կրնայ աւելի լաւ նուագել:

Ալֆրէտ Սալվաթի եւ Այտա Թահթաճեան, որոնք երկու տարիէ ի վեր միայն կը հետեւին, երկուքն ալ ունին արուեստագէտի որոշ խառնուածք: Առաջինը ունի արտայայտութեան բնածին հասկացողութիւն մը եւ զօրաւոր նուագածութիւն մը որոնց հաճոյքով կ'ունկնդրենք: Եւ սակայն ան պէտք է զգուշանայ չափազանց դիւրութեամբ նուագելէ եւ պէտք է զսպէ իր թափը:

Երկրորդը գրաւեց մեր ուշադրութիւնը իր նուագածութեան յստակութեամբը եւ իր մատնահարումին քնքշութեամբը:

Սիրվարդ Պօղոսեան, իբրեւ ջանասէր աշակերտուհի այս տարի ի յայտ եկաւ իր սքանչելի մատնահարութեամբը: Շուպէրթի *Սքէրցօ* (si bém. maj.) գեղեցիկ շարժումի մը մէջ նուագուեցաւ:

Արմինէ Քիւթնէրեան Պէթհովէնի *Ռօնտօ*ն նուագեց նրբութեամբ:

Իրիս Նազաշեան կ'երեւի թէ այս տարի շատ աշխատած է, ան ալ յառաջդիմութեան մէջ է: Պիտի ուզէինք որ իր նուագածութիւնը աւելի երանգաւոր ըլլար:

Էօժէնիկ Բաբազեան պատիւով կրցաւ դուրս գալ դժուար ռիթմով կտորէ մը: Հեզութիւն եւ ուժականութիւն կը յատկանշեն իր նուագածութիւնը, որուն կը միանայ նաեւ գեղեցիկ հնչականութիւն մը:

Աստղրա Մարլեան, հազիւ 15 տարեկան, անվիճելիօրէն եւ արդարօրէն ամենէն շատ ծափահարուեցաւ: Ան մեզի տուաւ գեղեցիկ Շօբէն մը, խորապէս զգացուած՝ մերթ չափազանց մեղմութեամբ եւ մերթ հուժկու խոյանքով մը: Իր ըմբռնող նուագումը, իր թաւշակերպ մատները, հարուածը, իր երաժշտականօրէն լեցուն արտայայտութիւնը ճշմարիտ հաճոյք մը պատճառեցին մեզի:

Նուպար Չօրպաճեան մեզի յուսախաբ չըրաւ: Արդէն իր մասին լսած ենք լաւ բաներ: Ան ունի վստահ նուագածութիւն մը զոր կը բացատրէ իր թեքնիքին զօրութիւնը: Ան չափազանց քնքուշ եղաւ Շումանի *Ինչու համար*ին մէջ եւ խելացիօրէն հուժկու՝ նոյն հեղինակին *Հոգիին թռիչք*ին մէջ: Ես պիտի ուզէի սակայն որ ան միայն մէկ կտոր նուագէր. բայց կարեւոր կտոր մը:

Նորա Իփէքեան որ այլեւս աշակերտուհի մը չէ, տուաւ իր զգայնութեան չափը անցընելով մեր մէջէն Տրպիւսիի զգայնութիւնը, որուն ջղային նօթաները այնքան գեղեցկօրէն կ'արտայայտէին *Լիպլուսնի* կարօտագին քաղցրութիւնը: Եւ վերջացնելու համար Նորա կ'ոգեկոչէ Ալպէնիզի հետ Սպանիոյ արեւը, անոր հրաշագեղ պարերը, եւ գեղեցիկ Անտալուզի կիները՝ բոցավառ նայուածքներով:

Օրիորդ Տամատեանի աշակերտները ունին այն յատկանշական կարողութիւնը թէ անոնք երբեք միեւնոյն կաղապարէն ելած ըլլալու տպաւորութիւնը չեն

թողուր։ Ասիկա պատիւ կը բերէ իրենց բրոֆէսէօրին որ դասաւանդութեան առողջ մեթոտի մը հետեւելով կրցած է դրոշմել կատարեալ թէքնիք մը, յարգելով հանդերձ իւրաքանչիւրին անհատականութիւնը։

Գեղեցիկ հագուստներու ֆրու-ֆրուին խանդավառութեան թոհուբոհին, միահամուռ շնորհաւորութիւններու մէջ կը վերջանայ մեծ օրը։

Օրիորդ Տամատեան կրնայ այլեւս քիչ մը հանգստանալ։

*Արեւ*, 2 Յունիս 1945, Լ. տարի, թիւ 8044, էջ 4

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ԼԻՊԱՐԻՏ ՆԱԶԱՐԵԱՆՑ

Այս տարի դաշնակի ուսուցչուհի օր. Նուարդ Տամատեան իր աշակերտները - 30 հոգի - հանրային գնահատման ներկայացուց Մայիս 26-ին, Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահին մէջ։

Իրաւ է, հանդիսականներուն վերապահուած չէին արտակարգ «երեւոյթ»ներ, եւ հազիւ թէ անոնցմէ որեւէ մէկը նման ակնկալութիւն մը ունենար։ Ատոր փոխարէն, սակայն, լիով գոհացուցիչ էր կարողութեան եւ գործադրութեան ընդհանուր մակարդակը. եւ այդ է կարեւորը. ապա թէ ոչ՝ ի՞նչ արժէք կրնայ ունենալ մէկ երկուքի շլացուցիչ փայլը ընդհանուր խեղճութեան մէջ։

Լաւ կեցուածք, կանոնաւոր հարուած, հոգածութիւն չափի, նրբերանգներու նկատմամբ եւ առհասարակ այն ամէնը, ինչ որ կախուած է ուսուցումէն, կարելի էր տեսնել մեծամասնութեան քով։ Իսկ ակնբախ թերութիւնները - յուզում, շտապում, կշռոյթի բեկբեկում - անհատական եւ դժուար սրբագրելի յատկութիւններ են։ Այդպէս նաեւ ոտնկայի (փետալ) անտեղի գործածումը։ Ինչպէս որ շատեր սովորութիւն ունին խաղալու իրենց ձեռքին տակ գտնուող առարկաներու հետ, այնպէս ալ սկսնակ մը միշտ կը փորձուի կոխելու ոտնկային վրայ, եւ ժամանակի ընթացքին այդ անգիտակից շարժումը ունակութիւն կը դառնայ։

Դժբախտաբար փոքրերը կարելիութիւն չունեցայ լսելու։ Երբ սրահ մտայ, Սարգիս Սարգիսեանն էր, որ նստաւ նուագելու. ան եւ իրմէ ետք նուագողներէն Աիտա Պէյլէրեան եւ մանաւանդ Սիրա Օգոստինոսեան յիշատակութեան արժանի են իրենց հանդարտ եւ յստակ նուագով։

Այդպէս չէին Մարօ Մերճանեան եւ Աիտա Թահթաճեան. երկուքն ալ ունին գեղեցիկ զարնուածք (թուշէ) եւ մաքուր հնչիւն, եւ սակայն, իրենց յուզման հետեւանքով, «փախուստ»ները բաւական յաճախակի էին, մասնաւորաբար նախադասութեանց վերջաւորութեան։

Եթէ աճապարանքն էր, որ աղօտեց Մանուշակ Եանպէկեանի այլապէս յաջող

նուագը, Լուսի Տէր Յովհաննէսեան, այնքան խաղաղ, կրցաւ ի յայտ բերել Կրիկի կտորին (*Մենաւոր ճամբորդը*) իւրայատուկ կշռոյթն ու երանգները։

Մեկին եւ Ճշդորոշ կերպով տուաւ Սեդա Սարուխան Պախի երկու պարանուագը (*Կաւոթ* եւ *Միւզեթ*), որոնք սակայն շատ բան կորսնցուցին ոտնկայի չարաչար գործածումէն։ Ոտնկան բնաւ գործածելու չէ *ըեսիթաթիֆ*ի եւ *սթաքաթո*յի ատեն ու նաեւ երկու նախադասութեան միջեւ, վասնզի, հակառակ պարագային, նախադասութեան մը վերջաւորութիւնը կ'արձագանգէ յաջորդ նախադասութեան սկիզբին մէջ։

Սիրվարդ Պօղոսեանի նուագը, հանդարտ եւ համարձակ, աւելի պիտի շահէր, եթէ օրիորդը կամայականօրէն չվարուէր կշռոյթի եւ ոտնկայի հետ։ Եթէ Արմինէ Քիւթներեան չունենար նոյն թերութիւնը չափի նկատմամբ, իր բաւական յառաջացած թեքնիքով կրնար շատ աւելի լաւ արդիւնքի հասնիլ։

Իրիս Նազաշեան, որ նուագեց Մենտըլսոնի *Մանողը*, նկատի չէր առած երկու պարագայ. նախ այն՝ որ այդ կտորին մէջ ձախ ձեռքը աջէն աւելի կարեւոր է, վասնզի ան է, որ կու տայ ճախարակի անիւին միօրինակ թաւալումը, ապա այն՝ որ հող թոյլատրելի չեն ամանակի (թեմփոյ) արագացում կամ դանդաղեցում եւ մանաւանդ կշռոյթի բեկումներ։ Եւ ատոր հետեւանքով՝ կտորի նկարագրին խաթարումը։

Առնական հարուած, լեցուն հնչիւն, բայց պէտք եղածէն աւելի զգաստ եւ քիչ մը միօրինակ նուագ, - այսպէս էր Էօժէն Բաբազեան։

Եթէ զօրաւոր խառնուածքը արուեստին մէջ արժանիք մըն է, զայն սանձել չգիտնալը մեծ թերութիւն է։ Ատոր ապացոյցը տուաւ Ասթրա Մարլեան։ Իր աներկբայելի երաժշտական ընդունակութիւններուն քով ան ունի նաեւ բաւական զարգացած թեքնիք. բայց որովհետեւ ան չփորձեց կամ չկրցաւ ինքզինքը զսպել, այդ պատճառով ալ տուժեց իր նուագին մաքրութիւնը, Շոփէնի *Ֆանթէզի-Էնփրոնթիւ*ն ալ դարձաւ պարզապէս ափյափոյ «ֆանթէզի» մը, առանց այդ հեղինակին յատուկ նրբութեան եւ յանկուցիչ վիպականութեան։

Նուպար Չօրպաճեան նուագեց երկու կտոր Շումանէն, եւ այդքանը կը բաւէր՝ համոզուելու համար, որ կարողութեանց համաչափ բաշխումով կազմուած երաժըշտական նկարագիր մըն է այս պատանին, եւ որ հոգածու վերաբերում մը իր հանդէպ, իր աշխատասիրութեան միացած, լաւ ապագայ մը պիտի ապահովէր իրեն։

Իր մեղմ ու յստակ նուագով Նորա Իփէքեան կրցաւ ապրեցնել Տըպիւսիի *Լուսնկայ գիշեր*ին երազականութիւնը, սակայն նոյնքան յաջող չէր ան Ալպենիցի *Սեկիտիլիա*յին մէջ։ Կրակոտ սպանիական պար մըն է սեկիտիլիան, եւ իր ամենաէական տարրը հատու կշռոյթն է, որ ա՛լ աւելի կը շեշտուի *քասթանիեթ*ներու ընկերակցութեամբ։ Օրիորդը կրցաւ արտայայտել կտորին նրբերանգները՝ իրենց քմայքոտ փոփոխականութեամբ, բայց թերացաւ կշռոյթին մէջ։

*Յուսաբեր*, օրաթերթ, Գահիրէ, 30 Յունիս 1945

**ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ**

**ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԱՍԷՐՆԵՐՈՒ**

## ՀԱՆԴԻՊՈՒՄԻ ՕՐ

Հինգշաբթի, 27 Դեկտեմբեր 1945, կ. վ. ժամը 7էն սկսեալ

## ԹԱՒՋՈՒԹԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ԶԸ ՆՈՒԱԳԷ ՀՌՉԱԿԱՒՈՐ ԹԱՒՋԱԿԻ ՎԻՐՏՈՒՈԶ

**ALEXANDRE KOUGUELL**

Վկայեալ Բարիզի «*Ecolo Normale de Musique*»էն

Դաշնակի ընկերակցութեամբ **ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ**

*Կը հրաւիրուին մեր անդամներն ու համակիրները ունենալու համար գեղարուեստական ճշմարիտ վայելք մը։*

*Թէյի սպասարկութիւն ժամը 7էն սկսեալ։*

*Նուագ և լուսաբանութիւններ նուագուած կտորներու մասին ժամը 9ին։*

Յայտարարութիւն
*Արեւ*, 26 Դեկտեմբեր 1945, Լ. տարի, թիւ 8218, էջ 2

UNION ARTISTIQUE ARMENIENNE

Soirée Musicale du 27.12.45

à 9h. P.M.

----

Audition Du Violoncelliste

ALEXANDRE KOUGUELL

Au piano: Mlle. N. DAMADIAN

----------

P R O G R A M M E

----

I- HENRY ECCLES — Sonate en sol mineur
a) Largo
b) Allegro
c) Adagio
d) Finale

2- TARTINI — Adagio Cantabile
SCHUBERT — L'Abeille
KOUGUELL — Berceuse
RAVEL — Habanera
GOENS — Scherzo

# RECITAL DE VIOLONCELLE

Venant de Beyrouth et en route pour les Etats-Unis, Alexandre Kouguell a donné, l'autre jeudi, à l'Union Artistique Arménienne, une audition de violoncelle que n'oubliera pas de sitôt l'assistance qui emplissait le coquet local de la rue Doubreh.

Jeune encore, - il n'a que vingt-quatre ans – Alexandre Kouguell manifeste déjà une maîtrise passionnée de son instrument. C'est qu'en plus de ses dons, il a de qui tenir: son père, pianiste émérite que nous aurons l'occasion d'entendre cette saison, est directeur de l'Institut de Musique de Beyrouth où Alexandre Kouguell a lui-même commencé ses études musicales avant de les parachever à Paris.

A son programme – trop court au goût des auditeurs – il avait inscrit la Sonate en sol majeur de Henry Eccles dont il a tiré des sonorités prenantes, un *Adagio* de Tartini et des œuvrettes permettant de donner libre cours à sa virtuosité: *Habanera* de Ravel et *L'Abeille*, pièce imitative, de Schubert. Enfin, une *Berceuse* de Kouguell – son père – d'une musicalité imprégnée d'atavismes et d'incantations tels qu'elle fut réclamée en bis.

Au piano, Mlle N. Damadian a tissé en toile de fond un accompagnement apprécié.

*Images*, hebdomadaire, Le Caire, 6 janvier 1946

# ARKADIE KOUGUELL ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ՏԱՆ ՄԷՋ

ՆՈՒԱՐԴ ՄԱՔ ՔԷՆԶԻ (ՎԱՐԴ-ՊԱՏՐԻԿ)

Կիրակի առաւօտ ժամը 10.15-ին, ծանօթ դաշնակի ուսուցչուհի Օր. Նուարդ Տամատեանի հրաւէրով, մտայ իր բնակարանէն ներս:

Արդէն աշակերտներու մեծ թիւ մը կը լեցնէր «սդիւտիօն». կային նաեւ հրաւիրեալներ՝ որոնք հետզհետէ կը հասնէին ու կ'ընդունուէին սիրալիր:

Դաշնամուրին դիմաց, Օր. Նուարդէն քիչ մը հեռու նստած էր, տպաւորիչ ու իմաստուն դէմքով անձնաւորութիւն մը. Բրօֆ. Արքատի Քուկէլն էր ան:

Ու ահա՝ խորհրդաւոր լռութեան մը մէջ, դաշնակը, կմկմացող բայց անուշ մեղեդի մը լսելի ընել սկսաւ. մանկիկ մը՝ զգայուն, անոր ստեղներուն կը հպէր: Իրեն յաջորդեցին ուրիշ աշակերտներ յաջող կերպով, ցոյց տալով իրենց զանազան կարողութիւնները: Երաժշտութեան մշակը Օր. Նուարդ գրեթէ տասնամեակ մը տարիներու իր հունձքէն նմոյշներ կը ներկայացնէր իր վարպետին, Բրօֆ. Քուկէլին: Իսկապէս ասոնք ալ՝ եղան երջանիկ վայրկեաններ իրենց տեսակին մէջ մոռցնել տալով bombe atomique-ի մեր դարը:

Բրօֆ. Քուկէլ ոտքի ելաւ յուզուած, շնորհաւորեց Օր. Տամատեանը, իր նախկին օժտեալ աշակերտուհին ու իր առաջին *պուրսիէտ*ը Ecole Normale de Musique de Paris-ի: Յիշեց անոր մանկութիւնը, ունկնդրելով աշակերտներուն նուագածութիւնը ու հոն տեսնելով իր իսկ մեթոտներուն կիրարկումը: Ու իբր Մեծ հայր՝ խորհուրդներ տուաւ աշակերտներուն, խրախուսելով զիրենք:

Թէ իբր մեծ մանկավարժ եւ թէ իբր մեծ դաշնակահար, բրօֆ. Քուկէլ ներշնչեց ոչ միայն ներկայ աշակերտութիւնը՝ այլ նաեւ հրաւիրեալները իր զրոյցով, ու նուագելով անցք մը դաշնակի անմահ ու դասական բանաստեղծ Bach-էն:

Մեծ ոգեւորութեան մէջ, լուսանկարումի զուարթ արարողութեամբ վերջացաւ սոյն ցորեկեայ երաժշտական հաւաքոյթը, թողելով հոգիներուն վրայ դէպի բարին, գեղեցիկը ու ճշմարիտը ձգտելու կամքը:

*Արեւ*, 1 Ապրիլ 1946, Լ. Տարի, թիւ 8296, էջ 2

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

**Mlle. Nevarte Damadian**

*Oriental Hall (Université Américaine)*

*12, Rue Sultan Hussein – Le Caire*

*Samedi, le 18 Mai 1946, à 5 h. 30 p.m.*

Le Programme tient lieu d'Invitation

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| *Claire Madjar* | Polka | Wohlfahrt |
| *Alida Yégarian* | 4 mains | Beyer |
| *Alice Barzankian* | Les soldats de plomb en marche | Gretchaninoff |
| *Annie Chaldjian* | Ecossaise | Hummel |
| *Garo Beylerian* | 1ère Sonatine (1er mouv.) | Clementi |
| *Hrayr Boghourian* | 3me Sonatine (3me mouv.) | Clementi |
| *Mireille Tavridakis* | Menuet | Hummel |
| *Maro Boghiguian* | Croquemitaine | Schumann |
| *Grazia Veneti* | Presto de la 7e Sonatine | Clementi |
| *Nevarte Chaldjian* | Chanson du moissonneur | Schumann |
| | Le chant de l'alouette | Tschaikowsky |
| *Mihran Tourchoujian* | Tambourin | Ramean |
| *Berdj Gulanian* | Sonate en do (1er mouv.) | Mozart |
| *Sarkis Sarkissian* | Solfeggietto | Ph. Em. Bach |
| *Aïda Beylerian* | Rondo | Hummel |
| *Chaké Garabedian* | Sonatine No. 12 (1er mouv.) | Clementi |
| *Maro Merdjanian* | Mazurka | Chopin |

| | | |
|---|---|---|
| *Janet Ward* | Nocturne | Chopin |
| *Manouchag Yanbeguian* | Novellette en si min. | Schumann |
| *Lucie Der-Ohanessian* | Sœur Monique | Couperin |
| *Anahid Kutnérian* | Toccata | Paradies |
| *Seta Saroukhan* | Le petit âne blanc | Ibert |
| *Aïda Tahtajian* | Sonate en mi min (1er mouv.) | Haydn |
| *Marie Maravelli* | Au couvent | Borodine |
| *Sirvart Boghossian* | Au printemps | Grieg |
| *Arminé Kutnérian* | Tarantelle | Heller |
| *Iris Nakachian* | 2 Sonates | Scarlatti |
| *Eugène Papasian* | Prélude en ré bem. maj. | Chopin |
| *Arminé Mouradian* | Rondo brillant | Weber |
| *Astra Messerlian* | Concerto en ré min. (1er mouv.) | Mozart |

au 2e Piano d'accompagnement : *Mlle. N. Damadian*

| | | |
|---|---|---|
| *Noubar Chorbajian* | Sonate "Pathétique" (1er mouv.) | Beethoven |

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ «ՕՏԻՍԻՕՆ»-Ը

ՍՏԵՓԱՆ ՀԱՄԱՄՃԵԱՆ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս հաճոյքը ունեցանք ունկնդրելու դաշնակի նուագահարումները Բրօֆ. Օր. Տամատեանի աշակերտներուն, որոնք գեղարուեստական ճշմարիտ վայելք մը ըմբոշխնելու առիթը ընձայեցին իրենց ծնողաց եւ հրաւիրեալներու խուռնամբոխ բազմութեան մը, անցեալ Շաբաթ երեկոյ, Ամերիկեան Համալսարանի հանդիսասրահին մէջ։

Նկատելի պարագայ մըն էր գրեթէ բոլոր աշակերտներուն կողմէ ցոյց տրուած ճկուն մատնահարումները եւ գիտակից ըմբռնումը իրենց նուագած կտորին, ինչ որ հաւաստիքը կը կազմէ իրենց դաշնակի Բրօֆէսէօրին՝ Օր. Նուարդ Տամատեանի կիրարկած ուսուցման հիմնական մեթոտին։

«Օտիսիօն»-ին առաջին մասը յատկացուած էր փոքրիկներու՝ որոնք յաջող կերպով նուագեցին դասական երաժշտագէտներու գործերէն պատառիկներ։ Յիշենք անոնցմէ Գլէր Մաճարը՝ որ համարձակօրէն մատնահարեց *Բօլքա* մը, Ալիտա Եկարեանը՝ որ իր մինինիկ մատներով քառաձեռն նուագահարում մը լրացուց իր ուսուցչուհիին հետ։ Սահուն կերպով նուագեցին՝ Ալիս Պարծանքեան, Աննի Շալճեան, Կարօ Պէյլէրեան, Հրայր Պօղուրեան, Միրէյլ Թավրիտաքիս, Մարօ Պօղիկեան, Կրազիա Վէնէդի, Նուարդ Շալճեան, Միհրան Թուրշուճեան, Պերճ Կիւլանեան, Սարգիս Սարգիսեան, Այտա Պէյլէրեան, Շաքէ Կարապետեան եւ Մարօ Մէրճանեան։

Փոքր դադարէ մը յետոյ՝ սկսաւ «Օտիսիօն»-ի երկրորդ մասը, ուր հետզհետէ դաշնակին առջեւ եկան նուագել աւելի չափահաս աշակերտներ, հրամցնելով մեզ՝ Շումանէն, Շօբէնէն, Հայտնէն, Ուէպէրէն եւ այլ դասական հեղինակներէ ընտիր կտորներ։ Այսպէս, առաւել կամ նուազ յաջողութեամբ նուագեցին՝ Մանուշակ Եանպէկեան, Լիւսի Տէր Օհաննէսեան, Անահիտ Քիւթնէրեան, Սեդա Սարուխան, Այտա Թահթաճեան, Մարի Մարավէլլի, Սիրվարդ Պօղոսեան, Արմինէ Քիւթնէրեան, Իրիս Նազաշեան, Էօժէն Բաբազեան, Արմինէ Մուրատեան։

Կարգը եկած էր Աստրա Մսրլեանի, որուն նուագահարումին կը սպասէինք անհամբեր՝ մեզ ծանօթ ըլլալով նախորդ տարիներու մէջ իսկ իր ի յայտ բերած երաժշտական խոր ըմբռնումը եւ ճկուն դաշնակահարումը։ Եւ արդարեւ ան չուշացաւ գալ եւ անգամ մը եւս ի յայտ բերել դաշնակահարումի իր բնատուր ձիրքը։ Իրեն վիճակուած էր նուագել Մօցարթի Քօնչէրթօ ան Րէ մինէօրի առաջին մուվըմանը, զոր տարաւ ինքնավստահ խոր ըմբռնումով, սահուն եւ ճկուն մատնահարութեամբ։ Նոյն կտորին երկրորդ մուվըմանով՝ առընթեր դաշնակի մը վրայ՝ կ'ընկերակցէր նոյն ինքն Օր. Նուարդ Տամատեան, լրացնելով ամբողջական եղանակաւորումը երաժշտական այդ գոհարին։ Երկու նուագահա-

րումներու համադրութիւնը՝ հոգեպարար մթնոլորտ մը ստեղծեց սրահին մէջ, հաճելի պահու մը ապրումը տալով ներկայ ունկնդիրներուն: Ջերմ ծափահարութիւններու մէջ վերջացաւ Աստրա Մուրլեանի նուագահարումը, եւ ներկաները յամառօրէն շարունակեցին ծափահարութիւնները՝ զինքը կրկին բեմ հրաւիրելով:

«Օտիսիօն»-ը վերջացաւ Նուպար Չօրպաճեանի Սօնաթի դաշնակահարումով, ուր ի յայտ եկաւ թէ Օր. Նուարդ Տամատեանի այս աշակերտն ալ օժտուած է երաժշտական խոր ըմբռնումով եւ ինքնավստահ նուագահարումով:

Շնորհաւորելի է Օր. Ն. Տամատեան իր ձեռք բերած այս փայլուն արդիւնքին համար:

*Սաւառնակ*, 25 Մայիս 1946, 28-րդ տարի, թիւ 25, էջ 6

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԳԵՂԵՑԻԿ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Կը հիանամ ներդաշնակութեանը վրայ այն կառուցող կեանքերուն՝ որոնք միշտ նոյն ուղղութեամբ կը բարձրանան, եւ այն էակներուն՝ որոնք իրենց ամբողջ կեանքին ընթացքին կը նուիրուին նո՛յն դատին: Ընտրանիին պատկանող այդ էակները իրենց գոհացումը կը գտնեն իրենց սեփական աշխատանքին մէջ: Օրիորդ Նուարդ Տամատեան անոնցմէ է:

Ամենօրեայ, ապերախտ ու կլանող ճիգերէ կազմուած իր ջանադիր կեանքին մէջ, ամէն տարի լոյս մը կը շողայ մասնայատուկ փայլով մը: Իրեն համար ուրախութեան եւ հպարտանքի առիթ մըն է՝ մեզի ներկայացնել արդիւնքները՝ մանկունակ հոգիներ ձեւակերպելու իր համբերատար աշխատանքին:

Բայց այս տարի Օր. Տամատեան ունեցաւ ուրիշ մեծ ուրախութիւն մըն ալ - ամբողջ մէկ ամիս՝ Գահիրէ ներկայութիւնը բրօֆէսէօր Աքքատի Քուկէլի: Երաժըշտական այս ուժգին խառնուածքին ասուպային ա՛նցքն էր արդեօք որ աշակերտներուն ներշնչեր էր այդ խանդն ու այդ պարկեշտ աշխատանքը: Իրողութիւնն այն է, որ այս տարուան ունկնդրութիւնը ե՛ւս գերազանց եղաւ նախորդներէն: Ուրեմն, իրագործուած յառաջդիմութիւնը մեզի թոյլ կու տայ սովորականէն աւելի խիստ ըլլալ. ասիկա նպաստել լոկ կրնայ ընդհանուր մակարդակին ե՛ւս աւելի բարձրացման:

Կատարելապէս կ'ըմբռնեմ թէ ի՛նչքան դժուար է ընտրել կտորը, որ պէտք է պատշաճի աշակերտին կարողութեան եւ խառնուածքին. հետեւաբար, միայն սկզբունքի համար է որ հոս կը նշեմ թէ Պորոտինի *Վանքին մէջ*ը կը պահանջէ խորհրդազգաց խառնուածք, զօրութիւն եւ *փէտալ*ի ազդեցութիւններուն խոր ծանօթութիւնը՝ արտայայտելու համար կտորին խստամբեր վեհութիւնը. այս յատկութիւնները կարելի չէ պահանջել դեռատի Մառի Մարավէլլիէն:

Ընդհակառակն, ի՛նչքան բարեդէպ էր Չայքովսքիի *Արտոյտին երգ*ին ընտրու-

թիւնը՝ Նուարդ Շալճեանի համար, որ մեզի կատարելապէս տուաւ տպաւորութիւնը թեթեւ արտոյտի մը որ զոյգ մը ձայնախազ կը փորձէ. այս կերպով ան փոխարինեց *Հնձուորին երգ*ին քիչ մը չոր նուագումը։

Ըստ տարիքի եւ յառաջացումի իրենց նմանութիւններուն, աշակերտները պիտի բաժնեմ զանազան խումբերու։

Պատիւ ընենք շնորհին. նախ՝ կրտսերագոյններու խումբը՝ ուր Ալիս Պարծանքեան, Ալիտա Եկարեան եւ մանաւանդ համարձակ ու «մեծ տիկին» Քլէր Մաճառ, իրենց նուագածութեան ճշդութեամբ եւ երբեմն երաժշտութեան ապշեցուցիչ հասկացողութեամբ մը, մեզի ապացուցին թէ ի՜նչ խոշոր առաւելութիւն ունի այն մանուկը որուն երաժշտական դաստիարակութիւնը շատ կանուխ սկսած է։

Նոյնպէս, հակառակ իրենց դեռատի տարիքին, ինքնավստահութիւն կը գտնենք Հրայր Պողուրեանի մօտ, նկարագիր՝ Աննի Շալճեանի մօտ, եւ զգացում՝ Կարօ Պէյլէրեանի մօտ։

Ուրիշ խումբի մը մէջ, մասնաւոր ուշադրութիւն գրաւեց Պերճ Կիւլանեան իր ուղիղ ու խոստումնալի նուագածութեամբ. սքանչելի կշռոյթով մը ան մեզի տուաւ Մոցարթի Սոնաթ ան տօին առաջին շարժումը։

Միհրան Թուրշուճեանի երանգաւոր նուագը ցոյց կու տայ զգայուն խառնուածք մը. ցաւալի է որ ան կարող չէ աւելի կեդրոնանալ։

Կրացիա Վէնէթի ունի մաքուր եւ լաւ երանգաւորուած նուագածութիւն մը։ Մարօ Պողիկեան լաւագոյն էր ֆորթիսիմօներուն մէջ, քան բիանիսիմօներուն՝ ուր որոշ տատանում մը զգալի էր։

Սարգիս Սարգիսեան լաւ աշակերտ մըն է որ կանոնաւոր կերպով կը յառաջդիմէ։ Նոյնպէս ջանադիր աշակերտ մը ըլլալ կը թուի Միռէյ Թավրիտաքիս. իր *Մընիւէ*ն, սակայն, պիտի շահէր եթէ աւելի կշռութաւոր ըլլար։

Շաքէ Կարապետեան եւ Ալիս Պէյլէրեան պէտք է ձգտին աւելի յստակութիւն տալու իրենց նուագումին։ Գալով Մարօ Մէրճանեանի, ան բաւարար այլազանութիւն չի դներ կշռոյթին եւ երանգին մէջ, թէեւ տեղ-տեղ իր *Մազուրքա*ն լաւ շեշտուած էր։

Երրորդ խումբ մը, աւելի յառաջացած աշակերտներու խումբը, կը պարունակէ տարրեր որոնք կրնան լաւ արդիւնքներ տալ։ Կ'ուզեմ ակնարկել Անահիտ Քիւթնէրեանի, տէր՝ յստակ եւ ըմբռնող նուագածութեան մը, իր քրոջ Արմինէի՝ որ նուագեց Հէլլէրի մէկ *Թարանթէլ*ը լաւ շեշտաւորումով, Այտա Թահթաճեանի՝ որ հաճելի հպում մը ունի, Սիրվարդ Պօղոսեանի՝ որ թարմութեամբ ու թեթեւօրէն նուագեց Կրիկի *Գարնան*ը։

Իրիս Նագաշեան դարձեալ յառաջդիմած է։ Սքարլաթթիի երկու սոնաթներուն մէջ, զորս ան նուագեց պայծառ եւ ժուժկալ կերպով (2-րդը աւելի լաւ քան առաջինը), ան կրցաւ խուսափիլ չորութենէն, որ այդ երգահանին դժուարութիւնը կը կազմէ։ Առ առաւելն, թերեւս կարելի պիտի ըլլար բաղձալ հպումի աւելի թեթեւութիւն։

Այսօրուան Սեդա Սարուխանը ո՜րքան տարբեր է երկու տարի առաջուանէն։ Իր յառաջդիմութիւնը թոյլ տուաւ որ Իպէրի *Պզտիկ ճերմակ էշը* մեզի տայ զգացումով եւ ըմբռնումով, պատուաբեր ձեւով մը որ սակայն պիտի կրնար

դիմանալ աւելի քմայքի եւ գոյնի. բայց չափազանց պահանջկոտ չըլլանք:

Լիւսի Տէր Օհաննէսեան այս տարի մեզի ցոյց կու տայ նուագումի լաւագոյն ըմբռնում մը. Քուբբրէնի Քոյր Մոնիքին հնօրեայ ոգին լաւ կրցաւ տալ ան:

Մանուշակ Եանպէկեան կու տայ այն տպաւորութիւնը թէ խղճմտօրէն կ'աշխատի. ան պէտք է ձեռք ձգէ լաւագոյն կշռոյթ մը եւ աւելի յստակ մատնախաղ մը:

Էօժէն Բաբազեան պէտք չէ թերագնահատէ նուագածումին կարեւորութիւնը. իր նուագումին մէջ կը յայտնուի որոշ զգացում մը, բայց կարծես քօղով մը ծածկուած:

Վերջաւորութեան պահեցի այն երեք աշակերտները, որոնք Օր. Տամատեանի համար բարոյական գոհունակութեան աղբիւր պէտք է ըլլան, ինչպէս որ հանրութեան համար արուեստագիտական անխառն հաճոյքի աղբիւր եղան: Անոնք են՝ Աստղիկ Մարլեան, Նուպար Չորպաճեան եւ Արմինէ Մուրատեան:

Այս վերջինը, որուն բացակայութեան համար ցաւած էինք անցեալ տարի, մեզի կը վերադառնայ իր բոլոր յատկութիւններով - սքանչելի մատնախաղ, ճկուն եւ ըմբռնող նուագում, գեղեցիկ հնչականութիւն: Ծանր մասերուն մէջ քիչ մը աւելի յստակութեամբ, ան բոլորովին փայլուն եղած պիտի ըլլար Վէպէրի *Ռոնտօ պրիյան*ին մէջ:

Պէթովէնի *Բաթէթիք* Սոնաթին մէջ, որ շատ դժուար կտոր մըն է եւ մանրակրկիտ պատրաստութիւն կը պահանջէ, Նուպար Չորպաճեան ի յայտ բերաւ յատկութիւններ զոր կը սիրենք իր մօտ - երաժշտականութիւն, հնչականութիւն, զօրութիւն, ըմբռնում: Սկզբնաւորութեան ծանր մասը պիտի շահէր եթէ աւելի նկարագրով նուագուէր, բայց ալլէկրօն լաւ սկսաւ եւ յաջողութեամբ շարունակուեցաւ: Չորպաճեան շատ օժտուած է. քանիցս ըսած ենք ասիկա: Ան ձեռք ձգած է նաեւ ինքնավստահութիւն: Բայց պէտք չէ երբեք մոռնալ թէ ամենէն օժտուած անձերն իսկ պէտք է խիստ կարգապահութեան մը հետեւին՝ շօշափելի արդիւնքներու հասնելու համար:

Գալով Աստղիկ Մարլեանի, որուն երաժշտական խառնուածքը կը հաստատուի տարուէ տարի, անվերապահ գովեստ կը պարտինք իրեն: Մոցարթի շատ գեղեցիկ Concerto en ré mineur-ին մէջ, որ տկարացումի չի դիմանար, ան գիտցաւ փոխնիփոխ մեզ հմայել իր հպումին փափկութեամբը եւ մեզ թրթռցնել իր շեշտերուն հզօրութեամբը: Ընկերակից դաշնակին վրայ Օր. Տամատեանի հիանալի օժանդակութեամբը, ան՝ իր մարգարտային նուագումով, իր մեծ զգայնութեամբ, եւ իր ըմբռնողութեամբ՝ մեզի տուաւ նոյն հաճոյքը զոր պիտի տար հասուն դաշնակահար մը:

Գեղեցիկ հնչականութիւն ունեցող այս կտորով, որ աշխուժութեամբ նուագուեցաւ, պիտի ուզէինք որ վերջանար այս ունկնդրութիւնը, որ իր վերջին մասին մէջ ճշմարիտ նուագահանդէսի մը կերպարանքը առաւ:

*Արեւ*, 28 Մայիս 1946, ԼԲ. տարի, թիւ 8343, էջ 2. 29 Մայիս 1946, ԼԲ. տարի, թիւ 8344, էջ 2

## ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ, ԳԱՀԻՐԷ

## ԿԻՐԱԿԻ, 10 ՆՈՅԵՄԲԵՐ 1946

## ԵՂԱՆԱԿԻ ԲԱՑՄԱՆ ՄԵԾ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ՋԱԶԻՐԷ

# ԵՂԱՆԱԿԻ ԲԱՑՄԱՆ ՄԵԾ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ԿԻՐԱԿԻ, ~~27 [illegible]~~ 10 [illegible]. 1946, Կ.Վ. ԺԱՄԸ ՃԻՇԴ 6ԻՆ

# "ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅ"

## ՅԱՅՏԱԳԻՐ

1.— ԼՈՒՉԻԱ ՏԻ ԼԱՄԷՐՄՈՒՐ ՏՕՆԻՋԷԹԹԻ

ա) Զուգերգ . . . . . ՕՐ. Գ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ / Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

բ) Մեներգ . . . . . ՕՐ. Գ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

գ) Մեներգ . . . . . Պ. Ա. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

2.— ա) ՍՕՆԱԹ Թիւ 3

Լարկօ եւ ալլէկրօ ՎԻՎԱԼՏԻ

բ) ԱՐԻԱ ՏԻ ՔԻԷՋԱ ՍԹՐԱՏԷԼԼԱ

Թաւջութակ . . . . ԲԺ. Լ. ԵՓՐԵՄԵԱՆ

Դաշնակի ընկ. . . . Պ. ԵՓՐԵՄԵԱՆ

3.— ԶՈՅԳԵՐԳ . . . . . . ՕՐ. Զ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ / Պ. Լ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ

4.— ԹՕՔԱԹԹԱ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

Դաշնակ . . . . . ՕՐ. Ն. ՏԱՄԱՍԵԱՆ

**

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

(Զուարթ կատակերգութիւն 1 արար)

Մասնակցութեամբ՝ Տիկ. Շ. Իփէքեանի, Ա. Պօյաճեանի, Օրդ. Հ. Առաքելեանի եւ Ա. Պետրոսեանի:

Ղեկավար՝ Վ. Պօյաճեան Յուշարար՝ Ա. Զօրպաճեան

**

## ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ԾԱՆՕԹ — Կը խնդրուի այս Յայտագիրը միասին բերել հանդէսին:
Դռները կը գոցուին ժամը ճիշդ 6ին եւ կտորներու գործադրութեան ընթացքին:

[illegible]

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍԸ
(հատուած)

Մ. Պ.

Այն երաժշտական յայտագիրը կ՚աւարտէր ակնկալուած փայլով եւ շուքով. պրկուած անհամբերութեամբ մը կը սպասուէր վերջապէս ըմբոշխնել մեր մեծանուն սովետահայ վարպետ Ա. Խաչատուրեանի *Թօքաթթա*ն, որուն այնքան արժանաւոր եւ հարազատ թարգմանը հանդիսացաւ յայտնի դաշնակահարուհի Օր. Ն. Տամատեան: Ստեղնաշարի վրայ զարնուած ամէն մի նօթ իր իմաստն ունէր կարծես եւ կը խօսէր ամէն սրտի, մանաւանդ Հայու սրտի, քանի որ ան կը բխէր հայ հանճարէն եւ կ՚արտայայտուէր նոյնպէս տաղանդաւոր հայ մատներով: Կտորը վերջանալուն, խանդավառ ծափողջոյններ ստիպեցին Օր. Ն. Տամատեանը անգամ մը եւս նուագելու զայն:

*Արեւ*, 21 Նոյեմբեր 1946, ԼԲ. տարի, թիւ 8491, էջ 2

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 10 ՄԱՅԻՍ 1947

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
## ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

**Mlle. Nevarte Damadian**

*Oriental Hall (Université Américaine)*

*12, Rue Sultan Hussein - Le Caire*

*Samedi, le 10 Mai 1947 à 5 h. 15 p.m.*

*Le Programme tient lieu d'Invitation*

| | | |
|---|---|---|
| *Alice Kardachian* | 4 mains | Wohlfahrt |
| *Hrayr Boghourian* | | |
| *Claire Madjar* | Ecossaise | Hummel |
| *Roubina Tchékidjian* | 4 mains | Beyer |
| *Anahid Tchékidjian* | | |
| *Alida Yégarian* | Rondo | Clementi |
| *Annie Chaldjian* | Rondo de la 2me Sonatine | Clementi |
| *Garo Beylerian* | Rondo-vivace | Kulhau |
| *Mireille Tavridakis* | Ballade | Burgmüller |
| *Hrayr Boghourian* | 5me Sonatine (1er mouv.) | Clementi |
| *Elise Tokatlian* | Valse Favorite | Mozart |
| *Maro Boghiguian* | Solfeggietto | Ph. Em. Bach |
| *Grazia Veneti* | Sonate en do maj. (1er mouv.) | Haydn |
| *Nevarte Chaldjian* | Valse No. 10 en si min. | Chopin |
| *Aïda Beylerian* | Pour Elise | Beethoven |
| *Chaké Garabedian* | 2me Barcarolle | Mendelssohn |
| *Berdj Gulanian* | Bagatelle en mi bem. maj. | Beethoven |

*Maro Merdjanian* . . Scherzo en si bem. maj. . Schubert

*Mehry Gharib* . . . 1ère Barcarolle . . . . Mendelssohn

*Lucie Der-Ohannessian* 2 Mazurkas . . . . . Chopin

*Marie Hovélian* . . Valse No 6 en ré bem. maj. Chopin

*Anahid Kutnérian* . . Passacaille . . . . . Haendel

*Seta Saroukhan* . . Golliwogg's cake-walk . . Debussy

*Aïda Tahtadjian* . . Finale de la Sonate en fa Mozart

*Marie Maravelli* . . Caprice op. 16 No. 2 . . Mendelssohn

*Sirvart Boghossian* . Chanson de printemps . Mendelssohn

*Arminé Mouradian* . Concerto No 2 en si bem. maj. Beethoven

(1er mouv.)

au 2e Piano d'accompagnement : *Mlle. N. Damadian*

*Noubar Chorbajian* . Concerto No 3 en do min. Beethoven

(1er mouv.)

au 2e Piano d'accompagnement ; *Mlle. N. Damadian*

# ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Չորս տարի յաջորդաբար հետեւելով նոյն աշակերտներուն, մարդ աւելի լաւ կ՚ըմբռնէ ուսուցչուհիին բաժինը անոնց յառաջդիմութեան մէջ:

Ուսուցչութիւնը ասպարէզ մըն է որ ամբողջովին անձնուրացութիւն եւ անձնազոհութիւն է: Այդ պաշտօնը վարելու կրնան յաւակնիլ միայն անոնք՝ որ իբրեւ օծում մը կրնան ընդունիլ անոր դժուարին պարտադրանքները. անո՛նք միայն կրնան ձգտիլ շօշափելի արդիւնքներու: Օր. Նուարդ Տամատեան կը պատկանի այդ ընտրանիին. ան ո՛չ իր յոգնութիւնը, ոչ ալ իր ժամանակը կը խնայէ իր աշակերտներու կարելի եղածին չափ ամբողջական կազմութեան համար:

Այլուր պէտք չէ փնտռել գաղտնիքը բարձր մակարդակին այս նուագահանդէսին, ուր աշակերտները - ի՛նչ ալ ըլլայ յառաջացումի իրենց աստիճանը - միշտ ի յայտ կը բերեն լաւ թէքնիք մը:

Ի՞նչ ըսել կրտսերագոյններուն մասին. պէտք է հիանալ միայն, որ այդ տարիքին՝ հազիւ իրենց այբուբէնը սորված՝ անոնք կարող են - իրենց պզտիկ գիրուկ, դեռ անատակ մատներով - մեզի երաժշտութիւն նուագել, եւ այն ալ՝ յիշողութեամբ: Ալիս Գարտաշեան, Գլէր Մաճառ, Չէքիճեան քոյրերը, Ալիտա Եկարեան եւ Աննի Շալճեան մեզ դիւթեցին իրենց մանկական շնորհով, իրենց ջանադիր աշխատանքով եւ յաճախ՝ կշռոյթի իրենց իրական իմացութեամբ:

Օր. Տամատեան ամէն տարի կը յաջողի մեր մէջ արթնցնել վերանորոգուած հետաքրքրութիւն եւ մեզի պատճառել հաճելի անակնկալներ:

Այս տարուան յայտնութիւնը եղաւ անվիճելիօրէն Կրացիա Վէնէթի, որ երեք տարիէն նուազ ուսումնաշրջանի մը մէջ շանթահարիչ յառաջդիմութիւն կատարած է: Արդէն իսկ ջինջ թէքնիքով, ան՝ իր երանգաւորուած նուագումով եւ կշռոյթի իր ընդոծին ծանօթութեամբ՝ ի յայտ կը բերէ մասնաւորապէս շեշտուած երաժշտական խառնուածք մը: Հայտնի Սօնաթ տօ մաժէօրը իրական հաճոյք պատճառեց մեզի:

Ուրիշ աշակերտուհի մը, որ նոյնպէս մեծ յառաջդիմութեան մէջ է եւ որմէ շատ բան սպասելու իրաւունք ունինք, Անահիտ Քիւթնէրեանն է, որ ունի ամուր, լաւ կառուցուած, հզօր եւ գեղահնչիւն նուագում: Հէնտըլի *Բասաքայ*ը ան գործադրեց վստահութեամբ եւ ըմբռնումով:

Եւ արդէն, օժտուած տարրերը չեն պակսիր: Այսպէս, Մարօ Պօղիկեան, ջղայնոտ նուագումի եւ սքանչելի մատնահպումի տէր, գիտցաւ ճկունութեամբ տալ Ֆ. Է. Պախի *Սօլֆէճիէթթօ*ն, Նուարդ Շալճեան՝ վալսի գեղեցիկ շարժումի մը մէջ՝ ցոյց կու տայ զգայուն եւ երանգաւոր նուագում. Պերճ Կիւլէնեան՝ խելացի գործադրութեամբ մը՝ աւելի քան պատուաւոր դուրս եկաւ կտորէ մը, որ թէեւ թէքնիք մասնաւոր դժուարութիւններ չէր ներկայացներ, սակայն կը պահանջէր երաժշտական խոր ըմբռնողութիւն:

Անոնց պէտք է աւելցնել Հրայր Պօղուրեանը, որ ունի մաքուր եւ լաւ երանգաւորուած նուագում, եւ աւելի յառաջացած աշակերտներուն մէջ՝ Սիրվարդ Պօղոսեանը՝ որ ունի մատնահարումի խիստ հաճելի մեղմութիւն, եւ Այտա Թահթաճեան՝ որ պայծառութեամբ մեզի տուաւ լաւ Մոցարթ, դասական շունչով:

Այտա Պէյլէրեան եւ Շաքէ Կարապետեան կը նուագեն զգացումով: Առաջինը,

թեթեւ հպումով եւ վայելուչ թէքնիքով, յաջողեցաւ մեզի ճաշակել տալ Պէթովէնի *Էլիզի համարը*. իսկ երկրորդը յաջողութեամբ արտայայտեց Մէնտէլսոնի երկրորդ *Պարքարոլ*ին կարօտալի քաղցրութիւնը:

Սեդա Սարուխան իր լաւագոյնը ըրաւ գործադրելու համար Տըպիւսիի դժուարին *Golliwogg's Cakewalk*-ը, որ երգիծանք եւ երաժշտական յառաջացած կազմութիւն կը պահանջէ:

Մասնաւորաբար սիրեցի Լիւսի Տէր Օհաննէսեանի նուրբ հպումը՝ պարային վայելուչ ընթացքով, որ ա յնքան թեթեւասուն շնորհ տուաւ Շօբէնի մազուրքաներուն: Հաճոյքը ամբողջական պիտի ըլլար եթէ չըլլար այն վարանումը որ կը զգացուի նուագումին մէջ:

Մառի Մարավէլլի ի յայտ բերաւ երաժշտականութիւն եւ լաւ գործադրութիւն. իրեն պիտի մաղթէինք քիչ մը աւելի ինքնավստահութիւն:

Կարօ Պէյլէրեան նուագեց բաւական վստահութեամբ եւ լաւ շարժումով մը: Միռէյ Թավրիտաքիս, թէեւ վարանոտ թէքնիքով, յառաջդիմութիւն կատարած է:

Նորեկներ՝ Մէհրի Կարիպէ եւ Էլիզ Թոքաթլեանէ աւելին կը սպասենք յառաջիկայ տարի, որովհետեւ անոնք լաւ աշակերտներ կը թուին: Բայց Մարօ Մերճանեան եւ Մարի Յովելեան պէտք է աշխատին ձեռք ձգելու համար նուազագոյն յստակութիւն մը. երկրորդը սակայն ունի կշռոյթի ճիշդ իմացողութիւն:

Անցողակի նշենք, ափսոսալով, Ասթրա Մարլեանի բացակայութիւնը յայտագրէն - ուսուցչուհիին անձնուրացութեան ոգիին մէկ ուրիշ երեւոյթը:

Կը հասնինք հաւաքոյթին գլխաւորագոյն կէտին - Պէթովէնի երկու քօնչէրթօները, որոնց մէջ Օր. Տամատեան տիրականօրէնստանձնեց ընկերակցութեան դաշնակը եւ որոնք արուեստագիտական վայելք մը եղան ունկնդիրներուն համար:

Արմինէ Մուրատեան, յայտնապէս յուզուած, քաղցրութեամբ ու նրբութեամբ նուագեց Սի պէմոլ մաժէօր թիւ 2 Քօնչէրթօն. իր պայծառ եւ մարգարտային նուագումը, երանգի իր ըմբռնումը եւ երկու դաշնակներու կատարեալ միասնականութիւնը՝ այս քօնչէրթօն վերածեցին յաջողութեան մը:

Գալով Նուպար Չօրպաճեանի, ան մեզի բոլորովին մոռցուց թէ աշակերտներու ունկնդրութեան մը ներկայ կ'ըլլայինք: Իր ջղայնոտ եւ լաւ զգացուած նուագումով, փոխն ի փոխ հզօր եւ նուրբ, միշտ պայծառ եւ գեղեցկահնչիւն, կշռոյթի հիանալի իմացութեամբ ան կրցաւ Տօ մինէօր թիւ 3 Քօնչէրթոյին իր նուագին տալ ջերմութիւն մը եւ եղերական շեշտ մը, որոնք զօրաւոր յուզում առթեցին մեզի: Պիտի չխնայեմ գովեստներս իրեն նկատմամբ մանաւանդ անոր համար՝ որ այս ձմեռ իր նուագումներուն ընթացքին ան քիչ մը յուսախաբ ըրած էր մեզ: Կը թուի թէ ան հասկցած է թէ յարատեւ եւ լաւ ղեկավարուած աշխատանք մը անհրաժեշտ է բարձր արդիւնքներ ունենալու համար, նոյնիսկ եւ մանաւանդ երբ մարդ տաղանդ ունի, որովհետեւ աններելի պիտի ըլլար անհոգութեամբ վատնել բնութեան շնորհած ձիրքը:

Բայց օրուան ճշմարիտ յաղթականը եղաւ ան՝ որուն ոգեկան ներկայութիւնը երբեք չդադրեցաւ զգալի ըլլալէ - Օր. Նուարդ Տամատեան, որ ունի այն անգնահատելի յստակութիւնը որ լաւ ուսուցչի մը յստակութիւնն է՝ աշակերտէն ձեռք ձգել առաւելագոյնը:

*Արեւ*, 21 Մայիս 1947, ԼԳ. տարի, թիւ 8642, էջ 2. 22 Մայիս 1947, ԼԳ. տարի, թիւ 8643, էջ 2

## ՓՈՔՐԵՐՈՒ ԺԱՄԸ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այսօր, Հինգշաբթի 29 Մայիս, երեկոյեան ժամը 6.30-ին, եգիպտական ձայնասփիւռի *Փոքրերու ժամ*ուն դաշնակի վրայ պիտի նուագեն Օր. Ն. Տամատեանի դեռատի աշակերտներէն փոքրիկներ Ալիտա Եկարեան, Քլէր Մաճար, Աննի Շալճեան եւ Հրայր Պօղուրեան։

*Արեւ*, 29 Մայիս 1947, ԼԳ. տարի, թիւ 8649, էջ 2

## ՄԵՐ ՎԱՂՈՒԱՆ ՅՈՅՍԵՐԸ ՊԵՏԱԿԱՆ ՌԱՏԻՕԿԱՅԱՆԷՆ

Հաճոյքով կ՛արձանագրենք որ Պետական Ռատիօկայանի Հինգշաբթի օրերու փոքրերուն վերապահուած յայտագրին կը մասնակցին նաեւ Բրօֆ. Օր. Ն. Տամատեանի դասընթացքին հետեւող երեք աշակերտուհիներ՝ դաշնակի վրայածելով այն մանկական կտորները որոնք «ունկնդրութեան» տարեկան հանդիսութեան ընթացքին ալ նուագուած են։

Այսպէս, այս հինգշաբթիի (ժամը 6.30-7) յայտագրին մաս կազմելով նուագեց՝ Նուարդ Շալճեան *La Journée d'un enfant*-ը Կրէչանինօֆէն, իսկ յառաջիկայ հինգշաբթիներուն, նոյն պահերու յայտագրով պիտի իմանանք Վերոնիկ Սարգիսեանը՝ որ պիտի նուագէ *Les Plaintes d'une poupée* Սէզար Ֆրանքէն եւ Կրացիա Վէնէթի՝ *Le Petit âme blanc* Իպէրէն։

Մանկահասակ դաշնակահարուհիներու այս ելոյթը, որ արդիւնքն է իրենց ջանասիրութեան, թելադրական է իրենց տարեկիցներուն համար, որով եւ արժանի մեր ջերմ գնահատանքին։

*Արաքս*, 4 Յունիս 1949

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 12 ՅՈՒՆԻՍ 1948

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

Samedi, le 12 Juin 1948, à 5 h. 15 p.m.

Le programme tient lieu d'Invitation

| Performer | Piece | Composer |
| --- | --- | --- |
| *Ch. Khatchadourian* | Etude | Beyer |
| *Berdj Artinian* / *Madeleine Artinian* | 4 mains | Wohlfahrt |
| *Hagop Samsonian* | Marche militaire | Schumann |
| *Alice Kardachian* | Landler | Steibelt |
| *Roubina Tchékidjian* | Sonatine en sol maj. | Beethoven |
| *Anahid Tchékidjian* | 3e Sonatine (1er mouv.) | Clementi |
| *Annie Chaldjian* | Rondo | Diabelli |
| *Mireille Tavridakis* | Danse des Sylphes | Grieg |
| *Garo Beylerian* | Sœur Monique | Couperin |
| *Hrayr Boghourian* | Sonate en do maj. (1er mouv.) | Mozart |
| *Elise Tokatlian* | Valse | Beethoven |
| *Sarkis Hovélian* | Sonate en sol maj. (1er mouv.) | Beethoven |

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| *Maro Boghiguian* | Gavotte et Musette | Bach |
| *Nevarte Chaldjian* | Nocturne | Grieg |
| *Aïda Beylerian* | Le coucou | Daquin |
| *Chaké Garabedian* | Menuet en si bem. maj. | Mozart |
| *Berdj Gulanian* | 2e Nocturne | Chopin |
| *Mehry Gharib* | Sonate en sol maj. (1er mouv.) | Mozart |
| *Marie Hovelian* | Rondo en ré maj. | Mozart |
| *Seta Saroukhan* | Invention | Bach |
| | Sonate | Scarlatti |
| *Mme. S. Basmadjian* | Gazouillement de printemps | Sinding |
| *Aïda Tahtadjian* | Sonate op. 2 No. 1 (1er mouv.) | Beethoven |
| *Marie Maravelli* | Arabesque | Schumann |
| *Marie Maravelli* / *Aïda Tahtadjian* | Polonaise en la maj. (4 mains) | Chopin |

# ԲՐՈՖ. ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Ս. Շ.

Շաբաթ երեկոյ, 12 Յունիս, Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահին մէջ տեղի ունեցաւ դաշնակի հանրածանօթ ուսուցչուհի բրօֆ. Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն նուագի տարեկան ունկնդրութիւնը: Ծնողքներու եւ հետաքրքիր երաժշտասէրներու հոծ բազմութիւն մը շատ կանուխէն փութացած էր իր ներկայութեամբը պատուել եւ քաջալերել աշակերտական այս գողտրիկ հանդիսութիւնը, որ, ինչպէս յայտնի է, ամէն տարի կանոնաւոր կերպով կը սարքուի եւ առիթը կու տայ հայ ծնողներուն, որպէսզի գնահատելով երաժշտութեան բարերար ազդեցութիւնը մանուկներու հոգեւոր եւ մտաւոր վիճակին վրայ, գիտնան զայն օգտագործել որպէս դաստիարակչական շատ թանկագին եւ ազդու միջոց, ի նպաստ իրենց փոքրիկներուն կրթութեան ու յառաջդիմութեան:

Եւ ուրախ ենք, որ բաւական կարեւոր թիւով ծնողքներ, գիտակից այս ճշմարտութեան, իրենց զաւակները շատ փոքր հասակէն կը յանձնեն կարող մասնագէտներու, որոնց շարքին, որպէս ուսուցանող-մանկավարժ երաժշտագիտուհի, ապահովաբար Օր. Տամատեան կը գրաւէ առաջնակարգ տեղ մը:

Բրօֆ. Տամատեանի երկսեռ աշակերտութիւնը կարելի է բաժնել, համաձայն յայտագրին, երեք դասերու. փոքրիկներ, պատանեակներ եւ չափահասներ, որոնք ըստ կարգի եւ պատրաստութեան յաջորդաբար բեմ գալով, նուագեցին իրենց սահմանուած կտորները, բոլորն ալ դասական հոյակապ դէմքերու ստեղծագործութիւններ, որոնց նուագումը կը պահանջէ շատ մը յատկանիշեր, ինչպէս սուր յիշողութիւն, ըմբռնողութիւն, ճարտարութիւն եւն.:

Այսպիսի խստապահանջ յայտագրի մը գործադրութեանը հետեւելու գացած էինք այդ երեկոյ եւ մեծ եղաւ մեր զարմանքը հաստատելով աշակերտութեան անսպասելի յաջողութիւնը եւ յառաջդիմութիւնը, որոնք իրագործուած են շնորհիւ իրենց տքնաջան ուսուցչուհիին անսահման նուիրումին եւ հոգածութեանը, որոնց կը միանայ նաեւ մանկավարժական խոր գիտակցութիւն եւ ձեռնհասութիւն, առաջնորդել կարենալու համար այսքան այլազան տարիքով եւ խմորով աշակերտներ, եւ անոնցմէ պատրաստելու յաճախ շատ կարող նուագողներ ինչպէս եւ երեւան հանելու այն տաղանդները, որոնք կը սպասեն մոգական ձեռքի մը հպումին, յայտնուելու եւ փայլելու համար: Հետեւինք ուրեմն յայտագրին:

Ահաւասիկ փոքրիկներու շքախումբը, 5-6 տարեկան նուագողներ, որոնք ինքնավստահ քալուածքով, վճռական շարժումով եւ իրենց ընելիքին գիտակցու-

թիւնը ունեցող արուեստագէտներու նման դէպի դաշնակ կը յառաջանան, զիրենք ծափողջունողներուն գեղարուեստական նախաճաշիկ մը հրամցնելու մանկական անմեղ յաւակնութեամբ։ Ու հազիւ վերջացուցած իրենց նուագը, ահաւասիկ ջերմագին ծափեր կը թնդացնեն սրահը՝ գնահատելով այսպէս այդ փոքրիկ վարպետներուն անսխալական յիշողութիւնը, ճիշդ նուագծութիւնը, վայելուչ նիստն ու կացը։

Եւ ըսել թէ այդ փոքրիկները՝ Արթինեաններ (քոյր-եղբայր), Սամսոնեան եւ Խաչատուրեան, հազիւ քանի մը ամսուան աշակերտներ են տակաւին։ Բայց ինծի համար նոյնքան գնահատելի է սա եօթնամեայ քնքոյշ Ալիսը, որ ստեղնաշարին առջեւ շուարումի պահ մը ունենալէ վերջ, յաջողեցաւ անմիջապէս եւ առանց իր ուսուցչուհիին օգնութեանը, ապաւինելով միա՛յն իր պայծառ յիշողութեանը, վերագտնել իր ուղին եւ յաջողութեամբ աւարտել իր նուագը։

Ահաւասիկ քիչ մը աւելի մեծերը որոնցմէ յիշենք Ռուբինա Չէքիճեանը, շատ յաջող իր Պէթհովէնեան նուագովը. քոյրը՝ Անահիտ, եւ մանաւանդ Հրայր Պօղոսեան՝ 12 տարեկան շնորհալի պատանեակ, որ գնահատուեցաւ իր Մօցարթեան հնչեակին նուագումովը. Կարօ Պէյլէրեան, յաջող Քոյր Մօնիքի նուագածութեանը մէջ, եւ Սարգիս Յովէլեան, դեռ տարուան մը աշակերտ միայն, որ գիտցաւ Պէթհովէնի մէկ հնչեակը գնահատելի ճշգրտութեամբ արտայայտել։

Անի Շալճեանի շատ յաջող *Ռօնտօ*յէն վերջ, ահաւասիկ հոյլ մը քաջ նուագողներու որոնցմէ յիշենք Մարօ Պօղիկեան, Այտա Պէյլէրեան, Սեդա Սարուխան, Պերճ Կիւլանեան որոնք զիրար գերազանցող յաջողութեամբ հանդէս եկան։ Առանձնապէս գրաւիչ էր 14 տարեկան Նուարդ Շալճեանի *Գիշերային*ը (Կրիկ). մեծ հաճոյքով ունկնդրեցինք Տիկին Պասմաճեանի *Գարնանային*ը (Սէնտինկ) որ գնահատելի ճարտարութեամբ նուագուեցաւ։

Իսկ անակնկալ մը եղաւ Օր. Կրացիա Վէնէտիի նուագը (Պէթհովէնի *Վեց վարիասիօններ*ը), նոյնպէս Մառի Մառավէլլիի *Արապէսք*ը եւ Օր. Այտա Թահթաճեանի Պէթհովէնեան նուագը, որոնք մեզի պատճառեցին գերազանց հրճուանք եւ գեղարուեստական իրական վայելք։

Վերոյիշեալ նուագներուն ունկնդրութենէն վերջ, հաւաքոյթը վերջ գտաւ ընդհանուր խանդավառութեան մէջ եւ բոլոր ծնողքներն ու արուեստասէրները փութացին իրենց շնորհակալութիւններն ու հիացումը յայտնելու Բրօֆ. Օր. Տամատեանի, որուն համբերատար շունչին տակ Գահիրէի հայ նոր սերունդը հետզհետէ աւելի մեծ թիւով մը կը մարզուի երաժշտական արուեստին մէջ։ Մաղթենք որ հայ ծնողքներ, մանաւանդ հայ մայրեր գիտնան առաւել եւս գնահատել այս արժէքաւոր եւ տաղանդաւոր մասնագէտ-ուսուցչուհին եւ անոր հոգածու խնամքին յանձնել իրենց այն զաւակները որոնք մասնաւոր հակում մը ունին դէպի երգն ու նուագը, եւ երաժշտութիւնը առհասարակ։

*Արեւ*, 19 Յունիս 1948, ԼԴ. տարի, թիւ 8974, էջ 3

# ԲՐՕՖ. ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՕՏԻՍԻՕՆԸ

ԵՐԱԺՇՏԱՍԷՐ ՄԸ

Շաբաթ 12 Յունիս, յետմիջօրէի ժամը 5-ին, ծնողքներու եւ երաժշտասէրներու երկսեռ բազմութիւն մը փութացած էր ներկայ գտնուիլ Ամերիկեան Համալսարանի հանդիսասրահը, ունկնդրելու համար Դաշնակի «Օտիսիօն»-ը Բրօֆ. Օր. Նուարդ Տամատեանի երկսեռ աշակերտներուն, որոնք հաճելի օրինապահութեամբ մը՝ ամէն տարի ճիշդ այս օրերուն սովորութիւնը ունին իրենց նուագահարումները ցուցադրելու եւ գնահատանքին ենթարկելու ունկնդիր երաժշտասէրներու:

Եւ ըսել թէ, ինչպէս ամէն տարի, այս տարի եւս Բրօֆ. Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն հրամցուցած Դաշնակի Օտիսիօնը գեղարուեստական ճշմարիտ վայելք մը եղաւ ներկայ ունկնդիրներուն համար, որոնք միեւնոյն ատեն առիթը ունեցան գնահատելու եւ ծափահարելու յառաջդիմութիւնները իրենց փոքրիկներուն:

Օտիսիօնի Յայտագիրը, իր բազմազանութեամբ եւ հատընտիր կտորներով՝ սիրուն նուագահանդէսի մը տպաւորութիւնը կ'ընէր ներկաներուն վրայ, մանաւանդ երբ աշակերտութիւնն ալ կրցաւ առ հասարակ քաջավարժ մատնահարութեամբ եւ գիտակից ըմբռնումով նուագել նոյն իսկ ամենաբարդ կտորները արդիական եւ դասական երաժշտագէտներու:

Ջերմօրէն կը շնորհաւորենք Օր. Տամատեանը՝ դաշնակահար համակրելի ուսուցչուհին, որուն ջանադիր դասաւանդումին տակ՝ մեր փոքրիկները իրապէս պատեհութիւնը կ'ունենան յառաջդիմելու եւ իւրացնելու դաշնակահարութեան ամենանուրբ ճկունութիւնը:

*Սաւառնակ*, 19 Յունիս 1948, 30-րդ տարի, թիւ 30, էջ 6

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ
2. ՏՈՒՐՊՐԷ ՓՈՂՈՑ
ԳԱՀԻՐԷ

## Ե Ղ Ա Ն Ա Կ Ի  Բ Ա Ց Մ Ա Ն  Հ Ա Ն Դ Է Ս

Կիրակի 17 Հոկտեմբեր 1948, Կ.Ե. ժամը 6.30ին

### Ա. ՄԱՍ

1.– ԲԱՑՄԱՆ ԽՕՍՔ

2.– Թօքաթա է Ֆիւկ էն Ռէ Մինէօր
Պ Ա Խ — դաշնակ Տիկ. Շաքէ Իփէքեան

3.–ա) Պըրտ Սօնկ էթ էվընթայտ
Էրիք Քօց

բ) Արիա տը Ա Յ Տ Ա
Վ է ր տ ի — երգ՝ Օր. Հանրիէթ Կարապետեան
դաշնակ Տիկ. Ջապէլ Գըլըճեան

4.– ՍՈՒՍԵՐԱՊԱՐ (Գայեանէ Պալէթէն)
Ա. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ
Դաշնակ՝ Օր. Նուարդ Տամատեան

Սոյն կտորը Եգիպտոսի մէջ առաջին անգամ ըլլալով պիտի նուագէ ծանօթ դաշնակահարուհի Օր. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ։

# ԴԱԴԱՐ

## Բ. ՄԱՍ

5.- "ՄԵԾ ՍԷՐ ՄԸ ԿՍԿՍԻ" (Թատերգութիւն մէկ Արար)

Դերակատարներ՝

| | | |
|---|---|---|
| Կինը՝ | Օր. ԱԼԻՍ | ՊԵՏՐՈՍԵԱՆ |
| Այրը՝ | Պր. ՎԱՀԷ | ՊՕՅԱՃԵԱՆ |
| Տղան՝ | ԼԵՒՈՆԻԿ | ՔԱՏԷԵԱՆ |

---

ՅԱՅՏԱԳՐԷՆ ՎԵՐՋ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ԸՆՏԻՐ ՃԱՇ ԵՒ ՃՈԽ ՊԻՒՖԷ

---

Անդամագրուեցէք Գեղարուեստասիրացին

քաջալերելու Համար

Հայ Գեղարուեստը :

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍԸ

(հատուած)

Ս. Ա.

Միութեան տաղանդաւոր դաշնակահարուհիներու *երրորդութիւն*ը, մեզի տուաւ նուագի գեղեցիկ ունկնդրութիւն մը: Տիկին Շաքէ Իփէքեան, իր նուագած Պախի կտորով, իսկ Օրիորդ Նուարդ Տամատեան, նշանաւոր երգահան՝ Ա. Խաչատուրեանի *Գայեանէ* պալէթէն առնուած, «Սուսեբապար» կտորի կրկնակի նուագով եւ Տիկին Զապէլ Գըլըճեան իր դաշնակով, երգերու ընկերակցութիւնով, կրցան վերացնել իրենց ունկնդիրները: Ինչպէս նաեւ, միութեան հանրածանօթ երգչուհին՝ Օր. Հանրիէթ Կարապետեան իր եւրոպական եւ հայկական երգերով արժանացաւ բուռն ծափերու:

*Արեւ*, 22 Հոկտեմբեր 1948, ԼԴ. տարի, թիւ 9076, էջ 2

ՓԱՐԻԶԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

ՆՈՅԵՄԲԵՐ 1948

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆ  Կ'ԸՆԴՈՒՆՈՒԻ
ՓԱՐԻԶԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԸ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԱՊԱԳԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻՆԵՐ
## ՕՐ. ԱՍԴՐԱ Ե. ՄԱՐԼԵԱՆ

Օր. Ասդրա Մարլեան (դուստրը Տէր եւ Տիկին Եր. Մարլեանի եւ նախկին աշակերտուհի Օր. Նուարդ Տամատեանի) որ տարի մը առաջ իր մօր հետ Բարիզ մեկնած էր եւ հոն կ'աշակերտէր Maître Yves Nat-ի, մասնակցած է այս տարուան Conservatoire National de Paris-ի մուտքի մրցումին, ու յաջողած՝ a l'unanimité de Jury (Ժիւրիին բացարձակ միաձայնութեամբ), ամենաջերմ գնահատանքի առարկայ ըլլալով՝ ընդունուած է Supérieur դասընթացքը:

Սոյն մրցումին չորս հարիւր մասնակցողներէն միայն 28 հոգի յաջողած եւ ընդունուած են:

Ջերմօրէն կը շնորհաւորենք զինք, ապագայ յաջողութեանց մաղթանքներով:

*Սաւառնակ*, 27 Նոյեմբեր 1948, 31-րդ տարի, թիւ 2, էջ 3

ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 21 ՄԱՅԻՍ 1949

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

*Oriental Hall (Université Américaine)*

*12, Rue Sultan Hussein - Le Caire*

*Samedi, le 21 Mai 1949, à 5 h p.m.*

*Le programme tient lieu d'Invitation*

| | | |
|---|---|---|
| *Anahid Khedechian* | Etude | Beyer |
| *Alice Aharonian* | Etude | Beyer |
| *Ch. Khatchadourian* | Ecossaise | Hummel |
| *Berdj Artinian* | 1e Sonatine (1er mouv.) | Clementi |
| *N. Tchaghatzbanian* | Etude | Beyer |
| *Madeleine Artinian* | Bernoise | Kozeluch |
| *Véronique Sarkissian* | Les plaintes d'une poupée | C. Franck |
| *Alice Kardachian* | Bagatelle | Beethoven |
| *Hagop Samsonian* | Arabesque | Burgmuller |
| *Lily Kouyoumdjian* | Menuet | Bach |
| *Mercédès Maniguian* | Rondo - vivace | Kulhau |
| *Nanik Khoubesserian* | Rondo | Clementi |
| *Roubina Tchékidjian* | Rondo | Hummel |
| *Anahid Tchékidjian* | Pour Elise | Beethoven |
| *Annie Chaldjian* | Le Tambourin | Rameau |
| *Mireille Tavridakis* | 2e Barcarolle | Mendelssohn |
| *Arminé Artinian* | L'adieu | Burgmuller |
| *Sonia Veneti* | Menuet - Bourrée - Gigue | Bach |
| *Garo Beylerian* | Prélude | Haendel |
| *Hrayr Boghourian* | Sonate en do maj. (1er mouv.) | Haydn |

| | | |
|---|---|---|
| *M. J. Chirikdjian* | Vélocité | Burgmuller |
| *Mary Tourian* | Chacone | Durand |
| *Pâris Bhanos* | Sonate op. 49 No. 1 (1er mouv) | Beethoven |
| *Nevarte Chaldjian* | La journée d'un enfant ( Prière du matin - Tous travaillent - Mon petit cheval - Le jouet cassé - Papa et Mama - Visite chez Grande Mère - La valse de Grande Mère - Le gai retour à la maison - Le conte de la nounou - L'enfant va dormir) | Gretchaninoff |
| *Maro Boghiguian* | Tarentelle | Heller |
| *Aîda Beylerian* | Au printemps | Grieg |
| *Maro Merdjanian* | Sonate en ré maj. (1er mouv.) | Haydn |
| *Grazia Veneti* | Sonate en ré maj. (1er mouv.) | Mozart |
| | Le petit âne blanc | Ibert |
| *Berdj Gulanian* | Mazurka op. 56 No 2 | Chopin |
| | Nocturne en mi min. | Chopin |
| *Anahid Kutuérian* | Concerto italien (1er mouv.) | Bach |
| *Marie Maravelli* | 1er Arabesque | Debussy |
| *Aïda Tahtadjian* | Jardins sous la pluie | Debussy |



Ամերիկեան Համալսարանի պարտէզը, 21 Մայիս 1949
Ունկնդրութեան մասնակցողներու խմբանկար

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ԹՂԹԱԿԻՑ

Գահիրէ, 25

Ծնողաց եւ արուեստասէրներու ընտրանի հասարակութիւն մը փութացած էր անցեալ շաբաթ, կէսօրէ վերջ ժամը 5-ին խուռնամբոխ լեցնելու Ամերիկեան Համալսարանի Օրեընթըլ Հօլ դահլիճը ուր տեղի ունեցաւ դաշնամուրի ծանօթ ուսուցչուհի Բրօֆ. Օր. Ն. Տամատեանի երկսեռ աշակերտութեան - հա՛յ թէ օտար - տարեկան ունկնդրութեան հանդիսութիւնը որ կատարուեցաւ գնահատութեան արժանի յաջողութեամբ:

Արդարեւ, ըստ օրուան յայտագրին աւելի քան երեսուն (30) աշակերտ-աշակերտուհիներ իրենց շնորհալի մասնակցութիւնը բերին անոր գործադրութեան, իրենց ելոյթներով թարգմանն հանդիսանալով երաժշտական աշխարհի լաւագոյն հեղինակներու գործերուն որոնք ընտրուած էին իրենց կարողութեանց եւ ընդունակութեանց համաձայն:

Մասնագիտական քննադատութիւնը վերապահելով այդ հանգամանքը արդարացնող գրիչին, այսու կ'ուզենք վեր առնել այն շինարար աշխատանքը որ կատարելապէս լռելեայն կ'իրագործուի Օր. Ն. Տամատեանի կողմէ, գաղութիս մէջ նորահաս սերունդէն շատերուն ջամբելով գեղարուեստի այս մարզին առողջ ուսմունքը այդ մանկահասակ արուեստասէրներու հոգիներուն մէջ լաւագոյնին ձգտելու ճաշակի մշակումով:

Ու շաբաթ օրը, աշակե՛րտ-աշակերտուհիներ կրցան իրենց նուագածութիւններով փաստել թէ որքա՛ն արդարացուցած էին իրենց վրայ դրուած յոյսերը շնորհիւ իրենց ուսուցչուհւոյն նուիրուածութեան որուն առ ի երախտագիտութիւն աշակերտութիւնը կը նուիրէր երեք խոշոր ծաղկեկողովներ:

Մեր ուրախութիւնը յայտնելով աշակերտութեան արձանագրած յառաջդիմութեանց համար, ջերմօրէն կը շնորհաւորենք իրենց ուսուցչուհի Բրօֆ. Օր. Ն. Տամատեանը իր այս ձեռնարկին առթիւ, մաղթելով որ ամէն տարեշրջանի առիթը ունենանք կրկին վայելելու իր աշակերտութեան դաշնակի ունկնդրութիւնը, որ միշտ ալ իրեն յատուկ բազմութիւնը կ'ունենայ ըլլալով գաղութիս գեղարուեստական կեանքին լաւագոյն արտայայտութիւններէն մին:

*Արաքս*, 28 Մայիս 1949

## ՊՐՈՖ. ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՕՏԻՍԻՕՆԸ

ԵՐԱԺՇՏԱՍԷՐ

Դաշնակի ծանօթ ուսուցչուհի Պրոֆ. Օր. Նուարդ Տամատեանի աշակերտները, ինչպէս ամէն տարի, այս տարի եւս տուին իրենց դաշնակի «Օտիսիօն»-ը Ամերիկեան Համալսարանի հանդիսասրահին մէջ, անցեալ Շաբաթ օր, 21 Մայիս, ի ներկայութեան ծնողաց եւ համակիրներու ստուար բազմութեան մը:

Շնորհիւ «Օտիսիօն»-ի Յայտագրին ճոխ եւ այլազան պարունակութեան, ուր իւրաքանչիւր աշակերտ ունէր իր նուագելիք կտորը, ունկնդիրները վայելքը ունեցան ըմբոշխնելու դասական եւ արդիական հեղինակներու գործերէն երաժշտական գեղեցիկ կտորներ, որոնց ամբողջութիւնը համարժէք էր դաշնակի սիրուն նուագահանդէսի մը:

Դիտելի պարագայ մըն էր աշակերտներուն ճկուն եւ ինքնավստահ մատնահարումները, որոնք ի յայտ կը բերէին գիտակից յուզականութիւն մը, ներշնչուած նուագուած կտորէն:

Հոս երկար պիտի ըլլար մի առ մի թուել տարրողութիւնները նուագուած կտորներուն եւ տալ անունները զանոնք նուագող 30-է աւելի մեծ ու փոքր աշակերտներուն, որոնք, բացի քանի մը մանր թերացումներէ, գիտակից ըմբռնումը ունէին իրենց նուագած կտորին երաժշտական թէքնիքին:

Յայտնի է թէ Օր. Տամատեան շատ բան կու տայ իր ճաշակէն եւ թէքնիքէն՝ դէպի յառաջ մղելու համար իր աշակերտները, եւ առ այդ ջերմօրէն շնորհաւորելի է Օր. Տամատեան:

*Սաւառնակ*, 28 Մայիս 1949, 31-րդ տարի, թիւ 27, էջ 6

## ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Աշակերտներու ունկնդրութիւն մը մեզ կը հետաքրքրէ ո՛չ միայն ներկայացուած կտորներու առաւել կամ նուազ կատարեալ նուագածութեամբ, այլ նաեւ ու մանաւանդ՝ անոր համար որ հոն կարելի է

ծանօթանալ դեռատի զօրութենական տաղանդներու, այնպիսի անձնաւորութիւններու զորս ուսուցիչ մը ձեւաւորելէն ու կազմելէն հրճուանք կը զգայ, գիտնալով որ անոնք իրեն համար պիտի ըլլան գոհունակութեան աղբիւր մը եւ իրենց արդիւնքներով պիտի վարձատրեն զինք՝ իր ճիգերուն ու յոգնութիւններուն փոխարէն։

Ահա թէ ինչո՛ւ մի քանի մոռացումներ կամ մի քանի սխալներ շատ ծանրակշիռ բաներ չեն աշակերտի մը մօտ, եթէ անոնք փոխարինուած են նուագածութեամբ մը որ նկարագիր ունի, որ կը յայտնաբերէ գոյութիւնը այն յատկութիւններուն զորս «ներքին» կը կոչեմ եւ որոնք կը շինեն իսկական արուեստագէտը։

Օր. Տամատեան այս կարգի բազմաթիւ աշակերտներ ունի եւ անոնց մէջ կան այնպիսիներ որոնք ճշմարիտ հաճոյք կու տան մեզի։

Իմ կարծիքով, ներկայիս ամենէն օժտուածներէն մէկն է պզտիկ Կրացիա Վենեթին։ Յորմէհետէ ինքզինք նկատել տուած էր երեք տարի առաջ, ան չէ դադրած յառաջդիմելէ։ Ճշմարիտ երաժիշտի նկարագիր ունի ան. կը զգայ եւ կը հասկնայ երաժշտութիւնը։ Շարայարումի (ֆրազէ) եւ երանգի արուեստը ունի։ Զօրեղ նուագածութիւնը, լաւ զետեղուած շեշտերով, մեզի տուաւ Մոցարդի Սոնադ Ռէ մաժէօրին մէկ սքանչելի գործադրութիւնը. իսկ գունագեղ պատկերներու յաջորդականութեամբ մը ան կրցաւ արտայայտել Իպէրի *Պզտիկ ճերմակ էշ*ին ամբողջ զուարթ տարօրինակութիւնը։

Ուրիշ օժտուած աշակերտ մըն է Պերճ Կիւլանեան, խանդոտ խառնուածքով։ Իրաւ է թէ երբեմն ան կը տարուի իր եռանդէն, ինչ որ քիչ մը կը վնասէ նուագին յստակութեան եւ անոր կու տայ հզօրութիւն մը զոր տեղ տեղ աւելի չափաւոր պիտի փափաքէինք տեսնել. բայց նուագածութեան մէջ ի՞նչ շունչ։ Կը նախատեսեմ որ Կրացիա Վենեթիի հետ միասին ան պիտի առնէ պարապ մնացած տեղերը Նուպար Չօրպաճեանի եւ Աստրա Մսրլեանի, որոնք շուտով պիտի չմոռնանք։

Մասնաւոր յիշատակութիւն մը՝ Նուարդ Շալճեանի, որ խելացութեամբ եւ հասկացողութեամբ ցոլացուց Կրէչանինոֆի *Մանուկի մը օրը*ին զանազան մասերը։ Ան գիտցաւ վերացում դնել «Առտուան աղօթք»-ին մէջ, կատաղութիւն եւ տրտմութիւն՝ «Կոտրած խաղալիկ»-ին մէջ, քնքշութիւն՝ «Հայրիկ եւ մայրիկ»-ին մէջ, հնօրեայ շնորհ մը՝ «Մեծ մօր վալս»-ին մէջ եւ շատ քաղցրութիւն՝ «Մանուկը պիտի քնանայ»-ին մէջ։

Տըպիւսիի երկու նուագածուներէն - Մառի Մառավէլլի եւ Այտա Թահթաճեան - երկրորդը, իր պայծառ, լաւ կառուցուած նուագով եւ իր երաժշտականութեամբ, ըստ իս աւելի լաւ արտայայտեց ֆրանսացի վարպետին երաժշտութեան ոգին։

Անահիտ Քիւթնէրեան միշտ ունի իր զօրեղ ու վճռական ոճը, սակայն իր լաւագոյն վիճակին մէջ չերեւցաւ մեզի։ Նկատի ունենալով իր իրական

յատկութիւնները, մենք աւելին կ՚ակնկալէինք իրմէ։

Մարօ Պօղիկեան, դաշնակահարուհիի գեղեցիկ ձեռքերով շատ լաւ տպաւորութիւն մը ձգեց մեր վրայ. եռանդուն կշռոյթով *Թարանթէլ* մը տուաւ մեզի։

Տասնիհինգ տարեկանէն վար եղողներուն մէջ ունինք երկու խոստմնալից տարրեր, որոնցմէ շատ բան կարելի է սպասել։ Անոնք են Հրայր Պօղուրեան՝ որ ունի պայծառ, երանգաւորուած նուագածութիւն՝ լաւ հնչականութեամբ. եւ Կարօ Պէյլէրեան որ ունի հաճելի ստեղահպում եւ երաժշտական մեծ հասկացողութիւն ցոյց կու տայ իր տարիքին բաղդատմամբ։

Պիտի ուզէի յիշել նաեւ Աննի Շալճեանը, Անահիտ եւ Ռուբինա Չէքիճեանները եւ Մերսետէս Մանիկեանը։

Ամենափոքրերը վերջապէս, աչքի կը զարնեն ուսումին հանդէպ իրենց ցոյց տուած լրջութեամբ։ Հետաքրքրական է թէ ի՛նչպէս նուագածութեան մէջ արդէն կ՚ընդնշմարուի իրենց մանր հոգին։ Այսպէս, կարելի է հաստատել պզտիկ Ալիս Գարտաշեանի լուրջ նկարագիրը, Յակոբ Սամսոնեանի, Պերճ եւ Մատլէն Արթինեանի, Շ. Խաչատուրեանի վճռական նկարագիրը եւ Վերոնիք Սարգիսեանի աւելի վարանոտ նկարագիրը։

Գալով Սոնիա Վենեթիի, միայն ութ ամսուան դասերէ վերջ ձեռք բերուած արդիւնքը նախատեսել կու տայ արագ յառաջդիմութիւն։

Այսպէս, այս ունկնդրութիւնը, իր ամբողջութեան լաւ մակարդակով, վերըստին կ՚ապացուցանէ սքանչելի ուսուցումը Օր. Նուարդ Տամատեանի, որ յարատեւութեամբ կը կատարէ օգտակար գործ մը։

*Արեւ*, 8 Յունիս 1949, ԼԵ. տարի, թիւ 9267, էջ 3

ԵԳԻՊՏՈՍԻ ՌԱՏԻՈԿԱՅԱՆ

ԵՐԵՔՇԱԲԹԻ, 27 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1949

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

## ՕՐ. ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՌԱՏԻՕԿԱՅԱՆԷՆ

Արձակուրդով քաղաքս գտնուող՝ Բարիզի Քօնսէրվաթուառ Նասիօնալէն Օր. Աստրա Մսրլեանի դաշնակի գողտրիկ ըէսիթալը արձագանգեց Գահիրէի Ռատիօկայանէն, Երեքշաբթի երեկոյեան ժամը 9.15-ին:

Օր. Աստրա իր ունկնդիրներուն հրամցուց Պախէն, Պէթհովէնէն եւ Լիսթէն մէյմէկ հատընտիր դժուարին կտորներ, ուր ցոյց տուաւ ճկունութիւն, թէքնիք, զգայնութիւն եւ մանաւանդ երաժշտական խոր ըմբռնում:

Օր. Աստրա կը թուի այլեւս տիրապետած ըլլալ դաշնակահարութեան թէքնիք նրբութիւններուն, ինչ որ ապացոյցը կը կազմէ իր ճկուն մատնահարումներուն եւ համարձակ խոյանքներուն:

*Սաւառնակ*, 1 Հոկտեմբեր 1949, 31-րդ տարի, թիւ 45, էջ 3

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 29 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1949

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՂԻԿ ՄՍՐԼԵԱՆԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

SALLE DE L'UNION ARTISTIQUE ARMENIENNE

2, RUE DOUBREH - LE CAIRE

# RECITAL DE PIANO

DONNÉ PAR

# ASTRA MESSERLIAN

LE JEUDI 29 SEPTEMBRE 1949 A 9. H. 15 P. M.

## PROGRAMME

*BACH* . . . . . 2 Préludes et fugues en mi majeur et en si bemol majeur

*BEETHOVEN* . . Finale de l'Appassionata

*LISZT* . . . . . Sospiro

**INTERVALLE**

*CHOPIN* . . . . Scherzo en do dièze mineur
Polonaise en mi bémol majeur

*Le programme tient lieu d'Invitation*

# AU FOYER ARTISTIQUE ARMENIEN
# RECITAL ASTRA MESSERLIAN

H. SOULON

Mlle. Astra Messerlian que nous entendions, jeudi soir, pour la première fois, est une toute jeune fille qui après avoir reçu une excellente éducation musicale sous la direction du professeur bien connu au Caire: Melle Nevarte Damadian, a été admise au Conservatoire National de Paris où elle poursuit actuellement ses études.

Nous n’avons donc pas à la juger comme nous ferions d’une artiste éprouvée et qui a déjà une longue expérience.

Considérée comme élève, Melle Astra Messerlian a des qualités évidentes: une technique déjà assurée, de la musicalité, une sensibilité qui, pour être jeune, n’en est que plus sympathique.

Elle nous a donné du Finale de l’*Appassionata* une traduction virile, passionnée qui témoigne de beaux dons. Moins convaincante, quoique non dénuée de sensibilité, a été son interprétation du *Sospiro* de Liszt qui eût pû être plus chantante et plus délicatement enveloppée.

Bonne interprétation dans l’ensemble de l’admirable *Scherzo* en do dièse mineur de Chopin. Nous y eussions désiré sans doute un sentiment vif de cette poésie inexprimable qui est l’âme et le secret de cette musique, mais cela Melle Messerlian le comprendra plus tard.

En conclusion, la *Polonaise* en mi bémol majeur a été très brillamment enlevée, dans un joli rythme et avec une belle autorité.

Nos souhaits et nos meilleurs augures accompagnent Melle Astra Messerlian.

*Le Progrès égyptien*, 1 octobre 1949

# ՕՐ. ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ
# ԴԱՇՆԱԿԻ ՌԻՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

Վ. Թ.

Անցեալ Հինգշաբթի, Սեպտեմբեր 29, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Սրահին մէջ տեղի ունեցաւ Միութեան նորընտիր Վարչութեան կազմակերպած Հինգշաբթիի առաջին հաւաքոյթը:

Ոչինչ խնայուած էր գեղարուեստական մթնոլորտ մը ստեղծելու եւ հաճելի դարձնելու համար այնքան սպասուած եղանակի այս առաջին հաւաքոյթը - ժամանակուան մը դադարէն ետք - որուն հրաւիրուած էր դաշնակահարելու երիտասարդ արուեստագիտուհի Օր. Աստղիկ Մսրլեան՝ դուստրը մեր բարեկամ Պ. Ե. Մսրլեանի:

Ունկնդրութիւնը սկսաւ երեկոյեան ժամը 9.15-ին, Վարչութեան փոխ-ատենապետ Պ. Սահակ Թիւրապեանի բացման խօսքէն ետք, որուն ընթացքին ան ամփոփ կերպով ներկայացուց արուեստագէտ դաշնակահարուհին, Օր. Տամատեանի ղեկավարութեան տակ իր սկզբնական քայլերէն մինչեւ արուեստագիտական ձիրքերուն հրապարակումը:

Սրահը լիքն էր գեղարուեստասէր հասարակութեամբ մը որ փութացած էր ըմբոշխնելու իրեն ընծայուած այս վայելքը: Եւ Օր. Մսրլեան ի դերեւ չհանեց իր վրայ դրուած յոյսերը. գիտցա՛ւ ներկաները հաղորդակից ընել իր երաժշտական ապրումներուն՝ անթերի եւ շնորհալի նուագածութեամբ մը անոնց հրամցնելով Պախէն, Պէթովէնէն, Լիսթէն եւ Շոբէնէն հատընտիր եւ դժուար կտորներու իր յայտագիրը: Պէթովէնի Finale de l'*Appassionata*-ի եւ Լիսթի *Sospiro*-ի նուագածութեան ժամանակ մա՛նաւանդ վեր առինք մատնահարումներու ճկունութիւնն ու արագաշարժութիւնը եւ երաժշտական ըմբռնումը, որոնք անհրաժեշտ են նուաճելու եւ խոր հիացման մէջ պահելու բոլոր ներկաները յայտագրին ամբողջ գործադրութեան ընթացքին:

Օր. Մսրլեան նո՛յնքան յաջող կերպով նուագեց յայտագրին միւս կտորները, Պախի 2 Préludes et Fugues en mi majeur et en si bémol majeur-ը եւ Շոբէնի *Scherzo* en do dièze mineur et *Polonaise* en mi bémol majeur-ը որոնց նուագածութեան մէջ ան ի յայտ բերաւ երաժշտական խոր զգայնութիւն մը եւ ներկաները իր ապրումներուն հաղորդակից ընելու բացառիկ կարողութիւնը, ըլլա՛յ իր մատնահարումներուն կշռութաւոր թափովն, ըլլայ նաեւ հրամցուած կտորները հարազատօրէն իրենց նրբութեամբ ներկայացնելու եղանակով: Հո՛ս է արդէն արուեստին թեքնիքը, որուն լիովին տիրապետած է արդէն երիտասարդ հասակին մէջ Օր. Աստղիկ Մսրլեան եւ զոր այնքան հրաշալի կերպով կիրարկեց այդ ունկնդրութեան ընթացքին՝ ձոյլ հիացումի մատնելով ներկաները եւ արժանանալով անոնց խանդավառ ծափերուն: Ու յայտագրին աւարտումին, Օր. Մսրլեան ստիպուեցաւ կրկին ու կրկին անգամ բեմ գալ շարունակելու այլ կտորներու նուագածութիւնը:

Ջերմապէս շնորհաւորելի է Օր. Մսրլեանը մեզի ընծայած այս յոյժ գեղեցիկ ունկնդրութեանը համար: Ներկաներու մեծ բազմութիւնը արդէն ապացոյցն էր իր ժողովրդականութեան, եւ միաժամանակ Գեղարուեստասիրացի վայելած լայն համակրանքին: Յոյս ունինք որ ներկայ Վարչութիւնը պիտի շարունակէ Հինգշաբթի իր գեղարուեստական հաւաքոյթները՝ նո՛յն խնամքով քան անցեալին ու վստահ ենք որ հասարակութիւնը իր աջակցութիւնը միշտ աւելի լայն

չափերով պիտի բերէ այս միութեան ձեռնարկներուն։

*Արեւ*, 5 Հոկտեմբեր 1949, ԼԵ. տարի, թիւ 9365, էջ 4

## ՕՐ. ԱՍԹՐԱ ՄԱՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԵՐԱԺՇՏԱՍԷՐ

Անցեալ Հինգշաբթի, 29 Սեպտեմբեր, երեկոյեան ժամը 9.15-ին, հայ թէ օտարազգի համակիր եւ հրաւիրեալ գեղարուեստասէրներու երկսեռ բազմութիւն մը ժամադրուած էր Հայ Գեղարուեստասիրացի Սրահը, ունկնդրելու համար դաշնակի ռէսիթալը՝ Բարիզի Քօնսէրվաթուառ Նասիօնալէն Օր. Աստրա Մարլեանի, որ արձակուրդով քաղաքս կը գտնուէր, եւ որուն դաշնակի մէկ գողտրիկ ռէսիթալը երկու օր առաջ արձագանգած էր արդէն Գահիրէի Պետական Ռատիօկայանէն։

Համակրելի երիտասարդ արուեստագիտուհին՝ ըստ մասնաւոր Յայտագրի՝ հետզհետէ մեզ հրամցուց Պախէն, Պէթհօվէնէն, Լիսթէն եւ Շօբէնէն ընտրելագոյն կտորներ, զորս նուագեց ուժեղ եւ ճկուն մատնահարումներով, հարազատօրէն ի յայտ բերելով այդ դասական հեղինակներուն ստեղծագործութիւնը եղող կտորներուն երաժշտական ոգին։

Մասնաւորաբար նկատելի էր Օր. Աստրա Մարլեանի արտայայտած զգայնութիւնը՝ իր նուագած կտորներուն մէջ եւ տիրապետումը՝ նուագահարութեան թէքնիք նրբութիւններուն։

Իսկապէս շնորհաւորելի է Օր. Աստրա Մարլեան, կարճ ժամանակի մէջ իր ձեռք բերած խիստ գնահատելի յառաջդիմութեանը համար։

*
* *

Մասնաւոր հրաւէրով՝ Օր. Մարլեանի դաշնակի ռէսիթալին ներկայ էր երաժըշտական հեղինակաւոր քննադատ Մր. Հ. Սուլօն, որ եկած էր իր ազնիւ Տիկնոջ հետ, եւ որ հետեւեալ գնահատական տողերը նուիրած էր Օր. Աստրա Մարլեանի հասցէին՝ անցեալ Շաբաթ օրուան *Բրօկրէ էժիբսիէն* ֆրանսերէն օրաթերթին մէջ.

«Օր. Աստրա Մարլեան, զոր կ'ունկնդրէինք Հինգշաբթի երեկոյ՝ առաջին անգամ ըլլալով, բոլորովին երիտասարդ աղջիկ մըն է, որ Գահիրէի մէջ ծանօթ Բրօֆ. Նուարդ Տամատեանի մօտ սքանչելի վարժութիւն մը ստանալէ յետոյ, ընդունուած է Բարիզի Քօնսէրվաթուառ Նասիօնալը, ուր կը հետեւի իր ուսմանց։

«Ուրեմն զինքը չպիտի դատենք իբր վկայեալ արուեստագիտուհի մը՝ որ

ունեցած է արդէն երկար փորձառութիւն:

«Իբր ուսանող, Օր. Աստրա Մարլեան ունի յայտնի յատկութիւններ. նուագային թէքնիք մը՝ արդէն ապահովեալ, զգայնութիւն մը՝ որ խիստ համակրելի է երիտասարդի մը համար:

«Ան մեզի տուաւ *Աբբասիոնաթա*յի Ֆինալէն աշխոյժ եւ խանդավառ արտագրում մը, ինչ որ ապացոյց է լաւ ձիրքի: Զգայնութենէ զուրկ չէր նաեւ Լիսթի *Սօսբիրօ*էն արտագրում մը, որ կրցաւ ըլլալ աւելի հնչեղ եւ փափկօրէն պարուրուած:

«Յաջող արտագրում մըն էր նաեւ Շօբէնի հիանալի *Սքէրցօ*ն (տօ տիէզ մինէօր): Պիտի փափաքէինք անշուշտ որ ան ունենար աւելի ցայտուն զգայնութիւն մը, ինչ որ հոգին ու գաղտնիքն է այս նուագին, բայց ասիկա Օր. Մարլեան պիտի հասկնայ աւելի ուշ:

«Իբր վերջաբան՝ *Բօլօնէզ*ը (մի պէմօլ մաժէօր) արտագրուեցաւ շատ փայլուն կերպով, սիրուն ռիթմով եւ գեղեցիկ հեղինակութեամբ:

«Մեր շնորհաւորութիւնները եւ լաւագոյն մաղթանքները Օր. Մարլեանին:»

*
*   *

Օր. Աստրա Մարլեան Կիրակի երեկոյ օդային ճամբով մեկնեցաւ Բարիզ, ուր պիտի շարունակէ հետեւիլ Քոնսէրվաթուառ Նասիօնալի դաշնակի դասընթացքներուն:

Բարի ճանապարհ եւ յաջողութիւն կը մաղթենք համակրելի Օրիորդին:

*Սաւառնակ*, 8 Հոկտեմբեր 1949, 31-րդ տարի, թիւ 46, էջ 3

ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 27 ՄԱՅԻՍ 1950

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

**Mlle. Nevarte Damadian**

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

Samedi, le 27 Mai 1950, 5 h. p.m.

Le programme tient lieu d'Invitation

| | | |
|---|---|---|
| *Marie Aslanian* | Petite pièce à 4 mains | Wohlfahrt |
| *Sona Kavaldjian* | Etude | Beyer |
| *Alice Aharonian* | Mélodie | Schumann |
| *Koharig Agopian* | Ecossaise | Hummel |
| *Anahid Khedechian* | 1e Sonatine (1e. mouv.) | Clementi |
| *Ch. Khatchadourian* | Le gai laboureur / Le petit cavalier | Schumann |
| *Berdj Artinian* | Menuet | Bach |
| *Noëmi Tchaghatzbanian* | 3e Sonatine (1er mouv.) | Clementi |
| *Madeleine Artinian* | Rondo | Clementi |
| *Véronique Sarkissian* | Sonatine en sol maj. | Beethoven |
| *Alice Kardachian* | Ballade | Burgmüller |
| *Hagop Samsonian* | Valse | Grieg |
| *Lily Kouyoumdjian* | Rondo | Diabelli |
| *Mercédès Maniguian* | L'avalanche | Heller |

| | | |
|---|---|---|
| *Nanik Khoubesserian* | Sonate en do (1er mouv.) | Mozart |
| *Annie Chaldjian* | Le coucou | Daquin |
| *Arminé Artinian* | Canzonetta | Dussek |
| *Garo Beylerian* | Sonate op. 49 No. 2 (1er. mouv.) | Beethoven |
| *Hrayr Boghourian* | Marche turque | Mozart |
| | **INTERVALLE** | |
| *Manouchag Toumayan* | Sonate op. 49 No. 1 (1er mouv.) | Beethoven |
| *Jeannette Chirikdjian* | Toccata | Paradisi |
| *Mary Tourian* | Scherzo en si bem. maj. | Schubert |
| *Nevarte Chaldjian* | Ah vous dirai-je maman Thème varié | Mozart |
| *Maro Boghiguian* | Golliwogg's cake-walk | Debussy |
| *Seta Saroukhan* | Largo de la 2e Sonate | Beethoven |
| *Berdj Gulanian* | Sonate op. 31 No. 2 (1er. mouv.) | Beethoven |
| *Anahid Kutuérian* | Rondo capriccioso | Mendelssohn |
| *Marie Maravelli* | Fantaisie en ut mineur | Mozart |
| *Aïda Tahtadjian* | 11e Rhapsodie | Liszt |

## AUDITION DES ELEVES DE PIANO DE MLLE N. DAMADIAN

H. SOULON

Qu'attendons-nous de ces jeunes élèves que nous sommes conviés à écouter dans les différentes auditions qui se succèdent? D'abord et avant tout, un jeu correct: une bonne tenue des mains, avec articulation nette, un rythme exact. Si à ces qualités essentielles s'ajoute une certaine sensibilité musicale, nous nous tiendrons pour tout à fait satisfaits. Ce qui est important, ce sont ces habitudes premières dont dépend l'éducation pianistique jubure: on ne redresse pas, lorsqu'ils sont mauvais, des gestes devenus des réflexes.

Sur ce point de la correction du jeu, les élèves de Mlle Damadian sont, dans l'ensemble, d'une égalité exemplaire et témoignent par conséquent d'un excellent enseignement.

Si maintenant nous allons plus loin et cherchons à découvrir parmi eux les qualités plus rares de tempérament, de sensibilité, d'intuition musicale, notre choix sera évidemment plus restreint. Voici, dans la première partie ceux ou celles qui m'ont paru posséder quelques unes de ces qualités. Mlle Ch. Khatchadourian interprète Schumann avec beaucoup de charme et met joliment le chant en valeur; Noëmi Tchaghatzbanian a un jeu ferme et un rythme chaleureux; Madeleine Artinian, très douée, a le sens délicat de la phrase musicale; Hagop Samsonian a de l'autorité et rythme ferme; Lily Kouyoumdjian tempérament musical évident, de même que Mercédès Maniguian, trouvent de jolies nuances, de délicates oppositions, d'agréables sonorités; Annie Chaldjian joue le *Coucou* de Daquin avec clarté, précision, dans un rythme soutenu.

Dans le 2ème partie, les morceaux deviennent plus difficiles et la sélection se fait plus sévère.

Nevarte Chaldjian témoigne d'une délicate sensibilité, de souplesse et d'agilité dans thème varié de Mozart: *Ah, vous dirai-je maman* – Le *Golliwogg's Cakewalk* de Maro Boghiguian est un peu jeune... quoique non dénué de rythyme et d'humour; Berdj Gulanian interprète avec une étonnante maturité et un sens émouvant du pathétique beethovenien le 1er mouvement de la Sonate 31 No. 2. Anahid Kutuérian montre une jolie agilité, de la délicatesse, de la sensibilité dans le *Rondo capriccioso* de Mendelssohn. Aïda Tahtadjian conclut le concert avec brio et autorité par la 11ème *Rhapsodie* de Liszt.

*Le Progrès égyptien*, 30 mai 1950

# ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԵԱՆ
# ՇՔԵՂ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ ՄԸ

ԹՂԹԱԿԻՑ

Ամերիկեան Համալսարանի Օրիընթըլ Հօլի հանդիսասրահը անցեալ շաբաթ օր, 27 Մայիս, ժամը 5-ին արդէն գրաւուած էր ու խճողուած՝ գեղարուեստասէր ու երաժշտասէր հայ թէ օտար հասարակութեան մը կողմէ, որ եկած էր անգամ մը եւս վայելելու դաշնակի ունկնդրութիւն մը զոր կը սարքէր ծանօթ դաշնակահարուհի Օր. Ն. Տամատեան իր երկսեռ աշակերտութեան համար:

Իբրեւ անհատական ձեռնարկ, այս հանդիսութիւնը կը պսակուէր բացառիկ յաջողութեամբ մը, տրուած ըլլալով այն շահեկան եւ բովանդակալից յայտագիրը որ կ՚իրագործուէր ընդհանուր հիացում առթելով բոլոր ներկաներուն որոնք, կրնանք անվարան ըսել, հետաքրքրութեամբ հետեւեցան՝ սկիզբէն մինչեւ վերջը, կատարուած նուագումներուն, առանց երբեւիցէ անհամբերութեան ոեւէ նշան ցուցաբերելու: Ու ասիկա՝ անոր համար որ ունկնդրութիւնը ունէր իր հրապոյրը եւ իր ուրոյն երանգը որոնք հարազատօրէն ի յայտ կու գային ունկնդրութեան մասնակցող երկսեռ աշակերտներուն շնորհալի դաշնակահարումէն, ինչ որ մեզի կը մղէ խորհելու թէ անոնք կը գտնուին լաւ հսկողութեան մը ներքեւ, եւ անոնց կազմաւորումը կ՚իրականանայ առողջ սկզբունքներու համաձայն:

Սկսնակ թէ յառաջադէմ աշակերտները իրենց ինքնավստահ ելոյթներով մեզ տուին այս հաւաստիքը՝ ի պատիւ իրենց ուսուցչուհւոյն, որո՛ւն անոնք կը նուիրէին խոշոր ծաղկեկողով մը «երախտագիտական զգացումներով» մակագրուած աշակերտներուն կողմէ:

Ու հանդիսութիւնը կը վերջանար ընդհանուր ծափահարութեանց եւ խանդավառութեան մէջ, մինչ Օր. Ն. Տամատեան կ՚ընդունէր ներկաներուն եւ ծնողաց ջերմագին շնորհաւորութիւնները:

Ձայնակցելով համակրանքի այս արտայայտութեանց կը փափաքինք շնորհաւորել հրապարակաւ Ուսուցչուհիի թէ Աշակերտութիւն՝ իրենց կատարած այս աշխատանքին համար որ կը ձգտի հասնիլ գեղեցկագոյնին՝ ապացուցանելով որ գեղարուեստասէր եւ երաժշտասէր ժողովուրդի մը զաւակներն ենք, արժանի՝ ամէն գնահատանքի եւ քաջալերանքի:

*Արաքս*, 3 Յունիս 1950

# ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Ունկնդրութիւններու եղանակը սկսած է։ Միշտ հաճոյքով է որ կը վերատեսնենք այս աշակերտները, դատողութիւն մը ընելու համար իրենց յառաջդիմութեան մասին, ակնդէտ սպասելով նոր տաղանդի մը փթթումին։ Երբեմն, ինչպէս այս տարի, կը մասնակցինք ուսուցիչին տրտմութեանը զոր կը պատճառէ մասնաւորապէս օժտուած աշակերտի մը բացակայութիւնը։ Բարեբախտաբար, կան սփոփանքներ ալ։

Կատարեալ կարգապահութեան մէջ, լրջութեամբ եւ ջանադրութեամբ, իւրաքանչիւր աշակերտ փորձեց տալ իր առաւելագոյնը։ Երբեմն, յուզումը պատճառ եղաւ որ ոմանք կորսնցնեն իրենց կարողութիւններուն մէկ մասը. այդպիսիները թող գիտնան թէ նուագածութեան յատկութիւնները շատ աւելի կարեւոր են քան յիշողութեան առժամեայ տկարացում մը. ուստի նուագին թող մօտենան առանց պրկումի։

Մարի Ասլանեանի եւ Սոնա Գավալճեանի միասնական նուագէն վերջ (չորս ձեռք), Ալիս Աիարոնեան՝ զուսպ պարկեշտութեամբ, Գոհարիկ Ակոբեան՝ լաւ երանգաւորուած թէեւ քիչ մը վարանոտ շարժումով, եւ Անաիիտ Խըտըշեան՝ ճշգրտօրէն, նուագեցին իրենց սահմանուած կտորները։

Աշակերտներու այս դասակարգին մէջ մասնաւորապէս ուշադրութիւն գրաւեցին Մատլէն Արթինեան՝ իր վստահ եւ ուժեղ նուագածութեամբ եւ մանաւանդ փոքրիկն Շուշանիկ Խաչատուրեան որ շատ լաւ կրցաւ նշել Շումանի *Զուարթ հողամշակ*ին անփոյթ նկարագիրը եւ *Փոքրիկ ձիաւոր*ին ոստոստող կշռոյթը։

Պերճ Արթինեան պարկեշտ եղաւ Պախի մէկ *Մընիւէ*ին մէջ, իսկ Նոյեմի Զաղացպանեան վճռակամութիւն եւ կշռոյթ դրաւ Քլէմէնթիի 3-րդ Սոնադին նուագածութեան մէջ։

Վերոնիք Սարգիսեան լաւ կշռոյթ ունի, բայց իրեն պիտի մաղթէինք աւելի ջերմութիւն։ Ալիս Գարտաշեան խելացիօրէն փորձեց երանգաւորել Պուրկմիւլլէրի *Պալլատ*ը, իսկ Յակոբ Սամսոնեան՝ թէեւ անհաւասար նուագով՝ գիտցաւ ձեւ մը տալ Կրիկի *Վալս*ին։

Լիլի Գույումճեան հաճելի հպում եւ երանգաւոր նուագ ունի։ Մերսետէս Մանիկեանի պարագային (Հիլլէրի *Ավալանշ*ին մէջ) կարելի է այլեւս խօսիլ «մեկնաբանութեան» (interprétation) մասին։

Նանիկ Խուպէրէսեան, ճկուն եւ լաւ զօդուած նուագով, դիւրաւ մեզի տուաւ

Մոցարդի Տօ սոնադը։ Աննի Շալճեան, յստակութեամբ եւ հասկացողութեամբ, գիտցաւ արժեւորել Տաքէնի *Կկուի երգը*։ Արմինէ Արթինեան պէտք է ընթացք տայ իր զգայուն բնութեան. Տիւսէքի *Քանձոնէթթա*ին մէջ՝ շատ երաժշտականութիւն ի յայտ բերաւ ան։

Կարօ Պէյլէրեան, վստահ եւ լաւ կառուցուած նուագածութեան տէր, նոյնքան լաւ էր որքան անցեալ տարի. բայց աւելին կը սպասենք իրմէ, ինչպէս նաեւ Հրայր Պօղուրեանէն որ յստակ եւ գեղեցկահունչ նուագածութիւն մը ունի։

Պէթհովէնի Սոնադ Op. 49 կը թուի քիչ մը դժուար ըլլալ Մանուշակ Թումայեանի համար. սակայն աշխատելով այս վերջինը կրնայ լաւագոյն արդիւնք մը տալ յառաջիկայ տարի։

Ժանէթ Շիրիքճեանի նուագածութիւնը նկարագիր ունի. ան մեզի տուաւ Փարատիզիի *Թոքքաթա*ն պայծառութեամբ եւ սքանչելի շարժումով մը։ Շուպէրթի Սի պէմոլ մաժէօր *Սքէրցօ*ն պարկեշտ կշռոյթով մը նուագուեցաւ Մարի Թուրեանի կողմէ։

Գալով Նուարդ Շալճեանի, ան հաստատեց թէ շատ օժտուած աշակերտուհի մըն է, մասնաւորաբար երբ խնդիրը կը դառնայ այնպիսի կտորներու շուրջ որոնք մեկնաբանութիւն կը պահանջեն. իմաստութեամբ եւ խելացութեամբ կը մեկնաբանէ ան։ Սկիզբի մանկական եղանակը միամտօրէն տալէ վերջ, ան գիտցաւ ըլլալ փոխն ի փոխ փայլուն, ծանրանիստ, թեթեւ, վայելուչ։ Երաժշտական շատ հասկացողութիւն եւ յիշողութիւն ունի։

Մարօ Պօղիկեան կրցաւ զուարթախոհութեամբ տալ Տըպիւսիի *Կոլլիվոկզ քէյքուոք*ը։ Սեդա Սարուխան իբրեւ լուրջ եւ ջանադիր ի յայտ եկաւ Պէթհովէնի 2-րդ Սոնադի Լարկոյին նուագածութեան մէջ։ Գալով Մարի Մարվէլլիի, մեծ երաժշտականութեամբ եւ հասկացողութեամբ ան նուագեց Մոցարդի մէկ *Ֆանթէզի*ն։

Եւ վերջապէս ահա՛ երեք աշակերտներ որոնք մասնաւորապէս պատիւ կը բերեն իրենց ուսուցիչին եւ հաճոյք կ'առթեն ունկնդիրներուն. անոնք են Այտա Թահթաճեան, Անահիտ Քիւթնէրեան եւ Պերճ Կիւլանեան։ Տարբեր խառնուածքներով - Այտա Թահթաճեան մեղմ եւ զգայուն է, Ա. Քիւթնէրեան եռանդուն բայց կարգապահ, իսկ Պ. Կիւլանեան՝ ուղղակի յուզումնակոծ - այս երեք աշակերտները ունին լաւ դաշնակահարներ կազմող յատկութիւնները՝ յստակ եւ վստահ նուագածութիւն, հնչականութիւն, երաժշտականութիւն, երանգի եւ մեկնաբանութեան գիտակցութիւն, սքանչելի շարայարում։

Պերճ Կիւլանեան, որ մեզի կը յիշեցնէ Նուպար Չորպաճեանը, սակայն աւելի ճոխ բնութեամբ, Պէթհովէնի Op. 31 թիւ 2 Սոնադը տուաւ չափաւորուած հզօրութեամբ։ Բայց թող չշլանայ իր յաջողութիւններէն։

Անահիտ Քիւթնէրեան փայլուն կերպով նուագեց Մէնտէլսոհնի *Ռոնտօ քափրիչիոզօ*ն, իսկ Այտա Թահթաճեանի մօտ հիացանք այն նուրբ հակադրու-

թեան վրայ զոր կրցաւ դնել Լիսթի 11-րդ *Ռափսոտի*ին սկիզբի մեղմ նախադասութիւններուն եւ շարունակութեան խրոխտ ընթացքին միջեւ։

*Արեւ*, 7 Յունիս 1950, ԼԶ. տարի, թիւ 9573, էջ 3

## ԲՐՕՖ. ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՕՏԻՍԻՕՆԸ

ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԷՆ ՄԻՆ

Նախորդ Շաբաթ, 27 Մայիս, յետմիջօրէի ժամը 5-ին, Ամերիկեան Համալսարանի հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ ծանօթ ուսուցիչ-դաշնակահար Օր. Նուարդ Տամատեանի երկսեռ աշակերտութեան դաշնակի օտիսիօնը, ի ներկայութեան ծնողաց եւ համակիրներու, որոնք ամբողջովին լեցուցած էին ընդարձակ սրահը։

Ինչպէս միշտ, այս տարի եւս համակրելի ուսուցչուհիին աշակերտութեան կողմէ հրամցուած դաշնակի օտիսիօնը գեղարուեստական վայելք մը եղաւ ներկաներուն համար, տրուած ըլլալով Յայտագրին ընտիր այլազանութիւնը եւ առ հասարակ բոլոր աշակերտներուն ցուցաբերած ճշգրիտ ըմբռնումն ու սահուն մատնահարումները իրենց նուագած կտորներուն մէջ։

Ջերմօրէն շնորհաւորելի է Օր. Նուարդ Տամատեան իր ձեռք բերած այս փայլուն արդիւնքին համար։ Իր ջանադիր դասաւանդութեան եւ ի գործ դրած դիւրըմբռնելի մեթոտին շնորհիւ է որ մեր փոքրիկները կարելիութիւնը կ՚ունենան յառաջդիմելու եւ իւրացնելու դաշնակահարութեան բոլոր նրբութիւնները, երաժշտական թէ թէքնիք տեսակէտով։

*Սաւառնակ*, 10 Յունիս 1950

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1950

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ԳԱՀԻՐԷ

**ՀԱՆԴԻՊՈՒՄԻ ՕՐ**

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1950

ժամը 7.30էն սկսեալ՝ ԹԵԹԵՒ ՃԱՇԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ

ժամը 9ին՝ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

**J. S. BACH**ի նուիրուած յայտագիր
իր մահուան երկուհարիւրամեակին առթիւ

1) Toccata & Fugue en ré mineur — *դաշնակ Տիկ. Շ. Իփէքեան*
2) Deux Cantates — Soprano *Օր. Ա. Աբրահամեան*
*դաշնակ Տիկ. Ա. Աբրահամեան*
3) Concerto pour 2 pianos en fa majeur
*Ա. դաշնակ Օր. Ն. Տամատեան*
*Բ. դաշնակ Տիկ. Շ. Իփէքեան*

Սիրով կը հրաւիրուին Միութեանս անդամ-անդամուհիները եւ իրենց հիւրերը:

Յայտարարութիւն
*Արեւ*, 28 Դեկտեմբեր 1950, ԼՁ. տարի, թիւ 9745, էջ 2

## ԵՌՀԱՆ ՍԵՊԱՍԹԻԷՆ ՊԱԽԻ ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ՁՕՆՈՒԱԾ ՓԱՅԼՈՒՆ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

(հատուած)

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Տիկին Շ. Իփէքեան յստակութեամբ ու խորունկ ըմբռնումով նուագեց դաշնակի *Թոքքաթա* մը: Նոյնը եւ իր քոյրը՝ Օր. Ն. Տամատեան, երկու դաշնակի վրայ տուին Քոնչէրթօ մը ուր նշմարեցինք վերջինիս մարգարտանման եւ տիրական նուագածումը, խելացի ու ճկուն ընկերակցութեամբ Տիկ. Իփէքեանի որ օռքէսթրի մասը ստանձնած էր, երկրորդ դաշնակի վրայ:

*Արեւ*, 2 Յունուար 1951, ԼՁ. տարի, թիւ 9748, էջ 3



ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ

Նախագահութեամբ

ԳԵՐ. Տ. ՄԱՄԲՐԷ ԱՐՔԵՊՍ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

"ԱՑԾԵՄՆԻԿ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՔՍԱՆԵՒՀԻՆԳ ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

10 Մարտ 1951, կ. վ. ժամը 8.30ին

ՄԷՄՕՐԻԸԼ ՀՕԼԻ ՄԷՋ

ՅԱՅՏԱԳԻՐ

Ա. ՄԱՍ

Եգիպտական քայլերգ

1. Բացման խօսք — Գ. Ալ. Սարուխան
2. Գուարդէթ լարային (ժողովրդական երգեր) Կոմիտաս Վարդապետ, դաշնաւորում Տ. Ալեքսանեանի
   ա) Ջութակ՝ Գ. Ա. Գըրըլեան, բ) Ջութակ՝ Գ. Ա. Խաչատուրեան (Աղեքսանդրիայէն), Ալթօ՝ Գ. Հ. Գըրըլեան, Թաւջութակ՝ Տոքթ. Լ. Եփրեմեան
3. Մեներգ «Օրօր», Ե. Կանաչեան, Օր. Շաքէ Քէլէշեան ընկերակցութեամբ լարային քուարդէթի
4. Թրիօ լարային Ա. Խաչատուրեան, դաշնակ՝ Տիկ. Ա. Աբրահամեան, ջութակ՝ Գ. Ա. Գըրըլեան, քլարինէթ՝ Գ. Ժ. Տէրվիշեան
5. Մեներգ «Ես սիրեցի» Ալեմշահ, «Աշնան երգը» Ռ. Մելիքեան, Տիկին Լիւսի Գարկաեան (Աղեքսանդրիայէն), դաշնակի ընկերակցութեամբ Տիկ. Ձ. Գլըճեանի

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 9 Մարտ 1951, ԼԶ. տարի, թիւ 9803, էջ 3

## Բ. ՄԱՍ

6. Մեներգ «Գիւղին համբանը» Շահան Պէրպէրեան, «Գարնան օրերը» Վ. Սրուանձտեանց, Պ. Արմէն Օգոստինոսեան, դաշնակի ընկերակցութեամբ Տիկ. Մայտա Իսքէնտէրեանի
7. Մեներգ — «Ուրենին» Ռ. Մելիքեան, «Իղձը» Գ. Ալէմշահ, Օր. Սոնիա Աբրահամեան, դաշնակի ընկերակցութեամբ Տիկ. Ա. Աբրահամեանի
8. Քառաձայն — «Գիւղացի գեղեցկուհին» Հ. Պէրպէրեան, «Ձիթենիի հիւղը» Ա. Սպենդիարեան, Օր. Շաքէ Քէլէեան, Օր. Սելմա Տէտէեան, Պ. Երուանդ Սիմոնեֆ, Պ. Արմէն Օգոստինոսեան, դաշնակի ընկերակցութեամբ Տիկին Զ. Գըլըճեանի
9. Մեներգ — «Այ վարդը» Ա. Սպենդիարեան, «Գնչուհու երգը» Մեհրապեան, Տիկ. Աստղիկ Պապլանեան, դաշնակի ընկերակցութեամբ Տիկ. Զ. Գըլըճեանի
10. Դաշնակ — Սուսերապար Ա. Խաչատուրեան, Թոքաթա Ա. Խաչատուրեան, Օր. Նուարդ Տամամեան

Փակման խօսք — ՍՐԲԱԶԱՆ ՆԱԽԱԳԱՀ

*Դաշնակը բարեհաճօրէն տրամադրուած ԲԱԲԱՋԵԱՆ ՑԱՆ կողմէ.*

| | | | |
|---|---|---|---|
| *Տոմսերը կը ծախուին ՊՊ.* | *Եօժէն Բաբաղեան* | հեռ. | 54407 |
| | *Տիգրան Էվէրէկլեան* | » | 53025 |
| | *Մարտիկ Պէյլէրեան* | » | 43617 |
| | *Միհրան Գրիգորեան* | » | 65312 |
| | *Լեւոն Քէօթէքեան* | » | 52946 |

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# CONCERT INSTRUMENTAL ET VOCAL DE L'UNION DES DAMES ARMENIENNES AIDZEMNIG

A. J. PATRY

Il avait bien du charme ce concert qu'un groupe de notables de la colonie arménienne avait organisé, hier soir pour une de ses oeuvres de bienfaisance. Nous avons souvent noté le provincialisme de la vie musicale au Caire, en soulignant parfois ce qu'il avait de réparateur. Il faut reconnaître que ce provincialisme a du bon, quand il traduit les songes, les joies d'une race qui malgré toutes les vicissitudes historiques, a su garder son propre caractère.

Car le peuple arménien a en musique deux patrimoines précieux: celui de la chanson populaire et celui d'une musique d'église. Il est dans la situation que l'Europe musicale avait, avant que la musique s'y différenciât dans de belles tentatives en écoles et en genres qui traduisent des différenciations.

Heureux les peuples qui savent chanter et qui trouvent dans ce chant une confirmation et une justification de leur existence. Car ils possèdent dans cette tradition de quoi la porter haut et loin. Et le compositeur Khatchadourian, qui a su se créer un style si personnel et dont les oeuvres ont atteint maintenant à une renommée européenne, on sent qu'il a ses racines dans ce riche humus.

Ce traditionalisme a du reste subi des influences étrangères. Mais l'intégration des valeurs nouvelles n'a en rien corrompu la veine naturelle. Et ce n'est point en se séparant de leur passé que des musiciens arméniens ont enrichi le patrimoine national.

Nous ne pouvons nommer tous ceux ou celles qui se produisirent à cette intéressante et prenante manifestation. Citons le quatuor à cordes qui exécuta des chansons populaires délicieusement harmonisées par R. P. Gomidas, et qui accompagna la belle berceuse de Ganatchian chantée d'une façon émouvante par Mlle Keleyan. Nommons encore ceux qui produisirent le 1er mouvement du trio Khatchadourian pour piano, violon et clarinette, Mlle N. Damadian qui exécuta avec un sens très précis du rythme et de la syncope la pittoresque *Danse des sabres* et l'architecturale *Toccata* du même compositeur.

La salle fit avec raison fête à Mlle Keleyian, au baryton Okosdinossian et aux deux sopranos Mme L. Kargayan et Mlle S. Aprahamian, la talentueuse élève de Mme Soulon, Mme Bablanian, mezzo-soprano.

De ce groupe de chanteurs, Mlle Aprahamian est la reine. Voix pure, timbre délicieux, chant d'une courbe accomplie. Et tout cela avec une souplesse et un charme qui font de son chant une joie continuelle pour l'oreille.

Mais il faut encore citer Mme L. Kargayan. Sa voix est très belle, bien timbrée, et

d'une vaste étendue. Quand elle ascende haut elle sort sans hiatus, avec une aisance et un agrément qu'on ne peut qu'admirer bien qu'elle n'ait pas encore le style qu'on doit concéder à Mlle Aprahamian.

On sait du reste les succès que cette dernière a obtenus au dernier concours international de musique de Genève.

*La Bourse égyptien*, Le Caire, 12 mars 1951

## ՏԻԿՆ. ԱՅԾԵՄՆԻԿ ՄԻՈՒԹԵԱՆ ՔՍԱՆԵՒՀԻՆԳԱՄԵԱԿԻ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹԸ
(հատուած)

Գ. Հ.

Միջազգային համբաւի տիրացած մեր անզուգական դաշնակահարուհին՝ Օր. Նուարդ Տամատեան, իր մատներուն ճարտար հմայքին տակ պահեց մեզ նուագելով Ա. Խաչատուրեան *Սուսերապար*ը եւ *Թօքաթթա*ն։

Օր. Տամատեան եւս իր կարգին չկրցաւ մերժել յայտնուած բուռն փափաքը եւ այս անգամ նուագեց Բարխուդարեանի *Աքուարէլ*ը։

*Արեւ*, 20 Մարտ 1951, ԼԶ. տարի, թիւ 9812, էջ 3-4

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

Jeudi, le 7 Juin 1951, à 5 h. p. m.

Le programme tient lieu d'Invitation

| | | |
|---|---|---|
| *R. Tchaghatzbanian* | **Etude** | Beyer |
| *Anahid Khedechian* | **Scherzo** | Diabelli |
| *Ch. Khatchadourian* | **Le chant de l'alouette** | Tschaïkowsky |
| *Berdj Artinian* | **Air Suisse** | Clementi |
| *N. Tchaghatzbanian* | **Croque - Mitaine** | Schumann |
| *Madeleine Artinian* | **Rondo** | Beethoven |
| *Véronique Sarkissian* | **Rondo - Vivace** | Kulhau |
| *Alice Kardachian* | **Valse Favorite** | Mozart |
| *Hagop Samsonian* | **Le Tambourin** | Rameau |
| *Lily Kouyoumdjian* | **Rondo** | Mozart |
| *Mercédès Maniguian* | **Solfeggietto** | Ph. E. Bach |

| | | |
|---|---|---|
| *Nanik Khoubesserian* . | 2e Barcarolle . . . . | Mendelssohn |
| *Annie Chaldjian* . . | Bagatelle en mi b maj. . | Beethoven |
| *Arminé Artinian* . . | Valse en si min. . . . | Chopin |
| *Garo Beylerian* . . | Gavotte et Musette en sol min. | Bach |
| *Hrayr Boghourian* . . | Tarantelle . . . . . . | Heller |

**INTERVALLE**

| | | |
|---|---|---|
| *Manouchag Toumayan* | Fantasia en ré min. . . | Mozart |
| *Jeannette Chirikdjian* . | Impromptu op. 28 No. 3 . | Reinhold |
| *Nevarte Chaldjian* . . | Scherzo - Valse . . . . | Chabrier |
| *Maro Boghiguian* . . | Passacaille . . . . . . | Haendel |
| *Anahid Kutnérian* . . | Mouvement perpétuel . . | Weber |
| *Aïda Tahtadjian* . | Polonaise en do dièze min. . <br> 3 Ecossaises . . . | Chopin |

# AUDITION DES ELEVES DE PIANO DE Mlle N. DAMADIAN

H. SOULON

Bonne audition dans l'ensemble, du point de vue des qualités requises: bonne tenue, précision et netteté de l'articulation, souplesse, agilité.

R. Tchaghatzbanian et Anahid Khedechian, toutes jeunes débutantes, disent gentiment et correctement leurs petites *Etudes*. Dès les premières mesures de son morceau: *Le Chant de l'alouette* de Tchaikowsky, Ch. Khatchadourian révèle une sûreté, un sens musical étonnants. A notre avis, une des élèves les plus manifestement douées de tout le cours.

Berdj Artinian, dans un *Air suisse* de Clementi, a le rythme et le style rudes d'un garçon. N. Tchaghatzbanian a un jeu décidé, ferme, mais aussi de la souplesse et de jolis accents. Elève très douée, Madeleine Artinian rythme bien et sait bien mettre en valeur le thème mélodique. Alice Kardachian joue correctement et avec une application un peu sèche une *Valse* de Mozart. Véronique Sarkissian a quelques attaques un peu dures mais une excellente articulation, un rythme assuré, de la vivacité. Hagop Samsonian a de l'autorité, un rythme ferme mais un peu appuyé qui transforme le *Tambourin* de Rameau en tambour... Lily Kouyoumdjian et Mercédès Maniguian nous avaient fait, l'année dernière, une excellente impression: nous sommes cette année plus réticents, étant donné ce que nous attendions d'elles. Nanik Khoubesserian joue correctement mais non sans mollesse une *Barcarolle* de Mandelssohn; Annie Chaldjian interprète avec grâce, précision et clarté une *Bagatelle* de Beethoven. Ce n'est pas la précision, mais la grâce et le sentiment qui font défaut à la *Valse* de Chopin jouée par Arminé Artinian. Garo Beylerian montre un sens musical très sûr, un rythme expressif dans la *Gavotte* de Bach, et Hrayr Boghourian nous donne de la *Tarentelle* de Heller une traduction aimable encore qu'un peu appliquée.

Dans la deuxième partie, Manouchag Toumayan joue agréablement la *Fantaisie* en ré mineur de Mozart, mais avec timidité et non sans mollesse. Jeannette Chirikdjian au contraire fait preuve de décision et d'une aimable vivacité dans un *Impromptu* de Reinhold.

Le *Scherzo* de Chabrier joué par Nevarte Chaldjian ne manque pas de rythme et de fermeté, mais d'élégance et de brio. Maro Boghiguian met bien en lumière le thème de la *Passacaille* de Haendel, mais la main gauche semble un peu faible. Le *Mouvement perpétuel* de Weber interprété par Anahid Kutnérian est agile, mais l'ensemble est un peu brouillé et manque de respiration. Aida Tahtadjian enfin conclut brillamment le

concert avec la *Polonaise* en do dièse mineur de Chopin et mieux encore avec trois *Ecossaises* jouées dans un rythme très expressif et dans une jolie sonorité.

*Le Progrès égyptien*, 13 juin 1951

## ՊՐՕՖ. ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՕՏԻՄԻՕՆԸ

ԵՐՈՒԱՆԴ ՄՍՐԼԵԱՆ

Անցեալ Հինգշաբթի, 7 Յունիս, կ.վ. ժամը 5-ին Օրիանթալ Հոլի հանդիսասրահը, ըստ սովորութեան, տարեկան ժամադրավայրը եղած էր ծնողաց եւ հրաւիրեալներու, որոնք եկած էին ունկնդրելու Բրօֆ. Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն դաշնակի նուագահարումները:

Յայտագրին առաջին մասը կրցաւ կարելին տալ, առաւել կամ նուազ չափով: Անի Շալճեան եւ Արմինէ Արթինեան կրցին գոհացուցիչ կերպով ըմբռշխնել տալ իրենց կտորները՝ Պէթհովէնէն եւ Շօբէնէն: Կարօ Պէյլէրեան զգայուն ճիրքով նուագեց Պախի *Կավօթ է Միւզէթ*ը, իսկ Հրայր Պօղուրեան յաջող թէքնիքով նուագեց Հէլլէրի *Թարանթէլը*:

Երկրորդ մասին մէջ յաջող էին՝ Մանուշակ Թումայեան, Ժանէթ Շիրիքճեան եւ Նուարդ Շալճեան՝ Մօցարթէն, Ռէյնհօլտէն եւ Շապրիէէն իրենց նուագած կտորներով: Մարօ Պօղիկեան երաժշտական խոր զգայնութեամբ նուագեց Հէնտէլի *Բասսագայլը*: Անահիտ Քիւթնէրեան ճկուն մատնահարումներով նուագեց Վէպէրի *Մուվըման բէրբէթիւէլ* դժուարին կտորը: Իսկ Այտա Թահթաճեան երաժշտական խոր ըմբռնումով նուագեց Շօբէնի *Բօլօնէզ* եւ *3 Էքօսէզ*ը, հաճելի վայելք մը հրամցնելով ունկնդիրներուն:

Ջերմօրէն կը շնորհաւորենք Բրօֆ. Օր. Ն. Տամատեանը, որ գիտէ երաժշտութեան եւ արուեստի սէրը ներշնչել իր աշակերտներուն:

*Սաւառնակ*, 16 Յունիս 1951

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Ներկայիս մեզի ընծայուող զանազան աշակերտական ունկնդրութիւնները մտիկ ընելով, իսկապէս կ'անդրադառնանք թէ ի՛նչ մեծ փոփոխութիւն տեղի ունեցած է ծնողներու մտայնութեան մէջ։ Երաժշտութեան ուսուցումը այլեւս չի նկատուիր իբրեւ շքեղանք մը որ վերապահուած է ընտրանիի մը կամ երաժշտական ասպարէզին նուիրուիլ փափաքողներուն։ Անիկա մաս կը կազմէ ընդհանուր դաստիարակութեան, ճիշդ ինչպէս գրելը, կարդալը, գծագրելը։

Երաժշտական մշակոյթ ստացած մանուկ մը անկէ կը քաղէ առ նուազն սա առաւելութիւնը, որ իր առջեւ կը տեսնէ բացուիլը մինչ այդ իրեն անծանօթ հեռանկարներու, գեղեցկութեան երեւոյթներէն մին ճաշակելու, կեանքը ըմբռնելու եւ գնահատելու նորանոր միջոցներ։

Ասիկա իրեն կու տայ ոգեկան սնունդ մը, որ լոկ բարերար դեր կրնայ կատարել իր բարոյական առողջութեան համար, ու նաեւ անուղղակիօրէն պահպանելով ներքին հաւասարակշռութիւնը՝ նպաստել կեանքի մէջ իր յաջողութեան։

Ասիկա՝ նոր լեզու մը սորվելու պէս է, սակայն տիեզերակա՛ն լեզու մը, զոր կը խօսի եւ կը հասկնայ ամբողջ աշխարհը, եւ որ իր առջեւ կը բանայ դուռները գրականութեան մը՝ որ անզուգական է իր ընդարձակութեամբ, իր յառաջացուցած հոգեկան թռիչքներով եւ իր առթած ջինջ հրճուանքով։

Եւ ասոր համար, անհրաժեշտ չէ արտակարգ կարողութիւններ ունենալ, խնդիրը *վիրթիւոզ*ներ պատրաստելուն մէջ չի կայանար, այլ՝ երաժշտական գեղեցկութիւնը հոգիներուն մատչելի դարձնելուն մէջ։ Ուստի, նկատելի ու անմիջական արդիւնքներ չտեսնող աշակերտը պէտք չէ վհատի. խորացումի աշխատանք մը կայ որ անգիտակցօրէն տեղի կ'ունենայ։

Մեր հայ հայրերուն եւ մայրերուն պատիւ կը բերէ - թէեւ իրենց թիւը տակաւին անբաւարար է - որ հասկցած են երաժշտական մշակումի մը անհրաժեշտութիւնը։

Այս խորհրդածութիւններուն մէջ կը յածէր միտքս երբ խոշոր սեւ դաշնակին առջեւ՝ մտաւորական կեանքին բացուող այդ պզտիկ էակները իրենց փոքրիկ թոմպուլիկ ձեռքերով կը նուագէին՝ ջանադրութեամբ կամ եռանդագին։

Փոքրիկներ Ռ. Զաղացպանեան եւ Անահիտ Խըտըշեան ճշգրտօրէն տուին իրենց սորված դասը։

Շուշիկ Խաչատուրեան մասնաւորապէս օժտուած կը թուի եւ իր տարիքին բաղդատմամբ՝ մեծ հասկացողութեամբ կը նուագէ։ Ան գիտցաւ երանգաւորում

դնել եւ երաժշտական նախադասութեան ցցունութիւն տալ: Եթէ լրջօրէն աշխատի, ան կրնայ դառնալ ատենէն ուշագրաւ աշակերտներէն մին:

Պերճ Արթինեան քիչ մը վարանք ունեցաւ իր նուագածութեան մէջ: Ն. Զաղացպանեան, ընդհակառակն, գիտցաւ նկարագիր տալ Շումանի *Croque-Mitaine*-ին:

Մատլէն Արթինեան եւ Վերոնիք Սարգիսեան եւս լաւ կշռութաւորուած եւ լաւ երանգաւորուած նուագածութեամբ մը տուին իրենց կտորները: Առաջինը, սակայն, քիչ մը անհաւասար կերպով չափաւորեց իր երանգաւորումները. երկրորդը՝ երաժշտահիւսումի ըմբռնումը ունի:

Ալիս Գարտաշեան, յստակ, լաւ երանգաւորուած նուագածութեամբ մը, գիտցաւ քնքշութիւն դնել Մոցարթի *Valse favorite*-ին մէջ:

Յակոբ Սամսոնեան նուագեց Ռամոյի *Թամպուրէն*ը ոստոստուն բայց քիչ մը փութկոտ ոճով մը: Յարատեւ աշխատանքով ան կրնայ լաւ արդիւնքներ տալ:

Նոյնպէս քիչ մը փութկոտ կշռոյթ ունէր Լիլի Գույումճեան, որ պիտի շահէր քիչ մը աւելի թաւշային նուագածութեամբ մը:

Մերսետէս Մանիկեան անշուշտ երաժիշտ է եւ լաւ թեքնիք ունի, բայց այդքանը չի բաւեր, պէտք է նաեւ աշխատիլ: Ան ունեցաւ նրբութեան պահեր, բայց անհաւասար եղաւ: Ափսո՜ս իրեն համար, որովհետեւ կրնայ շատ աւելին տալ:

Նանիկ Խիւպէսէրեան, թէեւ քիչ մը թոյլ նուագածութիւն ունեցաւ, սակայն գիտցաւ արտայայտել Մենտելսոնի 2-րդ *Պարքարոլ*ին թախիծը:

Գալով Անի Շալճեանի, ան ունի լաւ երանգաւորուած նուագածութիւն մը, բայց քիչ մը չափազանց շատ քնքշութիւն դրաւ եւ ո՛չ բաւականաչափ ուժգնութիւն՝ Պեթհովէնի *Պակաթէլ*ին մէջ:

Շոփէնի մէկ վալսը կը հմայէ մեզ իր մասնայատուկ կշռոյթով. ան կ՚ոգեկոչէ դեռատի աղջկան մը շիկնոտ արբշռութիւնը՝ իր առաջին պարահանդէսին: Արմինէ Արթինեան լոկ մասնակիօրէն մեզի տուաւ այս տպաւորութիւնը:

Կարօ Պէյլէրեան Պախի *Gavotte et Musette*-ը նուագեց դասական եւ լաւ ըմբռնուած եղանակով մը: Սակայն պիտի փափաքէի որ pianissimi-ները նուազ թուլութիւն պարունակէին:

Հրայր Պօղուրեան ոստոստուն լաւ կշռոյթ մը դրաւ Հէլլըրի *Թարանթէլ*ին մէջ, բայց ո՛չ բաւականաչափ թեթեւութիւն: Ըմբռնում եւ լաւ նուագածութիւն ունի:

Մոցարթի *Ֆանթազիա*ին մէջ, Մանուշակ Թումայեան դրաւ այլազանութիւն եւ նոյնիսկ կրցաւ տեղին ողբերգական ըլլալ. սակայն եռանդը քիչ մը կը պակսի իր մէջ:

Ժանէթ Շիրիքճեան օժտուած է: Իր յատուկ ու երանգաւոր նուագածութեամբ, ան կրցաւ հետաքրքրական դարձնել Ռայնիօլտի *Էմփրոնթի*ն:

Նուարդ Շալճեան ունի մեկնաբանումի հասկացողութիւն, երաժշտական ըմբռնում, սքանչելի նուագահիւսում: Այս յատկութիւններուն շնորհիւ, ան կրցաւ

գունագեղութիւն տալ Շապրիէի *Սքէրցօ-վալս*ին որ ինքնին քիչ հետաքրքրական է։

Մարօ Պօղիկեան յստակ, ամուր, զօրեղ նուագածութիւն ունի։ Փոխնիփոխ վեհափառ կամ թեթեւ, ան մեզի լիովին ըմբռշխնել տուաւ Հէնտէլի *Passacaille*-ը։

Վէպէրի *Յաւիտենական շարժում*ը յարմար է շեշտելու համար *վիրթիւոզ*ի յատկութիւնները։ Անահիտ Քիւթնէրեան, հզօր եւ արագ մասերուն մէջ իսկ մարգարտանման նուագածութեամբ, գիտցաւ կատարելապէս տալ կտորին նկարագիրը։

Խելացութեամբ եւ ըմբռնումով, Այտա Թահթաճեան նուագեց Շոփէնի *Փոլոնէզ*ը (en do dièze min.), կտոր մը որ քիչ կը յարմարի իր խառնուածքին. եւ թեթեւութիւն ու գունաւորում դրաւ նոյն երգահանին *3 Ecossaises*-ին մէջ։ Այտա Թահթաճեան իր անձին նմանող նուագածութիւն մը ունի, համակ քնքշութիւն եւ զգայնութիւն, կը պահէ շնորհալիութիւնը նոյնիսկ ուժգնութեան մէջ։ Ան նախասահմանուած է մեկնաբանելու համար Շոփէնի բանաստեղծական մասը։ Մեծ են իր յառաջդիմութիւնները. ան հասած է կէտի մը ուր կարելի է շատ բան ակնկալել իրմէ։

Օր. Ն. Տամատեան կրնայ հպարտ ըլլալ իր աշխատանքով։ Շօշափելի նպաստ մը կը բերէ ան՝ նոր սերունդի կազմութեան մէջ։

*Արեւ*, 20 Յունիս 1951, ԼԷ. տարի, թիւ 9889, էջ 2

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

Oriental Hall ( Université Américaine )

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Samedi, le 7 Juin 1952, à 5 h. p. m.**

Le programme tient lieu d'Invitation

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| *Sona Titizian* / *Sirvart Titizian* | Berceuse ( 4 mains ) | Mozart |
| *Sirvart Agopian* | Etude | Beyer |
| *H. Tchaghatzbanian* | Bernoise | Kozeluch |
| *Anahid Khedechian* | La Styrienne | Burgmüller |
| *Berdj Artinian* | La Chevaleresque | Burgmüller |
| *Ch. Khatchadourian* | Sonate en do (1er mouv.) | Mozart |
| *N. Tchaghatzbanian* | Tempo di Minuetto | Beethoven |
| *Madeleine Artinian* | L'avalanche | Heller |
| *Véronique Sarkissian* | Pour Elise | Beethoven |
| *Alice Kardachian* | Rondo | Diabelli |
| *Hagop Samsonian* | Menuet | Haëndel |
| | Le désir ( valse ) | Beethoven |
| *Lucie Babikian* | L'adieu | Burgmüller |

| | | |
|---|---|---|
| *Lily Kouyoumdjian* | Scherzo en si bem. maj | Schubert |
| *Hrayr Boghourian* | La victoire | Rameau |

## INTERVALLE

| | | |
|---|---|---|
| *Anahid Makinadjian* | La fileuse | Mendelssohn |
| *Hripsimé Baldjian* | Six variations | Beethoven |
| *Manouchag Toumayan* | Impromptu en mi bem. maj | Schubert |
| *Jeannette Chirikdjian* | Sonate | Scarlatti |
| | Scherzo en mi min. | Mendelssohn |
| *Anahid Kutnérian* | Carnaval de Vienne (Allegro) | Schumann |
| *Aïda Tahtadjian* | Etude en forme de valse | Saint-Saëns |

# AUDITION DES ELEVES DE PIANO DE MLLE. NEVARTE DAMADIAN

H. SOULON

Tous ces jeunes arméniens, je devrais dire plutôt ces jeunes arméniennes, puisque je ne compte que trois garçons dans leur nombre – sont sérieux, consciencieux, appliqués. A ces qualités ils ajoutent le goût et le sens instinctif de la musique. Avec de tels éléments la pédagogie intelligente et scrupuleuse de Mlle. Damadian ne saurait obtenus que d'excellents résultats.

Je regrette de n'avoir pu entendre les sept premiers élèves qui se sont présentés. Pour les autres, selon notre habitude, nous reproduirons brièvement les notes prises sur eux pendant l'audition.

N. Tchaghatzbanian dans un *Tempo di Minuetto* de Beethoven, montre de l'autorité, articule avec fermeté et rythme avec justesse. Madeleine Artinian a des l'aisance: ses accents, ses nuances témoignent d'une évidente musicalité. Véronique Sarkissian "phrase" bien et montre déjà une aimable sensibilité. L'articulation d'Alice Kardachian n'est pas toujours égale mais elle joue avec plaisir. Il y a de l'assurance, de la fermeté et aussi de délicates nuances dans le jeu de Hagop Samsonian. Lucie Babikian joue correctement et d'une manière assez expressive.

Avec Lily Kouyoumdjian nous abordons les élèves d'un niveau plus élevé. Son interprétation d'un *Scherzo* de Schubert, très animée, vivement rythmée témoigne d'une musicalité certaine. Hrayr Boghourian a un jeu vigoureux et autoritaire qui convenait au morceau choisi: *La victoire* de Rameau.

Dans la deuxième partie A. Makinadjian donne une exécution bien articulée de *La Fileuse* de Mendelssohn à laquelle on souhaiterait plus de légèreté et de nuances. Dans *Six variations* de Beethoven Hripsimé Baldjian montre beaucoup de souplesse "phrase" bien et met en valeur les contrastes. Manouchag Toumayan devait être sans doute un peu émue: malgré quelques défaillances son *Impromptu* de Schubert n'a pas manqué de souplesse et d'agilité. Jeannette Chirikdjian a joué une Sonate de Scarlatti avec beaucoup de netteté et dans un rythme très sûr. Anahid Kutnérian n'a pas toujours vaincu les difficultés que présente le *Carnaval de Vienne* de Schumann. Dans l'ensemble cependant son exécution témoignait de sensibilité et de goût musical. Aida Tahtadjian est évidemment une élève bien douée. Elle termina brillamment l'audition par la célèbre *Etude en forme de valse* de Saint-Saëns où elle fit apprécier son autorité, sa vigeur, et la souplesse de sa technique.

*Le Progrès égyptien*, 10 juin 1952

# ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԵՐԿՍԵՌ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

Կ.

Անցեալ Շաբաթ իրիկուն, ժամը 5.30-7.30, Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահին մէջ տեղի ունեցաւ դաշնակի ուսուցչուհի օր. Նուարդ Տամատեանի երկսեռ աշակերտներուն տարեկան հանդէս-ունկնդրութիւնը, ծնողքներու եւ բարեկամներու հոծ բազմութեան մը ներկայութեան:

Այս առթիւ պատրաստուած յայտագիրը ունէր երկու մասեր, - առաջինը յատկացուած փոքրերու եւ նորավարժներու, իսկ երկրորդը՝ աւելի մեծերու եւ յառաջացածներու:

Առաջին մասին մասնակցողներու մասին դժուար է գնահատում մը ընել, աչքի առջեւ ունենալով անոնց սկսնակի հանգամանքը, թէեւ խոստմնալից փոքրիկներ կան նաեւ անոնց մէջ, ինչպէս Անահիտ Խըտըրշեանը, Լիւսի Պապիկեանը, Շ. Խաչատուրեանը, Պերճ Արթինեանը, Յակոբ Սամսոնեանը, Լիլի Գույումճեանը եւ մանաւանդ Հրայր Պօղուրեանը, որ այնքան յաջողութեամբ զարկաւ Ռամոյի *Լա Վիքթուարը*:

Նկատի ունենալով, սակայն, Բ. մասի յառաջացած աշակերտուհիներու յաջողութիւնները, կարելի է վստահօրէն ըսել, որ սկսնակ փոքրիկներն ալ, օր. Ն. Տամատեանի ձեռքին տակ պիտի ունենան ապագային ուշագրաւ յառաջդիմութիւններ:

Յայտագրի այդ մասին մէջ, նուագելու իրենց շնորհները ի յայտ բերին վեց մասնակցողներն ալ - օրիորդներ Անահիտ Մաքինաճեան, Հռիփսիմէ Պալճեան, Մանուշակ Թումայեան, Ժանէթ Չըրըքճեան, Անահիտ Քիւթնէրեան եւ Այտա Թահթաճեան, որոնք զգացումով եւ ընդհանրապէս անթերի նուագեցին իրենց երկար կտորները Մենտէլսոնէն, Պէթհովընէն, Շուպէրթէն, Սքարլաթիէն, Շումանէն եւ Սէն Սանսէն:

Հանդէս-ունկնդրութիւնը լաւ տպաւորութիւն ձգեց բոլոր ներկաներուն վրայ:

*Յուսաբեր*, 12 Յունիս 1952

# ԴԱՇՆԱԿԻ ՓԱՅԼՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ ՄԸ

ԹՂԹԱԿԻՑ

Գահիրէ, 9 Յունիս

Արդիւնաւոր տարեշրջանէ մը վերջ, երբ մեր կրթական յարկերը կը պատրաստուին իրենց տարեկան հանդիսութիւններով՝ ներկայացնել կատարուած աշխատանքին հունձքը, անոնց կարգին ու անոնց հետ քայլ կը պահէ նաեւ մեր մէջ, երաժշտական որոշ շարժում մը որուն մէկ խրախուսիչ արտայայտութեան ներկայ գտնուելու հաճոյքն ունեցանք անցեալ շաբաթ օր (7 Յունիս), տեղւոյս Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահը, ուր տեղի պիտի ունենար ծանօթ մանկավարժ դաշնակի ուսուցչուհի Բրօֆ. Օր. Ն. Տամատեանի երկսեռ աշակերտութեան տարեկան ունկնդրութիւնը։ Շքեղազարդ սրահը, որոշեալ պահուն կէսօրէ վերջ ժամը 5-ին արդէն կը յորդէր ընտրանի հասարակութեամբ մը, որուն բաղկացուցիչ տարրերուն մէջ կը նշմարուէին, բացի ծնողներէ, հայ թէ օտար վարժարաններու տնօրէններն ու ուսուցիչները, հայ թէ օտար մամուլի ներկայացուցիչները, երաժշտական քննադատներ, ազգային մարմիններէ հանրածանօթ դէմքեր, ինչպէս նաեւ հայ եւ օտար երկսեռ երիտասարդութիւն մը։ Ապա ամբողջ բազմութիւնը պարփակող սրահը կը տիրէր երկիւղած լռութիւն մը որ այնքան վեհ էր որքան տպաւորիչ, մանաւանդ անոր համար որ մենք բացառաբար միայն առիթը ունեցած ենք անաղմուկ եւ կարգապահ հաւաքոյթներ ունենալու։

Մանկահասակ սկսնակներու, պատանիներու եւ ապա յառաջադէմներու կիրթ ելոյթները դաշնամուրին առջեւէն, իւրաքանչիւր նուագածութեան համար խլեցին ներկաներուն գնահատութեան ծափը որ մեղմ էր յաճախ եւ թունդ երբեմն՝ ըստ անոնց կրած տպաւորութեան։ Իսկ Օր. Ա. Թահթաճեանի նուագածութիւնը, որով կը փակուէր օրուան հանդիսութիւնը, իր գագաթնակէտին կը հասցնէր խանդավառութիւնը, իր այնքան ճարտար մատնահարումին համար որով բացայայտ ապացոյցը տուաւ թէ լիապէս տիրապետած էր դաշնակին եւ ստեղնաշարերը այլեւս գաղտնիք մը չունէին իրեն համար։

Հիացմունքի եւ քաջալերանքի անվերապահ արտայայտութիւնները որոնք չի զլացուեցան աշակերտներուն՝ հանդիսականներուն կողմէ, յանձին անոնց ուղղուած կ'ըլլային իրենց Ուսուցչուհւոյն՝ որուն կատարած գործին հանդէպ երախտագիտական զգացումէ մղուած՝ շնորհալի աշակերտութիւնը անոր կը նուիրէր կարմիր վարդերէ կազմուած մեծ ծաղկեկողով մը, ինչ որ կ'աւելցնէր բեմին հրապոյրը։

Երկար ատեն յամենալէ վերջ, ներկաները սկսան հետզհետէ մեկնիլ, չմոռնալով իրենց շնորհաւորութիւնները ներկայացնել Բրօֆ. Օր. Ն. Տամատեանի իր այս

փայլուն կազմակերպութեան մասին, ու իրենց գնահատանքը՝ մեր գաղութին մէջ իր կատարած առաքելութեամբ, մշակութային կեանքին առընթեր՝ երաժըշտական ուսմանց իր բերած սատարին համար։

Երկրորդելով ընդհանուրին խնդակցութիւնը, կը փափաքինք մեր կարգին շնորհաւորել Օր. Տամատեանը, մաղթելով որ նորահաս սերունդները գիտնան լաւագոյնս գնահատել տարուած աշխատանքին կարեւորութիւնը, որովհետեւ ապագան վերապահուած է անոնց միայն որոնք գիտեն աշխատիլ եւ յարատեւել, յաղթահարելով յաջողութեան ճանապարհին խոչընդոտները։

*Արաքս*, 14 Յունիս 1952

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ՄԻՇՏ ՅԱՌԱՋԴԻՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Մշտանորոգ հետաքրքրութեամբ է որ ներկայ կ'ըլլամ Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներու դաշնակի ունկնդրութիւններուն։ Անոնց լաւ մակարդակը, նուագածութեան որակը՝ հաճելի անակընկալներ կը վերապահեն միշտ մեզի։

Մթնոլորտն ալ ասոր մէջ իր դերը կը խաղայ, որովհետեւ աշակերտներու ծնողներէ եւ բարեկամներէ զատ, որոնց մարդ կը սիրէ հանդիպիլ, ներկայ կ'ըլլան համբաւաւոր դաշնակահարներ, արուեստի քննադատներ, արուեստագէտներ եւ նախկին աշակերտներ՝ հետզհետէ աւելի մեծ թիւով։ Այս վերջիններէն ոմանք շարունակած եւ աւարտած են բարձրագոյն ուսումներ, ուրիշներ՝ արդէն իսկ ընտանիք կազմած են։ Ամբողջ այս բազմութիւնը կը կազմէ մեծ ընտանիք մը, որ կը սիրէ համախմբուիլ տարին անգամ մը՝ ունկնդրելու համար ըլլա՛յ իրենց արենակից կրտսերները, ըլլա՛յ իրենց բարեկամները, եւ տպաւորութիւններ փոխանակելու համար՝ խանդավառութեամբ եւ առատ շնորհաւորութիւններով։ Իսկապէս տօնական օր մըն է ասիկա, եւ երբ ամէն ինչ կը վերջանայ՝ ափսոսանքով կը բաժնուին իրարմէ։

Սակայն, սկիզբէն սկսինք։

Սոնա եւ Սիրվարդ Թիթիզեան քոյրերն են որ բացին հանդիսութիւնը՝ Մոցարդի քառաձեռք *Օրօր*ով, զոր նուագեցին պատշաճօրէն։

Ապա, Սիրվարդ Ակոբեան - ոստոստող այդ փոքրիկ թիթեռնիկը - նրբութեամբ նուագեց Պէյէրի մէկ *Էթիւտ*ը, երկու շնորհալի խոնարհութիւններու միջեւ։

Տակաւին չափազանց կանուխ է՝ յատկանշումը ընելու համար Հ. Զաղաց-

պանեանի եւ Անահիտ Խըտըշեանի նուագածութեան. անոնք ճշդօրէն տուին, առաջինը՝ Քոզլուքի *Պէռնուազը*, երկրորդը՝ Պուրկմիւլըրի *Լա Սթիրիէնը*:

Հզօր ու երանգաւոր շատ լաւ կշռոյթով մը, Պերճ Արթինեան նուագեց Պուրկմիւլըրի *Լա Շըվալըրէսքը*: Լաւ տարր մըն է:

Փոքրիկն Շաքէ Խաչատուրեան մասնաւորապէս օժտուած է. ունի երաժշտական հասկացողութիւն մը որ իրեն թոյլ տուաւ մեկնաբանել - այո, մեկնաբանել կ'ըսեմ - առաջին շարժումը Մոցարդի Տօ Սոնադին, որ դժուարին կտոր մըն է իր տարիքէն մանուկի մը համար. աշակերտ մըն է ան, որ՝ եթէ յարատեւէ՝ շատ գոհունակութիւն պիտի պատճառէ իր ուսուցչուհիին եւ իր շրջապատին:

Պէթհովէնի *Թէմփօ տի Մինուէթթօ*ն, զոր շնորհալիօրէն նուագեց Ն. Զաղացպանեան, քիչ մը աւելի շեշտուած ելեւէջ կը պահանջէր սակայն:

Մատլէն Արթինեան զիտցաւ պատշաճ կշռոյթը տալ Հէլլէրի *Ավալանշ*ին: Իսկ Վերոնիք Սարգիսեան, իր երանգաւոր նուագածութեամբ, գոհացուցիչ կերպով տուաւ Պէթհովէնի *Էլիզի համար*ին մէջ պարփակուած քնքշութիւնը:

Ալիս Գարտաշեան յառաջդիմած է. ինքնավստահութիւն ձեռք ձգած է ան եւ լաւ շարժում մը դրոշմեց Տիապէլլիի *Ռոնտօ*յին. սակայն պիտի սիրէինք որ աւելի ուժգնութիւն ունենային իր մատները:

Յակոբ Սամսոնեան ինքզինք նկատել տուաւ իր լաւ մակարդակով: Զինք նախընտրեցի աւելի Հէնտէլի *Մընիւէ*ին քան թէ Պէթհովէնի *Տէզիր*ին մէջ, ուր կշռոյթը բաւականաչափ ոստոստուն չեղաւ:

Լիւսի Պապիկեան մաքուր նուագածութիւն մը ունի. շատ ճիշդ կերպով նուագեց Պուրկմիւլըրի *Հրաժեշտ*ը:

Շուպէրթի *Սքէրցօ*ն (սի պէմոլ մաժ.) սքանչելի ելեւէջով նուագուեցաւ Լիլի Գույումճեանի կողմէ, որ ունի ուժեղ եւ երանգաւոր նուագածութիւն մը՝ որ կը պահէ իր ամբողջ պայծառութիւնը ամենաարագ մասերուն մէջ իսկ: Ան եւ Հրայր Պօղուրեան՝ տարրեր են որոնց կ'արժէ հետեւիլ:

Հրայր Պօղուրեան, իր առաջին հարուածով իսկ, մեզի ցոյց կու տայ թէ կը գտնուինք ուժեղ, ինքնավստահ եւ լաւ հնչականութեամբ նուագածութեան տէր աշակերտի մը առջեւ: Սակայն երանգները անտեսելու չէ ան: Լաւ գիտեմ թէ իր նուագածը *Յաղթանակ*ն էր, բայց չմոռնանք որ Ռամոյի կողմէ գրուած է:

Անահիտ Մաքինաճեան մէկ շունչով եւ լաւ երանգաւորուած սքանչելի ելեւէջով տուաւ Մէնտէլսոնի *Լա Ֆիլէօզ*ը: Իր նուագածութիւնը յստակ է եւ գեղեցիկ հնչականութիւն ունի: Նուագումը կատարեալ եղած պիտի ըլլար եթէ հպումը քիչ մը աւելի թեթեւ ըլլար:

Հռիփսիմէ Պալճեան արժէքաւոր յատկութիւններ ունի՝ յստակութիւն, հնչականութիւն եւ սքանչելի մատնահարում: Շատ երանգաւորումով ան մեզի տուաւ Պէթհովէնի *Վեց վարիասիոնները*:

Մանուշակ Թումայեան աշխատանքով աւելի պիտի բարելաւէ՝ արդէն իսկ

գեղեցիկ մեքենականութիւն ունեցող իր նուագածութիւնը եւ աւելի ինքնավստահութիւն ձեռք պիտի ձգէ։ Աշխուժութեամբ նուագեց Շուպէրթի *Էմփրոմթի*ն (մի պէմոլ մաժ.)։

Ժանէթ Շիրիքճեան Սքարլաթթիի Սոնաթը նուագեց իտալացի վարպետին մտադրած թեթեւաշարժ ոգիով։ Մաքուր, երանգաւոր եւ լաւ հնչականութեամբ նուագածութիւն մը ունի ան։ Մէնտէլսոնի *Սքէրցօ*ն (մի մին.) նոյնպէս շատ լաւ նուագուեցաւ։

Անահիտ Քիւթնէրեան մեզի տուաւ Շումանի *Քառնավալ տը Վիէն*ը։ Ան ունի միշտ իր ուժեղ եւ խանդոտ ոճը, որ գունաւորում կու տայ իր նուագածութիւններուն։ Շարահիւսումին մէջ աւելի ծաւալ եւ «փիանօ»-ներուն մէջ աւելի մեղմութիւն դնելով, ան պիտի վերահաստատէ այն հաւասարակշռութիւնը որ անհրաժեշտ է ե՛ւս աւելի ամբողջականօրէն ըմբռշխնելու համար գրաւչութեամբ լի իր նուագումը։

Այտա Թահթաճեան ունի բոլոր յատկութիւնները։ Կատարեալ թեքնիքով իր նուագածութիւնը, որ փոխնիփոխ ուժեղ եւ նուրբ է՝ քաղցր երաժշտականութեամբ եւ մարգարտային յստակութեամբ, զինք կը մատնանշէ իբրեւ հետեւորդը Նուպար Չորպաճեանի, Ասթրա Մսրլեանի եւ ուրիշներու գծին։ Մեծ հաճոյքով է որ ունկնդրեցինք Սէն-Սանսի *Վալսի ձեւով էթիւտ*ը զոր մեկնաբանեց հասկացողութեամբ, զգայնութեամբ, եւ երանգաւորումի սքանչելի գիտակցութեամբ։ Իր յարատեւութիւնը եւ լուրջ աշխատանքը արժանի են ամէն գովեստի։

Ակներեւ է որ Օր. Նուարդ Տամատեան շատ պահանջկոտ է իր աշակերտներուն հանդէպ եւ գիտցած է անոնց ջամբել ամէն դաստիարակութեան առաջին սկզբունքը, այն է թէ՝ ջանադիր եւ երկարատեւ աշխատանքը հիմն է ամէն յառաջդիմութեան։

*Արեւ*, 30 Յունիս 1952, ԼԸ. տարի, թիւ 10.198, էջ 2

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 27 ՆՈՅԵՄԲԵՐ 1952

ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
ԱՅՏԱ ԹԱՀԹԱՃԵԱՆԻ
(ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ)

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ԳԱՀԻՐԷ

# ՀԱՆԴԻՊՈՒՄԻ ՕՐ

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 27 ՆՈՅԵՄԲԵՐ 1952**

կ.վ. ժամը 7.30էն սկսեալ թեթեւ ճաշի սպասարկութիւն

» » 9-ին՝ **ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ**

## ՕՐ. ԱՅՏԱ ԹԱՀԹԱՃԵԱՆԻ

**ՅԱՅՏԱԳԻՐ**

| | |
|---|---|
| **HAENDEL** | **Passacaille** |
| **BEETHOVEN** | **Sonate en ré mineur (1er mouvement)** |
| **CHOPIN** | **Fantaisie impromptu** |
| **DEBUSSY** | **Jardins sous la pluie** |
| **KOUGUELL** | **Chanson Arménienne** |

ՆՈՒԱԳՈՒԱԾ ԿՏՈՐՆԵՐՈՒՆ ՄԱՍԻՆ ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

**ՕՐ. Ս. ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ԿՈՂՄԷ**

Սիրով կը հրաւիրուին մեր եւ քոյր Միութեանց անդամ-անդամուհիները եւ իրենց հիւրերը:

***

## ՊԱՐԱՆՑԻԿ-ԹԷՅ

Կիրակի, 30 Նոյեմբեր 1952, կ. վ. ժամը 5էն սկսեալ Միութեանս անդամներուն եւ համակիրներուն համար

Ծախսերու մասնակցութիւն 10 ե. դ.

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

Յայտարարութիւն

*Արեւ*, 27 Նոյեմբեր 1952, ԼԸ. տարի, թիւ 10.323, էջ 3

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ ԱՅՏԱ ԹԱՀԹԱՃԵԱՆ ՄԵԶԻ ՊԱՐԳԵՒԵՑ ԱՆԽԱՌՆ ՀԱՃՈՅՔԻ ԺԱՄ ՄԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Լամբին մտերիմ լոյսին տակ, երկու օրիորդներ մեզի տուին խնամքով պատրաստուած դաշնակի յայտագիր մը, մեծ հաճոյք պատճառելով մեզի:

Այտա Թահթաճեանի նուրբ կերպարանքը լաւ ծանօթ է մեր գաղութի երաժշտասէրներուն: Օր. Նուարդ Տամատեանի լաւագոյն աշակերտներէն մին՝ ան կը շարունակէ սերունդը Նուպար Չօրպաճեանի, Աստրա Մարլեանի եւ ուրիշներու:

Ինչ կը վերաբերի ինծի, որ ունկնդրութենէ ունկնդրութիւն հետեւած եմ իրեն, մշտանորոգ հաճոյքով մտիկ կ'ընեմ իր նուագածութիւնը:

Իր ակներեւ յատկութիւնները իրեն թոյլ տուին ճշդութեամբ մեզի ներկայացնելու գործերը տարբեր խառնուածքներու տէր այնպիսի երաժիշտներու, որպիսին են Հէնտէլ, Պեթհովէն, Շոփէն, Տըպիւսի:

Այտա Թահթաճեան՝ մաքուր եւ արդէն իսկ բաւարարապէս ապահով իր թեքնիքին կը միացնէ դաշնակահարի մը համար թանկագին յատկութիւններ՝ հասկացողութիւն եւ մեկնաբանութեան գիտակցութիւն, զգայնութիւն, երաժշտականութիւն, երանգաւորում:

Ան կրցաւ փոխնիփոխ հանդիսաւորութիւն եւ վեհութիւն դնել Հէնտէլի *Passacaille*-ին մէջ, դասական շունչ մը՝ Պեթհովէնի Սոնաթին մէջ, եւ տալ կատարեալ մէկ պատկերը լեհ վարպետին կրկնակ անձնաւորութեան, այսինքն անոր բանաստեղծականութեան եւ հերոսական շեշտերուն:

Տըպիւսիի երաժշտութիւնը իմ մէջ կ'արթնցնէ հնչիւններ որոնք աղերս ունին ջուրերու աշխարհին հետ - անձրեւ՝ որ կ'իջնէ ուժգին կամ նուրբ կաթիլներով, առուներ՝ որ կ'անցնին գլգլալով, ակեր՝ որ կը խոխոջեն ժայռի մը խոռոչին մէջ: *Անձրեւին տակ պարտէզ*ը տրուեցաւ նուրբ, զգայուն եւ պատկերաւոր մատնահարումներով, ստեղծելով այն մշուշոտ եւ եթերային մթնոլորտը որ կը ծաւալի Տըպիւսիի մէն մի գործէն:

Քուկէլ, որուն բուռն եւ կենսալի կշռոյթը կը սիրենք, անկատարօրէն միայն ներկայացուած էր *Հայկական երգ*ով, ձախ ձեռքի համար գրուած գործ մը, որ ի վերջոյ ուրիշ բան չէ եթէ ոչ ծանօթ եղանակի մը ձայնագրումը, որ ոչինչ կը պարտի երգահանի ստեղծագործող անձնաւորութեան:

Իւրաքանչիւր երգահանի կեանքին եւ գործին մասին հակիրճ այլ բանաւոր նոթեր, զորս խնամով պատրաստած էր եւ կարդաց Սեդա Սարուխան,

օգտակարապէս կը մեկնաբանէին իւրաքանչիւր նուագուող կտոր։

Ընդգծէ՛նք յայտագրին բարեբաստիկ ընտրութիւնը, ուր ի յայտ կու գար ճաշակաւոր այլազանութիւն մը - վարպետներ՝ զորս կը սիրենք, գործեր՝ որոնք զիրենք լա՛ւ կը յատկանշեն եւ որոնց լաւ ծանօթ ենք։ Ասիկա մեզի թոյլ տուաւ աւելի լաւ ըմբռշխնել երաժշտութիւնը եւ աւելի ողջմտօրէն դատում ընել նուագածութեան որակին մասին։

Այդ Հինգշաբթին, ուրեմն, այնքան ուրիշ Հինգշաբթիներու նման, եղաւ նո՛յնքան շինիչ որքան հաճելի, հաւատարիմ՝ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան աւանդութեան, որ երբեք չի թերանար քաջալերելու եւ հանրութեան ծանօթացնելու այն երիտասարդ տաղանդները որոնք արժանի են ատոր։ Իր առաջին երեւումով, Այտա Թահթաճեան արդար յաջողութիւն մը ունեցաւ։

Կիսալոյսի անդորրութեան մէջ, լիովին ըմբռշխնեցինք այդ մէկ ժամը, որ մեզ կ՚անջատէր աշխարհային մտահոգութիւններէն։ Եւ երբ աւարտեցաւ, խաղաղութիւն մը համակած էր մեզ։ Ամենօրեայ հոգերը հեռացած էին մեր մտքէն, մեր հոգին վերագտած էր վաղնջական թարմութիւն մը։

Համակ պարզ երկու օրիորդներ գործեր էին այդ հրաշքը։

*Արեւ*, 11 Դեկտմբեր 1952, ԼԸ. տարի, թիւ 10.335, էջ 3

ALL SAINTS’ CATHEDRAL, ԳԱՀԻՐԷ

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 10 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1952

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ԱՍԹՂԻԿ ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

# SALLE DE ALL SAINTS' CATHEDRAL

RUE MASPERO – LE CAIRE

**MERCREDI 10 DECEMBRE 1952 A 9 H. 15 P.M.**

---

RECITAL



DE PIANO

# ASTRA MESSERLIAN

DU CONSERVATOIRE NATIONAL DE MUSIQUE DE PARIS

# BEETHOVEN (1770-1827)

## 32 VARIATIONS en do mineur

BEETHOVEN suit ici la mesure la plus ancienne, surtout la vieille méthode Allemande.

De Lenz a mieux caractérisé cet étonnant ouvrage analogue à l'ancienne Chaconne par la persistance de son thème de huit mesures ou de la seul présence de sa base chromatique en l'appelant "Un dur et âpre travail illuminé par des éclairs de génie".

## SONATE, en fa mineur, op. 57 (Appassionata)

**Allegro assai - Andante con moto, Allegro ma non troppo**

La Sonate op 57 fut commencée par Beethoven en 1804 et publiée seulement trois années plus tard par le Bureau des Arts et l'Industrie. Elle est dédiée au comte Franz von Brunswick. Quand Beethoven en entreprit la composition, le mariage de Juliette Guicciardi venait de le plonger dans un abîme de souffrance. Ce qui y retentit, c'est un « terrible cri de détresse et de désespoir » calmé par un regard vers « l'au-delà des étoiles » et se résolvant en victorieuse fanfare, a noté Vincent d'Indy.

# Intervalle

# CHOPIN (1810-1849)

## 3 ETUDES

**No. 5 Op. 10 - No. 1 Op. 25 - No. 5 Op. 25**

Les 12 Etudes op. 10, dédiées à Liszt, furent composées entre 1829 et 1833, Schumann avance que les 12 op. 25 offertes à la comtesse d'Agoult, dateraient de la même époque.

Le No. 5 op. 10 en sol majeur, est une vive et brillante étude sur les touches noires.

Le No. 1 op. 25 en la bémol majeur, dont on attribue à Chopin le commentaire suivant "J'imagine un petit berger, réfugié dans une grotte, joue sur la flûte, pendant l'orage, une tranquille mélodie".

Le No. 5 op. 25 en mi mineur est moins joué que les autres Etudes. Son caractère pervers et capricieux, fait en sorte qu'il faut le jouer "avec un sourire parmi des larmes".

### NOCTURNE en fa dièze majeur

C'est à John Field que Chopin emprunta le genre d'élégie musicale appelé Nocturne. Schumann a dit de ces nocturnes :

" Ces nocturnes par leur mélancolie et leur grâce, doivent être placés au premier rang des œuvres de Chopin ".

### BALLADE en la bémol majeur

C'est sous l'influence des milieux littéraires de Varsovie que Chopin conçut l'idée des Ballades ou le fantastique est un élément capital. Celle en la bémol. op. 47 (1841) est la troisième des quatre.

Une tradition, transmise par l'entourage du Polonais, veut que celui-ci y ait peint la légende de la Loreley telle que l'a narrée Henri Heine.

## RAVEL (1875-1937)

### SONATINE, Modéré, Mouvement de Menuet, Animé

La Sonatine, si elle échappe par definition aux amples aspirations de la puissante forme musicale à laquelle l'apparente son diminutif ne se soumet pas moins, avec une aisance et une grâce incomparable, à toutes ses exigences métriques.

Elle offre dans son raccourci volontaire, l'exemple d'une construction parfaite dont tous les détails sont à l'échelle du titre, les thèmes aussi bien que les développements, la nature du sentiment tout autant que le caractère de la notation.

## ՕՐ. ԱՍԹՐԱ ՄԱՐԼԵԱՆԻ (ՓԱՐԻԶԻ ՔՈՆՍԷՐՎԱԹՈՒԱՌ ՆԱՍԻՈՆԱԼԷՆ) ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ

ԵՐԱԺՇՏԱՍԷՐ ՄԸ

Չորեքշաբթի երեկոյ, 10 Դեկտեմբեր, երաժշտասէրներու եւ երաժշտագէտներու ամենազգի երկսեռ բազմութիւն մը լեցուցած էր տեղւոյս Օլ Սէյնթս Գաթէտրալի ընդարձակ հանդիսասրահը, ուր համակրելի երիտասարդ դաշնակահարուհի Օր. Աստրա Մարլեան դաշնակի իր առաջին մեծ ռէսիթալը կու տար՝ ճոխ եւ գերազանցօրէն ընտիր Յայտագրով մը բեռնաւոր։

Ներկաներուն մէջ մասնաւորաբար աչքի կը զարնէին օտարազգի քննադատ-երաժշտագէտներ եւ մամուլի ներկայացուցիչներ։

Այսպէս ուրեմն, Բարիզի Քօնսէրվաթուառ Նասիօնալէն ընթացաւարտի թարմ դրոշմը ճակտին՝ Օր. Աստրա Մարլեան հետզհետէ հրամցուց Պէթհովէնէն, Շոբէնէն եւ Ռավէլէն դժուարին՝ այլ սակայն առինքնող կտորներ, խոր հիացման մատնելով ունկնդիր հանդիսականները, որոնք ջերմագին ծափահարութիւններով կը յայտնէին իրենց գնահատանքը համակրելի արուեստագիտուհիին։

Օր. Աստրա Մարլեան, Պէթհովէնի *32 Վառիասիօններ*ու նուագահարումին մէջ՝ ցոյց տուաւ երաժշտութեան խոր ըմբռնում, սլացիկ զգայնութիւն եւ արուեստի կատարելութիւն։ Մանաւանդ Սօնաթի ալէկռօներու իր արագասահ ու ճկուն մատնահարումները անգերազանցելի շնորհը կը կազմէին իր իւրացուցած արուեստի նրբութիւններուն։

Օր. Աստրա Մարլեան նոյն խոր ըմբռնումով եւ նոյն քաջավարժ մատնահարումներով նուագեց Շոբէնի 3 *Էթիւտ*ները, *Նօքթիւրն*ը եւ *Պալատ*ը, ինչպէս նաեւ Ռավէլի հեշտօրօր Սօնաթինը, որ վերջաբանը եղաւ իր սքանչելի Ռէսիթալին եւ որ սրտագին ծափահարուեցաւ ներկաներուն կողմէ, զինքը կրկին եւ կրկին բեմ հրաւիրելով։

Եւ այդ առթիւ, համակրելի արուեստագիտուհին հաճելի անակնկալը ըրաւ՝ Յայտագրէն դուրս նուագելով Ա. Խաչատուրեան համբաւաւոր *Թօքաթա*ն, ինչ որ տեղի տուաւ կրկին որոտընդոստ ծափահարութիւններու։

Յիշենք նաեւ թէ՝ իր Ռավէլի Սօնաթինը եւ Ա. Խաչատուրեանի *Թօքաթա*ն ամենաջերմ գնահատմանը արժանացան օտարազգի երաժշտագէտ-քննադատներու, ինչ որ իմացանք յետոյ յիշեալներուն հետ մօտէն ծանօթ եղող շրջանակներէ։

Իր արժանացած գնահատանքին եւ համակրանքին յայտարար ապացոյցներն էին այն բազմաթիւ շքեղ ծաղկեկողովներն ու ծաղկեփունջերը որոնք նուիրուեցան հիացիկ ունկնդիրներու կողմէ։

Եւ արդարեւ, ջերմօրէն շնորհաւորելի է Օր. Աստրա Մարլեան իր

նախասիրած արուեստին մէջ ձեռք բերած անվիճելի կատարելութեանցը համար։ Իր այս ռէսիթալին առթիւ արտաբերած նուագահարումներն ու ցոյց տուած տիրապետումը արուեստի նրբութիւններուն՝ ատակ են զինք քիչ ատենէն դասելու տաղանդաւոր դաշնակահարներու շարքին։

Փափաքելի էր որ համակրելի արուեստագիտուհին յաճախ հրապարակ իջնէր նման առինքնող ռէսիթալներով, եւ մանաւանդ հրամցնէր մերազնեայ երաժշտագէտներու գործերէն ալ, զորս գնահատելու ձգտումը ունի՛ նաեւ ինքն ալ, վստահ ենք։

*Սաւառնակ*, 13 Դեկտեմբեր 1952, 34-րդ տարի, թիւ 31, էջ 3

## ԱՍԴՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ՌԷՍԻԹԱԼԸ

Վ. ԳԱՐՏԱՇԵԱՆ

Հոգեկան անխառն հաճոյք էր ականատես ըլլալ փթթումին երիտասարդ արուեստագէտներու որոնք հասակ կը նետեն անմիջական շրջանակիդ մէջ եւ որոնց փառաւոր հետքերուն պիտի հետեւիս օր մը՝ յաջողութեան փայլուն այլ դժուարին ճամբուն մէջ։

Ասդրա Մսրլեանը կը ճանչնայինք նախապէս՝ երբ Օր. Ն. Տամատեանի աշակերտներուն մէջ արդէն իսկ կը մատնանշէր զինք իբր ապագայ լաւ դաշնակահարուհի մը։

Անցան քանի մը տարիներ որոնց ընթացքին հեռուէն հեռու կ՚իմանայինք իր մասին, միշտ յառաջդիմութեան մէջ, մինչեւ որ օր մը ան կը վերադառնար Եգիպտոս՝ փայլուն յաջողութեամբ աւարտելէ ետք Փարիզի Երաժշտական Քոնսէրվաթուարը։

Անկէ աւդին, քիչ մը մտերիմ շրջանակի մէջ, առիթը ունեցած էինք ունկնդրելու զինք եւ իր մօտ նկատելու զգայուն արուեստագէտի մը անվիճելի ձիրքեր։

Սակայն Օրիորդ Մսրլեանի դաշնակահարի յատկութիւնները առաւելապէս ի յայտ պիտի գային հրապարակային այն գեղեցիկ ռէսիթալի ընթացքին զոր ան տուաւ անցեալ Չորեքշաբթի, 10 Դեկտեմբեր երեկոյեան ժամը 9.15-ին, Օլ Սէյնթս Քաթէտրալի սրահին մէջ, դժուարին յայտագրով մը որուն գործադրութեան մէջ ան հաւասարապէս արժանացաւ հայ թէ օտարազգի հոծ ունկնդիրներու ջերմ գնահատանքին։

*
* *

Սրահին յանկարծական մթնալը եւ ծափահարութիւններու տարափը կը

ստիպեն զիս դադրեցնելու խօսակցութիւնս եւ դառնալու դէպի բեմ՝ ուր թէեւ ժպտադէմ այլ երկչոտ քայլերով մուտք կը գործէ Օր. Մսրլեան։

Կը դադրին ծափերը ու ներկաները՝ երկիւղած լռութեան մէջ եւ հետզհետէ աւելցող հետաքրքրութեամբ ու լարուած ուշադրութեամբ կ՚ունկնդրեն ԺԸ. դարու երաժշտական տիտանին՝ Պէթհովէնի *32 Վառիասիոնները* եւ Սոնաթ ան ֆա մինէօր Op. 57-ը (*Աբբասիոնաթա*), որոնք կը նուագուին մաքուր թեքնիքով մը, ուժեղ եւ տիրական մատնահարումներով, հարազատօրէն պատկերացնելով հոգեկան բուռն խռովքները եւ պոռթկումները այս խոր կտորներուն։

Շոփէնի երկերուն նուագածութեան մէջ, 3 *էթիւտ*ներ, *Նոքթիւռն* ան ֆա տիէզ մաժէօր եւ *Պալատ* ան լա պէմոլ մաժէօր, Ասդրա Մսրլեան գիտցաւ արտաբերել այն քնքշութիւնն ու բանաստեղծականութիւնը որոնք կը յատկանշեն այս ռոմանթիկ երգահանին գործերը, իր նուրբ մատնահարումներուն մէջ դնելով խորունկ զգայնութիւն, ջերմիկ մելամաղձոտութիւն եւ շնորհ։

Ռավէլի Սոնաթինը առիթ տուաւ Օր. Մսրլեանի զգայուն շեշտերով եւ նուրբ երանգաւորումով, մերթ ընդ մերթ մելամաղձիկ ու քնքուշ մատնահարումներով՝ այս գեղեցիկ կտորին յուզականութիւնը փոխանցելու ունկնդիրներուն որոնք իրենց ջերմ ծափահարութիւններով եւ *պիս*երով ստիպեցին երիտասարդ արուեստագիտուհին յայտագրէն դուրս նուագելու Արամ Խաչատուրեանի այնքան սիրուած *Թոքաթա*ն, իր կորովի մատնահարումներուն ընդմէջէն զգացնելով մեզի հայրենաբաղձիկ հպարտութիւն մը դէպի մեծ երգահանը։

Երիտասարդ է Օր. Մսրլեան, խանդավառ, անհուն սէր ունի երաժշտութեան հանդէպ եւ տոգորուած է յառաջդիմելու ու յաջողելու աննկուն կամքով։

Տարիները պիտի անցնին եւ իր անվհատ աշխատանքին ընդմէջէն մենք զինք պիտի ողջունենք հասած թեքնիքի կատարելութեան եւ երաժշտական հասունութեան, նորանոր յաջողութիւններու բարձունքին։

Ի սրտէ կը բաղձանք ատիկա։

*Արեւ*, 17 Դեկտեմբեր 1952, ԼԸ. տարի, թիւ 10.340, էջ 3

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ ՕՐ. ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ՌԷՍԻԹԱԼԻ ՄԱՍԻՆ

ՔԼՈՏ ՏԸ ՌԻՎ

*Տեղւոյս ֆրանսերէն կարեւոր օրաթերթերէն Ժուռնալ տ՚Էժիբթի մէջ «Ասթրա Մսրլեանի նուագահանդէսը» խորագրին տակ կը կարդանք հետեւեալ գնահատական տողերը, գրուած երաժշտագէտ-քննադատ*

*Քլոտ Տը Րիվի կողմէ.*

Արուեստագէտի մը կեանքին մէջ, դժուարին հանգրուան մըն է առաջին անգամ հանրութեան ներկայանալը: Յուզիչ եւ գեղեցիկ տեսարան մըն էր, Օլ Սէյնթս Քաթէտրալի Սրահին մէջ, Չորեքշաբթի երեկոյ, տեսնել հսկայ դաշնակի մը առջեւ, երիտասարդ եւ գեղեցիկ Ասթրա Մսրլեանը, իր սպիտակ զգեստին մէջ, ջղային՝ ժպիտը կորսնցնելու աստիճան, բայց խաղա՛ղ, ինքնակեդրոնացա՛ծ, Պեթհովէնի *Երեսուներկու Վարիասիոններ*ուն առաջին չափերուն վրայ յարձակելէ առաջ:

Ան կրցաւ զսպել իր ջղայնոտութիւնը եւ տուաւ մեզի դժուարին երկի մը գործադրումը: Իր յարձակումները (attaques) վստահ են, իր նախադրանքը լաւ երանգաւորուած: Ան տուաւ *Աբասիոնաթա*ի ալէկրօ մա նօն թրօբբօի (allegro ma non troppo) մէջ՝ իր փայլը: Կարելի չէ պահանջել 22 ամեայ դաշնակահարուհիէ մը Պեթհովէնի խռովիչ Սօնաթին մեկնաբանութիւնը, ինչպէս պիտի ընէր մեծ «վիրթիյէօզ» մը: Իւրաքանչիւր տարիք ունի իր հաճոյքները եւ կարելիութիւնները: Օր. Մսրլեանին ունեցածները մեզի կը թուին ըլլալ՝ մեծ: Իր նուագած *Աբասիօնաթա*ն եղաւ գոհացուցիչ: Ան գիտէ հակադրել ստուերներն եւ լոյսը, ան կ'ըմբռնէ երկին տրամաթիք ուժգնութիւնը եւ կը փորձէ զայն արժեւորել: Երբեմն պիտի ուզէինք որ ան աւելի զուսպ ըլլար:

*Երեսուներկու վարիասիոնները* եւ *Աբասիօնաթա*ն դաշնակահարին գործը դիւրացնող կտորներ չեն: Ասթրա Մսրլեանը չուզեց ներկայանալ Գահիրէի հանրութեան դիւրին յայտագրով մը: Հսկայ Լուտվիկին կը յաջորդէին Շոբէն եւ իր տառապանքը՝ 3 *Էթիւտ*ները, հրաշալի *Նօքթիւրն*ը ֆա տիէզ մաժէօր (fa dièze majeur) եւ լա պէմոլ մաժէօր (la bémol majeur) *Պալատ*ը: Արուեստագիտուհին ապացոյցը տուաւ իր վստահ արուեստին, բացի *Պալատ*ի նուագումէն, ուր պզտիկ տատանում մը ունեցաւ:

Րավէլ գրեց իր Սօնաթինը երեսուն տարեկանին, երաժշտական հանդէսի մը կողմէ կազմակերպուած մրցումի մը առթիւ: Ան անմիջապէս հրատարակուեցաւ Տիւրանի կողմէ, որ յետագային Րավէլի հրատարակիչը պիտի ըլլար: Այս պզտիկ Սօնաթը, ոգիով շատ թարմ, իր ձեւին մէջ դասական, նախ նետի մը մեկնումով՝ որ կը վերջանայ ջղայնօրէն թախծագին, մե՛րթ զորովալից, մերթ կարօտահեղձ այս գործէն Ասթրա Մսրլեան տուաւ լուսաւոր թարգմանութիւն մը, ամբողջութեամբ համապատասխանող հեղինակին ներշնչումին: Առնուազն՝ մենք այս տպաւորութիւնը կրեցինք: Ներկաները երկարօրէն ծափահարեցին, գեղեցիկ ծաղկեփունջերով բեմը զարդարուեցաւ: Եւ «պիս»-երէն վերջ՝ ունեցանք Խաչատուրեանի *Թօքաթա*ն (Toccata), հուժկու եւ արդիական երկ, հաստատօրէն կառուցուած, եւ որ վերոյիշեալ Սօնաթինին նման՝ կատարելապէս Օր. Մսրլեանի խառնուածքին կը համապատասխանէ:

Մենք մեծ ուշադրութեամբ պիտի հետեւինք այս երիտասարդ արուեստագի-

տուհիին ասպարէզին։ Իր ինքնակեդրոնացումը, իր լրջութիւնը, իր պզտիկ ձեռքերուն մէջ թանկագին յաղթախաղեր են, եւ իրեն կը մաղթենք մե՜ծ մե՜ծ յաջողութիւն։

*Սաւառնակ*, 20 Դեկտեմբեր 1952, 34-րդ տարի, թիւ 32, էջ 2

ՄՈՀԱՄԷՏ ԱԼԻ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ԿԻՐԱԿԻ, 21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1952

ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹ
ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ
ՅԻՍՆԱՄԵԱՅ ՈՍԿԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԸ

## Հայ Մշակոյթի Պանծացման Հանդիսութիւն

# "ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹ" ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ

# ՅԻՍՆԱՄԵԱՅ ՈՍԿԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԱԿԱՆ

## Տ Ա Ր Ե Շ Ր Ջ Ա Ն Ի

## 1902 - 1952

ՓԱՌԱՏՕՆՈՒՔ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆ ԱՌԻԹՈՎ

## "ՄՈՀԱՄԷՏ ԱԼԻ" ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Կիրակի, 21 Դեկտեմբեր 1952, առաւօտեան ժամը 10.30ին

Հովանաւորութեամբ՝

**ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ**

## ԳԵՐԱՇՆՈՐՀ Տ. ՄԱՄԲՐԷ Ս. ԱՐՔԵՊՍ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

Եւ Նախագահութեամբ՝

**«ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹ»Ի ՀԻՄՆԱԴԻՐ ՈՒ ՊԱՏՈՒՈՅ ԱՆԴԱՄ**

Տիար ԷՕԺԷՆ ԲԱԲԱՋԵԱՆԻ

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԸՆՏՐԵԱԼ ՅԱՅՏԱԳԻՐ

**ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ ՈՒ ԱՐՈՒԵՍՏԱՍԷՐ ԴԷՄՔԵՐՈՒ**

## Ա. ՄԱՍ

1.— Եգիպտական Քայլերգ * * *

2.— Բացման խօսք Պ. ՆԱԽԱԳԱՀ

3.— Օրուան խորհուրդը (կենդանի պատկեր)

- Նուագով եւ արտասանութեամբ համեմուած -

պատրաստեց՝ նկարիչ Պ. ԱՇՈՏ ԶՕՐԵԱՆ

4.— Զեկոյց (արաբերէն լեզուով) Պ. ԲԻԶԱՆԴ ԲՐՈՒՏԵԱՆ

5.— Մեներգ

ա) «Ա՜յ, Վարդ» *Բուղաղեան*

բ) «Ուռին» *Կանաչեան* Պ. ՅՈՎՍԷՓ ՄԱՄՈՒՐԵԱՆ

Դաշնակին կ'ընկերակցի՝ Տիկ. ԷԼԶԻ ԹԻՒՐԱՊԵԱՆ

6.— Ջութակ

ա) «Hymne au Soleil» *Rimsky - Korsakoff*

բ) «Vita Brevé» *De Falla, Kreisler*

ՕՐ. Զ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Դաշնակին կ'ընկերակցի՝ Տիկ. ԱԼԻՍ ՄԿՐՏԻՉԵԱՆ

7.— Արտասանութիւն

«Հայու Հոգին» *Վ. Թէքէեան* Պ. ՄԿՐՏԻՉ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ

8.— Խօսք

Միութեան պատուակալ նախագահ՝ Պ. ՄԻՀՐԱՆ ԹՈԳԱԹԼԵԱՆ

## Բ. ՄԱՍ

1.— Դաշնակ
ա) «1er Impromptu» *Chopin*
բ) «Toccata» *Khatchatourian*
ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ

2.— Բանախօսութիւն — Պ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԳԱՐԱՅԵԱՆ

3.— Մեներգ
ա) «Ինձ մի՛ խնդրիր» *Գ. Սիւնի*
բ) «Կագաւ բռաւ» »
ՏԻԿ. ԱՆԱՀԻՏ ՇԻՇՄԱՆԵԱՆ
Դաշնակին կ'ընկերակցի՝ Mme. CLEO BORG

4.— Արտասանութիւն
«Թէ Պատանէր» *Վ. Թէքէեան* ՏԻԿ. ԱՐԱՔՍԻ ՀՈՎԻՒԵԱՆ
- Նուագ՝ Benjamin Godardի -

5.— Սրինգ
«Fantaisie Pastorale Hongroise»
*Dopple* Պ. ՀՐԱՉԵԱՅ ԹՈԳԱԹԼԵԱՆ
Դաշնակով կ'ընկերակցի՝ ՕՐ. ԱԼԻՍ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ

6.— Մեներգ
«Սիրոյ Երգ» *Աշոտ Սաթեան*
«Նազեր» *Ալեմշահ* Պ. ՅԱԿՈԲ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ
Դաշնակին կ'ընկերակցի՝ Տիկ. ԷԼՁԻ ԹԻՒՐԱՊԵԱՆ

7.— Յանուն Վարչութեան — Պ. ԿԱՅԾԱԿ ՊՕՂԱՃԵԱՆ

8.— Փակման խօսք — ԳԵՐ. ՍՐԲԱԶԱՆ ՀԱՅՐ

# ՊԱՏՈՒՈՅ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

## "ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹ" ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ

### ՅԻՍՆԱՄԵԱՅ ՈՍԿԵԱՅ ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ

### ՓԱՌԱՇՈՒՔ ՀԱՆԴԻՍՈՒԹԵԱՆ

Տիկին Ալեքսանեան Հնազանդ
Տիար Ալայանեան Ատոմ
Տիկին Արապեան Զարուհի
Տիար Արթինեան Վահէ
Տիկին Արշարունի Վիքթորիա

Տիկին Բաքազեան Ալիս

Տիկին Գասապեան Ազնիւ
Տիար Գասապեան Յակոբ
Տոքթ. Գարամանեան Արտաշէս
Տիար Գըլըճեան Մելքի
Տիկին Գըլըճեան Զապէլ
Տիար Գույումճեան Մեսրոպ

Տիար Դանիէլեան Պերճ

Տիար Զարդհանէլեան Մարտիկ
Տիար Զարդհանէլեան Յովհ.

Տոքթ. Թաշճեան Եդուարդ
Տիկին Թիւթիւնճեան Վերժին
Տիկին Թիւրապեան Էլզի
Տիկին Թոզաքլեան Զարուհի
Տիկին Թոփալեան Ն. Օֆելիա

Տիար Խմիրզեան Շաւարշ
Տիար Խփէկեան Աղասի
Տիկին Խփէկեան Եւա

Տիկին Կամսարական Վարդանոյշ
Տիար Կիւրճեան Ս. Միքայէլ
Տիար Կոկանեան Արմենակ

Տիկին Կոկանեան Լոլա

Տիար Մաքսուեան Վէնսան
Տիար Մէսրունեան Արմենակ
Տիկին Մէրճանեան Սաթենիկ

Տիար Յովակիմեան Արմենակ

Տիար Շալեան Արշաւիր
Տիար Շահպէնտէրեան Յակոբ

Տիար Չագըր Ճանիկ
Տիար Չալլազեան Յակոբ

Տիկին Պարծանքեան Անահիտ
Տիար Պըրզտանեան Արփոյ
Տիկին Պօզաճեան Արուսեակ

Տիար Սրքէննեան Յարութիւն
Մէթր Սեւյոնքեան Շաւարշ
Տոքթ. Սողիկեան Խաչիկ

Տոքթ. Վասիլեան Աղեքսանդր

Տիկին Տամատեան Զարուհի
Տիար Տեփոյեան Պետրոս
Տիար Տէր Սիմոնեան Գէորգ
Տիկին Տիլէկեան Մաքրուհի
Տիար Տրենց-Մարգարեան Արամ

Մէթր Քայարեան Գէորգ
Տիար Քիւչիւքեան Երուանդ

Տիկին Ֆերմանեան Զարուհի

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ ՄԻԱՀԱՂՈՅՆ ԿԸ ՊԱՏՈՒԷ ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹ ՀԱՅ ՄՇԱԿ. ՄԻՈՒԹԵԱՆ ՅԻՍՆԱՄԵԱԿԻ ՈՍԿԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԸ
(հատուած)

Հանդիսական հասարակութիւնը առիթն ունեցաւ ճանչնալու, վայելելու եւ գնահատելու իր ծափերու սաստկութեամբ դաշնակահարուհի Օր. Նուարդ Տամատեանը, որ նախանձելի բարձրութեան մը հասցուցած իր անխոցելի թեքնիքով եւ հրաշալի հնչականութեամբ նուագեց Շոփէնի 1er *Impromptu*-ն եւ Խաչատուրեանի *Toccata*-ն։

*Արեւ*, 30 Դեկտմբեր 1952, ԼԸ. տարի, թիւ 10.351, էջ 2

## ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ ՕՐ. ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆ ԱՏԻՍ-ԱՊԱՊԱ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ

Ինչպէս ծանօթ է մեր ընթերցողներուն, եգիպտահայ դաշնակահարուհի Օր. Աստրա Մսրլեանի վերջերս Գահիրէի Օլ Սէյնթս Գաթէտրալի սրահին մէջ տուած դաշնակի ռէսիթալը ջերմ գնահատականներու արժանացած էր տեղւոյս միջազգային մամուլին կողմէ:

Սոյն գնահատականները արձագանգ գտած ըլլալով նաեւ Ատիս-Ապապայի (Եթովպիա) երաժշտասէր շրջանակներու մէջ, համակրելի երիտասարդ արուես-տագիտուհին հրաւիրուած է այս վերջիններուն կողմէ՝ հոն եւս տալու դաշնակի ռէսիթալներ:

Օր. Աստրա Մսրլեան արդէն մեկնած ըլլալով Ատիս-Ապապա, կը յուսանք մօտ օրէն լսել իր փայլուն յաջողութեանց արձագանգը:

*Սաւառնակ*, 1 Փետրուար 1953, 34-րդ տարի, թիւ 38, էջ 8

## ՎԵՐԱԴԱՐՁ

Եգիպտահայ դաշնակահարուհի Օր. Աստրա Մսրլեան, որ մասնաւոր հրաւէրով Ատիս-Ապապա մեկնած եւ աւելի քան ամիսէ մը ի վեր հոն կը գտնուէր, մեծ յաջողութեամբ իր դաշնակի Ռէսիթալը տալէ յետոյ՝ անցեալ Շաբաթ երեկոյ [28 Փետրուար] քաղաքս վերադարձաւ:

Բարի գալուստ՝ մեր համակրելի արուեստագիտուհիին:

*Սաւառնակ*, 7 Մարտ 1953, 34-րդ տարի, թիւ 41, էջ 1

ENGLISH GIRLS COLLEGE, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՇԱԲԱԹ, 16 ՄԱՅԻՍ 1953

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

**ENGLISH GIRLS COLLEGE**

**RUE AHMED HASSANEIN PACHA - CHATBY, ALEXANDRIE**

Sous les Auspises de la "REFORME ILLUSTRÉE"

SAMEDI, 16 MAI 1953, A 7 H. P.M.

# RECITAL DE PIANO



## ASTRA MESSERLIAN

DU CONSERVATOIRE NATIONAL DE MUSIQUE DE PARIS

# BEETHOVEN (1770-1827)

## 32 VARIATIONS en do mineur

BEETHOVEN suit ici la mesure la plus ancienne, surtout la vieille méthode Allemande.

De Lenz a mieux caractérisé cet étonnant ouvrage analogue à l'ancienne Chaconne par la persistance de son thème de huit mesures ou de la seul présence de sa base chromatique en l'appelant "Un dur et âpre travail illuminé par des éclairs de génie".

## SONATE, en fa mineur, op. 57 (Appassionata)

### Allegro assai - Andante con moto, Allegro ma non troppo

La Sonate op 57 fut commencée par Beethoven en 1804 et publiée seulement trois années plus tard par le Bureau des Arts et l'Industrie. Elle est dédiée au comte Franz von Brunswick. Quand Beethoven en entreprit la composition, le mariage de Juliette Guicciardi venait de le plonger dans un abîme de souffrance. Ce qui y retentit, c'est un « terrible cri de détresse et de désespoir » calmé par un regard vers « l'au-delà des étoiles » et se résolvant en victorieuse fanfare, a noté Vincent d'Indy.

# Intervalle

# CHOPIN (1810-1849)

## 3 ETUDES

### No. 5 Op. 10 - No. 1 Op. 25 - No. 5 Op. 25

Les 12 Etudes op. 10, dédiées à Liszt, furent composées entre 1829 et 1833, Schumann avance que les 12 op. 25 offertes à la comtesse d'Agoult, dateraient de la même époque.

Le No. 5 op. 10 en sol majeur, est une vive et brillante étude sur les touches noires.

Le No. 1 op. 25 en la bémol majeur, dont on attribue à Chopin le commentaire suivant " J'imagine un petit berger, réfugié dans une grotte, joue sur la flûte, pendant l'orage, une tranquille mélodie ".

Le No. 5 op. 25 en mi mineur est moins joué que les autres Etudes. Son caractère pervers et capricieux, fait en sorte qu'il faut le jouer " avec un sourire parmi des larmes ".

### NOCTURNE en fa dièze majeur

C'est à John Field que Chopin emprunta le genre d'élégie musicale appelé Nocturne. Schumann a dit de ces nocturnes :

" Ces nocturnes par leur mélancolie et leur grâce, doivent être placés au premier rang des œuvres de Chopin ".

### BALLADE en la bémol majeur

C'est sous l'influence des milieux littéraires de Varsovie que Chopin conçut l'idée des Ballades ou le fantastique est un élément capital. Celle en la bémol. op. 47 ( 1841 ) est la troisième des quatre.

Une tradition, transmise par l'entourage du Polonais, veut que celui-ci y ait peint la légende de la Loreley telle que l'a narrée Henri Heine.

## RAVEL (1875 - 1937)

### SONATINE, Modéré, Mouvement de Menuet, Animé

La Sonatine, si elle échappe par definition aux amples aspirations de la puissante forme musicale à laquelle l'apparente son diminutif ne se soumet pas moins, avec une aisance et une grâce incomparable, à toutes ses exigences métriques.

Elle offre dans son raccourci volontaire, l'exemple d'une construction parfaite dont tous les détails sont à l'échelle du titre, les thèmes aussi bien que les développements, la nature du sentiment tout autant que le caractère de la notation.

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 6 ՅՈՒՆԻՍ 1953

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. Nevarte Damadian

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Samedi, le 6 Juin 1953, à 6 h. p.m.**

---

*Le programme tient lieu d'Invitation.*

| | | |
|---|---|---|
| ***Djénane Tagher*** | Etude | *Beyer* |
| ***Sirvart Agopian*** | Sonatine (1er. mouv.) | *Beethoven* |
| ***H. Tchaghatzbanian.*** | Chanson du Moissonneur | *Schumann* |
| ***Sona Titizian*** | Rondo | *Clementi* |
| ***Sirvart Titizian*** | Douce plainte | *Burgmüller* |
| ***Anahid Khedechian*** | Menuet | *Haëndel* |
| ***Berdj Artinian*** | Le Cavalier | *Schumann* |
| ***Ch. Khatchadourian.*** | Sonate en Sol (1er. mouv.) | *Haydn* |
| ***N. Tchaghatzbanian.*** | Gavotte et Musette | *Bach* |
| ***Madeleine Artinian*** | Le Coucou | *Daquin* |
| ***Véronique Sarkissian*** | Bagatelle en mi bem. majeur | *Beethoven* |
| ***Alice Kardachian*** | Menuet | *Mozart* |

*Lucie Babikian* . . . Solfeggietto . . . . . . *Ph.Emm. Bach*

*Chaké Marcarian* . . Prélude . . . . . . . *Haëndel*

# Intervalle

*Lily Kouyoumdjian* . . Golliwogg's cake-walk . . *Debussy*

*Anahid Makinadjian* . Finale de la Sonate en Fa. . *Mozart*

*Manouchag Toumayan* . La Chasse . . . . . . *Mendelssohn*

*Hripsimé Baldjian* . { Prélude de la 3ᵉ suite anglaise *Bach*
{ Nocturne . . . . . . . *Grieg*

*Jeannette Chirikdjian* . Rondo capriccioso . . . . *Mendelssohn*

*Maro Boghiguian* . { Pourquoi ? . . . . .
{ Essor de l'âme . . . . } *Schumann*



Ամերիկեան Համալսարանի պարտէզը, 6 Յունիս 1953
Ունկնդրութեան մասնակցողներու խմբանկար

# AUDITION DES ELEVES DE PIANO DE Mlle NEVARTE DAMADIAN

H. SOULON

Excellente audition dans l'ensemble et qui témoigne d'une pédagogie intelligente et sérieuse.

Djénane Tagher, toute jeune débutante, dit gentiment et correctement sa petite étude de Beyer. Sirvart Agopian, d'un niveau nettement plus élevé, joue un mouvement d'une sonatine de Beethoven avec sûreté, dans un rythme net, avec des accents très justes et une excellente articulation. H. Tchaghatzbanian nuance avec goût sa *Chanson du moissonneur* de Schumann et trouve d'agréables sonorités. Sonia Titizian, dans un *Rondo* de Clementi révèle des qualités attachantes: excellent mouvement, diction bien liée, accents justes, souplesse à la fois et fermeté. Sirvart Titizian (*Douce plainte* de Burgmüller) met le chant en valeur, nuance, a le sens de la sonorité expressive. Anahid Khedechian, joue le *Menuet* de Haendel dans un bon style, trouve de jolis contrastes de fortepiano et de sonorités. Berdj Artinian, dans le *Cavalier* de Schumann, joue en garçon, avec un rythme solide mais un peu pesant. Ch. Khatchadourian est un des élèves les plus doués de cette audition. Son premier mouvement de la Sonate en sol de Haydn témoigne non seulement d'excellentes qualités techniques mais aussi de goût, de délicatesse, d'intelligence musicale.

Egalement douée est N. Tchaghatzbanian qui, dans la *Gavotte* de Bach, unit un rythme impeccable à une diction bien chantante et joliment nuancée. Madeleine Artinian nous donne du *Coucou* de Daquin une interprétation nettement articulée, souple et nuancée d'"échos" expressifs. Véronique Sarkissian (*Bagatelle* de Beethoven) jous très correctement, a de l'assurance, de la vivacité, mais manque un peu d'expression. Alice Kardachian (*Menuet* de Mozart) est également correcte, mais le jeu pourrait être plus souple et sensible. Lucie Babikian (*Solfeggietto* de Ph. Emm. Bach) a d'excellentes qualités techniques, mais on souhaiterait une musicalité plus évidente.

Dans le 2ème partie Lily Kouyoumdjian nous donne du *Golliwogg's Cakewalk* une traduction bien rythmée mais dépourvue d'humour. Anahid Makinadjian (Sonate en fa de Mozart) a de l'agilité, de la souplesse, une diction bien phrasée et bien chantante: excellent sujet. Manouchag Toumayan joue correctement la *Chasse* de Mendelssohn: cela pourrait être plus léger et plus souple. Hripsimé Baldjian interprète un Prélude de Bach dans un très bon style et trouve dans le *Nocturne* de Grieg d'expressives sonorités. Jeannette Chirikdjian fait preuve de sureté et d'une jolie agilité dans le *Rondo capriccioso* de Mendelssohn. Maro Boghiguian traduit avec sensibilité le *Pourquoi?* de

Schumann, mais manque un peu d'enthousiasme pour exprimer "l'Essor de l'âme".

*Le Progrès égyptien*, 11 juin 1953

## ՏԱՐԵԿԱՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ԹՂԹԱԿԻՑ

Ուսումնական տարեշրջանի մօտալուտ աւարտման հետ կրթական հաստատութեանց ամավերջի հանդէսներուն առընթեր անհամբեր կը սպասուի նաեւ Օր. Ն. Տամատեանի դաշնամուրի դասընթացքներուն հետեւող աշակերտութեան հրապարակային ելոյթին, որով պատեհութիւն կը տրուի երաժշտասէր հասարակութեան, վայելելու լաւ կազմակերպուած ունկնդրութիւն մը եւ ստուգելու, ինչ որ կարեւորագոյն է, այն յառաջդիմութիւնը զորս աշակերտութիւնը ձեռք բերած պիտի ըլլայ, տարուան մը համբերատար աշխատանքներէ վերջ։

Ամերիկեան Համալսարանի Արեւելեան դահլիճին մէջ, նախանցեալ շաբաթ, 6 Յունիս, կ.վ. ժամը 6-ին, մեծաշուք հանդիսութեամբ տեղի ունեցաւ տպաւորիչ ունկնդրութիւն մը որուն յայտագիրը կազմուած էր բծախնդիր ընտրութեամբ քաղուած երաժշտական կտորներէ, որոնց մեկնաբանութեան մէջ, աշակերտները հանդէս եկան որոշ ըմբռնումով եւ ինքնավստահ նուագածութեամբ։ Եւ կրնանք իրաւամբ ու արդարացիօրէն աւելցնել թէ աշակերտութիւնը տիրացած է մատնահարումի ճշգրիտ եւ ուրոյն կիրթ եղանակի մը որով որեւէ աշակերտ դիւրաւ պիտի զանազանուէր ուրիշներէն։ Ահա՛ թէ ինչու անոնք կորովով եւ անվարան՝ առանց տատամսումի կը մօտենան դաշնակին իրենց վիճակուած կտորներուն նուագումին համար։

Ներկաներու հոծ բազմութիւնը, որուն մէջ կը նշմարուէին գաղութիս ներկայացուցչական դէմքերը, կրթական յարկերու ուսուցիչներէն շատեր, հայ թէ օտար մամուլի երաժշտական քննադատները, հետեւեցան ամբողջ յայտագրի գործադրութեան, շռայլելով իրենց գնահատութեան ծափերը։

Գաղութիս մէջ կատարուող այս գեղեցիկ աշխատանքին կապակցութեամբ մեր թելադրանքը եւ մաղթանքը այն պիտի ըլլար որ աշակերտութիւնը լիովին ըմբռնելով այն պատեհութիւնը որ ունի հետեւելու երաժշտական ուսման, փութար գրաւելու ընթացաւարտ աշակերտներու մեկնումով տրամադրելի յառաջապահ դիրքերը թոյլ տալով որ իրենց ուսուցչուհին՝ Օր. Ն. Տամատեան վարձահատոյց ըլլայ նոր ուժերու ծաղկումով եւ իր յոյսերուն իրականացումով։

Երախտապարտ աշակերտութիւնը, որ հասակ կը նետէ հոգածու շունչի

ներքեւ, իր ուսուցչուհիին դրականօրէն պատուեց՝ արժանանալով խանդավառ բազմութեան գնահատանքին, ու զայն յարգեց նուիրելով երեք խոշոր ծաղկեկողովներ: Խորապէս զգածուած, Օր. Ն. Տամատեան ընդունեց նաեւ ներկաներուն շնորհաւորութիւնները, յառաջիկայ տարի կրկին նոյն դահլիճը ժամադրուելու մաղթանքով:

*Արաքս*, 15 Յունիս 1953

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Աշակերտական ունկնդրութիւնները հաճելի են իրենց մատղաշ ու խանդավառ մթնոլորտին համար: Աւելին ըլլալով, Օր. Տամատեանի աշակերտներուն ունկնդրութիւնը ունի նաեւ աշխարհիկ ընտանութեան նկարագիր մը, որուն մէջ իգական սեռին պատկանող տարրը՝ իր ամառնային զգեստներով՝ վայելչութեան եւ թարմութեան շեշտ մը կը դնէ: Աշակերտներու ծնողներէն զատ, միշտ կան բազմաթիւ բարեկամներ - երաժշտասէրներ եւ երաժիշտներ - որոնք կանոնաւորաբար ամէն տարի կու գան հետեւելու դեռահաս սերունդի յառաջդիմութիւններուն եւ իրենց գնահատական զգացումներուն փաստը տալու Օր. Տամատեանի:

Նախկին աշակերտներու միշտ մեծաթիւ խումբը ամենաքիչ համակրելին կամ ամենաքիչ յուզիչ չէ, այն անքակտելի սիրոյն պատճառով որ զիրենք կը կապէ իրենց նախկին ուսուցչուհիին: Եւ փոխնիփոխ՝ ներամփոփման եւ խանդավառութեան մթնոլորտի մը մէջ է որ տեղի կ'ունենայ ունկնդրութիւնը:

Ինչպէս արդար է, կրտսերագոյններն են որ կը բանան հանդիսութիւնը:

Ճէնան Թակէր ջանադրութեամբ եւ ճշդութեամբ կու տայ Պէյէրի մէկ կարճ *Էթիւտ*ը:

Սիրվարդ Ակոբեան, որ յառաջդիմութեան մէջ է, վստահութեամբ եւ ճշգրտութեամբ նուագեց Պէթհովէնի Սոնաթինին առաջին շարժումը:

Յ. Զաղացպանեան գիտցաւ երանգաւորում դնել Շումանի *Հնձուորի երգ*ին մէջ:

Սոնա Թիթիզեան աւելի կորով եւ յստակութիւն ունի իր նուագածութեան մէջ. Քլէմէնթիի *Ռոնտօ*ն նուագուեցաւ շատ լաւ շարժումով մը:

Գալով Սիրվարդ Թիթիզեանի, որ երանգաւոր նուագածում ունի, ան գիտցաւ քնքշութեամբ եւ զգացումով արժեւորել ողբի գիծը՝ Պուրկմիւլլըրի *Քաղցր ողբ*ին

մէջ։

Հէնտէլի *Մընիւէ*ն ճշդօրէն նուագուեցաւ Անահիտ Խըտըշեանի կողմէ։

Պերճ Արթինեան ինքնավստահութեամբ գիտցաւ արշաւի շարժում մը դրոշմել Շումանի *Ձիաւոր*ին։

Տարիէ տարի կը հաստատուի որ Շ. Խաչատուրեան՝ դասընթացքին ամենա-օժտուած աշակերտուհիներէն մին է։ Հայտընի Սոնաթին առաջին շարժումին իր գործադրումը ցուցաբերեց իր լաւ կառուցուած եւ նրբօրէն երանգաւորուած նուագածութիւնը եւ իր երաժշտական ըմբռնողութիւնը։ Շատ բան կը սպասենք իրմէ յառաջիկայ տարիներուն։

Նոյնպէս օժտուած է Ն. Ջաղացպանեան, որ պայծառօրէն մեզի տուաւ Պախի *Կավոթ եւ Միւզէթ*ը, կատարեալ եւ լաւ երանգաւորուած կշռոյթով։

Մատլէն Արթինեան տուաւ կատարելապէս արտաբերուած, երանգաւոր եւ լաւ հնչականութեամբ մէկ մեկնաբանութիւնը Տաքէնի *Քուքու*ին։

Պեթհովէնի *Պակաթէլ*ը (Մի պէմոլ մաժէօր) ճշդութեամբ եւ առուգութեամբ նուագուեցաւ Վերոնիքա Սարգիսեանի կողմէ. այսուհանդերձ պիտի բաղձայինք քիչ մը աւելի ցայտունութիւն։

Ալիս Գարտաշեան ջանադրութեամբ եւ նրբութեամբ տուաւ Մոցարթի *Մինիւէ*ն։

Լիւսի Պապիկեան լաւ շարահիւսութիւն եւ երաժշտական հասկացողութիւն ունի։ Շատ ճիշդ շարժումով մը ան նուագեց Էմ. Պախի *Սոլֆէճէթթօ*ն։

Ի մեծ յուսախաբութիւն իրեն, Շաքէ Մարգարեան չկրցաւ նուագել իր կտորը՝ դաստակի մկանային կծկումի մը պատճառով։ Կ՚ափսոսանք ասիկա, մանաւանդ որ նախորդ օրը՝ ընդհանուր փորձին ժամանակ՝ քաջութեամբ կարճ փորձ մը ընելով ան մեզի ընդնշմարել տուաւ դաշնակահարութեան զօրաւոր յատկու-թիւններ։

Հետագայ աշակերտները դասընթացքին ամենէն յառաջացած աշակերտնե-րէն են։

Լիլի Գույումճեան, խելացի եւ այլազան կերպով մեկնաբանելով Տըպիւսիի *Կոլիուոքս Քէյքուոք*ը, գիտցաւ տալ կտորին երգիծական եւ ծիծաղկոտ հանգա-մանքը, պէտք եղած ամբողջ զգացականութիւնը դնելով։

Առաջին մատնահարումին իսկ, զգալի էր որ Անահիտ Մաքինաճեան շատ լաւ աշակերտուհի մըն է։ Կը թուի բնական դիւրութիւն մը ունենալ։ Գիտէ ցցուածք տալ արտաբերումին, ունի մարգարտային եւ երանգաւոր նուագածու-թիւն մը, երաժշտական հասկացողութիւն, հաճելի ստեղնահարում։ Փայլուն կերպով է որ ան մեզի տուաւ Մոցարթի Սոնաթ ան ֆաի վերջին մասը։

Մանուշակ Թումայեան հզօր եւ երանգաւոր նուագածութիւն մը ունի, գեղեցիկ հնչականութեամբ։ Ճշդօրէն նուագեց Մենտելսոնի *Որսորդութիւն*ը։

Հռիփսիմէ Պալճեան լաւ տարր մըն է։ Շատ սիրեցի Պախի *Անգլիական*

*Երրորդ սուիթ*ի նախերգանքին իր մեկնաբանութիւնը, Կրիկի *Նոքթիւռ*նը յստակութեամբ եւ զգացումով նուագուեցաւ։

Ժանէթ Շիրիքճեան սքանչելի յատկութիւններ ունի։ Իր մարգարտային ինքնավստահ, երաժշտականութեամբ եւ հասկացողութեամբ լի նուագածութիւնը իրեն թոյլատրեց աշխուժութեամբ տալու Մենտելսոնի *Ռոնտօ քափրիչիոզօ*ն։

Վերջապէս, Մարօ Պօղիկեան, որ շատ յառաջդիմած է, գիտցաւ զգացում եւ նոյնիսկ որոշ խորհրդազգացութիւն մը դնել Շումանի *Ինչո՞ւ*ին մէջ, եւ խանդավառ խոյանք մը՝ *Հոգիի սլացք*ին մէջ։

Այսպէս, հակառակ այն ափսոսանքին զոր զգացինք բացակայութեանը համար կարգ մը աշակերտներու զորս հաճոյքով պիտի լսէինք, այս ունկնդրութիւնը իր ամբողջութեան մէջ եղաւ շատ յաջող։ Ասիկա արդիւնք է կտորներու խոհական ընտրութեան, - որոնք բաժնուած էին ըստ աշակերտին յառաջացումին եւ խառնուածքին, - եւ նուագողներու անսխալ թեքնիքին, ինչ որ կը վկայէ Օր. Նուարդ Տամատեանի ուսուցման գերազանցութեան մասին։

*Արեւ*, 17 Յունիս 1953, ԼԹ. տարի, թիւ 10.491, էջ 3

## NOS HOTES

Après une absence de 16 ans, Mlle Nevarte Damadian, fille de feu M. Mihran Damadian, ancien directeur de la Mantacheff au Liban, est à nouveau parmi nous, pour un court séjour estival de 15 jours.

Mlle Damadian a été la première diplômée de l'Institut de Musique de l'Université Américaine de Beyrouth et la première à suivre les cours de l'Ecole Normale de Musique de Paris où elle fut l'élève du Maître Cortot.

Installée au Caire, Mlle Damadian a créé un cours de Piano qui est assidûment suivi par les meilleurs éléments musicaux d'Egypte, d'autant que les résultats donnés par les méthodes appliquées par Mlle Damadian ont toujours été particulièrement brillants.

Nous souhaitons à Mlle Damadian un excellent séjour parmi nous.

*Le Soir*, Beyrouth, 26 août 1953

## ՕՐ. ՏԱՄԱՏԵԱՆ ՊԷՅՐՈՒԹԻ ՄԷՋ

16 տարուան բացակայութենէ մը ետք, Օր. Նուարդ Տամատեան, դուստրը հանգուցեալ Միհրան Տամատեանի, դարձեալ մեր մօտ է 15 օրուան համար: Օրիորդը Պէյրութի Ամերիկեան Համալսարանի երաժշտական բաժնէն առաջին վկայեալն է եւ հետեւած է Փարիզի Երաժշտական Բարձրագոյն Վարժարանին, աշակերտելով Քորթոյի: Օրիորդը Գահիրէի մէջ դաշնակի դասընթացք մը կը վարէ:

Բարի գալուստ կը մաղթենք Օրիորդին:

*Այգ*, Պէյրութ, 27 Օգոստոս 1953

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 10 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1953

ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
ՄԱՐՕ ՊՕՂԻԿԵԱՆԻ
(ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ)

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ԳԱԶԻՐԷ

ՀԱՆԴԻՊՈՒՄԻ ՕՐ

ԱՅՍ ՀԻՆԳՇԱԲԹԻ; 10 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1953

կ.վ. ժամը 8-էն սկսեալ թեթեւ ճաշի սպասարկութիւն

երեկոյեան ժամը 9-ին

ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ՕՐ. ՄԱՐՕ ՊՕՂԻԿԵԱՆԻ

= ՅԱՅՏԱԳԻՐ =

| | |
|---|---|
| Rameau | La Victoire |
| Beethoven | 1ère Sonate (1er vouvement) |
| Schumann | Pourquoi? |
| » | Essor de l'âme |
| Debussy | Golliwogg's cake-walk |

Մեկնաբանութիւն՝ ՕՐ. ՍԵԴԱ ՍԱՐՈՒԽԱՆԷ

Դաշնակ՝ ԲԱՐԱՋԵԱՆ ԵՒ ԸՆԿ. ՏՈՒՆԷՆ

Սիրով կը հրաւիրուին մեր եւ քոյր Միութեանց անդամ-անդամուհիները եւ համակիր շրջանակը:

Յայտարարութիւն

*Արեւ*, 8 Դեկտեմբեր 1953, ԼԹ. տարի, թիւ 10.637, էջ 4

## ՕՐ. ՄԱՐՕ ՊՕՂԻԿԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

Հայ Գեղարուեստասիրաց Միութեան մշակութային եւ գեղարուեստական ձեռնարկները նոր թափ մը ստացած են այս եղանակին:

Արդարեւ բացման հանդէս, բանախօսութիւններ, թատերական ներկայացումներ եւ երաժշտական ունկնդրութիւններ կը յաջորդեն իրարու, առանց հաշուելու շինիչ զբօսապտոյտները եւ այլ հանդիպումները:

Առջի օր, Հինգշաբթի երեկոյ, հոծ թիւով անդամներ եւ համակիրներ, ապրեցան երաժշտական գեղեցիկ վայելք մը շնորհիւ Օր. Մարօ Պօղիկեանի որ Ռամոյէն, Պէթհովէնէն, Շումանէն եւ Տըպիւսիէն ընտրուած կտորներ հրամցուց ներկաներուն, այնքան զգայուն եւ հարազատ մեկնաբանութեամբ:

Այս առթիւ Օր. Սեդա Սարուխան շատ մաքուր հայերէնով եւ գրաւիչ ու յստակ ոճով մը մեզի ներկայացուց կեանքը վերոյիշեալ երաժիշտներուն եւ մեկնաբանութիւններ տուաւ նուագուած կտորներուն մասին:

Շնորհաւորելի են Օր. Մարօ Պօղիկեան եւ Օր. Սեդա Սարուխան այս առինքնող ու տպաւորիչ երեկոյթին համար:

*Արեւ*, 12 Դեկտեմբեր 1953, ԼԹ. տարի, թիւ 10.641, էջ 4

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN

Oriental Hall ( Université Américaine )

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Vendredi, le 28 Mai 1954, à 6 h. p.m.**

*Le programme tient lieu d'Invitation.*

| | | |
|---|---|---|
| ***Kathleen Oghia (4 ans)*** | Mes premières notes | *Beyer* |
| ***Seta Boghourian*** | Quatre mains | *Wohlfahrt* |
| ***Djénane Tagher*** | Ecossaise | *Hummel* |
| ***Sirvart Agopian*** | Romance | *Beethoven* |
| ***H. Tchaghatzbanian*** | Menuet | *Bach* |
| ***Vera Hatzouny*** | Rondo - Vivace | *Kuhlau* |
| ***Sona Titizian*** | Menuet | *Dussek* |
| ***Sirvart Titizian*** | Air Suisse | *Clementi* |
| *Zevart* ***Tachdjian*** | Le petit rien | *Cramer* |
| ***Madeleine Artinian*** | Toccata | *Paradisi* |
| ***Véronique Sarkissian*** | Air Varié | *Haendel* |

***N. Tchaghatzbanian*** . . L'adieu . . . . . . . . *Dussek*

***Ch. Khatchadourian*** . Six Variations . . . . . *Beethoven*

## Intervalle

***Chaké Marcarian*** . . Menuet - Bourrée - Gigue . *Bach*

***Alice Hamamdjian*** . . Sonate en sol (1er. mouv.) *Mozart*

***Lily Kouyoumdjian*** . . Valse No. 14 en mi min. . *Chopin*

***Hripsimé Baldjian*** . . Sonate "Pathétique" (1er. mouv.) *Beethoven*

***Jeannette Chirikdjian*** . Rhapsodie No. 11. . . . *Liszt*

***Maro Boghiguian*** . . Concerto en ré min. (1er. mouv.) *Mozart*

au 2nd. Piano d'accompagnement : *Mlle. N. Damadian*




Oriental Hall, 28 Մայիս 1954
Նուարդ Տամատեան՝ չորս տարեկան աշակերտուհի
Քաթլին Օղիայի հետ

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Նախանցեալ Ուրբաթ օր, սքանչելի ընդհանուր մակարդակ ունեցող ունկնդրութեամբ մը, Օր. Նուարդ Տամատեան - մեր քաղաքի ծանօթ դաշնակի ուսուցչուհին - մեզի կը ներկայացնէր իր աշակերտները, որոնք ընդհանրապէս ի յայտ կու գան կատարեալ թեքնիքով եւ մեկնաբանումի ուղիղ ըմբռնողութեամբ: Բաց աստի, կտորները պատշաճ կ'ըլլան իւրաքանչիւրի ոյժին եւ կարելիութիւններուն:

Յայտագիրը սկսաւ շնորհալի տեսիլքով մը: Զարմացկոտ ու չարաճճի մեծ աչքերով պզտիկ պուպրիկ, Քաթլին Օղիա ձեռք զարկաւ Պէյէրի *Իմ առաջին ձայնանիշերս* կտորին - որոնք միանգամայն ի՛ր ալ առաջին ձայնանիշերն էին - իր չորս տարիներու ընձեռած հանդարտ ինքնավստահութեամբը: Ա՛յնքան երջանիկ էր ան, որ շատ դժուարութեամբ կարելի եղաւ իրեն հասկցնել թէ վերջացած էր եւ պէտք էր հեռանալ:

Փոքրիկներ Սեդա Պօղուրեան, Ճէնան Թաղէր եւ Սիրվարդ Ակոբեան ճշդութեամբ եւ ջանադրութեամբ տուին լաւ սերտուած դասը:

Փոքրիկն Հ. Զաղացպանեան շնորհալիօրէն եւ անսխալ կերպով նուագեց Պախի *Մընիւէ*ն: Ան ուշադրութիւն գրաւեց իր լաւ ընթացքով եւ լաւ մատնահարութեամբ:

Քիւիլաուի *Ռոնտօ-Վիվաչէ*ն լաւ կշռութաւորուած շարժումով մը գործադրուեցաւ Վերա Հացունիի կողմէ:

Սոնա Թիթիզեան՝ Տիւսէքի *Մընուէ*ին մէջ եւ իր քոյրը Սիրվարդ՝ Քլէմէնթիի *Էր Սուիս*ին մէջ՝ յաջող էին: Ամուր եւ լաւ երանգաւորուած նուագածութիւն ունին անոնք:

Զուարթ Թաշճեան համակ մեղմութեամբ նուագեց Քրամէրի *Պզտիկ ոչինչը*: Սակայն պիտի փափաքէինք աւելի պայծառութիւն *թրիլ*ներուն մէջ:

Մատլէն Արթինեան ունի հզօր նուագածութիւն եւ շատ ճկունութիւն: Դժբախտաբար սխալը գործեց չափազանց արագ կշռոյթով մը սկսելու Փարատիզի *Թոքաթա*ն, ինչ որ քիչ մը վնասեց նուագածութեան յստակութեան:

Հէնտէլի *Էր վարիէ*ին մէջ, Վերոնիք Սարգիսեան ունեցաւ հաճելի եւ երանգաւոր նուագածութիւն: Այսուհանդերձ, պիտի ուզէի աւելի հեզասահութիւն՝ նուագախօսութեան մէջ:

Տիւսէքի *Հրաժեշտը* ճշդօրէն նուագուեցաւ Ն. Զաղացպանեանի կողմէ, սակայն առանց համոզումի: Գործադրումին մէջ աւելի ջերմութիւն՝ վստահաբար աւելի պիտի յուզէր մեզ:

Շ. Խաչատուրեանի ձիրքը կը հաստատուի տարուէ տարի։ Ան կը նուագէ ըմբռնողութեամբ, խելացութեամբ եւ զգայնութեամբ։ Հպումի մեղմութիւնը, լաւ phrasé մը եւ յստակութիւնը՝ յատկանիշներն են իր նուագածութեան։ Ան գիտցաւ գոյն տալ Պէթհովէնի *Վեց փարիասիոն*ին։

Շաքէ Մարգարեան ունի զգայուն եւ երանգաւոր նուագածութիւն։ Ան գիտցաւ լաւ նշել տարբերութիւնը՝ Պախի *Մընիւէ, Պուռէ, Ժիկ*ի զանազան շարժումներուն մէջ։

Ալիս Համամճեան լաւ կշռոյթով նուագեց Մոցարթի Սոնաթ ան սոլին առաջին շարժումը։ Իր հպումը մեղմութիւն ունի, բայց պիտի մաղթէինք աւելի պայծառութիւն եւ աւելի եռանդ՝ գործադրութեան մէջ։

Յաջորդ չորս աշակերտուհիները՝ բարոյական զոհունակութեան աղբիւր մը պէտք է ըլլան Օրիորդ Տամատեանի համար։ Ամէնքն ալ ունին լաւ դաշնակահարէ մը պահանջուող յատկութիւնները՝ հպումի մեղմութիւն, լաւ մատնահարում, նուագածութեան յստակութիւն, լաւ նուագախօսութիւն, լաւ կշռոյթ, հասկացողութիւն եւ մեկնաբանումի ըմբռնում։

Անոնք են՝

Լիլի Գույումճեան, որ առոյգութեամբ եւ սքանչելի կշռոյթով նուագեց Շոփէնի թիւ 14 *Վալս*ը (մի մինէօր)։ Հռիփսիմէ Պալճեան, որ հզօր ու լաւ երանգաւորուած նուագածութեամբ՝ կրցաւ կատարելապէս տալ Պէթհովէնի Սոնաթ *Փաթեթիք*ը։ Ժանէթ Շիրիքճեան, մարգարտանման եւ գեղեցկահունչ նուագածութեամբ, մեզի տուաւ Լիսթի թիւ 11 *Ռափսոտի*ն, լաւ շեշտելով զօրեղ եւ մեղմ շարժումներուն միջեւ հակադրութիւնը։

Իսկ Մարօ Պօղիկեան, ընկերակցութեամբը Օր. Տամատեանի՝ որ հեղինակաւոր կերպով անցած էր ընկերակցումի դաշնակին առջեւ, չափազանցութիւն չէ ըսել թէ ան մեզ յուզեց Մոցարթի Ռէ մինէօր Քոնչերթոյին առաջին շարժումովը։ Իր փոխնիփոխ նուրբ եւ հզօր հպումը, իր պայծառ եւ զգայուն նուագածութիւնը, մեկնաբանումի իր ճաշակը մեզի մոռցուցին թէ աշակերտական ունկնդրութիւն մըն էր եղածը, եւ անձնատուր եղանք լաւորակ Մոցարթ ունկնդրելու հաճոյքին։

*Արեւ*, 8 Յունիս 1954, Խ. տարի, թիւ 10.787, էջ 3

## A L'ORIENTAL HALL
## AUDITION DES ELEVES DE Mlle NEVARTE DAMADIAN

A. D.

Vendredi dernier, en une audition d'une excellente tenue, Mademoiselle Nevarte Damadian présentait ses élèves de piano.

Début gracieux: Kathleen Oghla, petite poupée aux yeux étonnés, attaqua *Mes premières notes* de Beyer – qui étaient également ses premières à elle – avec l'heureuse assurance de ses 4 ans.

Les petites Seta Boghourian, Djénane Tagher et Sirvart Agopian dirent avec une aimable application leur leçon bien apprise.

La jeune H. Tchaghatzbanian interpréta avec beaucoup de grâce et très correctement le *Menuet* de Bach. Excellente tenue et bon doigté.

Le *Rondo Vivace* de Kuhlau fut brillamment enlevé par Vera Hatzouny – Sona Titizian (*Menuet* de Dussek) et sa soeur Sirvart dans *Air Suisse* de Clementi, firent preuve de solidité et de délicatesse.

Zevart Tachdjian joua tout en douceur *Le Petit rien* de Cramer. Madeleine Artinian unit la vigueur à l'agilité; elle eut le tort cependant de prendre la *Toccata* de Paradisi dans un mouvement trop rapide, ce qui nuisit un peu à la netteté de son jeu.

Véronique Sarkissian a nuancé très agréablement l'*Air varié* de Haendel. L'*Adieu* de Dussek est joué correctement par N. Tchaghatzbanian, mais sans beaucoup de conviction.

Les dons de Ch. Khatchadourian s'affirment d'année en année. Elle interpréta les *Six variations* de Beethoven avec intelligence, sensibilité. Excellent phrasé, net, bien articulé; sens de la sonorité.

Chaké Marcarian a un jeu sensible et nuancé. Elle donne aux divers mouvements de la *Bourrée* et *Gigue* de Bach leur juste valeur.

Alice Hamamdjian interprète la Sonate en sol de Mozart dans un excellent rythme, avec un joli toucher. On souhaiterait cependant plus de vigueur.

Voici enfin pour terminer quatre excellentes élèves qui font le plus grand honneur à leur maître, ce sont: Mlle Lily Kouyoumdjian qui enlève avec brio et dans un rythme expressif la *Valse* No. 14 de Chopin; Hripsimé Baldjian qui, d'un jeu puissant et contrasté, sait rendre parfaitement l'esprit de la Sonate *Pathétique*; Jeannette Chirikdjian qui nous donne de la *Rhapsodie* No. 11 de Liszt une exécution d'une belle sonorité, d'un jeu "perlé", à la fois vigoureuse et nuancée.

Enfin, Maro Boghiguian soutenue par Mlle Damadian qui tient avec autorité le piano d'accompagnement, parvient à nous émouvoir vraiment dans le 1er mouvement du

Concerto en ré mineur de Mozart. Son jeu tour à tour délicat et puissant, son interprétation sensible nous feraient oublier qu'il s'agit d'une audition d'élèves. Violà assurément de l'excellent Mozart.

*Le Progrès égyptien*, 9 juin 1954

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ՓԱՅԼՈՒՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ԹՂԹԱԿԻՑ

Ամէն տարի օր մը, հաւատարիմ ուխտագնացութեան մը պէս, երաժշտասէրներէ եւ արուեստագէտներէ բաղկացած բազմութիւն մը օրինակելի ճշդապահութեամբ մը կը լեցնէ ծնողներու եւ նախկին աշակերտներու կողքին, Ամերիկեան Համալսարանի Օրիընթալ Հօլը, որու լուսազարդ կամարներուն ներքեւ կը կատարուի Օր. Տամատեանի խոստմնալից դաշնակահարուհիներուն տարեկան ելոյթը, որ այս անգամ տեղի ունեցաւ նախանցեալ ուրբաթ օր, 28 Մայիս, երեկոյեան ժամը 6-ին, երբ կը սկսէր յայտագրին գործադրութիւնը:

Ներկայ ընտրանի հասարակութիւնը ուշադիր հետեւեցաւ ըստ տարիքի եւ կարողութեան հետզհետէ բեմ ներկայացող ամէն աշակերտուհիի նուագածութեան, անշուշտ նկատելու համար տարի մը վերջ ձեռք բերուած յառաջդիմութեան չափանիշը եւ ըսելու իր գնահատութեան ու քաջալերանքի խօսքը:

Մեզի համար հաճելի է հոս արձանագրել որ երաժշտութեան այս մարզին հետեւող պատանի թէ երիտասարդ աշակերտուհիները ամէն տարեվերջի մեզի կը ներկայանան գիտակցութեան եւ վստահութեան աւելի շեշտուած երանգի մը արտայայտութեամբ որ կը նշուի իրենց գրաւիչ նուագածութեամբ: Այս իսկ պարագան խրախուսական պիտի ըլլայ մեզի թէ ծնողներուն համար որոնք մեր ժողովուրդի աշխատասիրութեան փաստը եւ յարատեւելու կամքը կը տեսնեն:

Խրախուսական՝ իրենց նկատմամբ՝ վասնզի այս աշակերտուհիները որոնք ուսանողուհիներ են միեւնոյն ատեն, իրենց ուսման մակարդակը կը ճոխացնեն երաժշտութեան գծով ալ, իսկ մեր նկատմամբ կը հրճուինք ազգային շրջանակին մէջ վեր առնելով, այժմու մեր նոր սերունդներուն կարելիութեանց գրաւականը:

Ու այս եզրակացութեան կը յանգինք տեսնելով թէ ինչպէ՛ս տակաւին չորս տարեկան մանուկ մը դաշնամուրին կ'առաջնորդուի իր ուսուցչուհւոյն կողմէ իր դողդոջ մատնահարումով յոյս ներշնչելու մեզի իր ապագայ քայլերուն համար, մինչդեռ յայտագրի վերջին նուագահարումին նոյն ուսուցչուհին երկրորդ

դաշնակով մը կ՚ընկերակցէր արդէն իրեն հասակակից ուսանողուհիի մը որ կը հաստատէր նուաճումը այն հանգրուանին ուրկէ անցած են նախորդները եւ պիտի անցնին նորահասներն ալ աշխատելո՛վ, յարատեւ ճիգով ու մշտանորոգ եռանդով։

Աւելի քան երկու ժամ տեւող փայլուն ունկնդրութենէ մը վերջ, դղրդագին ծափահարութեանց տարափին տակ վերջ կը գտնէր այս շքեղ հանդիսութիւնը, որուն առիթով աշակերտութիւնը, ի նշան երախտագիտութեան, երեք խոշոր ծաղկեկողովներով կը զարդարէր ունկնդրութեան սրահը, ուր ներկաները շարունակեցին յամենալ պահ մը, կարենալու համար շնորհաւորել Օր. Ն. Տամատեանը, անձամբ ներկայացնելով իրենց լաւագոյն մաղթանքները նորանոր յաջողութեանց համար։

*Արաքս*, 12 Յունիս 1954

## ԵԳԻՊՏՈՍԻ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՀԵՏ ԵՐԿՈՒ ԺԱՄ

ՅԱԿՈԲ ԱՅՎԱԶ

Գահիրէ գտնուած օրերուս, գրեթէ ամէն օր առիթը ունեցայ ծանօթանալու նորանոր արուեստագէտներու հետ։

Աշխարհահռչակ ծաղրանկարիչ Ա. Սարուխանի հետ գիշեր մը՝ այցելեցինք Գեղարուեստասիրաց Միութեան լօքալը։ Հոն՝ իր շնորհիւ, երջանկութիւնը ունեցայ մօտէն ծանօթանալու տաղանդաւոր նկարիչ Ա. Զօրեանի եւ քաղաքին առաջնակարգ դաշնակահարուհիներէն՝ Օր. Նուարդ Տամատեանի։ Երեկոյթին անշուշտ որ անկարելի էր մեր տեսակցութիւնը, ուստի յարմար դատեցինք իր բնակարանը տեսակցիլ։

Յաջորդ օրն իսկ, հակառակ քաղաքին ծանօթ չըլլալուս, օրիորդին բացատրութեանը ապաւինելով, վերջապէս գտայ այն հսկայ աբարթմանը ուր մէկ յարկին մէջ կը բնակի ինքը՝ Օր. Տամատեանը։ Հազիւ թէ դրան զանգը հնչեցուցած, դէմս կը գտնեմ ահա վայելուչ դաշնակահարուհին ճերմակներ հագուած՝ հարսի մը պէս ժպտուն։

Ներս կը հրամցուիմ։ Խնամքով կահաւորուած հիւրասենեակին մէջ առաջին առթիւ աչքի կ՚իյնան, խոշոր, պոչաւոր դաշնակ մը եւ աշխարհահռչակ երգահաններէն մէկ քանիին կիսանդրիները։

Պատերը՝ զարդարած են օրիորդին աշակերտներուն խմբանկարները։ Իսթանպուլէն կը բացուի մեր խօսքը ու վերջաւորութիւնը կը յանգի արուեստի ներկայ կացութեան։

Առիթը յարմար գտնելով կը սկսիմ հարցումներուս։

- Կրնա՞ք ձեր կենսագրական գիծերը տալ։

- Հաճոյքով։ Ծնած եմ Աղեքսանդրիա։ Հայրս Միհրան Տամատեան, եղած է ազգային գործիչ եւ մտաւորական։ Նախնական ուսումս ստացայ Աղեքսանդրիոյ Պօղոսեան Վարժարանին ու Լիսէ Ֆրանսէի մէջ։

- Քանի՞ տարեկանին սկսաք դաշնակի։
- Հազիւ 6 տարեկան էի երբ սկսայ դաշնակի դասեր առնել Մատամ Պօնուզի Քարլէզիմօյէ։ Մինչեւ 13 տարեկան մնացի Աղեքսանդրիա ու յետոյ հօրս գործին բերումով փոխադրուեցանք Պէյրութ։
- Քանի՞ տարի մնացիք Պէյրութ։
- Ճիշտ 14 տարի։ Երբ ուսումս կը շարունակէի Լիսէ Ֆրանսէի մէջ, միւս կողմէ ալ սկսայ հետեւիլ, Ամերիկեան Համալսարանին մէջ 1929-ին հիմնուած, երաժըշտական դասընթացքներուն։

Էնսթիւթիւ տը Միւզիքի մէջ ուսուցիչս էր հաստատութեան տնօրէնը՝ Բրօֆ. Արքատի Քուկէլ։

Երկու տարուան աշխատութենէ մը յետոյ, 1931-ին առաջինը կը հանդիսանամ քննութիւններուն մէջ եւ այդ պատճառաւ ալ իրաւունք կ'ունենամ հետեւելու Բարիզի Էքօլ Նորմալ տը Միւզիքի։

Օր. Տամատեան մէկ տարուան չարաչար աշխատութենէ մը յետոյ՝ ուսուցչական վկայական կը ստանայ, աշխարհահռչակ Ալֆրէտ Քօրթօի հովանաւորութեան ներքեւ կազմուած ժիւրիէ մը։

Պէյրութ վերադարձին, իր նախկին վարժարանին մէջ 5 տարի ուսուցչական պաշտօն կը կատարէ մեծ յաջողութեամբ։ Առաջին դասաւանդութիւններու կը սկսի Լիբանանի մէջ։

1937-ին վերջնականապէս կու գայ հաստատուիլ Գահիրէ։ Ներկայիս իր սեփական դասընթացքներուն կը հետեւին բազմաթիւ աշակերտ եւ ուհիներ։
- Ո՞ր թուականին տուիք ձեր առաջին նուագահանդէսը։
- 1933-ին առաջին անգամ Պէյրութի մէջ։ Յետոյ՝ Հալէպ եւ Գահիրէ։ Իսկ վերջին տարիներուն, գրեթէ ամէն Մայիսին կը կազմակերպեմ իմ աշակերտական նուագահանդէսներս։

Օր. Տամատեան մեծ համբաւ կը վայելէ արաբական աշխարհին մէջ։ Շատ անգամ կը հրաւիրուի Գահիրէի ձայնասփիւռէն եւ մեծապէս կը գնահատուի տեղւոյն երաժշտագէտներէն։

Այս սիրուած դաշնակահարուհին, ունի բազմաթիւ լաւագոյն աշակերտներ վկայուած իր կողմէ, զանազան քաղաքներ ցրուած։
- Ձեր աշակերտները օտարնե՞ր են թէ հայ։
- Նախապէս մեծ մասամբ օտարներ էին սակայն ներկայիս կրկնապատկուած են հայ աշակերտներուս թիւը։
- Ի՞նչ կը խորհիք ապագայի մասին։
- Ծրագիրներս շատ մեծ են։ Կ'ուզեմ շրջիլ Եւրոպա մանաւանդ՝ Բարիզ, եւ նուագահանդէսներ տալ։ Կը փափաքիմ նաեւ այցելել Իսթանպուլ։
- Ի՞նչ բան կը թելադրէք ձեր աշակերտներուն։
- Յաջողելու համար պէտք է յարատեւութիւն առանց վհատելու, եւ սէր դէպի երաժշտութիւն։
- Ո՞ր երաժշտագէտները կը սիրէք։
- Օտարներէն՝ Պախ եւ Մօցարթ։ Իսկ հայերէն՝ Խաչատուրեանը։

Իր խօսակցութիւններուն մէջ իսկ կը յայտնուի նուրբ արուեստագիտուհիի մը հոգին։ Համակրելի խօսակիցս չեմ ուզեր աւելի յոգնեցնել եւ կը մեկնիմ։

*Քուլիս*, կիսամսեայ գեղարուեստական հանդէս, Իսթանպուլ, 1 Սեպտեմբեր 1954, 8-րդ տարի, թիւ 185, էջ 6-7




*Քուլիս* հանդէսի կողքը
1 Սեպտեմբեր 1954

ՊԷՅՐՈՒԹ ԵՒ ՀԱԼԷՊ

ՅՈՒՆՈՒԱՐ-ՓԵՏՐՈՒԱՐ 1955

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳՆԵՐԸ

## ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ ՕՐ. ԱՍԴՐԱ ՄՍՐԼԵԱՆ ՊԷՅՐՈՒԹ ՄԵԿՆԱԾ

Դաշնակահարուհի Ասդրա Մսրլեան Ուրբաթ երեկոյ Պէյրութ մեկնած է, առաջին անգամ ըլլալով բէսիթալ մը տալու համար լիբանանահայութեան:

Ասդրա Մսրլեան արդէն իսկ կազմած է իր յայտագիրը, որ կը բաղկանայ թէ՛ հայ մեծանուն երգահաններու՝ Արամ Խաչատուրեանի, Պապաջանեանի եւ Պաղտասարեանի (այս վերջին երկուքը պիտի նուագուին առաջին անգամ ըլլալով) ինչպէս նաեւ աշխարհահռչակ երգահաններու՝ Պեթհովէնի, Պրահմսի, Շոփէնի եւ Ֆօրէի կտորներէն:

Ասդրա Մսրլեան Պէյրութէն հաւանաբար անցնի Հալէպ, հոն եւս դաշնակի ունկնդրութիւն մը տալու նպատակաւ:

Վստահ ենք որ Լիբանանի եւ Սուրիոյ երաժշտասէր հայ հասարակութիւնը պիտի գիտնայ քաջալերել ծանօթ դաշնակահարուհին:

*Սաւառնակ*, 22 Յունուար 1955, 41-րդ տարի, թիւ 3, էջ 5

EWART MEMORIAL HALL, ԳԱՀԻՐԷ

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 30 ՄԱՐՏ 1955

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ԱՍԹՂԱ ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

EWART MEMORIAL HALL

**Rue Cheikh Rihan - Le Caire**

Merceredi, le 30 Mars 1955, à 9.15 p.m.

# ASTRA MESSERLIAN

RECITAL



DE PIANO

## BACH

Prélude et Fugue en do mineur

Prélude et Fugue en do dieze majeur

## BEETHOVEN

### SONATE EN DO MAJEUR OP. 2 No. 3

Allegro con brio

Adagio

Scherzo

Assai Allegro

## BRAHMS

Rhapsodie en sol mineur op. 79 No. 2

## KHATCHADOURIAN

### SCENES D'ENFANTS

Petite Chanson - Scherzo

Mon ami est malade - Mon anniversaire

Etude - Légende

Le Petit cheval - Danse folklorique

## CHOPIN

Ballade en sol mineur

Op. 23 No. 1

## FAURÉ

Impromptu en fa mineur

Op. 31 No. 2

## BABATCHANIAN

Danse de Vagharchabad

Exprompt

( En 1-ère Audition )

## BAGHDASSARIAN

Prélude

( En 1-ère Audititon )

# ԱՍԴՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ ԻՐ ԱՌԱՋԻՆ ՅԱՂԹԱՆԱԿԸ ԵՂԱՒ

[անստորագիր]

Առաջին յաղթանակները կարեւոր են:

Մերթ վճռական կրնան ըլլալ:

Ամէն պարագայի տակ, առաջին նուաճումները՝ արուեստագէտին ստեղծագործ ամբողջ կեանքին վրայ կը թողուն անջնջելի տպաւորութիւններ:

Պէյրութի մէջ իր ունեցած յաջողութենէն ետք, երբ եգիպտահայ երիտասարդ դաշնակահարուհի Ասդրա Մսրլեան վերադարձաւ Նեղոսի Հովիտը, ժամանակ էր որ հո՛ս արձանագրէր, մեզի համար, իր առաջին յաղթանակը: Ռէսիթալին նախորդող օրերուն, յաջողութեան լռելեայն խոստում մը ունէինք երէկ երեկոյեան ժամը 9.30-ին, Իուըրթ Մեմորիըլ Հոլի մէջ տեղի ունեցած դաշնակի ունկնդրութեան, առաջին յաղթանակի իրականութեան առջեւ գտա՛նք մենք մեզ:

Թող չըսուի որ հայուն մէջ գնահատանքի ոգին զօրաւոր չէ. ա՛յնքան ընդարձակ սրահը լեցուած էր հայ թէ օտար, արուեստի հասկացողութիւն ունեցող ընտիր հասարակութեամբ մը, որուն ներկայութիւնը արուեստի քննադատ Պ. Րոպէռ Պլումին կիսաձայն ըսել տուաւ.

«Երբ ֆրանսացի մը նուագէ, քանի մը տասնեակ հոգի ներկայ կ՚ըլլան, իսկ երբ հա՛յ մը ըլլայ նուագողը, սրահը կը լեցուի ամբողջութեամբ:»

Ընտիր յայտագիր մը, խելացիօրէն դասաւորուած, կը բաղկանար երկու մասերէ՝ հայ եւ օտար երգահաններէ կտորներ, որոնք սակայն իրարմէ անջատուած չէին միջնադադարով մը, որ կար սակայն. այսպէս, առաջին թէ երկրորդ մասերուն մէջ հայուն թէ օտարին հրաշալի ստեղծագործութիւնները յաջորդեցին իրարու, երաժշտութեան համամարդկային բնոյթն ու գեղեցկութիւնը շեշտելով:

Պախ, Պէթհովէն, Պրամս, Շոփէն, Ֆօրէ - ահա՛ նուագուած օտար երգահանները. Ասդրային համար Պէթհովէնը համակ կեանք է, Շոփէնը՝ թախծութիւն - կեանք մը որ կը վերացնէ ներապրումներու անծայրածիր հոյակապ աշխարհի մը մէջ եւ թախծութիւն մը որ սիրտը կը տրտմեցնէ առանց յուսալքելու: Յայտնի է որ Պէթհովէնն ու Շոփէնը ամենէն աւելի կը խօսին իրեն, հոգ չէ թէ Պախին դժուարին թեքնիքին, Պրամսի հոգեթով անուշութեան եւ Ֆօրէի ինքնուրոյն հոգեզմայլումին անհաղորդ չըլլայ բնաւ:

Եւ երբ Խաչատուրեան, Պապաջանեան եւ Պաղտասարեան կ՚երգե՛ն մեզի համար Ասդրային հմայող մատնահարումին եւ մատնահպումին ներքեւ, շնորհալի արուեստագիտուհին, իր անթերի թեքնիքին, խոր զգայնութեան եւ

գրաւիչ անձնականութեան վրայ կը յաւելու հայ երաժշտութեան ինքնատիպ դրոշմը, որ նոյնիհետայն կը յուզէ բոլորը։ Խաչատուրեանի *Մանկական տեսարանները* (ի՜նչ զմայլելի տեսարաններ), Պապաջանեանի *Վաղարշապատի՜ պարը* եւ միւս կտորը (ի՜նչ հայկական պար) եւ Պաղտասարեանի *Փրէլիւտ*ը (ի՜նչքան թովչութիւն) չեն կրնար հայունը չըլլալ եւ հայով չվերապրիլ։ Այս վերջին երկուքը կը նուագուէին Եգիպտոսի մէջ առաջին անգամ ըլլալով։

Երբ երկարատեւ ծափահարութիւններ ու ծաղկալիր կողովներ ժողովուրդին գնահատանքի արտայայտութեան ձայն, ձեւ եւ գոյն կու տային, Աստղրա Մարլեան անշշուկ կը վերադառնար իր Շոփէնին, բո՜ւն Շոփէնին, որմէ *Լէ Էքոսէզ*ը եւ *Փրէլիւտ*ը կը կազմէին ունկնդիրներէն հրաժեշտի ամենագեղեցիկ խօսքը որ երբեւիցէ լսուած ըլլայ...։

*Արեւ*, 31 Մարտ 1955, Խ. տարի, թիւ 11.036, էջ 1

## ԱՍԴՐԱ ՄԱՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ

Ասդրա Մարլեանի դաշնակի ռէսիթալը տեղի ունեցաւ Չորեքշաբթի երեկոյ, քաղաքիս ամենաընդարձակ՝ Իուըրդ Մէմօրիալ Հօլին մէջ, հայ եւ միջազգային հոծ բազմութեան մը ներկայութեան։ Ժամը 9.30-ին արդէն սրահը լրիւ լեցուած ըլլալով, կիշէն գոցուեցաւ։ Դաշնակահարուհի Ասդրա՝ ռէսիթալին ամբողջ տեւողութեան խոր ապրումի մէջ պահեց բոլոր ունկնդիրները։ Յայտագիրը որ կազմուած էր եւրոպական եւ հայաստանեան դասական ամենալուրջ կտորներէ, բուռն ծափահարութեանց արժանացաւ։ Ներկաներուն մէջ կը նշմարուէին միջազգային մամուլի քննադատներ, ազգային եւ օտար պաշտօնական անձնաւորութիւններ, Եգիպտական Մշակութային նախագահ ուսթազ Մահմուտ Նահաս, որ չկարենալով զսպել իր խանդավառութիւնը «պռավօ՜ Ասդրա», կը պօռար։

Օր. Ասդրա յայտագրէն դուրս իբր պիս նուագեց երկու կտորներ Շօբէնէ՝ *Լէ զէզօսէս*ը եւ *Բրէլիւտ* մը։

Երիտասարդ դաշնակահարուհին ստացաւ բազմաթիւ ծաղկեկողովներ եւ ծաղկեփունջեր։

Ռէսիթալէն յետոյ, ի պատիւ Ասդրայի, մտերմիկ ընդունելութիւն մը տեղի ունեցաւ Տիկ. Յասմիկ Պալարեանի կողմէ՝ արուեստագէտի ըմբռնումով զարդարուած իր բնակարանին մէջ, ուր ներկայ էին միւզիքի քրիթիքներ եւ լրագրողներ։

*Սաւառնակ*, 2 Ապրիլ 1955, 41-րդ տարի, թիւ 14, էջ 1

# ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Օր. Աստրա Մսրլեան վերջերս Գահիրէի մէջ ռեսիթալ մը տուաւ եւ նուագեց՝ Պախի Տօ մինէօր Փրելիւտը եւ Ֆիւկը, Պրահմսի Սոլ մինէօր *Ռափսոտի*ն, Պեթհովենի Տօ մաժէօր Սոնաթը, Ֆորէի մէկ *Էմփրոմփթիւ*ն եւ Խաչատուրեանէ, Պապաջանեանէ եւ Պաղտասարեանէ գողտրիկ կտորներ։

Հակառակ իր երիտասարդութեան, Աստրա Մսրլեան վաղեմի ծանօթ մըն է ինծի։

Դեռ պատանութեան, ան մասնաւոր ուշադրութիւն կը գրաւէր Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներու ունկնդրութիւններուն ընթացքին։ Նոթագրութիւններս քրքրելով 1945 Մայիս թուագրեալ հետեւեալը կը գտնեմ. «Աստրա Մսրլեան ունի բացորոշ տաղանդ։ Անվիճելիօրէն ամենէն աւելի ծափողջունուողը եղաւ - եւ իրաւամբ, - որովհետեւ մեզի տուաւ լաւ Շոփեն մը, փոխնիփոխ՝ ծայրայեղ քնքշութեամբ եւ մոլեգին խոյանքով։ Իր ըմբռնող մեկնաբանումը, իր թաւշային մատնահարումը եւ երաժշտականութեամբ լի իր նուագածութիւնը իրական հաճոյք մը պատճառեցին մեզի»։

Տասը տարիներ անցեր են եւ մեր դաշնակահարուհիին մէջ կը վերագտնենք միեւնոյն յատկութիւնները, բայց զարգացած, ամրապնդուած՝ տարիներու լուրջ աշխատանքով։ Փարիզի երաժշտանոցին մէջ Իվ Նաթի եւ Ժան Տուայենի նման վարպետներ կերպաւորած են իր երաժշտական խառնուածքը, բայց գերակշիռ կը մնայ դերը իր առաջին ուսուցչուհիին, որ գիտցած է այդ հոգիին մէջ զարթնեցնել երաժշտական ըմբռնումը եւ սէրը, եւ իրեն տալ՝ հիմնական կազմաւորում մը։

Իր մէջ կը սիրենք մանաւանդ զգայնութիւնը, պարզութիւնը եւ անկեղծութիւնը։ Իրաւ է, թէ ան երբեմն կը տարուի իր երիտասարդական եռանդէն, բայց հետզհետէ պիտի կարենայ տիրապետել ինքն իրեն եւ յաղթահարել՝ որոշ երկչոտութիւնն ու վախը, որոնք կ'արգիլեն իր ամբողջ կարողութեան ցուցաբերումը։ Այդ պարագային ան պիտի կարենայ հոգ տանիլ միմիայն իր մեկնաբանումին եւ ինքզինքը պարտադրել՝ հեղինակաւոր կերպով, որուն համար անհրաժեշտ բոլոր յատկութիւնները ունի։

Աստրա Մսրլեան կը սկսի խոստումնալից ասպարէզ մը։ Գահիրէի, Եթովպիոյ եւ Լիբանանի մէջ իր սարքած նուագահանդէսները, որոնց վրայ աւելցաւ գիշերուան գեղեցիկ ռեսիթալը, խուռներամ եւ խանդավառ հասարակութեան մը ներկայութեան, աւելի եւս կ'ամրապնդէ մեր հաւատքը իր յաջողութեան նկատմամբ։

*Այգ*, Պէյրութ, 28 Ապրիլ 1955

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 4 ՅՈՒՆԻՍ 1955

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN

( de l'Ecole Normale de Musique de Paris )

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Samedi, le 4 Juin 1955, à 6 h. p.m.**

---

*Le programme tient lieu d'Invitation.*

| | | |
|---|---|---|
| *Seta Boghourian* | Etude | *Beyer* |
| *Ara Boyadjian* / *Sona Titizian* | Quatre mains | *Wohlfahrt* |
| *Arda Boyadjian* | Etude | *Beyer* |
| *Sirvart Agopian* | Rondo | *Beethoven* |
| *Vera Hatzouny* | Le Coucou | *Daquin* |
| *Sona Titizian* | Sonate en do maj. (1 er.mouv.) | *Mozart* |
| *Sirvart Titizian* | Tempo di menuetto | *Beethoven* |
| *Zevart Tachdjian* | Air Varié | *Haendel* |
| *Madeleine Artinian* | Mazurka en si bem.<br>Valse en ré bem. | *Chopin* |

| | | |
|---|---|---|
| *Véronique Sarkissian* | Rondo en ré maj. | *Mozart* |
| *Ch. Khatchadourian* | Ah ! vous dirai-je, maman Thème varié | *Mozart* |

## Intervalle

| | | |
|---|---|---|
| *Chaké Marcarian* | Invention en fa maj. | *Bach* |
| | Le petit âne blanc | *Ibert* |
| *Alice Hamamdjian* | Nocturne | *Grieg* |
| *Lily Kouyoumdjian* | Passacaille | *Haendel* |
| *Hripsimé Baldjian* | L'invitation à la valse | *Weber* |
| *Jeannette Chirikdjian* | Rondo a capriccio | *Beethoven* |
| *Maro Boghiguian* | Sonate en mi maj. | *Scarlatti* |
| | Toccata | *Khatchaturian* |

## ORIENTAL HALL

# AUDITION DES ELEVES DE PIANO DE Mlle NEVARTE DAMADIAN

H. SOULON

Parmi les jeunes débutants: Seta Boghourian, Ara Boyadjian, Sona Titizian, Arda Boyadjian qui disent fort correctement leur petite étude, se détache, pour sa musicalité, son rythme ferme, sa diction bien liée, ses nuances, la jeune Sirvart Agopian, dans un *Rondo* de Beethoven, Vera Hatzouny nous donne un *Coucou* de Daquin bien articulé, bien rythmé avec de justes accents et des “échos” expressifs. Sona Titizian, dans le 1er mouvement de la Sonate en do majeur de Mozart montre de l’assurance, des qualités d’articulation, de diction ferme et nette, mais le mouvement de métronome qu’elle adopte ne va pas sans quelque sécheresse. Sirvart Titizian interprète avec délicatesse un *Menuet* de Beethoven, avec de jolies nuances de sonorité et de forte-piano. Zevart Tachdjian traduit avec autorité et avec bonheur la noblesse et la grâce de L’*Air varié* de Haendel. L’articulation de Madeleine Artinian n’est pas toujours égale dans la *Mazurka* en si bémol de Chopin mais elle joue avec beaucoup de légèreté et de finesse la *Valse* en ré bémol. Véronique Sarkissian a fait de grands progrès. Son *Rondo* en ré majeur de Mozart est net, joliment articulé avec des contrastes délicats et des effets sensibles de progression. Enfin Ch. Khatchadourian, dans le thème varié de Mozart: *Ah! vous dirai-je, maman*, fait preuve d’excellentes qualités artistiques, de musicalité, de délicatesse sensible.

Dans la deuxième partie, nous passons à des élèves plus nettement avancés et d’un niveau supérieur.

Chaké Marcarian interprète avec décision et fermeté l’*Invention* en fa majeur de Bach; mais son *Petit âne blanc* d’Ibert eût gagné à être pris dans un mouvement plus rapide et moins appuyé. Alice Hamamdjian montre de la sensibilité et trouve de jolies sonorités dans un *Nocturne* de Grieg, Lily Kouyoumdjian joue avec l’autorité, la gravité, la musicalité qui conviennent à la noble *Passacaille* de Haendel, Jeannette Chirikdjian, dans le difficile *Rondo a capriccio* de Beethoven, fait preuve de belles qualités techniques, d’agilité, de brio, et d’une attachante musicalité.

Maro Boghiguian termine brillamment cette audition par une Sonate de Scarlatti jouée fort délicatement et dans un sentiment très juste et par la célèbre *Toccata* de Khatchaturian enlevée avec un jeune brio très convaincant.

Audition dans l’ensemble excellente et qui témoigne d’une excellente pédagogie en même temps que du souci essentiel de l’éducation musicale.

*Le Progrès égyptien*, 7 juin 1955

# AUDITION DES ELEVES DU PROFESSEUR DE PIANO Mme NEVARTE DAMADIAN

[անստորագիր]

L'impression générale qui se dégage de cette audition est que les élèves ont une formation technique sûre et très poussée. Ils paraissent bien préparés et – pour les élèves avancés – avoir parfaitement compris l'esprit de l'œuvre à interpréter.

Les débutants, Seta Boghourian, Ara Boyadjian (4 mois d'études seulement), les sœurs Arda et Sirvart Agopian, récitèrent correctement la leçon apprise.

Vera Hatzouny et Sona Titizian ont un jeu clair, bien articulé, elles nous donnèrent respectivement *Le Coucou* de Daquin et le 1er mouvement de la Sonate en do majeur de Mozart d'une façon très valable.

Le *Tempo di menuetto* de Beethoven fut joué avec délicatesse – quoique sans beaucoup de conviction – par Sirvart Titizian.

Zevart Tachdjian ne manqua pas de mettre en valeur la noblesse de l'*Air varié* de Haendel. Madeleine Artinian joua une *Mazurka* et une *Valse* de Chopin dans un mouvement bien rythmé.

Le *Rondo* en ré majeur de Mozart fut interprété avec légèreté et clarté par Véronique Sarkissian.

Chouchig Khatchadourian – à peine âgée de 13 ans – a des qualités qui la font remarquer: jeu clair et nuancé, bon phrasé, compréhension musicale. C'est avec intelligence et sensibilité qu'elle interpréta *Ah! vous dirai-je maman* de Mozart.

Chaké Marcarian fut sobre et classique dans l'*Invention* en fa majeur de Bach, et sut ensuite nous faire goûter toute la cocasserie pittoresque du *Petit âne blanc* de Ibert.

Alice Hamamdjian nous donna une *Nocturne* de Grieg avec toute la douceur et la sensibilité souhaitées.

La noblesse de la *Passacaille* de Haendel fut bien rendue par Lily Kouyoumdjian qui possède un bon doigté, un jeu puissant plein de sonorité.

Hripsimé Baldjian fut brillante dans l'*Invitation à la valse* de Weber. Elle a un jeu perlé, beaucoup de musicalité, un bon phrasé!

Jeannette Chirikdjian a du tempérament: son *Rondo a capriccio* de Beethoven, joué dans un mouvement endiablé, fut plein de fougue et de colère.

Quant à Maro Boghiguian, c'est une élève très douée: elle sut mettre en valeur toute la sensibilité et la délicatesse de l'exquise Sonate en mi majeur de Scarlatti, puis étonnante de vigueur elle nous interpréta la *Toccata* de Khatchadourian dans la manière imagée et contrastée chère à son professeur.

Dans l'ensemble une audition d'élèves d'une très bonne tenue.

*Le Journal d'Egypte*, La Caire, 10 juin 1955

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՌՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Ունկնդրութիւններու եղանակը վերսկսած է եւ հաճոյքով կը վերագտնեմ Օր. Նուարդ Տամատեանի համակրելի աշակերտները, քիչ մը՝ այն հեռաբնակ բարեկամին պէս որ կանոնաւոր ընդմիջումներով կու գայ իրենները տեսնելու։ Որովհետեւ, այդ միեւնոյն աշակերտներուն հետեւելով տարիէ տարի, հաստատելով անոնց յառաջդիմութիւնները, տեսնելով անոնց ինքնավստահ դառնալը՝ անոնց երաժշտական թոթովումներուն վկան ըլլալէ ետք, մարդ ի վերջոյ կը կապուի այդ պատանիներուն եւ զանոնք կը նկատէ մեծ ընտանիք մը, ոգեկան ընտանիք մը։ Եւ ա՜յնքան լաւ կ'ըմբռնեմ ուսուցչուհիին հրճուանքն ու հպարտութիւնը, երբ իր աշակերտներէն մի քանին կը հասնին նախանձելի բարձունքներու, ինչպէս եղաւ պարագան դեռատի Աստրա Մսրլեանի՝ այս վերջին տարիներուն։

Ընտանեկան այս մթնոլորտը կը վերագտնենք հանդիսականներուն մէջ ալ, եւ եթէ աշակերտները անդրադառնային թէ համակրանքի ի՜նչ մթնոլորտի մէջ կը կատարեն իրենց նուագածութիւնը՝ այնքան դիւրաւ պիտի չհամակուէին սրտադողով։ Հանդարտ ջիղերով, իրենց բոլոր կարողութիւններուն տէր, անոնք ի յայտ պիտի գային իրենց իսկական արժէքով։ Եւ այս պատճառով է որ գոհ եմ ընդհանուր փորձին ընթացքին ալ, զիրենք լսած ըլլալուս համար։

Սեդա Պօղուրեան, Սիրվարդ Ակոբեան, Արտա Պօյաճեան եւ իր եղբայրը Արա ճշդօրէն տուին սորվուած դասը, այս վերջինը, Սոնիա Թիթիզեանի յաջող ընկերակցութեամբ, նոյնիսկ շատ պատուաբեր կերպով դուրս եկաւ Վոլֆարթի մէկ քառաձեռք կտորէն, եթէ նկատի ունենանք որ միայն չորս ամիսէ ի վեր դաս կ'առնէ։

Վերա Հացունի (որ ուշադրութիւն կը գրաւէ ձեռքերու շատ լաւ դիրքով մը) եւ Սոնիա Թիթիզեան ունին զուսպ եւ յստակ նուագածութիւն, անոնք յաջողութեամբ մեզի տուին՝ առաջինը Տաքէնի *Քուքու*ն, իսկ երկրորդը Մոցարթի Տօ մաժէօր Սոնաթին առաջին շարժումը։

Պէթհովէնի *Թէմփօ տի մինուէթթօ*ն նրբութեամբ նուագուեցաւ Սիրվարդ Թիթիզեանի կողմէ. սակայն պիտի փափաքէինք քիչ մը աւելի եռանդագին համոզում։

Զուարթ Թաշճեան ունի սահուն ու պայծառ նուագածութիւն. աշխատեցաւ արժեւորել Հէնտէլի *Այլազան եղանակ*ին ազնուականութիւնը։

Մատլէն Արթինեան նուագեց Շոփէնէն *Մազուրքա* մը եւ *Վալս* մը, լաւ կշռութաւորուած եւ լաւ գունաւորուած շարժումով մը. նախընտրեցի *Մա-*

*զուրքա*ն։

Մոցարթի Ռէ մաժէօր *Ռոնտո*ն թեթեւութեամբ ու պայծառութեամբ նուագուեցաւ Վերոնիք Սարգիսեանի կողմէ. փափաքելի պիտի ըլլար որ առաւել ցայտուն նուագծութիւն մը ունենար։

Շուշիկ Խաչատուրեան ունի ուշագրաւ յատկութիւններ. պայծառ եւ լաւ երանգաւորուած նուագծութիւն, լաւ շարայարում, երաժշտական հասկացողութիւն։ Խելացութեամբ եւ զգայնութեամբ է որ ան մեկնաբանեց Մոցարթի *Ah! vous dirai-je, maman*-ը։ Պարզութեամբ արտաբերելէ ետք thème-ը ան փայլուն կերպով մեկնաբանեց կտորը։

Շաքէ Մարգարեան եղաւ ժուժկալ ու դասական՝ Պախի Fa majeur *Invention*-ին մէջ, եւ յետոյ կրցաւ ճաշակել տալ Իպէռի *Պզտիկ ճերմակ էշ*ին գունագեղ ծիծաղաշարժութիւնը։

Ալիս Համամճեան տուաւ Կրիկի մէկ *Նոքթիւռն*ը, ամբողջ մեղմութեամբ եւ զգայնութեամբ։

Հէնտէլի *Փասաքայ*ին ազնուականութիւնը կատարելապէս յայտնաբերուեցաւ Լիլի Գույումճեանի կողմէ, որ ունի լաւ մատնահարում, հնչականութեամբ լի հզօր նուագծութիւն։

Հռիփսիմէ Պալճեան փայլուն եղաւ Վէպէրի *Վալսի հրաւէր*ին մէջ, զոր մեկնաբանեց երանգով եւ ըմբռնումով։ Ան ունի մարգարտային նուագծութիւն, զուտ երաժշտականութիւն եւ սքանչելի շարայարում։ Աշակերտուհի մըն է, որմէ կրնանք սպասել շատ բան։

Ժանէթ Շիրիքճեան խառնուածք ունի, Պէթհովէնի *Ռոնտօ ա քափրիչիօ*ն նուագուեցաւ սրընթաց շարժումով՝ զայրոյթով լի. թերեւս մեկնաբանումին այդ եռանդը վնասեց յստակութեան։

Յանձին Մարօ Պօղիկեանի ունինք շատ օժտուած աշակերտուհի մը։ Շնորհալի, բիւրեղանման նուագծութեամբ մը, ան գիտցաւ տալ Սքարլաթթիի հիւթեղ Սոնաթ մի մաժէօրին ամբողջ զգայնութիւնը եւ նրբութիւնը։ Ապա ապշեցուցիչ կորովով, ան մեկնաբանեց Խաչատուրեանի *Թոքքաթա*ն իր ուսուցչուհիին իւրայատուկ պատկերաւոր ու հակադիր եղանակովը։

Այս ունկնդրութենէն ստացուած ընդհանուր տպաւորութիւնը այն է, որ աշակերտները ունին ապահով եւ շատ յառաջացած թէքնիք կազմաւորում։ Անոնք կը թուին լաւ պատրաստուած ըլլալ եւ - յառաջացած աշակերտներուն համար - կատարելապէս հասկցած ըլլալ նուագուելիք կտորին ոգին։

Ընդհանուր առմամբ, շատ գեղեցիկ որակով ունկնդրութիւն մը, ինչպէս բոլոր այն ունկնդրութիւնները որոնց վարժեցուցած է մեզ Օր. Նուարդ Տամատեան։

*Արեւ*, 17 Յունիս 1955, ԽԱ. տարի, թիւ 11.099, էջ 3

# ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՌՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Արեւելեան դահլիճը նախանցեալ շաբաթ օր (4 Յունիս) յետմիջօրէին դարձեալ խճողուեցաւ հայ թէ օտար ընտրանի հասարակութեամբ մը, ուր բացի ծնողներէ կը նշմարուէին նաեւ Ազգային իշխանութեանց անդամներ, ուսումնական հայ թէ օտար հաստատութեանց պատուիրակներ եւ դաստիարակներ, երաժշտասէրներու արուեստասէր ծանօթ դէմքերու կողքին ունենալով եգիպտահայ եւ ֆրանսագիր տեղական մամուլի քննադատներ:

Իր քաջալերական ներկայութեամբ, այս պատկառելի բազմութիւնը կու գար իր անվերապահ գնահատութեան արտայայտութիւնը բանաձեւելու առաւելաբար այն թանկագին աշխատանքին համար զոր այնքան անխոնջ կերպով ու նուիրումով կ՚իրականացնէր Օր. Նուարդ Տամատեան, քաջ մանկավարժ, համայնքիս ծոցին մէջ ստեղծելով եւ առաջնորդելով երաժշտասէր նորահաս սերունդ մը որ սիրով ու ըմբռնումով կը մօտենայ դաշնամուրին, արդարացնելով իր վրայ դրուած յոյսերը:

Տարեկան այս հանդիպումի պատեհութեամբ, մտերմիկ շփում մը գոյութիւն կ՚առնէ հանրութեան եւ այս մանկահասակ դաշնակահարուհիներուն միջեւ, որոնք խանդավառութեամբ եւ փութկոտութեամբ կը ներկայանան մեզի այս նուագարանին առջեւ ուր իրենց ինքնավստահ եւ տիրապետող մատնահարումներով կատարուած որեւէ կտորի մեկնաբանութիւն մեզի անխտիր երաշխիքը կու տայ թէ անոնք կը մարզուին ամէն դժուարութիւն յաղթահարելու խոր համոզումով եւ հաւատքով: Այս հաւաստիքը կու տայ նաեւ *Բրոկրէ Էժիբսիէն*ի երաժշտական խստապահանջ քննադատ Հ. Սուլօն, որ թերթին անցեալ Երեքշաբթի օրուան թիւով կը գրէ՝ այս ունկնդրութեան անդրադառնալով հետեւեալը.

«Փոքրիկն Սիրվարդ Ակոբեան Պեթհովէնի մէկ *Ռոնտո*յին մէջ իր երաժշտականութեան, հաստատ կշռոյթին, մտացի ընդելուզումին եւ երանգաւորումներուն համար կը զատորոշուի մանկահասակ Սեդա Պօղուրեանի, Արա Պօյաճեանի, Սօնա Թիթիզեանի եւ Արտա Պօյաճեանի - որոնք շատ ճշգրտութեամբ կ՚ընեն իրենց ուսումնասիրութիւնը - սկսնակներու հոյլէն: Վերա Հացունի մեզի կու տայ Տաքէնի *Le Coucou*-ն լաւ շարայարութեամբ եւ ճիշդ հնչումներով ու արտայայտիչ «արձագանգ»-ներու լաւ կշռոյթներով: Մոցարթի Սօնաթ ան տօ մաժէօրի առաջին շարժման մէջ, Սօնա Թիթիզեան ի յայտ բերաւ վստահութիւն, մատնահարումի յատկութիւններ, հաստատ եւ մեկին շարայարում. սակայն եւ այնպէս չափահար շարժումը զոր ինք կ՚որդեգրէ փոքր ինչ խստութեամբ կ՚ընթանայ:

Մինչ Սիրվարդ Թիթիզեան Պեթհովէնի մէկ *Մընիւէ*ն կը մեկնաբանէ որոշ նրբութեամբ, հնչականութեան եւ դաշնամուրի գեղեցիկ երանգաւորումներուն հետ։ Զուարթ Թաշճեան հեղինակութեամբ եւ յաջողանքով թարգման կը հանդիսանայ Հէնտէլի լ'*Էր վարիէ*ի ազնուականութեան եւ շնորհին։ Մատլէն Արթինեանի մատնահարումը միշտ ալ համաչափ չեղաւ Շոբէնի *Մազուրքա* ան սի պէմոլին մէջ, բայց ան կրցաւ *Վալս* ան րէ պէմոլը նուագել չափազանց դիւրաշարժութեամբ եւ նրբութեամբ։ Վերոնիք Սարգիսեան մեծ յառաջդիմութիւններ կատարած է. Մոցարթի իր *Ռոնտօ* ան րէ մաժէօրը եղաւ ջինջ, պատուական կերպով մատնահարուած՝ այնքան փափուկ հակադրութիւններով եւ յառաջխաղացման զգայուն տպաւորութիւններով։ Վերջապէս Շ. Խաչատուրեան *Ah! vous dirai-je maman* Մոցարթի պէսպիսուն նիւթով՝ փաստը տուաւ գեղարուեստական, երաժշտական եւ դիւրազգաց սքանչելի յատկութիւններու։

«Երկրորդ մասին մէջ, մենք կ'անցնինք պարզապէս աւելի յառաջադէմ ու բարձր մակարդակով աշակերտուհիներուն։

«Պախի *Invention* en la majeur-ը Շաքէ Մարգարեան կը մեկնաբանէ հաստատամտութեամբ եւ արիութեամբ։ Բայց իր Ibert-ի *Le Petit âne blanc*-ը յաղթանակած պիտի ըլլար՝ աւելի արագ սակայն նուազ զօրաւոր շարժումով մը։ Կրիկի *Nocturne*-ին մէջ Ալիս Համամճեան ցոյց տուաւ դիւրազգածութիւն եւ երեւան բերաւ գեղեցիկ հնչականութիւններ։ Լիլի Գույումճեան նուագեց վստահութեամբ եւ երաժշտականութեամբ, որոնք այնքան կը յարմարին Հէնտէլի ազնուական *Passacaille*-ին։ Ժանէթ Շիրիքճեան Պեթհովէնի դժուարին *Rondo a capriccio*-ին մէջ ի յայտ եկաւ թեթեւաշարժութեան, աշխուժութեան եւ հաղորդական երաժշտականութեան արուեստագիտականութեան գեղեցիկ յատկութիւններով։ Իսկ Մարօ Պօղիկեան այս ունկնդրութիւնը գեղեցիկ կերպով կը փակէ Սքարլաթիի մէկ սոնաթով զոր կը նուագէ խորունկ փափկութեամբ եւ ճշգրիտ զգայնութեամբ, ու անմիջապէս յետոյ Խաչատուրեանի *Թօքաթա*ն՝ զոր կ'արտայայտէ յուսադրիչ աշխուժութեամբ մը։

«Իր ամբողջութեանը մէջ սքանչելի ունկնդրութիւն մը որ հոյակապ մանկավարժութեան մը հետ կը վկայէ միաժամանակ՝ երաժշտական դաստիարակութեան համար էական մտահոգութեան մը մասին։»

*
*   *

Այս արդար եզրափակումին, որուն այնքան արժանի է Օր. Ն. Տամատեանի առաքելութիւնը, կը փութանք միացնել մեր հրապարակային շնորհաւորութիւնները, թէ աշակերտութեան եւ թէ ուսուցչուհւոյն ուղղելով նորանոր յառաջդիմութեանց մաղթանքները։

*Արաքս*, 18 Յունիս 1955

## ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ, ԳԱՀԻՐԷ

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 8 ՄԱՐՏ 1956**

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ՀԻՒՐԱԲԱՐ ՄԱՅՐԱՔԱՂԱՔՍ ԳՏՆՈՒՈՂ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐՈՒՆ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ԳԱՀԻՐԷ

Այսօր՝ Հինգշաբթի, 8 Մարտ 1956
երեկոյեան ժամը ճիշդ 9-ին

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

Ի ՊԱՏԻՒ
ՀԻՒՐԱԲԱՐ ՄԱՅՐԱՔԱՂԱՔՍ ԳՏՆՈՒՈՂ

**ՄԵՐ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐՈՒՆ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ

կենդանի պատկեր ՆԿԱՐԻՉ Ա. ՋՕՐԵԱՆԷ
Դաշնակ ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԷ
Երգչախումբ ղեկավարութեամբ Մօ. Ե. ՅԱԿՈԲԵԱՆԷ
ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ, ՄԵՆԵՐԳՆԵՐ ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐԵՐ

ԾԱՆՕԹ.— Տեղի սակաւութեան պատճառաւ, մուտքը միմիայն Միութեանս եւ Կոչանեան Սրահի անդամ-անդամուհիներուն վերապահուած է:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 8 Մարտ 1956, ԽԱ. տարի, թիւ 11.321, էջ 1

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐՈՒ

(հատուած)

Գործադրուեցաւ յայտագիր մը, որուն իրենց մասնակցութիւնը բերին յաջորդաբար նկարիչ Ա. Զօրեան, կենդանի պատկերով որուն ընթացքին Պ. Օ. Գալուստեան արտասանեց *Լուսաւորչի կանթեղը*. Օր. Մ. Թերզիպաշեան՝ արտասանութեամբ. Ե. Սիմոնօֆ՝ մեներգներով. Օր. Հ. Կարապետեան՝ մեներգներով. Տիկին Յ. Աւհարոնեան եւ Օր. Մ. Թերզիպաշեան հայկական խմբապարի պատրաստութեամբ եւ Միութեան պարախումբին հետ. Պ. Վ. Թերզիպաշեան՝ արտասանութեամբ. Օր. Ն. Տամատեան՝ դաշնակով. Պ. Գ. Փարթամեան՝ մեներգներով. Տիկին Յ. Աւհարոնեան՝ հայկական պարով եւ եգիպտահայ երգչախումբը՝ խմբերգներով՝ ղեկավարութեամբ Մօ. Ե. Յակոբեանի. դաշնակի ընկերակցութիւն՝ Տիկին Զ. Գլըճեանի։

*Արեւ*, 9 Մարտ 1956, ԽԱ. տարի, թիւ 11.322, էջ 1, 4

## ԱՆՑՈՂ ԱՄԻՍԸ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՄԷՋ

(հատուած)

ՍԱՒԱՌՆԱԿ

Ի պատիւ Սրբազան հիւրերուն, գերզգայուն դաշնակահարուհի Օր. Նուարդ Տամատեան խոր զգացումով նուագեց Բարխուդարեանի *Էպքիզ* եւ *Աքուարէլը*, արժանանալով բուռն ծափերու։

*Սաւառնակ*, 31 Մարտ 1956, 42-րդ տարի, թիւ 12, էջ 3

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ, ԳԱՀԻՐԷ

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 16 ՄԱՅԻՍ 1956

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ԱՍԹՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 16 ՄԱՅԻՍ 1956, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9.15-ԻՆ

Երիտասարդ Դաշնակահարուհի ԱՍԴՐԱ ՄԱՐԼԵԱՆ

ԻՐ ՌԷՍԻԹԱԼԸ ՊԻՏԻ ՏԱՅ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑԻ ՆՈՐԱԿԵՐՏ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**ՅԱՅՏԱԳԻՐ**

| | |
|---|---|
| HAENDEL | Passacaille |
| BACH | Toccata et Fugue en mi mineur |
| BEETHOVEN | Sonate en re mineur op. 31 no. 2<br>Largo - Allegro<br>Adagio<br>Allegretto |

INTERVALLE

| | |
|---|---|
| KHATCHADOURIAN | Valse Caprice<br>Dance |
| CHOPIN | Andante Spianato et<br>Polonaise en mi bemol majeur |
| RAVEL | Sonatine<br>Modéré<br>Mouvt. de Menuet<br>Animé |

Յայտարարութիւն
*Սաւառնակ*, 12 Մայիս 1956, 42-րդ տարի, թիւ 17, էջ 1

# ՇՈՓԷՆԻ ԵՒ ՊԷԹՀՈՎԷՆԻ ՀՈԳԵԽՌՈՎ ԱՐՏԱՅԱՅՏԻՉ ԱՍՏՂԻԿ ՄԱՐԼԵԱՆԻ ՅԱՋՈՂ ՌԵՍԻԹԱԼԸ

ՆՈՒՊԱՐ Գ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

Շոփէնի հոգին եւ անկէ բղխած ստեղծագործութեանց էութիւնը իւրացնելու եւ զանոնք ապրումով ու հոգեկան հարազատ թրթռացումներով արտայայտելու բացառիկ շնորհին ու ձիրքը, Աստղիկ Մարլեան կը պարտի նախ իր խառնուածքին. յետոյ՝ կատարելագործուող թեքնիքին եւ խորացող հասկացողութեան։ Իսկ եթէ Պէթհովէնի գործերը մասնայատուկ հրապոյրով կ'ազդեն շնորհալի արուեստագիտուհիին վրայ, այդ նախասիրութիւնը առնչութիւն ունի առաջին հերթին անոր յառաջդիմող թեքնիքին հետ։ Ապա՝ կեանքը անկեղծօրէն սիրելու եւ զայն ներուժաբար ապրելու մարմաջին - երբեմն բուռն մարմաջին - ինչպէս նաեւ հասկացողութեան հետ։

Անցեալ տարի, Մարտ 30-ին, Ֆուլըրթ Մեմորիըլի մէջ տուած իր ռեսիթալին առթիւ, արդէն դիտել կու տայինք որ Համակ-Թախծութիւն-Շոփէնն ու Համակ-Կեանք-Պէթհովէնը ամենէն աւելի կը խօսին Աստղիկին։ Երէկ երեկոյ, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան սրահը արուեստագէտներէ եւ արուեստասէրներէ բաղկացած հոծ թիւով հայ թէ օտար ունկնդիրներու ներկայութեան տեղի ունեցած դաշնակի ռեսիթալին, հաստատեցինք որ չէինք սխալած։

Այսուհետեւ, Աստղիկի ներաշխարհին մէջ, պայքարը Շոփէնի եւ Պէթհովէնի միջեւ, պիտի վերջանայ առաջինին յաղթանակով՝ եթէ երբեք վիպապաշտ հոգին հզօր ի յայտ գայ, եւ երկրորդին յաղթանակով՝ կեանքին հետ մերձեցումը հետզհետէ շեշտուելու պարագային։ Երէկ երեկոյ, անոնք ex acquo ներկայացան։ Թերեւս Պէթհովէնը յաղթանակէ աւելի ուշ, բայց ոչ շատ ուշ։

Հէնտըլ, որուն մէկ գործով սկսաւ ռեսիթալը, նորամուտ երգահան մըն է Աստղիկի նուագացանկին մէջ, իսկ Պախը, հակառակ ենթադրուած դժուարին թեքնիքին, յայտնի է որ որոշ հմայք ունի իր վրայ։ Բայց անոնցմէ աւելի ուշագրաւ էր Րավէլի կտորը, իր զմայլագեղ հնչականութեամբ, զոր հարազատօրէն արտաբերեց։

Յայտագրին վրայ կ'երեւար նաեւ Խաչատուրեան. իբր *պիս* նուագեց Պապաջանեանէ եւ Տիգրանեանէ։ Հոս եւս հիացումի արժանի թեքնիքը զգալի էր։ Հայկական դրոշմը կար։ Վստահ ենք որ ժամանակի հոլովոյթին հետ, հայու հոգին խորանալով, երիտասարդ դաշնակահարուհին լիովին հաղորդակից կը դառնայ հայկական երաժշտութեան ժողովրդամերձ խորքին, երբեմն վշտահնչիւն եւ յաճախ մելանոյշ թովչութեան ինչպէս նաեւ հէքիաթագեղ հրապոյրին։

Երկարատեւ ծափահարութիւններ ու ծաղկազարդ կողովներ ունկնդիրներու գնահատութեան ու գոհունակութեան բուղխ արտայայտութիւններն են անտա-

բակոյս։ Ասոնցմէ վեր կան Աստղրային համար դադար չընդունող յառաջդիմու-թեան տենչը, ինքզինք գերազանցելու պահանջը եւ հայկական երաժշտութեան անծայրածիր հորիզոնին վրայ անգայտելու փորձութիւնները։ Կը մաղթենք, սրտանց, որ մա՛նաւանդ այս վերջինները համագրաւեն զինք։

*Արեւ*, 17 Մայիս 1956, ԽԲ. տարի, թիւ 11.377, էջ 1

## ԱՍՏՂՐԱ ՄՍՐԼԵԱՆԻ ՍՔԱՆՉԵԼԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՔԼՕՏ ՏԸ ՌԻՎ

*Եգիպտոսի ֆրանսական ամենէն ժողովրդական օրաթերթի* Ժուրնալ տ'Էժիբթի՝ *երաժշտական քննադատ Քլօտ տը Ռիվ հետեւեալ քրիթիքը ստորագրած է իր թերթին մէջ, զոր ստորեւ կու տանք թարգմանաբար.*

Մի քանի տարի առաջ Օլ-Սէյնթսի սրահին մէջ իր տուած նուագահանդէսէն ի վեր, Օրիորդ Աստղրա Մսրլեան մեծապէս աշխատած է։ Գիտէր թէ տակաւին բաւական ճամբայ ունէր կտրելիք, հասնելէ առաջ իր մտադրած նպատակա-կէտին եւ քաջաբար ճամբայ ելաւ։ Ֆրանսայի, Գերմանիոյ մէջ, վերադարձաւ վարպետներուն քով, նուագեց տարբեր հանրութիւններու առջեւ՝ Ռենանիոյ, Եթովպիոյ, Լիբանանի, Սուրիոյ եւ Թուրքիոյ մէջ։ Ճոխացուց իր գիտելիքները, մեծ փորձառութիւն ձեռք բերաւ, իր ինքնավստահութիւնը բարեդէպօրէն ամրա-պնդուեցաւ։

Եւ նոյնքան շնորհալիութեամբ որքան հեղինակութեամբ է որ ան տեղ գրաւեց Չորեքշաբթի իրիկուն ստեղնաշարին առջեւ, Հայ Գեղարուեստասիրաց Միու-թեան սիրուն սրահին մէջ։

Դեռատի արուեստագիտուհին դարձած է Concertiste մը։ Կարելի չէ ուրանալ իր յառաջդիմութիւնները։ Աիազին են անոնք։ Իր նուագածութիւնը վարող գիտակցութեան, գործադրուող կտորներուն հանդէպ իր տածած յարգանքին, այժմ կու գան աւելնալ երանգներու նուրբ արուեստ մը, սկսումներուն մէջ աւելի մեծ յստակութիւն քան առաջ, եւ ըմբռնողութիւն մը, յաճախ յուզում մը՝ որոնք լոկ տարիներու ընթացքին կարող են գալ։

Ան փայլուն կերպով մեկնաբանեց Հէնտէլի *Փասաքայ*ը, պէտք եղած շեշտը դնելով զանազան փոփոխումներուն վրայ, եւ պարզութեամբ՝ Պախի *Թոգաթան եւ Ֆիւկ*ը։ Երեւութական պարզութիւն, որ արդիւնք է յարատեւ աշխատանքի, նուագուած գործին հանդէպ նուիրումի, փայլուն՝ բայց Պախի ոճով։

Պեթհովէնի Ռէ մինէօր Սոնաթին Ատաճիօյին ծանրազնաց դանդաղութիւնը,

գրեթէ մերկութիւնը, կը խրտչեցնէ բազմաթիւ դաշնակահարներ։ Աստղրա Մարլեան զգացած է այդ գործին գեղեցկութիւնը եւ մեզի նուագեց զայն յաճախ կիսա-երանգներով, ապա ցայտեցնելով ալէկրեթթոյի «թեմ»-երուն այնքան հնչագեղ շարայարումը։

Գունագեղութիւն եւ կշռոյթ ունեցանք Խաչատուրեանի *Վալս քափրիս*ով եւ *Պար*ով։ Յետոյ, յանկարծ, վիպական խանդի մեծ կանչը։ *Անտանթէ սփիանաթօյով եւ Մի պէմօլ մաժէօր Բօլօնէզ*ով, ամբողջ Շոփէնն է. իր խոյանքները, իր ճիչերը, իր ըմբոստացումը, իր կանչերը, իր արցունքները, եւ յաղթականին երգը։ Աստղրա Մարլեան մեզի տուաւ մէկ ուշագրաւ մեկնաբանութիւնը այդ *Բօլօնէզ*ին, հասնելով քնքշութեան՝ առանց մեղկութեան, եւ առուգութեան՝ առանց բրտութեան։ Ան հանդիսացաւ վիրթիւոզը՝ որ կը տիրապետէ դժուարութեան, եւ մեկնաբանողը՝ որ կը հասկնայ եւ որ կը յաջողի ունկնդիրին փոխանցել իր յուզումը։

Ազնուական Ռավէլի քաղցր, ոստոստուն Սոնաթինը կը ծառայէր իբրեւ եզրափակում գեղեցիկ յայտագիրին։ Ան նուագուեցաւ կենսախայտ կերպով, սրամտութեամբ։ Ծափահարութիւններ, ծաղկեկողովներ, կանչումներ մեզի ցուցաբերեցին սիրուն ժպիտներ եւ «պիս»-եր՝ վարպետօրէն նուագուած պարեր՝ մին Բաբաջանեանէ, միւսը Տիգրանեանէ։
(*Ժուռնալ տ'Էժիբթ*, 19 Մայիս 1956)

*Սաւառնակ*, 16 Յունիս 1956, 42-րդ տարի, թիւ 21, էջ 4

## ԱՍՏՂՐԱ ՄԱՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԵՍԻԹԱԼԸ

ՍՈՒԼՕՆ

Ե*րաժշտական ծանօթ քննադատ Սուլօն կը գրէ* Բրօկրէ էժիբսիէն*ի մէջ.*

Աստղրա Մարլեանի ներկայացուցած Յայտագիրը կը կազմէր իսկական փորձութիւն մը՝ այնքան իր ընտրութեան մէջ որքան իր արտայայտութեան այլազանութեամբը։ Արդարեւ, առաջին մասը կ'ամփոփէր Հէնտըլի (*Passacaille*), Պախի (*Toccata et fugue* en mi mineur), Պէթհովէնի (Sonate en ré mineur op. թիւ 31) մեծ անունները։ Ինչպէս երկրորդ մասը՝ Խաչատուրեանի (*Valse caprice*), Շոբէնի (*Andante spianato et Polonaise en mi bémol*) եւ Րավէլի (Sonatine)։ Ասիկա կը նշանակէ թէ արուեստագիտուհին հոս պարտ էր ցուցաբերել երաժշտական թափանցումի այլազան յատկութիւններ, զգայնութեան, պրիոյի, զօրութեան եւ փափկութեան, ուժգնութեան եւ հմայքի։

Ինչ որ այս քօնսէրը ի յայտ բերաւ, աւելի քան իր կողմէ տրուած նախորդները,

յարմարումի իր յատկութիւններն եղան՝ մեկնաբանութեան ճշգրտութիւնն ու թարմութիւնը, իր նուագածը զգայուն անհրաժեշտ եւ նախատիրական ձիրքը եւ զայն՝ իր զգայնութեան ընդմէջէն արտայայտելու կարողութիւնը։ Արդէն իսկ մեզ կը թուի թէ՝ արուեստագէտի մը համար լաւագոյն գովասանք մըն է երբ իրեն կ'ըսենք թէ՝ իր նուագած Պախը՝ իրա՛ւ Պախ մըն է, իր նուագած Շոբէնը՝ իրա՛ւ Շոբէն մը։ Պէտք է աւելցնել նաեւ թէ արուեստագիտուհին այժմ կ'արտայայտուի այնպիսի հեղինակութեամբ մը, զորս չէինք գտած իր մօտ այս աստիճանին հասած։

Ասիկա չի նշանակեր սակայն թէ իր նուագած բոլոր կտորները կատարեալ էին։ Այնպէս կը կարծեմ թէ Աստղիա Մարլեան բաւականի թեթեւ ձգտում մը ունի րիթմը գրգռելու, զայն՝ ի զուր տեղը կատաղօրէն անձկութեան մէջ ձգելու, շեշտաւորելու լռութիւնները, սեղմելու արագաշարժումները եւ ընդհակառակը՝ մեղմացնելու դանդաղ շարժումները։ Կը կարծեմ նաեւ թէ ան, թէքնիքի տեսակէտով, պիտի կրնար փնտռել աւելի ցայտուն, աւելի հարուստ եւ աւելի քնքոյշ հնչականութիւններ։

Աստղիա Մարլեանի Պէթհովէնի Սոնաթը նուագած եղանակը - ներքին խոյանքի իմաստը եւ հոգիին խորհուրդը - յստակօրէն ցոյց կու տայ իր մօտ զգայնութեան հարուստ բնութիւն մը։ Զգայնութեան այդ քնքշութիւնը, ինչպէս նաեւ գեղեցիկ եւ նուրբ արտայայտութիւնը կազմեցին նաեւ *Andante spianato*-ի յատկութիւնը։ Իր մօտ՝ Պախը դեռ չէ գտած այն մեծութիւնն ու տարածութիւնը զորս պիտի մաղթէինք տեսնել։ Ամբողջութեանը մէջ՝ ես չափազանց գնահատեցի (կարգ մը վերապահումներով) Րավէլի Սոնաթինը։ Անոր մէջ ան կրցաւ տալ կտորին իմաստն ու ոճը, սակայն պէտք է զայն քիչ մը դեռ աւելի թեթեւցնել եւ նրբացնել։ Խաչատուրեանը, իբրեւ հնչականութիւն եւ րիթմ, հրաշալի է։

Վերջացնելէ առաջ, ըսենք թէ սոյն քօնսէրը շատ յաջող անցաւ եւ ապացուցեց թէ՝ Աստղիա Մարլեան շատ լաւ ճամբու մէջ կը գտնուի։

*Սաւառնակ*, 26 Մայիս 1956, 42-րդ տարի, թիւ 18, էջ 4-5

ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 9 ՅՈՒՆԻՍ 1956

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ
ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN

( de l'Ecole Normale de Musique de Paris )

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Samedi, le 9 Juin 1956, à 5 h. 30 p.m.**

---

*Le programme tient lieu d'Invitation.*

| | | |
|---|---|---|
| *Nicole Papazian* | Etude (4 mains) | *Beyer* |
| *Nora Garabedian* | Etude No. 52 | *Beyer* |
| *Chahène Yavrouyan* | Etude No. 58 | *Beyer* |
| *Naïrie Froundjian* | Etude No. 66 | *Beyer* |
| *Rosy Aharonian* | Etude (4 mains) | *Beyer* |
| *M. Khatchadourian* / *Ch. Khatchadourian* | Adagio (4 mains) | *Wohlfahrt* |
| *Anahid Manoukian* | Ecossaise | *Hummel* |
| *Markarig Tcholakian* | Bernoise | *Kozeluch* |
| *Seta Boghourian* | Rondo (1ère. Sonatine) | *Clementi* |
| *Ara Boyadjian* | Landler | *Steibelt* |
| *Vania Chalvardjian* | Sonatine en sol maj. | *Beethoven* |
| *Arda Boyadjian* | Rondo (2ème. Sonatine) | *Clementi* |
| *Sirvart Agopian* | Pour Elise | *Beethoven* |
| *Vera Hatzouny* | Sonate en do (1er. mouv.) | *Haydn* |
| *Sona Titizian* | Le petit rien | *Cramer* |

INTERVALLE

| | | |
|---|---|---|
| *Zevart Tachdjian* | Six variations | *Beethoven* |
| *Madeleine Artinian* | Tarantelle | *Heller* |
| *Véronique Sarkissian* | La Victoire | *Rameau* |
| *Ch. Khatchadourian* | Arabesque | *Schumann* |
| | La Fileuse | *Mendelssohn* |
| *Chaké Marcarian* | L'hirondelle | *Daquin* |
| *Alice Hamamdjian* | Finale de Sonate | *Cramer* |
| *Lily Kouyoumdjian* | Papillon | *Grieg* |
| | Scherzo en mi min. | *Mendelssohn* |
| *Hripsimé Baldjian* | Grande Valse Brillante op. 18 | *Chopin* |
| *Jeannette Chirikdjian* | Rondo Brillant | *Weber* |
| *Maro Boghiguian* | Sonate en ré min. op. 31 No. 2 (1èr. mouv.) | *Beethoven* |

# ՏԱՄԱՏԵԱՆ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԵԱՆ ԴԱՇՆԱԿԻ ՏԱՐԵՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

Ն.

Տպաւորիչ եւ թելադրական բնոյթով հրապուրիչ հանդէս մը եղաւ դաշնակի տարեկան ունկնդրութիւնը, զորս անցեալ շաբաթ օր, 9 Յունիս, կէսօրէ վերջ ժամը 5-ուկէսին, Օր. Ն. Տամատեան կը կազմակերպէր Ամերիկեան Համալսարանի Օրիրնթըլ Հօլ դահլիճին մէջ, ներկայացնելու համար իր երկսեռ աշակերտութիւնը գեղարուեստասէր հայ հասարակութեան որ փութացած էր կանուխէն գրաւելու սրահը, իր նրբանցքներով միասին:

Ներկաները աւելի քան երեք հարիւր հոգի, կատարեալ ինքնամփոփումով ուշադիր հետեւեցան օրուան յայտագրի գործադրութեան, որուն համար, ինչպէս միշտ, ճաշակով ընտրուած էին գեղեցիկ կտորներ, որոնց նուագահարումին մէջ աշակերտները դրին խոր հասկացողութիւն եւ վճիտ մեկնաբանութիւն մը, իբրեւ արդիւնք իրենց ստացած լուրջ դաստիարակութեան, մանաւանդ որ գրեթէ բոլորն ալ աշակերտ-աշակերտուհիներ, իրենց դպրոցական պարտականութիւններուն առընթեր, գիտցան արժանաւորապէս ելոյթ ունենալ դաշնամուրին առջեւն ալ, որուն յատկապէս յառաջադէմները վճռաբար տիրական մատնահարումով, անզուսպ ծափեր խլեցին խանդավառ ժողովուրդէն:

Սկսնակներու սահմանուած յայտագրի առաջին մասի դադարէն վերջ, երկրորդ մասին մասնակցող աւելի յառաջադէմ պատանի եւ երիտասարդ դաշնակահարուհիները իրենց կարգին լաւագոյնս մեկնաբանեցին դժուարին կտորներ, անգամ մը եւս հաստատելով այն բծախնդիր հոգածութիւնը, որուն առարկայ եղած են ցարդ, իրենց առաջին դողդոջ քայլերէն իսկ:

Առ ի երախտագիտութիւն, աշակերտութիւնը իր ուսուցչուհւոյն կը նուիրէր քրիզանթէմներէ կազմուած խոշոր ծաղկեկողով մը, երբ ներկաները, որոնք դեռ կը յամենային ունկնդրութենէն վերջն ալ, ջերմապէս շնորհաւորեցին Օր. Ն. Տամատեանը որքան այս յաջող կազմակերպութեան նոյնքան եւ իրեն համար այնքան պատուաբեր աշակերտութեան ցուցաբերած զգալի յառաջդիմութիւններուն համար:

Երկրորդելով ընդհանուրին գնահատական արտայայտութիւնները, նորանոր նուաճումներ կը մաղթենք Օր. Տամատեանի:

*Արաքս*, 16 Յունիս 1956

# ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ԳԵՂԵՑԻԿ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ ՄԸ՝ ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ

Ապագայ տաղանդներու այս սերմնարանին մէջ, զոր կը հանդիսանայ Օր. Նուարդ Տամատեանի դաշնակի դասընթացքը, հունձքը գեղեցիկ է անշուշտ, բայց այս տարի մեր ուշադրութիւնը գրաւողը՝ սերմերուն առատութիւնն է, քանի որ մեզի կը ներկայացուին ինը նոր աշակերտներ, որոնք մէկ տարիէն պակաս դասաւանդութիւն եւ տասը տարեկանէն պակաս տարիք ունենալով հանդերձ, շիտակն ըսելով՝ շատ պատուաբեր ելոյթներ ունեցան:

Այս վերջիններէն փոքրիկն Նիքոլ Փափազեան՝ շնորհալիութեամբ եւ իր մատիկները սանձելու գովելի ճիգով, Շահէն Եավրուեան՝ լրջութեամբ, Մառի Ֆրունճեան՝ ժպիտով, եւ Ռոզի Աhարոնեան՝ ջանադրութեամբ, մեզի ճշդօրէն տուին իրենց սորված դասը:

Անահիտ Մանուկեան արդէն իսկ չափի հասկացողութիւն ունի, իսկ Մարգարիկ Չօլաքեան՝ ամրանիստ նուագածութեամբ՝ գիտէ ցցունութիւն տալ իր ըրածին: Գալով Մ. Խաչատուրեանի, իր քրոջ՝ Շուշանիկի կողմէ լաւ երկրորդուած շատ պատուաբեր կերպով դուրս եկաւ Վոլֆարթի *Ատաճիոյ*էն (չորս ձեռք):

Փոքրիկն Նորա Կարապետեան նախանձելի յատկանիշ մը ունի - առաջին նախկին աշակերտուհիի զաւակն է որ արձանագրուած է դասընթացքին: Տարակոյս չկայ թէ ջանադիր պիտի ըլլայ յաջողութեամբ հետեւելու հետքերուն իր երիտասարդ մօր, զոր յաճախ ունկնդրած ենք երբ Լիւսի Տէր Օհաննէսեան կը կոչուէր:

Անշուշտ կանխահաս է այս սկսնակներուն մօտ փնտռել խոստմնալից տարրեր, սակայն եւ այնպէս Վանիա Շալվարճեան ինքզինք կը պարտադրէ մեր ուշադրութեան շատ ընդունելի կերպով եւ շատ ճիշդ շարժումով գործադրելով Պէթհովէնի Սոնաթին սոլ մաժէօրը: Մէկ տարիէն պակաս դասաւանդութեամբ հասնիլ այդ տեղ՝ շատ մեծ արժանիք է եւ կը յայտնէ երաժշտական իսկական ձիրք:

Սեդա Պօղուրեան ճշդօրէն մեզի տուաւ Գլեմէնթիի առաջին Սոնաթինին Ռոնտօն: Արա Պօյաճեան յառաջդիմութեան մէջ է. Չթէյպէլթի *Լանտլէր*ը նուագեց շատ ուղիղ կերպով: Գալով իր քրոջ Այտայի, ան ունի լաւ շարայարուած եւ երանգաւոր նուագածութիւն, նուրբ մատնահարում:

Պէթհովէնի *Էլիզի համար*ը նրբօրէն եւ զգայնութեամբ նուագուեցաւ Սիրվարդ Ակոբեանի կողմէ, որ կանոնաւորաբար կը յառաջդիմէ:

Վերա Հացունի խառնուածք ունի: Ուշադրութիւն կը գրաւէ իր յստակ նուագածութեամբ, հաճելի մատնահարումով, լաւ շարայարումով: Սոնաթ տօի

առաջին շարժումը նուագեց լաւ երանգաւորելով։ Շատ բան կը սպասենք այս աշակերտուհիէն։

Սոնիա Թիթիզեան ունեցաւ թեթեւ հպումներ Գրամէրի *Պզտիկ ոչինչ*ին մէջ։ Սակայն աւելի երանգաւոր եւ լաւագոյնս կառուցուած նուագածութիւն մը աւելի ամբողջական գոհունակութիւն պիտի պատճառէր մեզի։

Բնական է որ աւելի յառաջացած աշակերտներուն նկատմամբ աւելի պահանջկոտ ըլլանք։

Վարիասիոններու պարագային, վտանգը կը կայանայ միօրինակութեան մէջ։ Շատ իմաստուն սկզբնաւորութենէ մը ետք, Զուարթ Թաշճեան լաւ կերպով, բաւարարապէս երանգաւոր ոճով, գործադրեց Պէթհովէնի *Վեց վարիասիոններ*ը։

Մատլէն Արթինեան գիտցաւ ոստոստուն շարժում մը տալ Հէլլէրի *Թարանթէլ*ին, բայց նուագածութեան մէջ որոշ փութկոտութիւն մը վնասեց քիչ մը ամբողջին յստակութեան։

Վերոնիք Սարգիսեան ունի լաւ մատնահարում, մաքուր եւ ամրակերտ նուագածութիւն, սակայն, հակառակ լաւ տեղաւորուած շեշտերուն, Ռամոյի *Յաղթանակ*ին գործադրութիւնը բաւարարապէս գունագեղ չեղաւ։

Շուշանիկ Խաչատուրեան - որմէ միշտ կը սպասենք շատ բան - յուսախաբ չըրաւ մեզ։ Ան ունի անոյշ եւ նուրբ մատնահպում, լաւ շարայարում, երանգաւոր նուագածութիւն։ Շումանի *Արապէսք*ը տրուեցաւ իրապէս արապէսքի ձեւով, իսկ Մենտելսոնի *Մանող աղջիկը* նուագուեցաւ զմայլելիօրէն, հեզասահ եւ անթերի շարժումով մը։

Դժբախտաբար զրկուեցանք Շաքէ Մարգարեանը լսելու հաճոյքէն, իր յանկարծական անհանգստութեան պատճառով։

Ալիս Համամճեան ունի յստակ նուագածութիւն, լաւ երանգաւորումով եւ գեղեցիկ հնչականութեամբ։ Տիրապետելով իր ջղայնութեան - որ շատ ներելի է - ան աւելի պիտի արժեւորէր իր յատկութիւնները, որոնք իրական են։ Իր յուզական խառնուածքը - տիրապետուելով - կրնայ յառաջ բերել խանդալի նուագածութիւններ։

Պիտի ուզէի կրկնել հոս, թէ աշակերտները պէտք է ըմբռնեն թէ ի՛նչ բարեացակամութեամբ եւ հասկացողութեամբ մտիկ կ՚ընենք զիրենք։ Այս գիտակցութիւնը պիտի օժանդակէր իրենց որպէսզի յաղթահարեն երկչոտութիւնը, այդ սեւ մտահալածումը որ կը սպառնայ նոյնիսկ *փրոֆէսիոնէլ* դաշնակահարներու։

Ահա՛ վերջապէս զգալապէս համարժէք չորս աշակերտներ, որոնք պատիւ կը բերեն իրենց ուսուցչուհիին։

Լիլի Գույումճեան մեծ հասկացողութեամբ մեկնաբանեց Կրիկի *Թիթեռնիկ*ը եւ Մենտելսոնի Մի մինէօր՝ *Սքէրձօ*ն։ Հնչականութիւն, յստակութիւն, զգացում եւ աքանչելի մատնահարում կը յատկանշեն իր նուագածութիւնը։

Հռիփսիմէ Պալճեան ունի յստուկ, երանգաւոր եւ զգայուն նուագածութիւն,

երաժշտականութիւն: Ան իրապէս փայլուն եղաւ Շոփէնի *Մեծ փայլուն վալս*ին մէջ:

Միեւնոյն յատկութիւնները յատկանշեցին Ժանէթ Շիրիկճեանը, որ կորովով եւ դիւրասահութեամբ նուագեց Վեպէրի *Փայլուն Ռօնտօ*ն:

Մարօ Պօղիկեան ունի բարձրորակ մատնահպում, հզօր՝ առանց ուժգին ըլլալու, մեղմ՝ առանց տկարութեան: Իր մարզարտանման նուագածութիւնը լի է երաժշտականութեամբ եւ զգայնութեամբ: Սոնաթ ռէ մինէօրի առաջին շարժումին իր նուագածութիւնը, գունագեղ եւ պէթհովէնեան հզօր շունչով, մեզի պատճառեց իրական հաճոյք:

Առանց որոշ յուզումի մը չէ որ միշտ ներկայ կը գտնուիմ աշակերտներու ունկնդրութեան, այդ մատղաշ խանդավառութիւնը, լաւ ընելու այդ բաղձանքը, այն կարեւորութիւնը զոր կու տան բաներու որոնք այլեւս կարեւորութիւն չունին մեզի համար, ունին յուզիչ հանգամանք մը, - եւ մասնաւորաբար Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներու ունկնդրութեան, ուր իւրաքանչիւր աշակերտ ինծի համար, նոյնքան որքան իր ուսուցչուհիին համար, պզտիկ աշխարհ մըն է բոլորովին նոր, որուն փթթումին, բնաշրջումին եւ ծաղկումին հետեւած եմ քայլ առ քայլ տասնեւերեք տարիէ ի վեր:

Եւ անոնց չափ ես ալ հպարտութիւն կը զգամ երբ իրենց տարեկան ունկնդրութիւնը կը յաջողի - ինչպէս այս տարուանը - դասուիլ լաւագոյններու կարգին:

*Արեւ*, 25 Յունիս 1956, ԽԲ. տարի, թիւ 11.410, էջ 3

## ORIENTAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 6 ՅՈՒԼԻՍ 1957

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN

( de l'Ecole Normale de Musique de Paris )

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Samedi, le 6 Juillet 1957, à 6 h. 15 p.m.**

*Le programme tient lieu d'Invitation.*

| | | |
|---|---|---|
| *Gerald Papasian* | Ma première leçon | *Beyer* |
| *Nicole Papazian* | Etude No. 18 | *Beyer* |
| *Mihran Kassabian* | Tyrolienne | *V. de Velde* |
| *Ronnie Nazlian* | Valse alsacienne | *V. de Velde* |
| *Nora Garabedian* | Bernoise | *Kozeluch* |
| *Chahène Yavrouyan* | Etude No. 97 | *Beyer* |
| *Naïrie Froundjian* | Valse | *V. de Velde* |
| *Hilda Samsonian* | Ecossaise | *Hummel* |
| *Rosy Aharonian* | Etude No. 96 | *Beyer* |
| *Ara Boyadjian* | Air cosaque | *Kozeluch* |
| *Arda Boyadjian* | Rondo - Vivace | *Kulhau* |
| *Vania Chalvardjian* | Sonate en do (1er mouv) | *Mozart* |
| *Sirvart Agopian* | Solfeggietto | *Ph. Em. Bach* |
| *Vera Hatsouny* | Six écossaises | *Beethoven* |

INTERVALLE

| | | |
|---|---|---|
| ***Zevart Tachdjian*** | L'harmonieux forgeron | *Haëndel* |
| ***Madeleine Artinian*** | Sonate op 2 No.1 (1er mouv) | *Beethoven* |
| ***Véronique Sarkissian*** | Rondo en do maj | *Beethoven* |
| ***Alice Marcarian*** | Alla turca | *Mozart* |
| ***Ch. Khatchadourian*** | Rondo capriccioso | *Mendelssohn* |
| ***Hripsimé Baldjian*** | Jardins sous la pluie | *Debussy* |
| ***Jeannette Chirikdjian*** | Carnaval de Vienne (1ère partie) | *Schumann* |
| ***Maro Boghiguian*** | Impromptu<br>Danse de Vagharchabad | *Babadjanian* |




Oriental Hall, 6 Յուլիս 1957
Հանդիսատեսներէն մաս մը

# AUDITION DES ELEVES DE Mlle N. DAMADIAN

CH. FRANGIADAKIS

C'est dans une atmosphère de fête, créée par la joyeuse présence de nombreux parents et amis qu'eut lieu l'audition des élèves de Mlle. Nevarte Damadian. Au risque de me répéter, je proclame une fois de plus, les belles qualités musicales des arméniens, qui, à toute occasion, se manifestent avec vigueur. Mlle. Damadian possède à un degré élevé, ce trait familial qui, par surcroît, est développé grâce à une sérieuse culture. Mais ce qui fait d'elle un professeur recherché, c'est l'amour avec lequel elle s'acquitte de ses dévoirs pédagogiques. Il est naturel que les précieuses aptitudes de Mlle. Damadian se reflètent en ses élèves. L'audition de ceux qui remplirent la première partie du programme s'avèra suffisante pour nous convaincre d'un travail consciencieux et méthodique. Une douzaine de pianistes en herbe se succèderent devant le clavier et jouèrent sans accroc et avec une louable application divers morceaux choisis avec goût et intelligence. On nous pardonnera de ne pas donner, faute de place, une présentation individuelle des élèves, bien que chez nombre d'entre eux on décèle des talents précoces. Citons les noms de tous: Gérald Papasian, Nicole Papasian, Mihran Kassabian, Ronnie Nazlian, Nora Garabédian, Chahène Yavrouyan, Hilda Samsonian, Rosy Aharonian, Ara Boyadjian, Vania Chalvardjian, Sirvart Agopian et Véra Hatsouny.

Des fonctions profanes m'ayant appelé, hélas, loin de ce lieu où je trouvais un plaisir si pur, c'est à regret que j'ai manqué la deuxième partie du programme consacrée aux élèves avancés. En prenant congé de Mlle. Damadian, je la priai de m'indiquer les meilleurs d'entre eux. Visiblement gênée, elle ne put satisfaire ma curiosité. Je ne la comprends que trop. Enveloppant tous ses élèves d'un égal amour, il est naturel qu'il lui soit difficile de faire de distinction parmi eux et à plus forte raison de l'extérioriser. Elle affirma, cependant, que "tous sont très bons". Sans sa modestie, elle aurait dit qu'ils sont tous "excellents", car elle semble en être convaincue. Je souscris, sans hésiter, à ce jugement étayé, d'ailleurs, par ce que j'eus l'occasion d'entendre. La deuxième partie du programme était conçue comme suit: Zevart Tachdjian (*L'Harmonieux forgeron* de Haendel), Madeleine Artinian (Sonate op. 2 No. 1, 1er mouv. de Beethoven), Alice Marcarian (*Alla turca* de Mozart), Ch. Khatchadourian (*Rondo capriccioso* de Mendelssohn), Hripsimé Baldjian (*Jardins sous la pluie* de Debussy), Jeannette Chirikdjian (*Carnaval de Vienne*, 1ère partie de Schumann) et Maro Boghiguian (*Impromptu* et *Danse de Vagharchabad* de Babadjanian).

*Le Progrès égyptien*, 12 juillet 1957

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

Նախանցեալ Շաբաթ օր, Յուլիս 6-ի երեկոյեան, Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահին մէջ ծնողքներու եւ երաժշտասէր համակիրներու խանդավառ շրջանակի մը մէջ, տեղի ունեցաւ դաշնակի ունկնդրութիւնը ծանօթ եւ վաստակաւոր ուսուցչուհի Օր. Նուարդ Տամատեանի աշակերտութեան:

Աշակերտական ունկնդրութեան մը յայտագրի պատրաստութիւնը - ուր սահմանափակ ժամանակի մը մէջ աշակերտը պէտք էր ցոյց տար իր ամբարած երաժշտական գիտելիքները - կը պահանջէ երաժշտական լայն հմտութիւն եւ գեղեցկագիտական ճաշակ, որպէսզի միեւնոյն ժամանակ գոհացնէ ունկնդիր հասարակութիւնը:

Պէտք է խոստովանիլ որ Օր. Տամատեան յաջողած էր մեզի հրամցնել խնամուած եւ պատշաճ յայտագիր մը:

Մեր տպաւորութիւննե՞րը:

Առաջին հերթին նկատողութեան արժանի էր այն պարագան որ ներկայացուած իւրաքանչիւր երաժշտական կտոր կը գտնուէր աշակերտին թեքնիք կարողութիւններուն սահմաններուն մէջ:

Երկրորդ՝ դաշնամուրի pédale-ներու ճշգրիտ գործածութիւնը մեզի ենթադրել տուաւ որ նուագողները - անկախաբար թեքնիքէն - ունէին անհրաժեշտ ներդաշնակութեան ծանօթութիւններ:

Երրորդ՝ աշակերտներու կողմէ ճիգ մը ոչ միայն անսխալ նուագելու այլ մեկնաբանելու՝ ընտրուած կտորները: Այս իրողութիւնը, ըստ մեր համեստ կարծիքին, կը կազմէ Օր. Տամատեանի դաշնամուրի ուսուցման ոգին:

Աւելի՛ն՝ Օր. Տամատեան գովելի գաղափարը ունեցած էր յայտագրին մէջ ներմուծելու հայ երգահանի մը ստեղծագործութիւններէն մի քանին:

Անցնինք յայտագիրին գործադրման:

Հաճոյքով հետեւեցանք փոքրիկներ Ժ. Բաբազեանի եւ Ն. Բաբազեանի, Մ. Գասապեանի, Ր. Նազլեանի, Ն. Կարապետեանի եւ Շ. Եավրուեանի երաժշտական նախաքայլերուն: Հ. Սամսոնեանի եւ Ր. Աիարոնեանի քնքուշ նուագածութիւնը ինչպէս նաեւ Ա. եւ Ար. Պօյաճեաններու ինքնավստահութիւնը մեր ուշադրութիւնը գրաւեցին:

Մոցարթեան մշտաթարմ մեղեդիներու քաղցրութիւնը մենք ըմբոշխնեցինք Օր. Վ. Շալվարճեանի մեկնաբանութեամբ:

Օր. Ս. Յակոբեան ունի հպումի նրբութիւն եւ կշռոյթի զգացում մը:

Օրք. Վ. Հացունիի, Զ. Թաշճեանի, Մ. Արթինեանի եւ Ա. Մարգարեանի մօտ ակներեւ էր խղճամիտ աշխատանքը:

Օր. Շ. Խաչատուրեան օժտուած աշակերտուհի մըն է: Վստահ թեքնիք մը իրեն թոյլ կու տայ ամբողջ ուշադրութիւնը կեդրոնացնելու երաժշտական արտայայտութիւններուն վրայ: Ունի յիշողութիւն, հեղինակութիւն եւ մեկնաբանելու կարողութիւն - հազուագիւտ շնորհներ: Վստահ ենք որ յարատեւ եւ լուրջ աշխատանքով կարենայ բարձունքներու հասնիլ:

Տրպիւսիի *Պարտէզներ անձրեւի տակ* նկարագրական կտորը երաժշտական հնչիւններու վերածելու դժուարին պարտականութիւնը վստահուած էր Օր. Հ. Պալճեանի:

Օր. Ժ. Շիրիքճեան ջանաց հարազատ թարգմանը ըլլալ Շումանեան ներաշխարհին:

Օր. Մ. Պօղիկեան՝ երգահան Ա. Պապաջանեանի երկու հայեցի նկարագրով կտորներու կատարման մէջ ի յայտ բերաւ երաժշտական հասկացողութիւն:

Ունկնդիր հասարակութիւնը երկարատեւ եւ ջերմ ծափերով իր գոհունակութիւնը յայտնեց:

Մեր շնորհաւորութիւնները ուսուցչուհի Օր. Ն. Տամատեանի՝ իր ձեռք բերած յաջողութեան համար:

*Արեւ*, 16 Յուլիս 1957, ԽԳ. տարի, թիւ 11.730, էջ 3

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ
Յ, Տուպէ փողոց – Գահիրէ
Հեռախօս 76282

Հինգշաբթի, 13 Մարտ 1958, կ.կ. ժամը 9,15ին
"Թէքէեան Սրահ"ին մէջ

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Երաժշտական սարքերու շարքին չորրորդը
Նախագահութեամբ Պր. Ճօժէն ԲԱՔԱՋԵԱՆի
պիտի ներկայացնէ երգահան
ՆՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

"Հայ Գործիական Երաժշտութեան Վարպետները"

Մասնակցութեամբ ՈՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՅԵԱՆի աշակերտուհիներէն
Օրդ. Զ.ԹԱՇՃԵԱՆի, Շ.ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆի, Ա.ՄԱՐԳԱՐԵԱՆի, Ժ.ՇԻՐԻՔՃԵԱՆի,
Հ.ՊԱԼՃԵԱՆի, Մ.ՊՕՂԻԿԵԱՆի, Պր.Պ.ԳՈԳՈՐԵԱՆ –Ջութակ–

## Յայտագիր

Ն. ՏԻԳՐԱՆԵԱՆ: Ռանգի – կլոր պար
Ա. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ: Փոփոխակներ – Նազանի պար– Գիւլնարի պար
Շուշանի պար–Նազան պար–Էզգիդ– Ակուարել
Գ. ՉԵՔՈՍԱՐԵԱՆ: Նախերգանք – պար
Գ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ: Գիշերային –Ջութակի համար–
Ա. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ: Մանկական պատկերներ ա.Մեչեքի բ.կատակ
գ. ժողովրդական ոճով պար
Ա. ՊԱՊԱՋԱՆԵԱՆ: Էնպրոմթիւ – Վաղարշապատի պար

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐՈՒ ՄՆԱՅՈՒՆ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ
5րդ ՏԱՐԻ: Ճարտարապետական եւ Նկարչական նուաճումներ Հայաստանի մէջ
Ոչ ոքի հրաւէր կը ղրկուի ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ է ՎԱՐՉՕՆՈՒԹԻՒՆ



Թէքէեան Սրահ, 13 Մարտ 1958
Մէջտեղը (ծաղիկներով)՝ Նուարդ Տամատեան, աջին՝ Եդուարդ Յակոբեան

# ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ

Հ. Մ.

Երէկ, երեկոյեան ժամը 9.15-ին, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ, հոծ թիւով բազմութեան մը ներկայութեան, տեղի ունեցաւ երաժշտական երեկոյթ մը (Երաժշտական ասուլիսներու շարքին չորրորդը), նուիրուած Հայ Գործիական Երաժշտութեան Վարպետներուն:

Միութեան նախագահ Պ. Էօժէն Բաբազեանի բացման խօսքէն ետք, բեմ հրաւիրուեցաւ Մաէսթրօ Եդուարդ Յակոբեանը, որ կարճ կերպով բացատրեց գործիական երաժշտութեան ինչ ըլլալը եւ յստակ ներկայացուց նոր հայ վարպետներու (Ն. Տիգրանեան, Ս. Բարխուդարեան, Գ. Չեփոտարեան, Ա. Խաչատուրեան, Ա. Պապաջանեան) մեր ազգային ինչպէս նաեւ միջազգային երաժշտութեան վրայ անոնց ունեցած ազդեցութիւնը:

Գեղարուեստական բաժնին, բոլորն ալ դաշնակի վրայ, իրենց մասնակցութիւնը բերին Օր. Նուարդ Տամատեանի աշակերտուհիներէն՝ Օրք. Հ. Պալճեան (*Ռանգի* - *Կլոր պար* Ն. Տիգրանեանէն), Զ. Թաշճեան (*Փոփոխակներ* - *Նազան պար* Բարխուդարեանէն), Շուշիկ Խաչատուրեան (*Նախերգանք* - *Պար* - Գ. Չեբոտարեանէն եւ *Մանկական պատկերներ* ա) «Մեղեդի», բ) «Կատակ», գ) «Ժողովրդական պար»՝ Ա. Խաչատուրեանէն), Մարօ Պօղիկեան (*Էնփրոմթիւ* - *Վաղարշապատի պար*, Ա. Պապաջանեանէն), իսկ Օր. Ն. Տամատեան սիրով հաճեցաւ դաշնակահարել (Ս. Բարխուդարեանէն *Գիւլնար*ի եւ *Շուշան*ի պարերը):

Բոլոր մենակատարները՝ խլելով ներկաներուն բուռն ծափերը, գովելի էին եւ շնորհաւորութեան արժանի, վարժ կերպով պատրաստուած Օր. Ն. Տամատեանի կողմէ, որուն կը պարտինք երեկոյթին յաջողութիւնը:

Հանդիսութիւնը վերջ գտաւ յարգելի Նախագահին շնորհակալութեան ջերմ խօսքով:

*Արեւ*, 14 Մարտ 1958, ԽԳ. տարի, թիւ 11.934, էջ 3

ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ԵՐԵՔՇԱԲԹԻ, 25 ՄԱՐՏ 1958

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ԳԱՀԻՐԷ

**ԽՐԻՏԱՍԱՐԴԱՑ**
**ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ՕՐ**

Վաղը՝ Երեքշաբթի, 25 Մարտ 1958
երեկոյեան ժամը 9,15-ին
**«ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ»ին ՄԷՋ**

**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ**

**— ՅԱՅՏԱԳԻՐ —**

**Ա. ՄԱՍ**

| Դաշնակ | ՕՐ. ԺԱՆԷԹ ՇԻՐԻԿՃԵԱՆ |
|---|---|
| Paradisi | Toccata |
| Barkhoutarian | Naz Bar |
| | Esquisse |
| | Aquarelle |
| Chopin | Trois Ecossaises |
| Schumann | Carnaval de Vienne (1re partie) |

**Բ. ՄԱՍ**

Պար — ՕՐ. ՌՈԶՄՈՆՏ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ

Danse Classique
Danse Russe

*Սիրով կը հրաւիրուին անդամ-անդամուհիները, ինչպէս նաև համակիր շրջանակը։*

ԽՐԻՏ. ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

Յայտարարութիւն
*Արեւ*, 24 Մարտ 1958, ԽԳ. տարի, թիւ 11.942, էջ 3

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

ԱՐԱՒԵՏ

Գեղեցկագոյն Երեքշաբթի օրերէն մին կ՚արժէ նկատել Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Երիտասարդաց Յանձնախումբին կազմակերպած 25 Մարտ 1958-ի երեկոյթը, երբ գեղարուեստի նրբագոյն մարզերէն ներս երկու շնորհալի երիտասարդուհիներ, - Օր. Ժանէթ Շիրիկճեան (դաշնակ) եւ Օր. Ռոզմոնտ Ասատուրեան (դասական պար), - յաջողեցան դրոշմել ներկաներուն մտքին մէջ իրենց ապագայ փայլուն յաջողութիւններուն հեռանկարը: Ոչ ոք կասկած յայտնեց անոնց յարատեւութեան մասին՝ ըմբոշխնելէ վերջ այդ մէկ ժամ ու քառորդ տեւողութեամբ անոնց ստեղծած այնքան հաճելի պահը, որուն ընթացքին բուռն ծափահարութեանց մէջ է որ ծաղկեփունջի արժանացան անոնք:

Հանդէսին բացումը կատարեց Պ. Արթօ Աւետիսեան, շեշտելով գեղարուեստի ուղղութեամբ Երիտասարդաց Յանձնախումբին ստանձնած կարեւոր աշխատանքը:

Դաշնակի վրայ Օր. Ժանէթ Շիրիկճեանի նուագածութիւնը շատ յաջող էր, գնահատելի թէ՛ սահունութեան եւ թէ ալ կշռոյթին մէջ, մանաւանդ Բարխուդարեանի *Aquarelle*-ին եւ Շումանի *Carnaval de Vienne*-ին (1ère partie) մէջ:

Շնորհաւորելի է այս առթիւ Օր. Նուարդ Տամատեանը, որուն խոստմնալից աշակերտուհիներէն մին է ան:

Դասական պարին մէջ՝ երկրորդ անգամն է որ մեր բեմին վրայ կը տեսնենք Օր. Ռոզմոնտ Ասատուրեանը: Զգալի յառաջդիմութիւն մը՝ անցեալ տարուան բաղդատմամբ՝ ապշեցուց մեզ: Իր ներդաշնակ շարժումները, կշռոյթի ճշգրտութիւնը՝ շեշտուած նկատելի ինքնավստահութեամբ մը, մա՛նաւանդ *Danse russe*-ին մէջ, փաստեցին որ դեռատի պարուհին օր մը պիտի հասնի բարձունքի մը՝ եթէ յարատեւէ:

Պէտք է յիշել Տիկին Շաքէ Իփէքեանի յաջող ընկերակցութիւնը դաշնակի վրայ, ինչ որ անժխտելիօրէն նպաստեց յաջողութեան:

Երեկոյթը փակուեցաւ Պ. Ա. Աւետիսեանի շնորհակալութեան ջերմ խօսքով:

*Արեւ*, 28 Մարտ 1958, ԽԳ. տարի, թիւ 11.946, էջ 4

ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 1 ՄԱՅԻՍ 1958

ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
ՕՐ. ՇՈՒՇԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ
(ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ) ԿՈՂՄԷ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ՀԵՌ. 76282

Վաղը՝ Հինգշաբթի, 1 Մայիս 1958
երեկոյեան ժամը 9,15ին

«ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ

ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ՕՐ. ՇՈՒՇԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ ԿՈՂՄԷ

Պիտի մեկնաբանէ ՕՐ. ՄԱՐՕ ՊՕՂԻԿԵԱՆ

— ՅԱՅՏԱԳԻՐ —

| | |
|---|---|
| BACH | Prélude et Fugue No. 2 |
| BEETHOVEN | Sonate op. 2 No. 1 (Ier mouv.) |
| CHOPIN | Fantaisie-Impromptu |
| TCHÉPODARIAN | Prélude Danse |
| KHATCHATURIAN | Toccata |

Սիրով կը հրաւիրուին մեր եւ քոյր Միութեանց անդամ-անդամուհիները եւ համակիր շրջանակը։

Յայտարարութիւն
*Արեւ*, 30 Ապրիլ 1958, ԽԳ. տարի, թիւ 11.971, էջ 3

# ՕՐ. ՇՈՒՇԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

Նախանցեալ Հինգշաբթի օր, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ արուեստասէրներու եւ համակիրներու լայն շրջանակի մը ներկայութեան տեղի ունեցաւ Օր. Շուշիկ Խաչատուրեանի դաշնակի ունկնդրութիւնը։ Երաժշտական կտորներուն իբրեւ մեկնաբանող իր մասնակցութիւնը բերած էր Օր. Մարօ Պօղիկեան, երկուքն ալ Օր. Նուարդ Տամատեանի խոստմնալից աշակերտուհիները։

Օր. Շուշիկ նորեկ մը չէ Գահիրէի երաժշտասէր հասարակութեան համար. յաճախ առիթ ունեցած էինք զինքը ունկնդրելու այլազան առիթներով - ըլլան անոնք երաժշտական ասուլիսներ կամ պարազայական հանդէսներ։ Այս անգամ համակրելի Օրիորդը հանդէս կու գար իբրեւ մենակատար-դաշնակահարուհի, բեռնաւորուած թէեւ կարճ սակայն ճոխ եւ խնամուած յայտագրով մը, ուր եւրոպացի դասականներու կարգին - Պախ, Պէթհովէն, Շոփէն, - կ'երեւային հայ նորագոյն երգահաններէն Ա. Պապաջանեանի, Արամ Խաչատուրեանի, Գ. Չէփոտարեանի լաւագոյն ստեղծագործութիւններէն մի քանին։

Արդար ըլլալու համար պէտք է անմիջապէս խոստովանինք, որ Օր. Խաչատուրեան այդ երեկոյ արձանագրեց գնահատելի եւ պատուաբեր յաջողութիւն մը։ Արդարեւ, Օր. Շուշիկ օժտեալ աշակերտուհի մըն է։ Ունի որոշ ձիրքեր որքան ալ անոնք իր մէջ գտնուին սաղմնային վիճակի մը մէջ, ինքնավստահութիւն, հետզհետէ աճող թեքնիք, արուեստագէտի խառնուածք եւ մանուանդ մեկնաբանելու կարողութիւն՝ ինչ որ մեզի ենթադրել կու տայ իր մէջ որոշ չափով զարգացած երաժշտական գիտակցութիւն, որով նուագուած իւրաքանչիւր երաժշտական կտոր կը դադրի պարզ, մեքենական վերարտադրութիւն մը ըլլալէ։ Ան իր կարելին ըրաւ այդ երեկոյ որպէսզի ստեղծէ իւրաքանչիւր կտորէ պահանջուած մթնոլորտը։

Այդ երեկոյ ունկնդիր հասարակութիւնը հաճոյքն ունեցաւ հետեւելու սկսնակ-դաշնակահարուհիի մը աւելի քան նախափորձերուն եւ իր անվերապահ գնահատանքը յայտնեց խանդավառ ծափերով։

Սակայն պէտք է խոստովանինք որ նորաբոյս արուեստագէտի մը համար, գնահատական շռայլ խօսքեր եւ բարոյական քաջալերանք բաւարար չեն։ Իրմէ պիտի «պահանջէինք» յամառ եւ յարատեւ աշխատանք։ Երաժշտական արուեստի մարզէն ներս կարգապահութիւնը (երաժշտական) եւ խստապահանջութիւնը եւս կարեւոր են եթէ կ'ուզենք բարձունքներու հասնիլ։

Վերոյիշեալ ունկնդրութիւնը առաւելս արժէքաւորուեցաւ անով, որ Օր. Մարօ

Պօղիկեան գիտակից ուսանողուհիի մը յատուկ բծախնդրութեամբ հասարակութեան ներկայացուց ամփոփ եւ յստակ գիծերով նախ՝ օրուան յայտագրին մէջ երեւցած երգահաններու ստեղծագործ կեանքի ուղին, եւ ապա իւրաքանչիւր նուագուած կտորին ոճը բնորոշող հիմնական յատկանիշները։

Մեր շնորհաւորութիւնները զոյգ արուեստագէտներուն եւ մանաւանդ իրենց ուսուցչուհի Օր. Նուարդ Տամատեանի, որ ճիգ չի խնայեր հետզհետէ պատրաստելու եւ հասցնելու արուեստագէտներու հոյլ մը, որոնց այնքան պէտք ունի արտասահմանի Հայ ժողովուրդը։ Վստահ ենք որ մօտերս տեղի ունենալիք իր աշակերտութեան դաշնակի ունկնդրութիւնը մեզի պիտի բերէ նորանոր յայտնութիւններ։

*Արեւ*, 14 Մայիս 1958, ԽԴ. տարի, թիւ 11.983, էջ 4

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN.

( de l'Ecole Normale de Musique de Paris )

Oriental Hall (Université Américaine)

12, Rue Sultan Hussein - Le Caire

**Jeudi, le 19 Juin 1958, à 6 h. 15 p.m.**

*Le programme tient lieu d'Invitation.*

| | | |
|---|---|---|
| ***Sona Agémian*** | Presto ( 4 mains) | *Wohlfahrt* |
| ***Gerald Papasian*** | Chanson à deux voix | *Beyer* |
| ***Zizi Balekdjian*** | Valse | *Van de Velde* |
| ***Nicole Papazian*** | Ronde enfantine | *Beyer* |
| ***Mihran Kassabian*** | Landler | *Steibelt* |
| ***Ronnie Nazlian*** | Ecossaise | *Hummel* |
| ***Nora Garabedian*** | Le gai laboureur | *Schumann* |
| ***Chahène Yavrouyan*** | Scherzo | *Diabelli* |
| ***Hilda Samsonian*** | Rondo | *Clementi* |
| ***Seta Boghourian*** | Bagatelle | *Beethoven* |
| ***Tony Hovsepian*** | Le tambourin | *Rameau* |
| ***Arda Boyadjian*** | L'avalanche | *Heller* |
| ***Vania Chalvardjian*** | Rondo | *Hummel* |
| ***Betty Ayrassian*** | Tempo di minuetto | *Beethoven* |

*Sirvart Agopian* . . Le coucou . . . . . *Daquin*

**INTERVALLE**

*Zevart Tachdjian* . . Sonate op. 14 No. 1 (1er mouv.) *Beethoven*

*Madeleine Artinian* . Golliwogg's cake-walk . . *Debussy*

*Alice Marcarian* . . Scherzo en si min. . . . *Mendelssohn*

*Ch. Khatchadourian* . Concerto en ré min ( 1er mouv. ) *Mozart*

Au 2nd piano d'accompagnement, ***Mlle. N. Damadian***

*Hripsimé Baldjian* . . Sonate op. 31 No. 2 (1er mouv.) *Beethoven*

*Jeannette Chirikdjian* . 1er Scherzo . . . . . *Chopin*

*Maro Boghiguian* . Concerto. No 2 en si bem. maj. (1 er mouv.) *Beethoven*

Au 2nd piano d'accompagnement, ***Mlle N. Damadian***



Oriental Hall, 19 Յունիս 1958
Շուշիկ Խաչատուրեան (Ա. դաշնակ) եւ Նուարդ Տամատեան (Բ. դաշնակ) կը նուագեն Մոցարթի Քոնչերթոն

## AUDITION D'ELEVES

INTERIM

Les élèves de Mlle Nevarte Damadian ont donné jeudi dernier, à l'Oriental Hall, leur audition annuelle de piano, sous la direction vigilante et éclairée de leur animatrice. Cette modeste phalange de jeunes fait preuve déjà, de touchantes et sérieuses qualités. Malgré le trac qui paralysait plusieurs d'entre elles, l'excellence des leçons qu'elle reçoivent est évidente. On aurait aussi mauvaise grâce à ne pas mettre l'accent sur ce qui, en fin de compte, est la vertu essentielle du talent de ces artistes. Il est, en effet, réconfortant de constster l'élan et l'ardeur d'adolescentes qui trouvent dans le piano des satisfactions autrement que dans le Rock n'Roll.

Nous avons particulièrement apprécié le jeu de Mlle Ch. Khatchadourian, qui possède une technique très évoluée et beaucoup de musicalité. Son Concerto en ré mineur de Mozart est excellent. Elle a emporté l'unanimité des suffrages et rarement il nous a été donné d'entendre tant de sensibilité alliée à une telle maîtrise. Mlle Hripsimé Baldjian a interprété le 1er mouvement de la Sonate op. 31 de Beethoven, avec charme et sensibilité, et son style a été très remarqué. Mlle Alice Marcarian a mis beaucoup de chaleur dans le *Scherzo* en si mineur de Mendelssohn. Il lui faudrait seulement maîtriser son émotion et travailler un peu plus son perlé. Mlles. Maro Boghiguian et Jeannette Chirikdjian sont très douées, et Mlles. M. Artinian et Z. Tachdjian ne manquent ni d'ardeur ni de conviction dans leurs interprétations. Plusieurs autres concurrentes ont aussi, à des degrés divers, de grandes qualités de style et une très belle précision.

Deux exécutions de concertos pour deux pianos ont permis à Mlle. N. Damadian, la charmante professeur de cet essaim de jeunes talents, de mettre en valeur ses précieuses qualités, où l'on a pu constater un jeu souple et délié, aussi bien dans les effets de puissance, que dans les douces et persuasives effusions.

*Le Progrès égyptien*, 21 juin 1958, p. 3

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆԸ

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

Աւանդութիւն դարձած յոյժ յաջող աշակերտական դաշնամուրի ունկնդրութեան մը ներկայ եղանք նախանցեալ Հինգշաբթի, Ամերիկեան Համալսարանի Արեւելեան Սրահին մէջ։ Արդարեւ, Օր. Նուարդ Տամատեանի աշակերտ-աշակերտուհիները, այդ երեկոյ, ծնողքներու եւ արուեստասէր համակիրներու հոծ բազմութեան մը ներկայութեան, ցուցադրեցին իրենց ձեռք բերած նուաճումները։

Յայտագիրը պատրաստուած էր խնամքով եւ երաժշտական կտորները ընտրուած՝ ճաշակով։

Առաջին մասին բացումը վերապահուած էր փոքրիկն Ս. Աճէմեանի։ Հաճոյքով հետեւեցանք Զ. Պալըզճեանի, Ն. Բաբազեանի եւ Մ. Գասապեանի նախաքայլերուն։ Եթէ Ր. Նազլեան, Ս. Պօղուրեան եւ Պ. Այրասեան ցուցաբերեցին վարժ մատնահարում մը, ապա Ն. Կարապետեանի եւ Վ. Շալվարճեանի մօտ մեկնաբանելու մտահոգութիւնը ակներեւ էր։ Շ. Եավրուեան ունի վճիտ նուագածութիւն մը։ Սիրեցինք Ա. Պօյաճեանի թաւշային մատնահարումը։ Գովելի էր Թ. Յովսէփեանի ինքնավստահութիւնը։ Հ. Սամսոնեան ունի անհրաժեշտ կշռական ճշգրտութիւնը եւ երաժշտական երանգները արտայայտելու զգացում մը։

Այս առթիւ պիտի ուզէինք նշել այն իրողութիւնը որ սխալողներու եւ վարանողներու աննշան թիւը - ինչ որ հազուադէպ պարագայ մըն է աշակերտական նման ունկնդրութեան մը - մեզի այն եզրակացութեան բերաւ որ լուրջ աշխատանք կը տարուի աշակերտներու երաժշտական յիշողութիւնը զարգացնելու համար։ Առաջին մասը վերջ գտաւ *Կկու*ի յաջող նուագածութեամբ օր. Ս. Ակոբեանի կողմէ որ ունի սահուն թեքնիք մը։

Յայտագրին երկրորդ մասը, հետաքրքրական պարունակութեամբ, ընտրուած կտորներու նկարագրին եւ նուագողներուն յառաջացած թեքնիքին պատճառաւ, իր աշակերտական հանգամանքէն դուրս ելլելով, գեղեցիկ նուագահանդէսի մը տպաւորութիւնը թողուց ունկնդիր հասարակութեան վրայ։

Օր. Մ. Արթինեան, որ մեծ յառաջդիմութեան մէջ է անցեալ տարուան իր երեւումէն ի վեր, Տըպիւսիի իր մեկնաբանութեամբ կարողացաւ տալ, կշռական անկանոնութիւններով եւ ներդաշնակային գիւտերով լեցուն *Փոքրիկներու անկիւն*էն քաղուած երաժշտական կտորին թէ՛ հեգնական եւ թէ գորովալից կողմը։ Օր. Ա. Մարգարեան իր կարելին ըրաւ թեթեւ մատնահարում մը գործածելով, յայտնաբերելու Մենտելսոնեան երաժշտական ոճին յատկանիշը կազմող եթերային բնոյթը՝ առանց անտեսելու բանաստեղծական տարրը։ Եթէ Շոբէնի

առաջին *Սքէրցո*ն տուժեց կշռական որոշ պրկութենէ մը, այսուհանդերձ Օր. Շիրիկճեան կարողացաւ հարազատ թարգմանը ըլլալ վիպապաշտ երգահանին մեղամաղձոտ ապրումներուն, խորունկ յուզականութիւն դնելով իր նուագածութեան մէջ։ Պեթհովէնեան երկու սոնաթներ (առաջին մասով) իրենց հարազատ մեկնաբանողները գտած էին յանձին Օր. Զ. Թաշճեանի եւ Օր. Հ. Պալճեանի, որոնց աչքառու եւ արտայայտիչ նուագածութիւնը արժանի է մասնաւոր յիշատակման։ Օր. Շուշիկ Խաչատուրեան, որուն ունեցած արժանիքներուն մասին քանիցս արտայայտուած ենք, նուագեց Մոցարդի րէ մինէօր Քոնչերթոյին առաջին մասը։ Մեզի համար իրապէս վայելք մըն էր ունկնդրել իր այնքան քնքուշ եւ գունազեղ նուագածութիւնը՝ ուր հասուն թեքնիք մը կը միանար խելացի մեկնաբանութեան մը։ Աւելցնենք երաժշտական նախադասութիւններու ճշգրիտ անջատում մը եւ երաժշտական երանգները զուսպ կերպով արտայայտելու իւրայատուկ եղանակ մը։ Պիտի ուզէինք զինք կրկին ունկնդրել, սակայն այս անգամ նուագախումբի մը նուագածութեամբ։

Օր. Մարօ Պօղիկեան, որուն մանկավարժական մարզէն ներս վերջերս ունեցած յաջողութիւնը *Արեւ* արձանագրեց, ի յայտ կու գար այս անգամ խոստումնալից դաշնակահարուհիի մը նախադրեալներով։ Արդարեւ, ունկնդիր եղանք ակնկալուածէն աւելի յաջող Պեթհովէնի երկրորդ Քոնչէրթոյին կատարման, ուր Օր. Պօղիկեան, յաղթահարելով թեքնիք դժուարութիւնները եւ դնելով անհրաժեշտ եռանդը եւ ուժականութիւնը, ցոյց տուաւ որ մեծ յառաջդիմութեան մէջ է։

Վերոյիշեալ երկու քոնչէրթօներուն Օր. Ն. Տամատեան, որ իրեն յատուկ բծախնդրութեամբը երկրորդ դաշնամուրով մը կ'ընկերակցէր, մեզի մոռցնել տուաւ նուագախումբի բացակայութիւնը։

Բոլոր աշակերտները անխտիր վարձատրուեցան ունկնդիրներուն գոհունակութիւնը յայտնող խանդավառ ծափերով։

Անկասկած, այդ օրը, Օր. Ն. Տամատեան եւ իր աշակերտները ապահովեցին արժանի բարոյական մեծ յաղթանակ մը։

Եգիպտահայ իրականութեան մէջ, Օր. Ն. Տամատեան իր կատարած վսեմ աշխատանքով, իբրեւ խաղաղ փրոփականտիստը երաժշտական արուեստի եւ մանաւանդ հայ մշակոյթի, մեր անհուն երախտագիտութեան արժանի է։ Որովհետեւ համոզուած ենք որ ուսուցումը Օր. Տամատեանի համար լոկ փրոֆէսիոնէլ, անկենդան աշխատանք մը չէ, այլ ազգային պարտականութիւն մը՝ գիտակից արուեստագէտ սերունդ մը պատրաստելու գաղափարով տոգորուած։ Միթէ հետզհետէ աճող իր աշակերտներու թիւը յայտարար նշանը չէ՞ մեր այս համոզումին։

Իրեն կը մաղթենք նորանոր յաջողութիւններ։

*Արեւ*, 1 Յուլիս 1958, ԽԳ. տարի, թիւ 12.023, էջ 4

# ԹԷՔԷԵԱՆ ՄՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 25 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1958

## ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՌՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
## ՀՌՈՒՓՍԻՄԷ ՊԱԼՃԵԱՆԷ
## (ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ)

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ — ՀԵՌ. 73282

Հինգշաբթի, 25 Դեկտեմբեր 1958,
երեկոյեան ժամը 9,15ին

«ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ

ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ՕՐ. Հ. ՊԱԼՃԵԱՆԻ

ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

ՏԻԿԻՆ Ս. ՆԻՐԷՍԵԱՆԻ

— ՅԱՅՏԱԳԻՐ —

Scarlati — Sonate en ré mineur
Beethoven — Sonate op. 31 No. 2
(1er mouvement)
Schubert — Impromptu en la b
Wollenhaupt — Morceau caractéristique
Տիգրանեան — Ռանգի — Կլոր պար —

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 24 Դեկտեմբեր 1958, ԽԴ. տարի, թիւ 12.173, էջ 3

# ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ
# ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

Անցեալ Հինգշաբթի, 25 Դեկտեմբեր 1958, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ տեղի ունեցաւ դաշնամուրի գեղեցիկ ունկնդրութիւն մը Օր. Հ. Պալճեանի կողմէ, որուն իր աջակցութիւնը բերած էր, մեկնաբանութիւններով, Տիկ. Ս. Ներէտեան։

Օր. Հ. Պալճեան որ յաճախ իր համեստ մասնակցութիւնը բերած էր Հայ Գեղարուեստասիրաց Միութեան կազմակերպած պարագայական հանդէսներուն եւ Երաժշտական Ասուլիսներուն ի յայտ կու գար այս անգամ իբրեւ մենակատար, ցուցաբերելով սիրող-դաշնակահարուհիի ցայտուն արժանիքներ։ Օր. Պալճեան աշակերտուհին է մանկավարժ դաշնակահարուհի Օր. Նուարդ Տամատեանի։

Թէեւ կարճ սակայն խղճմտօրէն պատրաստուած յայտագիրը կը պարունակէր ոչ միայն միջազգային երգահաններու ստեղծագործութիւնները, այլեւ հայ դասականներէն, ազգային դաշնամուրային գրականութեան հիմնադիր Նիկողոս Տիգրանեանի ստեղծագործութիւններէն մի քանին։

Scarlatti-ի մէկ Sonate-ին յստակ եւ բիւրեղային նուագածութիւնը նախամուտը եղաւ յայտագրին։ Beethoven-ի Sonate op. 31 թիւ 2-ի առաջին մասը նուագուեցաւ համոզումով եւ մեկնաբանելու ճիգով մը։ Schubert-եան պոռթկացող լիրիզմը զգալի էր *Impromptu-ի* նուագածութեան մէջ։ Wollenhaupt-ի *Caractéristique* կտորին դաշնամուրային թեքնիք դժուարութիւնները դիւրութեամբ յաղթահարեց Օր. Պալճեան։ Յայտագիրը վերջ գտաւ Ն. Տիգրանեանի զոյգ հայկական պարերով որոնք նուագուեցան կշռոյթի սուր զգացումով մը։

Տիկ. Ս. Ներէտեան, որուն երեւումը մեր բեմին վրայ եւ մասնակցութիւնը նման ձեռնարկներու առաջինը չէ, իւրաքանչիւր նուագուած կտորէ առաջ կու տար երգահաններու կենսագրական անհրաժեշտ ծանօթութիւններ։

Զոյգ մը ծաղկեփունջերու հետ խանդավառ ունկնդիրներու ինքնաբուխ ծափերը եղան մեր երիտասարդ երաժշտասէրներու բարոյական քաջալերանքը։

Երեկոյթը վերջ գտաւ Գեղարուեստասիրաց Միութեան Ատենապետ Պ. Ե. Սիմոնօֆի շնորհակալական խօսքերով որ ակնարկելով Օր. Նուարդ Տամատեանի մանկավարժական գործունէութեան ի միջի այլոց յայտարարեց. «Եթէ արուեստ մըն է նուագելը եւ մեկնաբանելը, նոյնքան եւ աւելի մեծ արուեստ մըն է նման արուեստագէտներ պատրաստելը»։

*Արեւ*, 3 Յունուար 1959, ԽԴ. տարի, թիւ 12.181, էջ 4

## EWART MEMORIAL HALL, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 14 ՄԱՐՏ 1959

## ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ
## ԳԱՀԻՐԷԻ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ

Շուշիկ Խաչատուրեան (աշակերտուհի Նուարդ Տամատեանի), *դաշնակ*
Ֆրանց Լիթշաուէր, *նուագավար*



ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺ.Ի ՏԻԿՆ. ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆ — Հելիոպոլիս

ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ԳԱՀԻՐԷԻ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ

Ղեկավարութեամբ՝ ՄՕ. ՖՐԱՆՑ ԼԻԹՇԱՈՒԷՐԻ

Մենակատար՝ ՕՐ. ՇՈՒՇԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ (Դաշնակ)

ԽՈՒԸՐԹ ՄԵՄՈՐԻԸԼ ՀՈԼԻ ՄԷՋ

Շաբաթ, 14 Մարտ 1959, երեկոյեան ժամը 9,30ին

— ՅԱՅՏԱԳԻՐ —

ԱՊՈՒ ՊԱՔԸՐ ԽԱՅՐԱԹ Suite Folklorique pour Orchestre op. 24 (primière audition)

ՄՈՑԱՐԹ . Concerto en Ré mineur ponr Piano et Orchestre (R. 466)

ՊՐԱՄՍ Symphonie No. 2 en ré majeur op. 73

*Սրահը կը բացուի ժամը 9ին. Նուագի պահուն սրահին դըռ-ները կը մնան փակ։ Տոմս ստանալ Նուագահանդէսի օրը կիշէէն։*

Յայտարարութիւն
*Արեւ*, 12 Մարտ 1959, ԽԴ. տարի, թիւ 12.238, էջ 4

**GRAND CONCERT SYMPHONIQUE**
**Présenté par le**
**COMITÉ des DAMES du COLLEGE MECHITARISTE**
**avec le concours de**
**L'ORCHESTRE SYMPHONIQUE du CAIRE**
**sous la Direction de**
**FRANZ LITSCHAUER**
**Soliste : Mlle CHOUCHIG KHATCHADOURIAN (piano)**

*Programme*

**ABOU-BAKR KHAÏRAT**

Suite folklorique pour Orhestre op. 24 (première audition)

1. entrata
2. allegro
3. cantabile
4. Viace
5. Allegretto amoroso
6. Finale marziale

**MOZART**

Concerto en ré mineur pour Piano et Orchestre (K. 466)

Allegro
Romanza
Rondo Prestissimo

INTERVALLE

**BRAHMS**

Symphonie No. 2 en ré majeur op.73

Allegro non troppo

Adagio non troppo

Allegretto grazioso (quasi **Andante**)

Allegro con Spirito



Ewart Memorial Hall, 14 Մարտ 1959
Քոնչերթոյի կատարումէն ետք, Շուշիկ Խաչատուրեան եւ Ֆրանց Լիթշաուէր կ'ընդունին ծափահարութիւնները



Ewart Memorial Hall, 14 Մարտ 1959
Շուշիկ Խաչատուրեան եւ Ֆրանց Լիթշաուէր նուագահանդէսէն ետք



Ewart Memorial Hall, 14 Մարտ 1959
Ձախէն աջ՝ Նուարդ Տամատեան, Ֆրանց Լիթշաուէր, Շուշիկ Խաչատուրեան
եւ նուագախումբի ջութակահարուհի մը

## CONCERT DE L'ORCHESTRE SYMPHONIQUE DU CAIRE AU PROFIT DU COLLEGE MECHITARISTE

ANTOINE GENNAOUI

L'Orchestre Symphonique du Caire, sous la direction de M. Franz Litschauer, donnait l'autre soir un concert organisé par un Comité de Dames au profit du Collège Méchitariste. En première partie nous avons eu, en première audition, une *Suite folklorique* pour orchestre d'Abou Bakr Khairat, musique riche, dévorée de soleil et nourrie de l'âpre saveur du terroir. L'oeuvre comporte six parties où des mouvements rapides encadrent un mouvement lent central de sentiment grave. Cette pièce reflète chez son auteur un désir de recherches rythmiques basé sur des tournures musicales d'ordre folklorique. On y décèle un parfum local très sensible évoquant des thèmes préexistant empruntés à la musique populaire.

La brillante exécution de Mlle Ch. Khatchadourian du Concerto en ré mineur de Mozart, semble bien la placer au premier rang de la jeune génération, et ne fait que confirmer l'impression qu'elle nous avait déjà donnée en juin dernier. Grâce aux conseils éclairés de Mlle Nevarte Damadian, son professeur, cette jeune artiste a une belle technique et beaucoup d'autorité, quoique parfois un peu dure et tendue. La première partie, très animée, a été interprétée avec beaucoup d'ardeur. Elle a mis assez de conviction dans la romance pure du second mouvement et une belle sonorité dans le finale rapide où le dialogue entre l'orchestre et le piano est particulièrement serré. Ce concerto de Mozart insouciant convient à merveille d'ailleurs aux tempéraments jeunes. L'interprétation de Mlle Khatchadourian est déjà mieux qu'une promesse. Quant à M. Franz Litschauer il a su la soutenir avec toute l'émotion voulue et une bonne intelligence rythmique.

On aurait peut-être souhaité une exécution plus raffinée et plus travaillée de cette seconde symphonie mélancolique et sensible de Brahms. La sonorité des cuivres en particulier doit être plus fluide et plus lointaine au premier mouvement. Il est vrai que depuis assez longtemps nous réclamons le changement de tous les instruments en cuivre de l'orchestre. Malgré tout, c'est tout de même un plaisir que de voir M. Franz Litschauer consacrer à la direction le meilleur de sa sensibilité et de sa longue expérience.

*Le Progrès égyptien*, 16 mars 1959

# ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

Նախանցեալ Շաբաթ երեկոյ, Ամերիկեան Համալսարանի մեծ հանդիսասրահին մէջ, հայ եւ օտար լայն շրջանակի մը ներկայութեան, տեղի ունեցաւ Մխիթարեան Վարժարանի տարեկան գեղարուեստական ձեռնարկը ի նպաստ վարժարանին նորակառոյց շէնքին: Նուագահանդէսին իրենց մասնակցութիւնը բերած էին Արաբական Միացեալ Հանրապետութեան պետական ռատիոկայանի համանուագային նուագախումբը ղեկավարութեամբ Մօ. Ֆրանց Լիթշաուէրի եւ Օր. Շուշիկ Խաչատուրեանի՝ իբրեւ մենակատար-դաշնակահարուհի:

Հանդէսին կազմակերպութիւնը վստահուած էր Մխիթարեան Վարժարանի Տիկնանց Խնամակալութեան:

Յայտագրին առաջին մասը կը պարունակէր, առաջին ունկնդրութեամբ, եգիպտացի մեծանուն երգահան Ապու Պաքր Խայրաթի մեծ նուագախումբի համար գրուած երգաշարքը, կազմուած ժողովրդական մոթիվներէ որ ունկընդրուեցաւ մեծ հետաքրքրութեամբ: Եգիպտացի երգահանին փորձերը արաբական համանուագային երաժշտութիւն մը ստեղծելու, հիմնուելով «բազմաձայնութեան» վրայ, արժանի են ամէն տեսակ քաջալերանքի մանաւանդ երբ նկատի ունենանք որ արաբական երաժշտութիւնը տակաւին կը գտնուի «միաձայն» վիճակի մէջ:

Մոցարթի դաշնամուրային Քոնչէրթոյին կատարումը վստահուած էր Օր. Շուշիկ Խաչատուրեանի, որ անգամ մը եւս ցուցաբերեց մենակատարի փայլուն արժանիքներ: Արդարեւ Օր. Խաչատուրեան հասուն դաշնակահարուհիի մը վայել լրջութեամբ կարողացաւ ցուցադրել կատարողական խորութիւն, խորունկ յուզականութիւն դնելով իր նուագածութեան մէջ: Հնչիւնային հարուստ երանգաւորումներով առլցուն Քոնչերթոն հնչեց հեղինակի ոճին հարազատ: Անցեալին յաճախ գրած ըլլալով իր մասին, պիտի բաւականանանք արձանագրել որ Օր. Խաչատուրեան լաւագոյնս արդարացուց իր վրայ դրած մեր յոյսերը:

Հետզհետէ աճող թէքնիք, մեկնաբանելու կարողութիւն, ամենանուրբ երանգները արտայայտելու մտահոգութիւն, ապշեցուցիչ համարձակութիւն մը որ վստահաբար կու գայ ինքնավստահութենէ. ահա Խաչատուրեանի կատարողական արժանիքները: Այդ երեկոյ ան արձանագրեց գնահատելի եւ պատուաբեր յաջողութիւն մը: Կը հաւատանք որ իրեն կը սպասէ դաշնակահարուհիի գեղեցիկ ապագայ մը: Ժողովուրդի անվերապահ խանդավառ ծափերը եւ առատ ծաղկեփունջերը եղան համակրանքի եւ գնահատանքի ցոյցերը:

Այս առթիւ մեզի կը մնայ կրկին անգամ շնորհաւորել Օր. Նուարդ

Տամատեանը իր աշակերտուհիին ունեցած փայլուն յաջողութեան համար։

Դաղարին Հայր Բարսեղ Ֆերհաթեան, յանուն Մխիթարեան Վարժարանի, սրտաբուխ խօսքերով իր շնորհակալութիւնը յայտնեց բոլոր անոնց որոնք նիւթապէս թէ բարոյապէս աջակցելով սատարած էին հանդէսին յաջողութեան, իր խանդավառութեան մէջ մոռնալով յիշատակել անունները թէ՛ օրուան ղեկավարին եւ թէ Օր. Տամատեանին։

Յայտագիրը վերջ գտաւ Պրամսի երկրորդ համանուագին նուագածութեամբ։ Վերոյիշեալ երկը գրուած contrepointique բարդ ոճով եւ պահանջելով կատարողական բարձր թէքնիք ներկայացուեցաւ, ընդհանուր առմամբ համոզիչ կերպով։

Անշուշտ նուագախումբին կը պակսի տակաւին միաձոյլ հեղինակութիւն մը։ Ղլինձէ փողային գործիքներու չոր եւ անկշռոյթ միջամտութիւնը անհանդուրժելի էր լսողութեան. փայտէ փողային գործիքները զուրկ էին անհրաժեշտ ճկունութենէ. լարաւոր գործիքներ նուագողներու մօտ նկատելի էր աղեղային շարժումներու միատեսակութեան բացակայութիւնը որով երգային գիծը կը կորսնցնէր իր ուժականութիւնը։

Այսուհանդերձ վերոյիշեալ նկատառումները ոչինչ կը պակսեցնեն Մօ. Ֆրանց Լիթշաուէրի ղեկավարի եւ կազմակերպիչի փայլուն արժանիքներէն որուն տեւական ճիգերուն շնորհիւ է որ միայն ԱՄՀ-ի պետական բատիոկայանի նուագախումբը, Միջին Արեւելքի մէջ, հասաւ նախանձելի դիրքի մը։

Այս առթիւ բաղձանք մը մեր կողմէ։ Փափաքելի եւ ուրախալի պիտի ըլլար նման հանդէսներու յայտագրին մէջ միջազգային երգահաններու կողքին տեսնել նաեւ հայ երգահաններու լայն կտաւի ստեղծագործութիւնները։

Մեր շնորհաւորութիւնները նաեւ Տիկնանց Խնամակալութեան։

*Արեւ*, 2 Ապրիլ 1959, ԽԴ. տարի, թիւ 12.255, էջ 3

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN

( de l'Ecole Normale de Musique de Paris )

Club Artistique Arménien - Salle Tékéyan

3, Rue Doubreh ( 7e étage ) Le Caire

**Vendredi, le 12 Juin 1959, à 6 h. p. m.**

*Le programme tient lieu d'Invitation.*

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| *Hagop Artinian* | Récréation | *Van de Velde* |
| *Nectar Madghachian* | Valse | *Van de Velde* |
| *Adonı Malkhassian* | Valse alsacienne | *Van de Velde* |
| *Anaïs Hampiguian* | Tyrolienne | *Van de Velde* |
| *Sona Agémian* | Ecossaise | *Hummel* |
| *Gerald Papasian* | Etude No. 90 | *Beyer* |
| *Maria Dimitriadis*<br>*Chahène Yavrouyan* | Lento (4 mains) | *Wohlfahrt* |
| *Haig Ohannessian* | Rondo | *Clementi* |
| *Simone Urwand*<br>*Eliane Urwand* | Berceuse (4 mains) | *Mozart* |
| *Mania Asfazadour* | Bernoise | *Kozeluch* |
| *Eugénie Imamédjian* | Etude No. 98 | *Beyer* |
| *Alice Zartarian* | Landler | *Steibelt* |
| *Mihran Kassabian* | Romance | *Beethoven* |
| *Nora Garabedian* | Musette<br>Valse favorite | *Bach*<br>*Mozart* |
| *Ara Chirikdjian* | Rondo vivace | *Kuhlau* |
| *Chahène Yavrouyan* | Minuetto | *Dussek* |

| | | |
|---|---|---|
| *Hilda Samsonian* | Variations | *Barkhoudarian* |
| *Tony Hovsépian* | Danse des sylphes | *Grieg* |
| *Alice Tchilinguirian* | Rondo | *Diabelli* |
| *Vania Chalvardjian* | Bagatelle en mi bem. | *Beethoven* |
| *Betty Ayrassian* | Scherzo en si bem. | *Schubert* |
| *Sirvart Agopian* | Menuet | *Haendel* |
| | Mazurka en si bem. | *Chopin* |

INTERVALLE

| | | |
|---|---|---|
| *Vera Hatzouny* | Passacaille | *Haendel* |
| *Zevart Tachdjian* | Impromptu en mi bem. | *Schubert* |
| *Madeleine Artinian* | Fantaisie en la op. 16 No.1 | *Mendelssohn* |
| *Alice Marcarian* | Scherzo de la 2e Sonate | *Beethoven* |
| *Ch. Khatchadourian* | Sonate op.2 No.3 (1er mouv.) | *Beethoven* |
| *Hripsimé Baldjian* | Gavotte de Gluck | *Brahms* |
| | Seguidillas | *Albeniz* |
| *Jeannette Chirikdjian* | Etude en forme de valse | *Saint-Saëns* |



Թէքէեան սրահի բեմին վրայ, 12 Յունիս 1959
Նուարդ Տամատեան (կեդրոնը) իր աշակերտներուն հետ

# ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ ԴԱՇՆԱԿԻ ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻ ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ

ՍՈՖԻ ՇԱԼՎԱՐՃԵԱՆ

Ծնողքները եւ համակիրները խուռներամ, բազմամբոխ եւ սրտատրոփ եկած էին ներկայ ըլլալու Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն տարեկան ունկնդրութեան։ Այս դեռատի արուեստասէրներուն իւրաքանչիւրին քով, ըլլան անոնք սկսնակներ թէ յառաջացածներ նկատելի էր լուրջ ճիգը լաւապէս ի յայտ գալու, զգալի մտահոգութիւնը ճշգրիտ կատարման եւ անթերի կեցուածք մը. ահա էական յատկութիւններ որոնց վրայ կու գային աւելնալ անհատական յատկանիշներ եւս։ Եւ դժուար չէր նշմարել դրոշմը լուսամիտ եւ հոգեբան ուսուցչուհիին որ կրցած է ներարկել դժուարին արուեստը սրտով զգալու երաժշտական կտորը եւ զայն վերարտադրելու՝ թեքնիքի զգայնութեամբ մը որ չափաւորուած ըլլայ հասկացողութեան ուժով։

Մեզի առիթը տրուեցաւ ծափահարելու ամենափոքրերը, տակաւին գրեթէ մանուկներ, որոնք պահ մը լքած իրենց խաղերը, խելօքիկ եւ լրջօրէն նուագեցին իրենց կտորները, յետոյ գնահատեցինք զգալի յառաջդիմութիւնը յառաջացածներուն եւ ի վերջոյ վայելեցինք վարպետներու գործերը ամենայառաջացած աշակերտներու իրապէս արուեստագիտական նուագածութեամբ։

Խանդաղատանքով ունկնդրեցինք փոքրիկն Յակոբ Արթինեանի *Ջբօսանք*ը գրուած Վան տը Վէլտի կողմէ։

Նեկտար Մատղաշեան ջանադիր կերպով իր մատիկներով ձեւակերպեց շնորհալի *Վալս* մը՝ Վան տը Վէլտէն, մինչ Ատոմ Մալխասեան մասնաւոր ուշադրութիւն դարձուց յստակօրէն եւ կշռոյթով նուագելու *Այգասեան վալս*ը։ Անայիս Համբիկեան իրագործեց կշռոյթի իր զգայարանքը եւ իր կտորին ուշիմ հասկացողութիւնը նոյն հեղինակին *Թիրօլիէն*ին մէջ։

Հրապուրիչ էին ելեւէջները Հիւմէլի *Էքոսէզ*ին, մերթ զօրաւոր, մերթ արձագանգային՝ Սօնա Աճէմեանի մատներուն տակ, որոնց ուշադրութիւնը կը կեդրոնացնէին երանգներու վրայ։

Ժիրայր Բաբազեանի յատկանիշներն են երաժշտական աճող հասկացողութիւն մը ինչպէս նաեւ հասունութիւն մը զոր ընդնշմարեցինք Պէյէրի *Էթիւտ*ի մը մէջ ուր յառաջդիմութիւն կար, մինչ Մարիա Տիմիթրիատիսի մօտ նրբութիւն եւ զգայնութիւն կը տիրէին։ Ան կրցաւ իր երկչոտութեան տիրապետել սահուն կերպով արտաբերելով Վոլֆահրթի զուգանուագը։ Շահէն Եավրուեան իր մեղմ ու պատասխանատու ընկերակցողը եղաւ։

Քլեմենթիի *Ռոնտօ*ն տրուեցաւ զգացումով եւ հաճելի ստեղնահպումով (*թուշէ*ով) Հայկ Օհաննէսեանի կողմէ։

Որքան վեհ շնորհք, քաղցրութիւն, զգայնութիւն Մոցարթի հրաշալի օրօրին մէջ զոր արտաբերեցին Սիմոն եւ Էլիան Ուրուանտ՝ յուզիչ պարզութեամբ մը։ Այս երիտասարդները որոնք հազիւ թէ սկսած են դաշնակ սորվիլ, կտորը ներկայացուցին ճաշակով, հանդարտօրէն, երաժշտական կշռոյթով, այնպէս ինչպէս պարտ էր ըլլալ անոյշ եղանակ մը։

Մանիա Աստուածատուր լաւ չափայարմարած էր այն գիւղական պարը որ կը կոչուի *Պեռնուազ* Քոզըլուխի կողմէ գրուած։ Շատ հաճելի էր լսել զուսպ երանգներով իր նուագածութիւնը։

Վստահ, կշռութաւոր, կատարելապէս տիրապետած Պէյէրի *Էթիւտ*ին վրայ Էօժէնի Իմամէճեան տարած է մեթոտիկ եւ կանոնաւոր աշխատանք մը։ Իրմէ շատ բան կը սպասենք ապագային, մանաւանդ թեքնիքի մարզին մէջ։

Ալիս Զարդարեան շատ ճիշդ կերպով տուաւ Շթայպելթի *Լանտլէր* կտորի գրաւիչ կշռոյթը, եռանդով եւ լաւ հնչուած խաղով մը, մինչ Միհրան Գասապեան կրցաւ հակակշռել իր երիտասարդական աւիւնը եւ կրցաւ զայն բարեխառնել ճաշակով եւ ուշիմութեամբ երբ կը նուագէր Պեթհովէնի *Ռոմանս*ը որ այնքան լեցուն է հրապոյրով։

Նորա Կարապետեան նուագեց երկու կտորներ որոնք տարբեր նկարագիր-ներ ունէին։ Ան կրցաւ արտաբերել Պախի մը խորունկ հնչականութիւնը *Միւզէթ*ի մէջ, յետոյ կարողանալով զմեզ ոգեւորել Մոցարթի *Սիրական վալս*ով։

Լաւ դաշնակահարի բոլոր յատկութիւնները համախմբուած են այն ապագայ արուեստագէտին մէջ որ է Արա Շիրիքճեան։ Անթերի թեքնիքով եւ կատարեալ կիտուածքով այս տղեկը ինքզինք պարտադրեց փայլուն եւ ուշիմ կերպով վերարտադրելով Քիւիլաուի *Ռոնտօ վիվաչէ*ն։

Ուրիշ խոստմնալից աշակերտ մըն է Շահէն Եավրուեան։ Իր առնական նուագածումը, ստեղնաշարին տիրապետումը, եւ երաժշտականութիւնը կը հաստատեն զինք իբրեւ հրաշալի վերարտադրող մը։ Արդէն ձեռք ձգած է թեքնիք սահունութիւն մը, ան մասնաւոր ճիգեր ըրաւ չանտեսելու համար Տիւսէքի *Մինուէթթօ*ի երանգները։

Հիլտա Սամսոնեան մեր սրտին խօսեցաւ արտայայտելով կարօտալի նկարագիրը այն դժուարին երաժշտական գործին որ Բարխուդարեանի *Վարիասիոններ*ը կը կազմեն, մինչ Թոնի Յովսէփեան նուրբ ստեղնահպումով իրագործեց Կրիկի *Սիլֆներ*ը։ Իր նուագածութեան բարեմասնութիւններուն վրայ կը յուսանք աւելի վստահ թեքնիք մը աւելցնէ ապագային։

Ալիս Չիլինկիրեան ներկայացաւ իբրեւ զուսպ դաշնակահարուհի մը որ զգայնութեամբ նուագեց Տիապելլիի *Ռոնտօ*ն եւ կրցաւ արտայայտել կտորին ամբողջ փափկութիւնը։

Պեթհովէնի հրապուրիչ *Պակաթել*ը որ լեցուն է վաղվաղակի շնորհքով պահեց իր ամբողջ նրբութիւնը Վանիա Շալվարճեանի մատներուն ներքեւ։

Թաւիշէ ստեղնահպում մը, երանգաւոր նուագածութիւն մը՝ երգունակ եւ գիտակից՝ թափանցել ջանալով կտորին խորութեան - ահա տիրական յատկանիշները այս երիտասարդ երաժիշտին:

Շուպերթին *Սքերցօ*ն վարպետութեամբ կատարուեցաւ Պեթի Այրասեանի կողմէ, վստահ է իր թեքնիքը, խաղը՝ հարուստ, գունագեղ: Ան ուշիմ կերպով կրցաւ արտայայտել հեղինակին մոլեգին յուզումը:

Սիրվարդ Յակոբեան լաւ կերպով արժեւորեց Շոփէնի սի պեմոլ *Մազուրքա*ն: Երիտասարդ այս դաշնակահարուհին կրցաւ պահել այս պարին ինքնատիպ գոյնը շնորհիւ ստեղնաշարին իր տիրապետումին, հնչականութեան հարստութեան եւ կշռոյթի հաւատարմութեան: Իր երկրորդ կտորը, Հենտելի *Մընիւէթ*ը, նուագեց շնորհալի կերպով:

Յայտագրին երկրորդ մասը, ինչպէս արդէն սովորութիւն դարձած է, աւելի կը մօտենար նուագահանդէսի մը քան թէ պարզ աշակերտական ունկնդրութեան, որովհետեւ հոն ներկայացուած էին գործեր որոնց որակը բարձր էր, նոյնպէս եւ բարձր նուագածութիւնը: Այլեւս քննադատի ականջով է որ պիտի լսենք զիրենք քանի որ անոնք սկսնակներ չեն, սակայն չի պակսիր մեր համակրանքը անոնց հանդէպ:

Փայլուն եւ կորովի վերտառութիւն մը կը նշմարենք Վերա Հացունիի մօտ իր Հենտըլի *Փասաքայ*ին ընդմէջէն: Իր վճիտ նուագածութիւնը չափայարմար էր եւ արտայայտիչ՝ գլխաւոր եղանակին թախանձագին փոփոխակները ԺԵ. դարու այս պարերգին մէջ: Այս երիտասարդուհին բնածին կարելիութիւններ ունի որոնք, վստահ ենք, պիտի մշակուին տակաւին:

Թեքնիք դժուարութիւնները Շուպերթի մի պեմոլ *Էնփրոմփթիւ*ին մէջ յաղթահարուեցան հեզասահօրէն Զուարթ Թաշճեանի կողմէ որ ինքնավստահ դարձած է այլեւս: Իր սահունութիւնը եւ կատարեալ հնչականութիւնը, իր նոթերը ձգեցին հատ հատ այնպէս ինչպէս վճիտ ջուրի կաթիլները աղբիւրի մը: Ասիկա արդիւնքն է ուշիմ եւ կարգապահ աշխատանքի:

Մատըլէն Արթինեան զանազանութիւն, բարեխառնութիւն ունի եւ այսպիսով կրցաւ թարգմանը հանդիսանալ Մենտելսընի *Ֆանթէզի*ի ոգիին, կտոր մը որուն մէջ, ինչպէս յայտնի է անունէն, հեղինակը իր քնարերգութիւնը գեղեցկացուցած է դասական տաղանդի զարդերով:

Հրապուրիչ խորութիւնը որով յատկանշուած են Պեթհովէնի գործերը, իրենց թարգմանը գտան յանձին Ալիս Մարգարեանի որ հանգամանօրէն մեզի հրամցուց երկրորդ Սոնաթի Սքերցօն:

Անգամ մը եւս առիթը ընծայուեցաւ մեզի տաղանդաւոր դաշնակահարուհի Շուշիկ Խաչատուրեանի բացառիկ յատկութիւնները գնահատելու: Իր նուագած կտորն էր Պեթհովէնի 3-րդ Սոնաթի առաջին մասը: Իր նուագածութիւնը փայլուն էր եւ հաճելիօրէն բարեխառնուած իր վստահ թեքնիքով, իր քնարերգութեամբ

իսկ, երկրորդուած լաւ յիշողութեամբ մը, ահա այսպէս է որ զինք առաջնակարգ դաշնակահարուհիի կարգին կը դասենք։ Այսուհանդերձ իր բնատուր ձիրքերը, ինչպէս եւ իր դիւրութիւնը, պէտք ունին զարգացումի եւ մանաւանդ մշակումի անխոնջ աշխատանքով մը, որովհետեւ անոր շնորհիւ միայն կրնայ հասնիլ բարձունքներու։

Հռիփսիմէ Պալճեան գիտակցութեամբ ներկայացուց երկու ժողովրդական պարեր, նախ Պրամսի *Կավոթ*ը եւ յետոյ Ալպենիզի *Սեկուիտիլլաս*ը։ Սպանական ֆոլքլորի այս պարը հակառակ իր դժուարութիւններուն, շատ լաւ թեքնիքով եւ գունագեղ նկարագիրով իրագործուեցաւ։

Եւ հիմա մեծ *պրաւօ* մը Ժանէթ Շիրիքճեանի որ իրապէս պատիւ կը բերէ իր ուսուցչուհիին։ Իր կտորը դժուարին եւ ապերախտ էր եւ սակայն ան փայլուն կերպով յաղթահարեց այդ դժուարութիւնները։ Ինչպէս որ արդէն անունը կը թելադրէ *Էթիւտ վալսի ձեւով*՝ Սէն Սանսի կողմէ հեղինակուած։ Այս կտորը երկու ձեւ ունի։ Նախ եւ առաջ էթիւտ մը յետոյ վարժութեան օրինակ մը՝ արագ սահանքի ընդմիջուած վալսի եղանակով մը։ Դաշնակահարուհիին մեծ արժանի-քը եղաւ յստակօրէն ցոյց տալ հանրութեան կտորին այս կրկնակի նկարագիրը։ Իր ուշիմ իրագործումով, շատ փայլուն, փետալի իր լաւ գործածութեամբ ինք դարձուցին իսկական մենակատար մը։

Ջերմապէս կը շնորհաւորենք մեր երիտասարդ դաշնակահարները այն ամէն ջանքին համար զոր թափեցին եւ կը մաղթենք նորանոր յաջողութիւններ իրենց ապագային համար, կը շնորհաւորենք մանաւանդ իրենց պատուական ուսուց-չուհին որուն կ՚երթայ ամէն գնահատանք եւ որ լռութեան մէջ եւ քուլիսին ետին մասնակից եղաւ իւրաքանչիւր իր աշակերտին յուզումներուն։

*Արեւ*, 26 Յունիս 1959, ԽԵ. տարի, թիւ 12.325, էջ 3-4

# ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

# 1959-1960 ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆ

# ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ
# ԿԸ ՀՐԱՒԻՐՈՒԻ ԴԱՍԱՒԱՆԴԵԼՈՒ
# ՆՈՐԱԲԱՑ ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻՆ ՄԷՋ

# ՕՐ. Ն. ՏԱՄԱՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԴԱՍԱՏՈՒ ԿԸ ՆՇԱՆԱԿՈՒԻ

Արաբական Միացեալ Հանրապետութեան կորովի նախագահ Կամալ Ապտէլ Նասէր երբ որոշեց գեղարուեստի մակարդակն ալ բարձրացընել, Ազգային Ուղղութեան եւ Մշակոյթի նախարարը՝ Սարուաթ Օքաշա ցարդ անտես մնացած արուեստները բարեկարգելու ժամանակ, առաջին տեղը տուաւ երաժշտութեան:

Հակառակ նոր ստեղծուած ըլլալուն, Ազգային երաժշտանոցը ունի մօտաւորապէս երկու հարիւր աշակերտներ, որոնց մէջ կը գտնուին ԱՄՀ-ի շարժանկարի եւ ձայնասփիւռի արուեստագէտներ որոնք եկած են իրենց ուսումը զարգացնելու եւ կատարելագործելու:

Գալով ուսուցչական կազմին, անոնց մէջ կը գտնուին մեծ արուեստագէտներ: Պր. Ապու Պաքր Խայրաթ՝ տնօրէնը այս նոր ձեռնարկին՝ շրջապատուած է Տր. Սամիհա Էլ Խոլիէ, Պր. Եուսէֆ Շաաֆիէ, Օր. Պրիժիթ Շիֆրէ, Փրոֆ. Ժոզէֆ Շոզքէ, Օր. Նուարդ Տամատեանէ ինչպէս նաեւ ուրիշ ոչ նուազ արժէքաւոր ուսուցիչներէ:

Օր. Ն. Տամատեան, վկայուած Փարիզի Էքոլ Նորմալ տը Միւզիքէն, երկար տարիներէ ի վեր, Եգիպտական Նահանգի մէջ, դաշնակի դասընթացքներ աւանդելով խոստմնալի արուեստագէտներ կը պատրաստէ, եւ իր տքնաջան աշխատանքներուն կը պարտինք բազմաթիւ արուեստագէտներու յայտնաբերումը:

Իր այս նոր պաշտօնով ոչ միայն կու գայ ընդգծելու յարգուած դաշնակահարուհիի իր վարկը, այլ մեր ժողովուրդին կը բերէ իր արուեստագէտ զաւակով հպարտանալու ուրախութիւնը:

*Արեւ*, 2 Յունուար 1960, ԽԵ. տարի, թիւ 12.486, էջ 2

# AUDITION DES ELEVES

DU PROFESSEUR DE PIANO

## Mlle. NEVARTE DAMADIAN

(de l'Ecole Normale de Musique de Paris)

Club Artistique Arménien - Salle Tékéyan

3, Rue Soliman El-Halabi (7e étage) Le Caire

**Jeudi Le 23 Juin 1960, à 6 heures 45 p.m.**

*Le Programme tient lieu d'Invitation*

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| ***Naïrie Partamian*** / ***Chahène Yavrouyan*** | Non troppo presto (4 mains) | *Wohlfahrt* |
| ***Arto Kéklikian*** | Etude No. 31 | *Beyer* |
| ***Vahan Kololian*** | Etude No. 66 | *Beyer* |
| ***Hagop Artinian*** | Valse | *Van de Velde* |
| ***Suzanne Epremian*** | Etude No. 62 | *Beyer* |
| ***Nectar Madghachian*** | Landler | *Steibelt* |
| ***Gerald Papasian*** | Sur la prairie verte | *Gretchaninoff* |
| ***Sona Agémian*** | Rondo | *Clementi* |
| ***Kathleen Oghia*** | Ecossaise | *Hummel* |
| ***Haig Ohannessian*** | Petit montagnard | *Frontini* |
| ***Simone Urwand*** | Rondo de le 3e Sonatine | *Clementi* |
| ***Eugénie Imamédjian*** | Rondo Vivace | *Kulhau* |
| ***Nora Garabedian*** | Finale de sonatine | *Kulhau* |
| ***Chahène Yavrouyan*** | Menuet<br>L'avalanche | *Bach*<br>*Heller* |
| ***Eliane Urwand*** | Rondo | *Beethoven* |
| ***Ara Chirikdjian*** | Sonate en do (1er. mouv.) | *Mozart* |

| | | |
|---|---|---|
| ***Hilda Samsonian*** | Sonatine No. 4 (1er. mouv.) | *Clementi* |
| ***Tony Hovsépian*** | La Chevaleresque | *Burgmüller* |

***INTERVALLE***

| | | |
|---|---|---|
| ***Vania Chalvardjian*** | Valse op. 69 No. 1<br>Mazurka op. 7 No. 1 | *Chopin* |
| ***Betty Ayrassian*** | Six Ecossaises | *Beethoven* |
| ***Sirvart Agopian*** | Tarantelle | *Heller* |
| ***Vera Hatzouny*** | La Chasse | *Mendelssohn* |
| ***Zevart Tachdjian*** | Pourquoi ?<br>Chimères | *Schumann* |
| ***Madeleine Artinian*** | Fantaisie en ré min. | *Mozart* |
| ***Alice Marcarian*** | La Victoire | *Rameau* |
| ***Ch. Khatchadourian*** | Sonate op. 13 Pathétique 1er. mouv. | *Beethoven* |
| ***Hripsimé Baldjian*** | Papillons | *Schumann* |
| ***Jeannette Chirikdjian*** | Prélude en sol min. | *Rachmaninoff* |

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԱՄԱՎԵՐՋԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

ՍՈՖԻ ՇԱԼՎԱՐՃԵԱՆ

Բարեմտութեան հետ հպարտութեամբ է որ ծափահարեցինք այս համակրելի խումբը որ կազմուած է Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներէն։

Որքան դժուար եւ նոյնիսկ անարդար պիտի ըլլար քննադատել այն երիտասարդ երաժիշտները որոնք կարգաւ տեղ գրաւեցին դաշնակին դիմաց Թէքէեան սրահին մէջ... Այս գործունեայ եւ խանդավառ նոր սերունդը արժանի է գովեստի եւ քաջալերանքի, որովհետեւ հակառակ իր զբաղումներու յարաճուն պարտաւորութեանց, յաջողած է քաջութեամբ ամբողջացնել իր ընդհանուր զարգացումը երաժշտական ամուր գիտելիքներով։ Այս բանին մէջ օգտուած է եւ խրախոյս ստացած ուսուցչուհիէ մը որ հմտութեամբ եւ հասկացողութեամբ կրցած է յարմարեցնել իր իսկ մեթոտը ժամանակի պահանջքին։ Ինչ ափսոս, երբ սահմանափակ է այն ժամանակը զոր աշակերտ մը կը տրամարդէ երաժշտութեան։

Առաջին երեք նուագողներուն համար, դեռ իրենց կեանքի արշալոյսին, այս անդրանիկ ունկնդրութիւնը կարելի է որակել իբրեւ իրենց երաժշտական «մկրտութիւնը»։

Նայիրի Փարթամեան հաւատարմօրէն հետեւեցաւ Վոլֆարթի զուգերգի կշռոյթին հանդարտօրէն նուագելով իր բաժինը։

Արթօ Քեքլիքեան, Պէյէրի վարժութեան մը մէջ ինքզինք պարտադրեց իր լաւ կացքով (*թընիւ*) եւ իր նուագածութեան համաչափութեամբ, մինչ Վահան Քոլալեան ժպիտով եւ ինքնավստահութեամբ լրացուց Պէյէրի ուրիշ վարժութիւն մը։

Յակոբ Արթինեան մեզ յափշտակեց Վան տը Վելտի վալսի մը կշռոյթով ի յայտ բերելով մատներու ճկունութիւն մը։

Սիւզան Եփրեմեան, առաջին ունկնդրութեան մը յուզումով հանդերձ չանտեսեց իր ուսուցչուհիին հրահանգները այլ հետեւեցաւ անոնց ուշադրութեամբ եւ իր մատները սահեցուց շնորհալի կերպով Պէյէրի վարժութեան մը մէջ։

Նեկտար Մատղաշեան, լուրջ փոքրիկ դաշնակահարուհի մը արդէն, կանոնաւոր եւ պայծառութեամբ նուագեց Շթայպելթի *Լանտլէր*ը։

Ինչպէս բացատրել այսքան խորութիւն եւ երաժշտականութիւն փոքրիկ տղու մը մօտ ինչպէս է պարագան Ժիրայր Բաբազեանի։ Իր նուագածութիւնը եղաւ վստահ, հասկացողութեամբ եւ իմաստին համեմատ հատուածուած։ Իրեն բաժին ինկած էր Կրեչանինոֆի *Կանանչ մարգագետնի վրայ* կտորը։

Յստակութեան մտահոգութիւն մը եւ մանաւանդ կատարելութեան ձգտում մը, ահա տիրական յատկութիւնները փոքրիկն Սոնա Աճէմեանի որ անսայթաք

եւ ճշգրիտ կերպով երանգաւոր խաղարկութեամբ ներկայացուց Քլեմենթիի *Ռոնտո*ն։

Քաթլին Օղլա, թէեւ յուզուած, այսուհանդերձ դիւրութեամբ եւ շնորհալի կերպով ներկայացուց Հիւմմէլի *Էքոսէզ*ը, մինչ Հայկ Օհաննէսեան մեզի պատկերացուց Ֆրոնթինիի նազելի *Փոքրիկ լեռնական*ը ստեղնաշարի նուրբ հպումով։

Սիմոն Ուրուանտի Քլեմենթիի *Ռոնտո*յի մէջ շնորհք եւ պարզութիւն կար։ Քիչ մը աւելի աշխատանքով վստահօրէն պիտի կարենայ կատարելագործել իր թեքնիքը։

Էօժէնի Իմամէճեան իւրացուցած է երիտասարդ աշակերտի մը գլխաւոր յատկութիւնները. վստահութիւն, յստակութիւն, սքանչելի կացք։ Իրն էր Քուլհաուի *Ռոնտօ Վիվաչէ*ն։ Տարիքի հասունութեան հետ ան եւս ձեռք պիտի ձգէ քաղցրութիւն եւ զգայնութիւն։

Նորա Կարապետեան Քուլհաուի Սոնաթինի ֆինալի մէջ ջանաց արտաբերել յստակութիւն, կանոնաւորութիւն եւ մատներու լաւ խաղարկութիւն մը, մինչ Շահէն Եաւրուեանի առիթը տրուեցաւ ցուցաբերելու իր բազմակողմանի կարողութիւնները երկու կտորներու մէջ որոնք կը ներկայացնեն տարբեր նկարագիրներ։ Պախի *Մենուէթ*ը կատարուեցաւ ծանրակշռութեամբ եւ իրեն յատուկ պայծառ պարզութեամբ։ Հելլէրի *Լեռնէն գլորող ձիւնակոյտ*ին մէջ ազատ ասպարէզ գտաւ իր քաջահմտութիւնը (*վիրթիւոզիթէ*)։

Էլիան Ուրվանտ մեծ յառաջդիմութիւն ըրած է։ Իր թեքնիքը դեռ տկար է, այսուհանդերձ Պեթհովէնի *Ռոնտո*ն նուագեց երաժշտականութեամբ եւ հաճելի մատնահպումով։

Մոցարթի այնքան վայելուչ Սոնաթ ան տօն գտաւ լաւ իրագործող մը յանձին Արա Շիրիքճեանի որ կրցաւ յաղթահարել իր զանազան բաժիններու թեքնիք դժուարութիւնները հեշտութեամբ եւ ստեղնաշարի տիրապետումով։

Գալով Հիլտա Սամսոնեանի Քլեմենթիի Սոնաթինին, կրնանք ըսել թէ նուրբ երաժիշտ մըն է ան որուն անսայթաք նուագածութիւնը կը ճոխանայ իր զգայնութեամբ եւ զօրութեամբ։

Թոնի Յովսէփեան յայտագրին առաջին մասը փակեց խիստ համարձակօրէն եւ վեհօրէն լսելի ընելով Պուրկմուլլէրի *Ասպետական*ը։ Հոս եւս մենք ընդնշմարեցինք խելացի եւ ինքնավստահ խաղարկութիւն մը զգալիօրէն յառաջդիմող թեքնիքի մը ընդմէջէն։

Յայտագրին երրորդ մասը կը բաղկանար տարրերէ որոնք որոշ հասունութեան եւ որոշ կարողութեան տիրացած են։ Այլեւս չփնտռենք ժպտուն շնորհալիութիւնը եւ քղանցքի ծփծփանքները աղջիկներու։ Լուրջ են կեցուածքները, ժպիտները անձկոտ, վճռական, հասուն... Ահա «մեծերու» շարքը։

Այս վերջինները աւելի հասուն եւ հետեւաբար զիտակից անտեսանելի սպառնալիքի տակն են բեմախռովքին (թրաք) զոր կարելի է կոչել արուեստա-

գէտներու աղէտը։ Բարեբախտաբար իրենց խաղարկութեամբ տարուած, անոնք կրցին խուսափիլ այս վտանգէն։

Վանիա Շալվարճեան նուագեց դեռատի աղջկան երազուն ռոմանթիզմով Շոփէնի *Մնաք բարով*ի վալսը։ Կրցաւ երանգ եւ շատ զգացում դնել նաեւ սահունութիւն մը որ այնքան իւրայատուկ է Շոփէնի։ Յետոյ *Մազուրքա*ն, յաջող, ճշգրիտ եւ հրապոյրով լեցուն։

Քիչ մը աւելի յանդգնութիւն կը սպասէինք Պեթի Այրասեանէն որ սակայն կրցաւ նկարչագեղ կերպով ու կշռոյթով ներկայացնել Պեթհովէնի *Վեց էքոսէզները*։

Սիրվարդ Յակոբեան մասնաւոր փայլքով մը իրագործեց Հէլլերի *Թարանթէլը*։ Տպաւորիչ էր իր ջինջ նուագածութիւնը, տիրացած է որոշ թեքնիքի եւ ունէր կտորին հասկացողութիւնը, ինչ որ նպաստեց ստեղծելու Նափոլիի յատուկ պարի մթնոլորտը տալով իւրայատուկ կշռոյթը։

Վերա Հացունիի բաժին ինկած էր Մենտելսոնի *Որսորդութիւնը*։ Ան անգամ մը եւս ցուցաբերեց իր հիմնական ամուր յատկութիւնները, լաւ արագութիւն մը, մեծ դիւրութիւն մը եւ զօրութիւն։ Ինչ որ կը պակսի իր մօտ զգայնութիւնն է զոր կը շփոթէ յաճախ քմայքին հետ։

Զուարթ Թաշճեան յուզեց մեզ Շումանի *Ինչո՞ւ* նուագով։ Դաշնակի ստեղներէն ան նրբութեամբ յաւիտենական եւ մարդկային սիրտը մաշեցնող հարցականը դրաւ, հարցական մը որ երեք անգամ կը կրկնուի նոյն երգին մէջ եւ կը մնայ առանց պատասխանի։ Արտայայտութեան նոյն հաւատարմութեամբ այս երիտասարդ արուեստագիտուհին, երեւոյթով այնքան վերապահ, այսուհանդերձ յանդգնութեամբ կրցաւ ապրեցնել *Յնորքներ*ու քիչ մը ծաղրական դիմանկարը։

Դիւրութեամբ եւ կատարելապէս հաւասարակշռուած նուագածութեամբ Մատլէն Արթինեան ներկայացուց Մոցարթի *Ֆանթէզի* ան ռէ մինէօրը։ Երբ հոն կը պակսի քիչ մը կնոջական այն վայելչութիւնը որ յատկանշական է Մոցարթի ոճին մէջ, այսուհանդերձ տիրական թեքնիքի մը արտայայտութիւնը ունեցանք։

Ռամոյի *Յաղթանակը* իր ամբողջ փառքին մէջ արձագանգեց Ալիս Մարգարեանի մատներուն տակ։ Կորովախոհութեամբ ան յաջողեցաւ իր գործիքին մետաղեայ հնչականութեամբ մէջտեղ բերել յարադաշնակի (*քլաւըսէն*) նոթերը։

Պեթհովէնի *Փաթեթիք*ը ոչ միայն տիրաբար այլեւ զգացումով եւ ապրումով վերարտադրեց Շուշիկ Խաչատուրեան, երիտասարդ աշակերտուհի, գրեթէ քաջահմուտ մը, համերգակի (*քոնսերթիսթ*) տարողութեամբ։

Ինչ փոյթ թէ իր նուագածութիւնը քիչ մը բուռն էր, ան լաւագոյն թարգմանը հանդիսացաւ երգահանի կրքոտ տենդին։ Կրցաւ արձակել խորապէս ցաւատանջ նոթեր եւ այսպէսով արդարացնել երգին խորագիրը՝ *Փաթեթիք*։

Գաղտնապահութեամբ եւ վերապահութեամբ Հռիփսիմէ Պալճեան մեզ հրապուրեց իր Շումանի *Թիթեռնիկներ*ով։ Մենք հիացումով գնահատեցինք իր

նուագածութիւնը որ ճոխացած է երանգաւորումներով: Մերթ ընդ մերթ շնորհալի, երբեմն զօրեղ, բայց միշտ հասկացողութեամբ լի: Իր երգը յստակօրէն եւ հարազատօրէն ոգեկոչեց բարեկենդանի զանազան անձնաւորութիւնները ներկայացուած՝ թիթեռնիկներու ձեւով: Կրցաւ վերապրեցնել այս դժուարին եւ սպառիչ կտորը հոգիի տարօրինակ զօրութեամբ:

Ժանէթ Շիրիքճեան, հիանալի այն արուեստագիտուհին զոր ծափահարած ենք յաճախ, Ռախմանինոֆի *Նախերգանք*ին մէջ ի յայտ բերաւ իր բազմակողմանի կարողութեանց մէկ երեսը միայն: Այս անգամ հաճոյքն ունեցանք գնահատելու իր դաշնակին փայլուն եւ զօրեղ երեսը միայն: Ոտնարանի (*փետալ*) իր գործածութիւնը ճարտար էր եւ նպաստեց նուագին տալու անձնական դրոշմ մը - յստակ, կորովի:

Մեր շնորհաւորութիւնները այս երիտասարդ արուեստագէտներուն իրենց հիանալի ճիգին համար եւ գեղեցիկ, գրեթէ անթերի վերարտադրութեան համար: Կը մաղթենք աւելի մեծ յաջողութիւններ:

Շնորհակալ ենք մանաւանդ Օր. Նուարդ Տամատեանի իր թափած ջանքին համար, իր զոհաբերումին եւ համբերութեան զոր այնքան վեհանձնօրէն կ'ընծայէ իր իսկ կազմած դաշնակահարներու յարաճուն ընտանիքին:

Առ ի գնահատութիւն իր մանկավարժական մեթոտին եւ իր մեծ փորձառութեան իրեն յանձնուած է այժմ դաշնակի ընթացքը Պետական Բարձրագոյն Երաժշտանոցին (*քոնսերվաթուար*) մէջ:

Մեր ջերմ շնորհաւորութիւնները:

*Արեւ*, 4 Յուլիս 1960, ԽԶ. տարի, թիւ 12.638, էջ 3

ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

1960-1961 ՏԱՐԵՇՐՋԱՆ

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐ՝
ՇՈՒՇԻԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, ՍՈՆԻԿ ԱՃԷՄԵԱՆ,
ՆԱՅԻՐԻ ՓԱՐԹԱՄԵԱՆ ԵՒ ԱՐԱ ՇԻՐԻՔՃԵԱՆ
Կ՚ԸՆԴՈՒՆՈՒԻՆ ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԸ

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԳՐԱՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ուրախութեամբ կը տեղեկանանք թէ Պետական Երաժշտանոցի բարձրագոյն դասընթացքի մուտքի քննութիւններուն առաջին կը հանդիսանայ Օր. Նուարդ Տամատեանի ամէնէն տաղանդաւոր աշակերտուհիներէն Օր. Շուշիկ Խաչատուրեան։

Օրիորդը իր հինգ տարեկանէն ի վեր եղած է Օր. Տամատեանի ամէնէն յաջող աշակերտուհիներէն մէկը։ Վերջերս ան, Մօ. Լիչաւըրի ղեկավարութեամբ եւ Գաhիրէի սենֆոնիք նուագախումբին հետ նուագած է Մոցարթի Քոնչերթօ ան Ռէ մինէօրը արժանանալով հայ թէ օտար հասարակութեան գնահատանքին։

Կը շնորհաւորենք Օր. Խաչատուրեանը եւ նորանոր յաջողութիւններ կը մաղթենք իրեն։

Նոյնպէս կ'իմանանք թէ նոյն երաժշտանոցի փոքրերու բաժինի մուտքի քննութեանց հարիւր նիշի վրայ 100-ով կը յաջողի Սոնիկ Աճէմեանը (8 տարեկան)։

Փայլուն յաջողութեամբ երաժշտանոց կը մտնեն նաեւ փոքրիկներ Նայիրի Փարթամեան եւ Արա Շիրիքճեան։

Ջերմօրէն կը շնորհաւորենք փոքրիկները եւ իրենց վաստակաւոր ուսուցչուհին։

*Արեւ*, 8 Հոկտեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.720, էջ 4

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԿԵԴՐՈՆ,
ԳԱՀԻՐԷ

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 5 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1960

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

ԾԱՆՕԹ ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ

**ԱՍՏՐԱ-ՎԻԼԸՔԷ ՄԱՐԼԵԱՆ**

**ՊԻՏԻ ՆՈՒԱԳԷ ՀՈԿՏ. 5Ի՝ ՉՈՐԵՔՇ. Ե. Ժ. 8ԻՆ**

**ԳԵՐՄԿՆ. ՍԱՆԹՐԸ ՔԻՒԼԹԻՒՐԷԼ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

**5, ՊՈՒՍԹԱՆ ՓՈՂՈՑ**

Գերմանական «Սանթրը Քիւլթիւրէլ»ի Վարչութիւնը կազմակերպած է իր սրահին մէջ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼ մը՝ Տիկ. Աստրա Վիլըքէ-Մարլեանի համար։

Բոլոր փափագողները կրնան հրաւէր ստանալ ամսոյս 25էն սկսեալ, դիմելով Սրահի Վարչութեան՝ վերեւի հասցէով։

Ամսուան Յայտագիրը ստացողներն ալ պէտք է իրենց հրաւէրները ստանան նոյնպէս Մշակութային Վարչութենէն։

Սրահը բաց է առաւօտները ժամը 8-2։

Կարելի է հեռախօսել՝ 33579 թիւին եւ մէկը ղրկելով ստանալ հրաւիրատոմսը։

Յայտարարութիւն
*Սաւառնակ*, 1 Հոկտեմբեր 1960, 64-րդ տարի, թիւ 28, էջ 8

# ԱՍԹՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆ ԴԱՐՁԵԱԼ ԿԸ ՆՈՒԱԳԷ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

*Գերմանական Մշակութային Կեդրոնէն ստացած ենք հետեւեալ հաղորդագրութիւնը.*

1960-61 ձմեռնային եղանակի առթիւ Գերմանական Մշակութային Կեդրոնը (5, Պուսթան փողոց) հաճոյքն ունի, իր Չորեքշաբթի օրերու ձեռնարկներու շարքին, 5 Հոկտեմբերին ներկայացնելու նուագահանդէսը երիտասարդ դաշնակահարուհի Տիկին Ասթրա Վիլեքէ-Մսրլեանի: Դաշնակահարուհին դուստրն է հայ ծնողներու եւ ծնած է Գահիրէի մէջ: Իսկ գերմանական հպատակութեան տիրացած է 1957-ին, ամուսնութեան միջոցաւ:

Ան մանկութենէն հետեւած է դաշնակի դասընթացքի: Մինչեւ իր 14 տարեկանը աշակերտած է Օր. Նուարդ Տամատեանին, որ ներկայիս կը դասաւանդէ Գահիրէի Պետական Երաժշտանոցին մէջ: Ապա, մէկ տարի աշակերտած է Փրոֆ. Թիկըրմանին եւ անցած է Փարիզ, ուրկէ ստացած է Ազգային Երաժշտանոցի վկայականը: Այնտեղ իր դասատուները կ'ըլլան Փրոֆ. Իվ Նաթ - հանրածանօթ ֆրանսացի մեկնաբան մը 1930-1948-ի շրջանին - եւ Փրոֆ. Ժան Տուայէն, երաժշտանոցին տնօրէնը: Վարժութեան իր ընթացքը կ'աւարտէ Փրոֆեսէօրներ Փիլէյի եւ Մերմանի հսկողութեան տակ, Քոլոնյի մէջ: 1951-ին կը վերադառնայ Գահիրէ եւ պետական երաժշտանոցին մէջ կը սկսի դասաւանդել արդի մեկնաբանութիւնը: Նոյն շրջանին գործունէութեան կը սկսի որպէս դաշնակահարուհի: 1953-ին դարձեալ կ'երթայ Փարիզ ուր կը ստանայ առաջնութիւնը ԻՒՆԵՍՔՕ-ի կազմակերպած մէկ միջազգային մրցանքին: Այսուհետեւ կը շարունակէ իր յաղթական շրջապտոյտը Եւրոպայի, Ափրիկէի եւ Հայիթիի մէջ: Ան ջերմօրէն կ'ընդունուի Ժնեւի, Լոզանի, Լիւսերնի, Փարիզի, Քոլոնյի, Գահիրէի, Պէյրութի, Ատիս Ապապայի եւ Փոր-Օ-Փրենսի մէջ: Յիշեալ քաղաքներու ձայնասփիւռի կայանները զինք կ'ընդունին մենակատարի պաշտօնով:

Այսօր, Տիկ. Վիլեքէ-Մսրլեան դարձեալ հիւրաբար, կը գտնուի քաղաքս: Իր արտակարգ յաջողութիւններէն ետք, ան արժանի է Գահիրէի երաժշտասէր ամբողջ հասարակութեան ուշադրութեան:

Հոկտեմբեր 5-ի իր յայտագիրին մէջ տեղ են գրաւած Հէնտըլի, Մոցարթի, Շուպերթի, Շոփէնի եւ հայ երգահան Խաչատուրեանի գործերը:

«Երկար ատենէ ի վեր չեմ վայելած նման ջերմ մեկնաբանութիւն մը», կը գրէ գահիրէաբնակ երաժշտական քննադատ մը՝ շնորհալի արուեստագիտուհիին մասին:

Այս երեկոյթին հրաւիրուած հանրութիւնը անմոռանալի երեկոյթ մը պիտի անցընէ երիտասարդ վիրթիւոզ Ասթրա Վիլեքէ-Մսրլեանի հետ:

Միայն կը խնդրուի որ տոմսերը, որոնք ձրի են, սկիզբէն պահանջուին

Գերմանական Մշակոյթի Կեդրոնի քարտուղարութենէն:

*Արեւ*, 1 Հոկտեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.714, էջ 3

## ԱՍՏՂԱ ԿԸ ՆՈՒԱԳԷ

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ

Պատահական չէր որ Գահիրէի Գերման Մշակութային Կեդրոնի տնօրէնութիւնը իր ձմեռնային եղանակի գեղարուեստական երեկոյթներու շարքին առաջինը վստահած էր ծանօթ եւ սիրուած դաշնակահարուհի Աստղա Վիլէքէ-Մսրլեանի:

Երկար բացակայութենէ մը վերջ Աստղա այդ երեկոյ մեզի կը վերադառնար իբրեւ հասուն դաշնակահարուհի մը, խնամուած, այլազան եւ ճոխ բովանդակութեամբ ծրագրով մը, ուր դասական երգահաններու գլուխ-գործոցներու կողքին կ'երեւային հայ երգահաններու լաւագոյն ստեղծագործութիւնները:

Մեր կամքէն անկախ պատճառներով եթէ զրկուեցանք յայտագրի երկրորդ մասը վայելելէ, այսուհանդերձ առաջին մասին ունկնդրութիւնը մեզի իրաւունք կու տայ մեր տպաւորութիւնները արտայայտել նուագահանդէսի մը մասին որուն համար համոզուած ենք, որ ամենախստապահանջ երաժշտական քննադատն անգամ բաւարարութիւն պիտի ստանար:

Յայտագրի բազմաճ համարներու կատարումներու ամբողջ տեւողութեան - ինչ որ ամէնէն աւելի մեր ուշադրութիւնը գրաւեց եւ հմայեց մեզ - զգայուն արուեստագէտ-դաշնակահարուհիի նուագածութեան կանոնաւորութիւնն ու յստակութիւնն էին, որքան երաժշտական՝ նոյնքան թեքնիք անկիւնէն դիտուած:

Իր մօտ չնկատեցինք կասկածելի թուող հնչիւն մը, հրմշտկուած երաժշտական անցք մը եւ կամ վրիպած եւ անկանոն մեղեդիական գիծ մը: Ամէն ինչ իր տեղին էր:

Աստղա կարողացաւ խորունկ զգացումով արտայայտել երաժշտական ամենանուրբ երանգները, լաւ պատրաստել իր *քրէշէնտօ*ները, զանոնք կարենալ «պայթեցնելու» համար անհրաժեշտ վայրկեանին:

Թերեւս ոմանք առարկեն ոտնակալներու եւ *ռիւպաթօ*ներու ազատ կամ չափազանց գործածութեան մասին. ինչ փոյթ, քանի որ Աստղա կրցաւ ներկայացուած ստեղծագործութիւններու ոգին առաւելագոյն կերպով պահպանել:

Այս ընդհանուր նկատումներէն վերջ անցնինք ծրագրին:

Հէնտըլի դանդաղ եւ վեհ ընթացք ունեցող *Փասաքայ*ը իր «հաստատուն» ոճին բերմամբ կը պահանջէր նուագողին կողմէ կատարողական պարզութիւն եւ

միեւնոյն ատեն թեքնիք ճկունութիւն՝ կարենալ արժեւորելու համար զարդախաղերու այլազանութիւնը, ինչպէս նաեւ փոփոխակներու հնարամիտ պերճութիւնը: Աստրա իր կատարողական վստահութեամբ կրցաւ իր նուագի հմայքին տակ պահել ունկնդիրները:

Յաջորդ երկը՝ Մոցարթի սոնաթը (լա մինէօր) որ իր ողբերգական նկարագրին պատճառաւ զարմանալիօրէն փոփոխութիւն մը կը մտցնէր երգահանին ստեղծագործութիւններուն մէջ թէ՛ իր ոճով եւ թէ իր գաղափարաբանութեամբ, ներկայացուեցաւ ամենահամոզիչ կերպով: Շնորհիւ ներշնչեալ դաշնակահարուհիին՝ մենք զգացինք այդ երկին մելամաղձոտ քաղցրութիւնը որ արդէն կանխազուշակել կու տար վիպապաշտական ջերմութիւնը:

Ի՜նչ թարմութիւն կար այդ թափանցիկ հնչականութիւններուն մէջ:

Աստրա, Շուպերթի *Վանտըրը Ֆանթէզի*ի հոյակապ կատարումով մեզի ապրեցնել տուաւ նուագահանդէսին ամենայիշատակելի վայրկեաններէն մի քանին: Շնորհալի արուեստագիտուհին կարողացաւ տալ պերճ երանգներով առլցուն հագներգական բնոյթով երկին ամբողջ նկարագիրը:

Արդարեւ, կատարումը այնքան գեղեցիկ էր եւ այնքան կատարեալ եւ յուզիչ՝ որ կարծես դաշնամուրը կ՚անհետանար, տեղի տալով համակ երաժշտութեան, որ այդ վայրկեանին կ՚իշխէր եւ ինքզինք կը պարտադրէր յափշտակուած ունկնդիրներուն: Վստահաբար սրահէն ներս տիրող հեղձուցիչ տաքը եւ դաշնակահարուհիին տրամադրուած անհաճոյ հնչականութեամբ դաշնամուրը շատ բան պակսեցուցին ունկնդրութեան հմայքէն:

Ամբողջ սրտով կը շնորհաւորենք զինք եւ վստահ ենք թէ իր բարեացակամութիւնը չարաչար գործածելու մեղքով պիտի չդատապարտուինք եթէ Գահիրէի հայ հասարակութեան բաղձանքին թարգման ըլլալով խնդրէինք իրմէ որ կրկին ելոյթ մը ունենար, այս անգամ հայկական սրահէ մը ներս, հոգ չէ թէ նոյն ծրագրով:

*Արեւ*, 15 Հոկտեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.726, էջ 2

## ԱՊՐԻ՛ ԱՍՏՐԱՆ

ԱՐՄԷՆ ՏԱՏՈՒՐ

Ջորս երկար տարի ետք, Աստրան տուաւ այնքան սպասուած դաշնակի իր ունկնդրութիւնը: Չորեքշաբթի, 5 Հոկտեմբեր կ. ե. ժամը 8-ին՝ Գերմանական Սանթրը Քիւլթիւրէլ Սրահին մէջ, ասեղ ձգելու տեղ չկար եւ շատ շատեր գոց գտան դրախտին դուռը իրենց առջեւ...:

Հեղձուցիչ տաքը, նեղ սրահը, ներկաներուն անհամբեր ու անհատնում փփսուքը, պահ մը բաղնիքի վերածեր էին այդ աղուոր տեղը։ Մասամբ անխուսափելի էին այս բաները երբ ժամեր առաջ լաւագոյն աթոռները գրաւելու համար հոն էինք արդէն։

Շնորհալի դաշնակահարուհիին մոգական մատներուն առաջին հպումովը պայծառացաւ երկինքն ու խոր, երկիւղած լռութիւն տիրեց։ Ինք բերաւ մեզի զովութիւն մը որ թափանցեց մեր մէջ, հասաւ մինչեւ մեր հոգիին խորերը։ Կարծէք թէ աղօթքի եկեր էինք, հրեշտակներուն երկնային մեղեդին կը լսէինք, ոսկի հեղեղ մը լոյսի ու բոյրի կամ թէ առուակի մը բիւրեղ ջուրերէն ծնած երգն ու երանգը, աստղերէն քաղուած շողեր՝ անմահութեան դրոշմը իրենց մէջ։ Ծաղկաւէտ դաշտերու կանաչին վրայ ձիւնաթոյր թիթեռնիկներու ամբողջ քնքշութիւնը կար աստուածային մատներուն մէջ, որոնք պարի էին ելեր ստեղնաշարին վրայ…։

Այսպէս՝ փառաւորուեցան Հանտելն ու Մոցարդը, Շուպերթն ու Շոփենը եւ այդ ամենազօր մարգարէներու եւ սուրբերու հոյլին հետ՝ հայ Համաստեղութենէն Արամ Խաչատուրեանը։

Պապաջանեան՝ յայտագիրէն դուրս չմնաց եւ հրամցուեցաւ իբր «պաքշիշ»՝ որպէսզի ծափերը վերջ գտնեն…։ Բայց ծափերը պիտի շարունակուին, հոս, Աղեքսանդրիա, Պէյրութ, օր մըն ալ անշուշտ Հայրենիքի մէջ, ամէն, ամէ՛ն տեղ՝ ուր պիտի երեւի Աստրան, ո՛ր երկինքի տակ ալ ըլլայ։ Կասկած չկայ թէ Աստրա վիրթիւօզ է։ Ան գիտէ նուաճել իր ունկնդիրները, տիրել անոնց հոգիներուն վրայ եւ պաղ կամ տաք օդը վերածել գարնանային զո՛վ զեփիւռի…։

Կը շնորհաւորենք Տիկինը իր կտրած ճամբուն համար որ շքեղ, լայն եւ լուսաւոր է։ Պատիւ հա՛յ ժողովուրդին որ կը ծնի միշտ աստղեր ու Աստրաներ։

Ծառը պտուղէն կը ճանչցուի…։

*Սաւառնակ*, 15 Հոկտեմբեր 1960, 46-րդ տարի, թիւ 29, էջ 5

ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ
ՄԻՈՒԹԵԱՆ ՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 3 ՆՈՅԵՄԲԵՐ 1960

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՂԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ





Յայտարարութիւն
*Արեւ*, 2 Նոյեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.741, էջ 3

## ԱՍՏՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆ ԿԸ ՀՄԱՅԷ ՆԱԵՒ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

ԹՂԹԱԿԻՑ

Հինգշաբթի, 3 Նոյեմբեր 1960 երեկոյեան ժամը 8.30-ին Տիգրան Երկաթ Հայ Մշակութային Միութեան սրահին մէջ, Աղեքսանդրիոյ Գերմանական Մշակութային Կեդրոնի համագործակցութեամբ, տեղի ունեցաւ շնորհալի արուեստագիտուհի Տիկ. Աստրա Վիլեքէ-Մսրլեան դաշնակի նուագահանդէսը:

Եգիպտահայութեան քաջածանօթ արուեստագիտուհին՝ մօտ երկու ժամերու ընթացքին, ընտրեալ հասարակութեան մը ներկայութեան նուագեց Մոցարթէն, Շուպերթէն, Շոփէնէն, Ա. Խաչատրեանէն եւ «պիս»-երուն Պապաջանեանէն դժուարին կտորներ, հայ եւ օտար ունկնդիրներէ խլելով որոտընդոստ ծափեր:

Տիկին Աստրա իր մեկնաբանութեան ընթացքին ցոյց տուաւ խոր հմտութիւն, կատարելագործուած թեքնիք եւ նկատառման արժանի համեստութիւն մը, որ միացած իր բարձրարժէք հասկացողութեան՝ զինք կը բարձրացնէ արուեստի աշխարհին մէջ մասնաւոր մակարդակի մը վրայ, որ խիստ պատուաբեր է:

Անտարակոյս, յարգելի Տիկինը իր ցեղային արժանիքներուն վրայ աւելցուցած է նաեւ իր տաղանդին անուրանալի շնորհը որուն միջոցաւ հիացումի տակ պահեց բերնէ բերան լեցուած սրահին ունկնդիրները:

Շնորհալի դաշնակահարուհիին խլած բազմաթիւ ծաղկեփունջերը դոյզն ցոյց մը եւ գնահատանքի արդար արտայայտութիւն մըն էին իր ունկնդիրներէն: Նկատելի էր նաեւ որ Տիկին Աստրա ապրումով եւ վերացումով նուագեց ամէնէն դժուար իրագործելի երաժշտական կտորները:

Հանդէսի աւարտին Պ. Արշաւիր Կէօնճեան հայերէն եւ գերմաներէն լեզուներով ներկայացուց արուեստագիտուհին եւ դրուատիքը ըրաւ անոր արուեստին: Ապա տեղի ունեցաւ ընդունելութիւն մը որուն ընթացքին գործադրուեցաւ յանպատրաստից գեղարուեստական յայտագիր մը, երգերով եւ նուագով:

Միշտ կեցցեն մեր հայ արուեստագէտները, որոնք արուեստը տարածելու նուիրական կոչումը ունին:

*Արեւ*, 7 Նոյեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.745, էջ 4

# ԱՍՏՂԱՅԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ

Մ. ՔԻՐԲԷԼԵԱՆ

Գահիրէէն ետք, յաղթական Աստղային ակնդետ կը սպասենք Աղեքսանդրիոյ մէջ։ Բարեբախտաբար մեր սպասումը երկար չեղաւ եւ չուշացանք հիացիկ հաճոյքով մը վայելելու միջազգային համբաւի արժանացած դաշնակահարուհի Տիկ. Աստղա Վիլէքէ-Մսրլեանը։

Արդարեւ՝ Հինգշաբթի 3 Նոյեմբեր 1960, երեկոյեան ժամը 8.30-ին, հայ թէ օտար արուեստասէր միջազգային յոգնախառն բազմութեան մը ներկայութեան, Տիգրան Երկաթ Հայ Մշակութային Միութեան հանդիսասրահին մէջ, հայ տաղանդաւոր արուեստագիտուհին տուաւ իր դաշնակի նուագահանդէսը, զոր կազմակերպած էին Դաշնակցային Գերմանիոյ տեղւոյս Մշակութային Կեդրոնը եւ Տիգրան Երկաթ Հայ Մշակութային Միութիւնը։

Յայտագիրը կազմուած էր անուանի երգահաններու՝ Հէնտըլի, Մոցարթի, Շուպերթի, Շոփէնի, Ա. Խաչատուրեանի եւ Առնօ Պապաջանեանի գլուխ-գործոցներէն, բազմազան եւ բազմագոյն ըլլալու առաւելութենէն բացի, ունէր խորհրդաւոր թելադրականութիւն մը, որ կ'արտայայտուէր արուեստագիտուհիին խօսուն կատարողականութեամբ, երբ ան՝ արուեստի, մթնոլորտի եւ ըմբռնումի երկու հարիւր տարուան (1700-1900) ժամանակաշրջան մը, Հէնտըլէն մինչեւ Խաչատուրեան, աստիճանական ներամփոփ եւ խորայոյզ զգայութեան մը ապրումով, ապրեցուց ունկնդիր հասարակութիւնը։

Նուագահանդէսի ամբողջ տեւողութեան, Աստղա մնաց տիրապետող, չունենալով ընկրկումի ոչ մէկ պահ։

Եօթը տարեկանին սկսնակ սիրահար աշակերտուհի մը դաշնակի, յետոյ յամառ եւ յարատեւ աշխատանքէ մը ետք ծափահարուած Եւրոպայի երաժշտական բազմաթիւ օճախներու մէջ, այսօր Աստղա Վիլէքէ-Մսրլեան, երբ փառքի ճամբու մը ծիրանաւոր անցորդն է, քանքարաւոր հայուհի մըն է, մա՛նաւանդ հպա՛րտ իր հայկականութեամբ։ Յիշելու համար շատերուն մէջ մէկը, ըսենք թէ իր մոգական մատներուն հպումով, կանացի նուրբ եւ սրտայոյզ գեղեցկութեամբ մը ներկայացուեցաւ Մոցարթի Սոնաթը (լա մինէօր)։ Որքա՜ն երանգ, այլ մանաւանդ որքա՜ն քնքշութիւն, Աստղայի մեկնաբանական արուեստին մէջ։

Արամ Խաչատուրեանի ստեղծագործութեանց հրաշունչ եւ խրոխտ նուագէն ետք, խանդավառ եւ Աստղայի բարձր արուեստէն գերուած հասարակութիւնը անընդմէջ եւ որոտընդոստ ծափահարութեամբ ստիպեց զինք նուագելու նաեւ Պապաջանեանի հայրենաշունչ մէկ կտորը։

Տիկին Աստղա Վիլէքէ-Մսրլեան բարձրարուեստ դաշնակահարուհի մըն է, արժանի՛ ամենուն գնահատանքին, ամենո՛ւր։

*Սաւառնակ*, 19 Նոյեմբեր 1960, 46-րդ տարի, թիւ 34, էջ 4-5

ԹԷՔԷԵԱՆ ՄՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 10 ՆՈՅԵՄԲԵՐ 1960

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

## ԳԱՀԻՐԷԻ ԵՒ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԻՐ ՅԱՂԹԱԿԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍՆԵՐԷՆ ԵՏՔ

# ԱՍՏՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄԸՍՐԼԵԱՆ ԿԸ ՆՈՒԱԳԷ

**ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ "ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ"ԻՆ ՄԷՋ**
**ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՆՈՅԵՄԲԵՐ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9,15ԻՆ**

Տոմսերը ստանալու համար դիմել սրահի քարտուղարութեան

## ՅԱՅՏԱԳԻՐ

*ՀԷՆՏԷԼ* — *Փասաքալ*
*ՊԷԹՀՈՎԷՆ* — *Սոնատ օփ. 31 թիւ 2 ռէ մինէօր*
*ՊԱՊԱՃԱՆԵԱՆ* — *Վաղարշապատի պարը, Էմփրոմփթիւ*
*ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ* — *Մանկական պատկերներ*
*Վալս քափրիս*
*Պար*
*Թոքաթա*

Յայտարարութիւն
*Արեւ*, 9 Նոյեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.747, էջ 4

## ԱՍՏՂԱ ԴԱՐՁԵԱԼ ԿԸ ՀՄԱՅԷ ԵՐԱԺՇՏԱՍԷՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ իր զոյգ ելոյթներէն ետք, կասկած չունէինք թէ անգամ մը եւս Աստղա պիտի գար նուաճել ունկնդիր հասարակութիւնը:

Երէկ, պաշտօնական կարգ մը անձնաւորութեանց, երաժշտական քննադատներու եւ երաժշտասէր հասարակութեան մը ներկայութեան, որոնք հաւաքուած էին Հայ Գեղարուեստասիրաց Միութեան սրահին մէջ, Աստղա Վիլեքէ-Մսրլեան տուաւ իր հրաժեշտի համերգը, մեկնելէ առաջ Միջին Արեւելքի միւս մայրաքաղաքները, ուր եւս ելոյթներ պիտի ունենայ յառաջիկայ շաբաթներուն ընթացքին:

Յայտագրին առաջին մասը գրաւած էին Հէնտըլ, Պեթհովէն եւ Պրահմս: Կատարողական բարձր արուեստով նուագեց ըսելը, անորոշ որակում մը պիտի ըլլայ այնքան արտայայտիչ ու խօսուն նուագածութեան համար, հետեւաբար, մենք իր արուեստին մասնայատկութիւններուն մասին արտայայտուելու առիթը պիտի վերապահենք երաժշտական մարզի մէջ հանգամանք ներկայացնող անձերու:

Յայտագիրին երկրորդ մասը նուիրուած էր միջազգային համբաւի տիրացած հայ յօրինողներու, Խաչատուրեանին եւ Առնօ Բաբաջանեանին:

Ժողովուրդի բուռն փափաքին վրայ, տեղի տալով ծափերու դիմաց, Աստղա ստիպուեցաւ երկու անգամ բեմ վերադառնալ եւ Շոփէնէն կտորներ նուագել:

Ջերմօրէն կը շնորհաւորենք արուեստագիտուհին մեզի պարգեւած գեղարուեստական բարձր վայելքին համար եւ յաջողութիւն կը մաղթենք իր շրջապտոյտին համար:

*Արեւ*, 11 Նոյեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.749, էջ 1

## ԱՍՏՂԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆ

ԱՆԹՈՒԱՆ ՃԵՆՆԱՌԻ

Առանց շռնդալից ծանուցումներու, եգիպտահայ արուեստագէտուհի մը, խորապէս երաժիշտ, վերջերս, վարպետութեամբ եւ վայելչութեամբ իր դաշնամուրային արուեստը պարտադրեց մեզի նախ Գերման Մշակութային Կեդրոնին եւ ապա, անցեալ Հինգշաբթի օր, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան սրահին մէջ:

Տիկ. Աստղա Վիլիքէ-Մսրլեան իր սկզբնական (ամենակարեւոր) դաշնամու-

բային կազմաւորումը կը պարտի գերազանց ուսուցչուհիի մը՝ Նուարդ Տամատեանին։ Շարունակելէ ետք իր ուսումը Փրոֆ. Թիկըրմանի մօտ, ան կը մեկնի Փարիզ ուր կը վկայուի տեղւոյն երաժշտանոցէն։

Աստրա քանիցս մասնակցած է միջազգային դաշնամուրային մրցումներու որոնցմէ Իւնեսքօ-ի կազմակերպածին՝ 1954-ի թուականին, շահելով բազմաթիւ մրցանակներ։ Ապա ուրեմն, իբրեւ մենակատար դաշնակահարուհի իրեն համար կը սկսի շրջագայութիւններու շարք մը որ զինք կը տանի Եւրոպայէն Ասիա եւ մինչեւ Ամերիկա։

1957-էն ի վեր ամուսնացած գերման դիւանագէտի մը հետ, Աստրա կու գայ իր կարճ արձակուրդը անցընել իրեններուն մօտ։

Իր տուած վերջին երկու նուագահանդէսները որոնք բոլորին ուշադրութիւնը գրաւեցին, արդէն լաւ բան կ'ըսեն իր կենսունակ արուեստի տարողութեան, անմիջականութեան եւ արդէն իսկ գերազանց թեքնիքին մասին։

Տիկ. Աստրայի արուեստը միշտ շարժման մէջ է զմայլելի ազնուութեամբ մը, ջերմ վիպապաշտութեամբ առլցուն այդ արուեստը ունի յոյժ զարգացած բանաստեղծական ներքին իմաստ մը առանձնապէս հրապուրիչ կիսերանգներ պարունակող։

Պրահմսի *Հագներգութիւն*ը, ինչպէս նաեւ Խաչատուրեանի *Մանկական պատկերներ*ը կատարուեցան առաւելագոյն պայծառութեամբ եւ երանգներով։

Մենք զգացինք ամենամաքուր երաժշտականութեամբ դրոշմուած մտախոհ արուեստագիտուհիի մը վճիտ նուրբ եւ զգայուն նուագածութիւնը։

Յայտագրէն դուրս իր Շոփէնի ոգեկոչումը նոյնքան եթերային էր պահանջուածքէն ոչ աւելի «վարանոտ»։

Ատոր փոխարէն Հէնտըլի *Փասաքայ*ը ինչպէս նաեւ Պեթհովէնի երկրորդ Սոնաթը մեզի թուեցան մակարդակով աւելի համեստ։ Իր նուագածութեան մէջ նկատեցինք աւելորդ քանի մը պերճանքներ հոն ուր պէտք էր բացարձակ դասականութիւն մը. ուրեմն, պիտի չվարանինք զինք զգուշացնել դասականներու ստեղծագործ երաժշտական նախադասութիւններու խանդագին վերացումի ձգտումին։

Սակայն այդ արուեստագիտուհիին արուեստը այնքան պէսպիսի գեղեցկութիւններ կը պարունակէ որ լեզուական քանի մը շեղումներու համար պահանջկոտ չենք կրնար ըլլալ։

Այդ երեկոյ, փորձելով վերահաստատել այն մթնոլորտը որուն մէջ այդ երկերը յղացուած էին, Տիկ. Աստրա մեզի երեւցաւ աւելի վիպապաշտ կատարողի մը տիպարով, ինչպէս որ վերը նշած էինք։

Արդէն, ծայրագոյն արագութիւններու մէջ իր նուագածութեան յստակութիւնը, իր հնչականութեան գեղեցկութիւնը ուժականութեան բոլոր աստիճաններուն, նաեւ կատարումի իր ունեցած ինքնավստահութիւնը մեզի կը ներշնչեն

իրեն հանդէպ միմիայն հիացում եւ յարգանք, մանաւանդ որ իր ընթացքը համակրելի է եւ համեստ:

Արդար յաջողութիւն մը վարձատրեց իր երկու նուագահանդէսները:
(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 12 Նոյեմբեր 1960)

*Արեւ*, 17 Նոյեմբեր 1960, ԽԶ. տարի, թիւ 12.754, էջ 3

## ԱՍՏՂԱ ՎԻԼԷՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԷՍԻԹԱԼԸ

ԱՆԹՈՒԱՆ ՃԷՆՆԱՌԻ
ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ՝ Բ. ՆԱԶԱՐԵԱՆ

Առանց աղմկալի ծանուցումներու, այս տեղէն մեկնած արուեստագիտուհի մը եկաւ այս վերջերս պարտադրել իր դաշնամուրային արուեստը, նախ Գերմանական Մշակոյթի Կեդրոնին, յետոյ Հայ Գեղարուեստասիրաց սրահին մէջ: Իբրեւ դաշնակահարուհի Տիկին Աստրա Վիլէքէ-Մսրլեան կը պարտի իր առաջին ձեւակերտումը - ամէնէն կարեւորը - պատուական դասատուի մը՝ Փրոֆ. Օրիորդ Տամատեանի, ապա կ'անցնի Փրոֆ. Թիկրմանին, որուն ձեռքին տակ կը մնայ միայն մէկ տարի եւ կը մեկնի Փարիզ, ուր ձեռք կը բերէ Ազգային Քոնսերվաթուարի վկայականը. անկէ յետոյ կը խլէ քանի քանի մրցանակներ՝ միջազգային մրցումներու, որոնցմէ նշանակելին է Իւնէսգոյինը՝ 1954-ին. հուսկ ուրեմն կը նետուի միջազգային քօնսերթիսթի ասպարէզին մէջ, որ կը տանի զինքը Եւրոպայէն Ասիա, հասցնելով մինչեւ Ամերիկա: 1957-ին կ'ամուսնանայ երաժշտասէր գերման դիւանագէտի մը հետ, իսկ այժմ եկած է իրեններուն մօտ կարճ արձակուրդ մը անցընելու:

Ինչ կը վերաբերի իր երկու ռէսիթալներով գրաւած ուշադրութեան, ատիկա հաստատապէս կ'ապացուցանէ ընդարձակութիւնը իր ուղիղ՝ ողջ արուեստին, որ արդէն գերիվեր է թեքնիքով: Տիկին Վիլէքէ-Մսրլեանի արուեստը իւրայատուկ չքնաղ շուքով մը կը շարժի կիզիչ վիպականութեամբ մը առլցուն, այդ արուեստը ունի շատ զարգացած բանաստեղծական մտերմիկ իմաստ մը՝ յատկապէս հմայիչ կիսագոյներով:

Պրահմսի *Հագներգութիւն*ը (Ռափսոտի), ինչպէս եւ Ա. Խաչատուրեանի *Մանկութեան նկարներ*ը՝ կատարուեցան գունագեղ բազում երանգներով: Յստակ, նրբին եւ զգայնիկ նուագածութեան մէջ զգալի էր ամենազուտ երաժշտականութիւնով դրոշմուած խոկունութիւնը: Արտաքոյ յայտագրի Շոփէնի իր ոգեկոչումը այնքան եթերային էր, այնքան համոզիչ, եւ մանաւանդ պէտք եղածէն ոչ աւելի «վարանոտ», մինչ Հէնտելի *Բասագայեա*ն, ինչպէս եւ Պեթօվէնի թիւ 2

օպ. 31 Սոնաթան՝ մեզի երեւցան աւելի համեստ աստիճանի վրայ. մենք նշեցինք քանի մը աւելորդ նրբութիւններ հոն՝ ուր կը պահանջուի ամենախիստ դասականութիւնը, ուստի չենք վարանիր զգուշացնելու շնորհալի դաշնակահարուհին դասական գործերու մէջ ստեղծական որոշ նախադասութիւններ՝ երբեմն վերացնելու իր ունեցած հակումին դէմ։

Այսու ամենայնիւ լեզուական քանի մը զանցառութիւններու համար կարելի չէ խստութիւն ընել այս արուեստագիտուհիին հանդէպ, քանի որ այսքան այլազան գեղեցկութիւններով օժտուած է իր արուեստը, եւ մինչ անցեալ իրիկուն ինք կը ջանար մեզի համար վերայարդարել այն մթնոլորտը որուն մէջ ստեղծուած են այդ երաժշտական երկերը, զանոնք ստեղծող յուզականութեան կամ զգացումին ընդմէջէն, Տիկին Աստրա Վիլէքէ-Մսրլեան մեզի երեւցաւ իբրեւ վիպականութեան մեկնաբանողի տիպարը, ինքն իսկ, ինչպէս որ շեշտեցինք վերը։

Ասկէ զատ, իր արտաբերութեան յստակութիւնը ծայրագոյն արագութեան մէջ, իր հնչականութեան գեղեցկութիւնը՝ ուժական ամէն աստիճանի վրայ, զարնուածքի նրբութիւնը եւ զանոնք իրականացնող վստահութիւնը հիացում ու յարգանք կ՚ազդեն՝ առաւել եւս իր համեստ ու համակրելի վերաբերումով, այնպէս ալ մեր մէջ անցուցած իր կարճ ժամանակամիջոցին մեզի տուած երկու ռէսիթալներուն արժանի վարձատրութիւնը եղաւ լաւագոյն եւ նշանակելի յաջողութիւնը։

(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 12 Նոյեմբեր 1960)

*Սաւառնակ*, 19 Նոյեմբեր 1960, 46-րդ տարի, թիւ 34, էջ 4

ՌՈՒԵՍԹ ՀՈԼ, ՊԷՅՐՈՒԹ

**ՇԱԲԱԹ, 26 ՆՈՅԵՄԲԵՐ 1960**

ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ
ԱՍԹՂԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ
ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳԸ

# ԼԻԲԱՆԱՆԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԸ ԱՍՏՂԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Պարզութիւն, ինքնատպութիւն, խորութիւն եւ իւրայատուկ քնքշութիւն խորհրդանշեց Տիկին Աստղա Վիլեքէ-Մսրլեանի դաշնակի ռեսիթալը, որ տեղի ունեցաւ Շաբաթ 26 Նոյեմբեր 1960-ին, Ուեսթ Հոլի սրահին մէջ: Տիկ. Աստղա Վիլեքէ-Մսրլեան մեզի ներկայացաւ որպէս բարձր թեքնիքի հասած արուեստագիտուհի մը, որ միաժամանակ հասած է իր նուագած կտորներէ իւրայատուկ ոճով մեկնաբանելու բարձրութեան: Սակայն թէ որքանով յաջողեցաւ ան այս վերջին մարզին մէջ, կը մնայ հարցական: Իր խիզախութիւնը, կը հանդիսանայ այս մարզէն ներս եւս նոր բարձունքներու նուաճման գրաւականը:

Իր յայտագիրը ձեւով մը ստացած էր ամփոփ մէկ ուրուագիծը երաժշտութեան հարիւրյիսուն տարիներու պատմութեան: Հեղինակներու ծննդեան ժամանակագրական կարգով դասաւորուած յայտագիրին մէջ, ան նուագեց Հէնտըլի, Մոցարթի, Շուպերթի, Շոփէնի եւ Ա. Խաչատուրեանի գործերէն: Առանձնապէս յաջող էր Շոփէնի գործերուն մեկնաբանութիւնը, որուն մէջ շնորհալի արուեստագիտուհին դրաւ Շոփէնեան խորութիւնը:

Տիկին Մսրլեան իր ռեսիթալով հանդիսականներուն փոխանցեց իր արուեստը, սակայն հանդիսականները ժլատ գտնուեցան իրենց գնահատանքի բաժնին մէջ: Յայտագիրի վերջին կտորէն, Ա. Խաչատուրեան *Թոքքաթա*էն ետք, ծափերու վրայ նուագուած Ա. Պապաջանեանի *Վաղարշապատի պար*ը հազիւ կրնար մեղմել հանդիսականներու մինչ այդ ցուցաբերած անարդար սառնութիւնը:

Տիկին Մսրլեան սփիւռքահայ արժէք մըն է որ արժանի է անվերապահ գնահատանքի եւ քաջալերութեան:

(*Յառաջ*, Պէյրութ)

*Սաւառնակ*, 24 Դեկտեմբեր 1960, 46-րդ տարի, թիւ 37, էջ 4

## ԱՍՏՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԵՍԻԹԱԼԸ ՔԱՋՈՒԹԻՒՆ ԵՒ ՅԱՌԱՋԴԻՄՈՒԹԻՒՆ ՄԸՆ ԷՐ

Ե. Ա.

Երիտասարդ դաշնակահարուհի Տիկ. Աստրա Վիլեքէ-Մսրլեան, յանդգնութիւն ունեցաւ, Նոյեմբեր 26-ի Շաբաթ երեկոյեան, նուագահանդէս մը տալու, երբ նոյն շաբթուան ընթացքին արդէն երկու միջազգային չափանիշով արուեստագէտներ հրապարակ իջած էին, մին՝ Ռաֆֆի Պետրոսեան, իսկ միւսը Թաթիանա Նիքոլայեվա, իրենց դաշնակի ռեսիթալները տալու։

Աստրա Վիլեքէ-Մսրլեան, ուժեղ եւ զուարթ կերպով, յստակութեամբ եւ վայելչօրէն նուագեց բոլոր կտորներն ալ։ Անցնող հինգ տարիներէ վերջ (երբ ան առաջին նուագահանդէսը տուած էր), զգալի յառաջդիմութիւն մը արձանագրած է հայազգի այս արուեստագիտուհին, որ կը նուագէ ինքնավստահութեամբ եւ պարզութեամբ, պարզութիւն մը՝ որուն կարեւորութիւնը քիչ երիտասարդներ գիտեն այսօր։ Մենք իր մօտ գտանք որակ մը, որ արդէն յայտնուած էր իր առաջին նուագահանդէսին, այն է՝ զգայնութիւն եւ բանաստեղծութիւն։

Այս երկու գիծերը, որոնք էական արժանիքներն են այս արուեստագիտուհիին, ցուցադրուեցան յայտագրին ամբողջ տեւողութեան, ուր Մոցարթ եւ Շուպերթ ընկերացան Շոփէնի եւ Խաչատուրեանի։

Խաչատուրեանի երաժշտութիւնը, որ ժողովրդական նկարագիր ունի, Աստրայի կախարդիչ մատներուն հպումներով՝ մեկնաբանուեցան սքանչելի կերպով։

Տիկին Աստրա մեծ Շոփենի փոթորկոտ եւ որոնումներով պայթող եղանակներուն մեկնաբանիչը չէ, այլ՝ ընդհակառակն, երբ ան վերաբերի անոր թեթեւ եւ երազային գործերուն, Շոփեն իրեն համար կը դառնայ առաւել մտերիմ։ Ինչպէս անոր երկու *Վալսերը*։

Տիկ. Աստրա Վիլեքէ-Մսրլեան երիտասարդ դաշնակահարուհի մըն է՝ փափուկ զգայնութեամբ, բանաստեղծական դրոշմով։

Իրեն կը մաղթենք յաջողութիւններ եւ նոր նուաճումներ։

(*Այգ*, Պէյրութ)

*Սաւառնակ*, 24 Դեկտեմբեր 1960, 46-րդ տարի, թիւ 37, էջ 4

## ԱՍՏՂԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՌԵՍԻԹԱԼԸ

Օ. ԱՍԱՏՈՒՐԵԱՆ

Սփիւռքահայ երաժշտական կեանքին մէջ մատի վրայ կը համրուին համերգային բարձրորակ մենակատար դաշնակահարները։ Տնտեսական եւ մշակութային անբարենպաստ պայմաններու մէջ շատ քիչեր յանդգնութիւնը կամ բախտաւորութիւնը ունին հասնելու դաշնամուրային արուեստի գագաթներուն։

Այդ բախտաւորներէն է Տիկին Աստղա Վիլէքէ-Մսրլեան, որ Ուէսթ Հօլի սրահին մէջ տուաւ փայլուն նուագահանդէս մը, արժանանալով մեր երաժշտասէր հասարակութեան ընտրանիի գնահատանքին։ Զինք լսելու պատեհութիւնը ունեցած էինք վեց տարի առաջ, երբ հրապարակ կու գար իր համերգային առաջին ելոյթներով։ Նորահաս, օժտուած արուեստագիտուհի էր՝ իր տարիքին եւ փորձառութեան համապատասխան նուաճումներով։ Այժմ վերադարձած է մեզի զգալիօրէն հասունցած արուեստով մը, որ կը կրէ երաժշտական լուրջ իւրացումներու եւ մշակուած յատկութիւններու կնիքը։ Այդ բանը ակներեւ էր առաջին հերթին՝ յայտագրի բազմակողմանի բովանդակութեան մէջ, ուր գտանք հին, դասական, ռոմանթիկ եւ ժամանակակից երաժշտութեան ոճային առանձնայատկութիւնները խտացնող նմոյշներ։

Կը մնար ստուգել տաղանդը որ կ'առաջադրէր հարազատօրէն վերարտադրել այդ նմոյշները, իրենց իւրայատուկ նկարագրով ու երանգով։ Կանխակալ համոզումը ունէինք անշուշտ, որ անցած տարիներու վարժութիւններն ու փորձառութիւնը զարգացուցած են իր թեքնիքը, կատարումի վարպետութիւնը, հնչողութիւնը։ Եւ ստուգեցինք իսկապէս տաղանդի էական նուաճումները, որոնք կը նուիրագործեն իր մենակատարի արդար յաւակնութիւնները, գիտակցութեան խորացումը, եւ մեկնաբանելու բաւականաչափ հմտութիւնը, որ իմաստ ու բովանդակութիւն կը դնէ կատարումին մէջ եւ իւրաքանչիւր կտորին շուրջ կը ստեղծէ իր ժամանակի ճաշակին եւ ներշնչումի մթնոլորտը։

Հետեւաբար, Տիկին Աստղա Մսրլեան նոր կը մտնէ իսկական համերգային ոլորտին մէջ եւ հաստատ խոստումներով։ Եթէ տակաւին չէ տիրացած մեծ անուններու վարկին, այսուամենայնիւ իր նուագահանդէսները հաճոյքով ու համակրութեամբ մտիկ կ'ըլլուին դժուարահաճներու կողմէ։

Բաւական պատասխանատու բովանդակութիւն մը ունէր յայտագիրը, որ կատարուեցաւ առհասարակ յաջողութեամբ։

Սկսինք Հէնտըլի *Բասաքալ*ով, որ թէեւ վիրթիւօզական ցուցադրութեան մը համար ոչինչ ունի, բայց մեծ վարպետներու ստեղնաշարին վրայ կը հնչէ իր ներշնչումին ու կրօնաշունչ բնոյթին յատուկ պերճութեամբ։ Երիտասարդ

դաշնակահարուհիին գլխաւոր արժանիքներէն մէկն է հին ոճին իւրացումը եւ համապատասխանօրէն լուրջ եւ իմաստալից մեկնաբանութիւնը:

Գոյութիւն ունի Մոցարդային ոճ մը, որ միայն զգացական խնդիր չէ, այլ գումարը անսայթաք թէքնիքի, անկապկելի նրբութիւններու եւ հիւմորի: Շատ մը մեծ վարպետներ, որոնց համար Լիսթ կամ Շօբէն սովորոյթի մը չափ հեշտ բաներ են, մտավախութիւնը ունին որ այդ գումարէն կրնայ բան մը պակսիլ ու աղաւաղել Մոցարդեան ստեղծագործութիւնը, եթէ իրենց միտքը չկեդրոնացնեն ստեղնաշարին առջեւ:

Կ'ենթադրենք որ տաղանդաւոր դաշնակահարուհին ինք եւս կը բաժնէր այդ ազնիւ մտավախութիւնը, երբ կը նուագէր Լա մինէօր Սօնաթը, ճշգրիտ կատարումով: Վստահ ենք որ յետագային ձեռք պիտի բերէ այդ գումարը, բան մը եւս աւելցնելով իր նուաճումներուն վրայ:

Շուպէրթը մեծ վարպետ մը չէ սօնաթային կառուցուածքներու մէջ, բայց իր *Վանտէրըր-Սօնաթ*ը կը բովանդակէ քիչ մը կառուցուածքի վարպետութենէն եւ աւելի շատ մեղեդիական լայն պարբերութիւններ: Յայտագրին յաջողագոյն բաժիններէն մէկն էր, որուն մէջ դաշնակահարուհին ցոյց տուաւ բարձրորակ զգայնութիւն եւ վճիտ կատարում: Նոյն յատկութիւնները նաեւ Շոբէնի երկու *Վալսեր*ուն եւ *Պալատ*ին մէջ, աւելին ըլլալով գեղեցիկ ճաշակ մը, որ այնքա՜ն հեռու է սովորաբար լսուած անզուսպ, չափազանցուած զեղումներէ:

Զարմանալի չէ որ յաջողելէ յետոյ բանի մը մէջ որ իր ցեղին հոգեկան ակունքներէն չի գար, յաջողեցաւ նաեւ գերազանցապէս Խաչատուրեան երեք գործերուն մէջ, շատ փայլուն կերպով կատարելով մանաւանդ *Թոքքաթա*ն:
(*Ազդակ*, Պէյրութ, 7 Դեկտեմբեր 1960)

*Սաւառնակ*, 1 Յունուար 1961, 47-րդ տարի, թիւ 1, էջ 5

# ՓՈՐ-Օ-ՓՐԷՆՍ (ՀԱՒԹԻ)

## 1959, 1961

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻ ԱՍԹՐԱ ՎԻԼԵՔԷ-ՄՍՐԼԵԱՆԻ ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳՆԵՐԸ

# POPULAR PIANIST ASTRA WILLEKE BACK IN HAITI FOR TWO YEARS

Astra Willeke-Messerlian, the celebrated German concert pianist who delighted Haiti's music lovers with five concerts last year, returned to this country yesterday afternoon following a concert tour of the Near East.

Accompanied by a strong music admirer, Ara Dirk Jurgen, her two-and-a-half year old son, Astra was met at the airport by her husband Frantz Willeke - Press Relations Officer of the German Legation in Port au Prince.

In May of this year the Willekes left Haiti on a four month vacation in their homeland, Germany. During a European tour in July Astra Willeke-Messerlian and her husband and young son visited with Astra's parents in Cairo. During her Cairo visit Astra was requested to give a series of concerts, at various German cultural institutions in the Near East, by the German Foreign Affairs Department.

Shortly after the vacation's conclusion Frantz Willeke returned to his post here and on the 3rd of October Astra played her first Near East concert in Cairo. Since then and up to the 28th of November, she gave a total of 18 concerts, the last one in Beirut. The tour covered four countries and 28,000 kilometers.

At the conclusion of the Near East tour Astra Willeke left Beirut (on the 1st of December) for a visit with her husband's parents in Western Germany. On Thursday this week she departed from Germany for Haiti via New York and Miami. She left Miami Saturday and arrived here at 2:30pm with her son.

Frantz Willeke proudly described this week how 2-and-a-half-year-old Ara Dirk Jurgen Willeke accompanied his mother during the entire Near East trip, a total of 18,000 miles. Born in Haiti Ara is fast following his mother's footsteps, according to Frantz Willeke, although his musical preferences seem to differ - whenever he hears a Ra Ra or Meringue band playing "he goes, crazy and jumps all around the place," states his father.

"If he's anything like me" said Frantz Willeke, "then he will be more inclined towards Jazz." But whichever way it goes Ara Dink Jurgen is destined to be a piano player like his mother.

Contrary to local newspaper reprots Astra Willeke-Messerlian will not be giving concerts immediately. She will definitely be giving concerts during her two year residence but no performances are scheduled until the Spring and Automn of 1961.

No less famous in the Willeke household here than Astra is her much travelled "medium Grand" piano. Manufactured in Germany, the piano was made by the famed German Bluthner in 1894. Bought by an Egyptian celebrity the piano travelled the long journey to Cairo where, years afterwards it was purchased for Astra Willeke by her parents. Of course when the Willekes moved to Haiti the grand piano made the trip also (in 1958). Already Frantz Willeke is wondering what they are going to do with the piano when Frantz two further years of service with the German Legation are concluded.

*Haiti Sun*, Weekly, Port-au-Prince, Haiti, 11 December 1960, Vol XIV, No. 7, p. 4

## ԱԼ-ԿՈՒՄՀՈՒՐԻԷ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ԿԻՐԱԿԻ, 9 ԱՊՐԻԼ 1961

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

Ելոյթ կ՚ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

Կիրակի, 9 Ապրիլ 1961, Երեկոյեան ժամը 6-ին

ԱԼ-ԿՈՒՄՀՈՒՐԻԷ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

ԲԱՐՁՐ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

## ԳԵՐ. Տ. ՄԱՄԲՐԷ Ս. ԱՐՔ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ

ԵՐԿՍԵՌ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ (100 ՀՈԳԻ)

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

## Մ° ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆԻ

ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԻՒՆ

ՏԻԿ. ՇԱՔԷ ԻՓԷՔԵԱՆ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

Գ. Ա. Վ.ի ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ

Ի ՆՊԱՍՏ ՎԱՐԺԱՐԱՆԻՍ ՍԱՆԵՐՈՒՆ

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Ա. ՄԱՍ

1.— **Քայլերգ Ա. Մ. Հ.ի**

2.— **Դպրոցի ճամբան** ԵՐԺՇՏ.՝ Ե. ՅԱԿՈԲԵԱՆԻ

3.— **Ոսկէ Ձուիկի հէքեաթը** « Ա. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

4.— **Ոսկերիչ Ղազար** « Ռ. ՄԵԼԻՔԵԱՆԻ

ՄԵՆԵՐԳՈՂՆԵՐ՝ ՆՈՐԱ ՅԱԿՈԲԵԱՆ
ՆԱՅԻՐԻ ՄԱՀՍԷՐէՃԵԱՆ
ՄԱՅՏԱ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

5.— **Ճուտիկներ** ՄՇԱԿՈՒՄ՝ Ե. ՅԱԿՈԲԵԱՆԻ

ՄԵՆԵՐԳՈՂ՝ ՍԻՒԶԱՆ ԳԱԲԻԿԵԱՆ

6.— **Դաշնամուր**

**Մանկակական կտորներ** ԵՐԺՇՏ.՝ Գ. ՄԻՐԶՈՅԵԱՆԻ

ԿԱՏԱՐՈՂՆԵՐ՝ ԺԻՐԱՅՐ ԲԱԲԱՋԵԱՆ
ՍՕՆԱ ԱՃԵՄԵԱՆ

7.— **Ոսկէ Աշուն** ԵՐԺՇՏ.՝ Ե. Յ.Ի

8.— **Օրօր** « «

ՄԵՆԵՐԳՈՂ՝ ԼԻԶԵԱՆ ՄՐՆՐՇԵԱՆ

9.— **Գարնան երգ** ԵՐԺՇՏ.՝ Ե. Յ. Ի

10.— **Դաշնամուր**

**Մանկական կտոր** « ՄԻՐԶՈՅԵԱՆԻ

**Փոփոխակներ** « Ս. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆԻ

ԿԱՏԱՐՈՂՆԵՐ՝ ՇԱՀԷՆ ԵԱՎՐՈՒԵԱՆ
ՍԻՒԶԱՆ ԵՓՐԵՄԵԱՆ

11.— **Կաքաւի երգը** ԵՐԺՇՏ.՝ ԿՈՄԻՏԱՍԻ

12.— **Աղջիկներու երգը** (ԱՆՈՒՇ) « Ա. ՏԻԳՐԱՆԵԱՆԻ

13.— **Մետաքս կտոր** ՄՇԱԿՈՒՄ՝ Թ. ԱԼԹՈՒՆԵԱՆԻ

14.— **Հայաստանին** ԽՕՍՔ՝ Գ. ՍԱՐԵԱՆԻ

ԽՄԲԱԿԱՆ ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՇԱՔԷ ՊԷՍՆԷԼԵԱՆ
ԶԱՊԷԼ ԳՆԱՃԵԱՆ, ՎԱՐՈՒԺԱՆ ՆԵՐՍԷՍԵԱՆ

15.— **Իմ Անուշ Հայաստան** ԵՐԺՇՏ.՝ Ա. ԲԱԲԱՋԱՆԵԱՆ

# Բ. ՄԱՍ

1.— **Ողջոյն քեզ դպրոց** ԵՐԺՇՏ.՝ Ե. Յ.ի

2.— **Փոստատարի երգը** « «
ԱՐՏԱՍԱՆՈՂ՝ Շ. ԵԱՎՐՈՒԵԱՆ

3.— **Արտուտիկ** (ԿԱՆՈՆ) « «

4.— **Փիսիկի գանգատը** ԵՐԺՇՏ.՝ Դ. ՂԱԶԱՐԵԱՆԻ
ՄԵՆԵՐԳԻՉՆԵՐ՝ Ս. ԳԱԲԻԿԵԱՆ, Մ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

5.— **Կաքաւիկ** ԵՐԺՇՏ.՝ Ա. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

6.— **Ծաղիկի երգը** « Ե. Յ.ի
ՄԵՆԵՐԳՈՂ՝ ՕՐՕՐԱ ԷՄՃԵԱՆ

7.— **Կոտ ու կէս** ՄՇԱԿՈՒՄ՝ Ռ. ՄԵԼԻՔԵԱՆԻ

8.— **Դաշնամուր**
Ա.— **Կատակ** ԵՐԺՇՏ.՝ Ա. ԽԱՉԱՏՐԵԱՆԻ
Բ.— **Նազանի պար** « Ս. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆԻ
ԿԱՏԱՐՈՂՆԵՐ՝ ՀԻԼՏԱ ՍԱՄՍՈՆԵԱՆ, ԹՕՆԻ ՅՈՎՍԷՓԵԱՆ

9.— **Զանգակներու ղօղանջը** (ԿԱՆՈՆ) ԺՈՂՈՎՐ. ԵՐԳ (ՖՐ.)

10.— **Հօռովել** ՄՇԱԿՈՒՄ՝ Ս. ՄԵԼԻՔԵԱՆԻ

11.— **Խամ-բաջի** « Ա. ԱԼԹՈՒՆԵԱՆԻ

12.— **Հայ դպրոցին** ԽՕՍՔ՝ Ժ. ՅԱԿՈԲԵԱՆԻ
ԱՐՏԱՍԱՆՈՂ՝ ԺԻՐԱՅՐ ՏԵՓՕՅԵԱՆ

13.— **Գացէք տեսէք** ՄՇԱԿՈՒՄ՝ ԿԱՐԱ-ՄՈՒՐԶԱՅԻ

14.— **Կենաց երգ** « Թ. ԱԼԹՈՒՆԵԱՆԻ

15.— **Միսր-Միսր**

★★★

**ԾԱՆՕԹ.—**

**Խմբերգները տեղի կ'ունենան միաձայն եւ բազմաձայն:**

**Դաշնամուր նուագողները կ'աշակերտեն Օր. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ:**

**Դաշնամուրը սիրայօժար տրամադրուած է Բաբազեան եւ Ընկ. Հաստատութեան կողմէ:**

# ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ԿԻՐԱԿԻ, 16 ԱՊՐԻԼ 1961

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ'ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

REPUBLIQUE ARABE UNIE
MINISTERE DE LA CULTURE ET DE
L'ORIENTATION NATIONALE

LE CONSERVATOIRE NATIONAL SUPERIEUR DE MUSIQUE.
LE PREMIER CONCERT
DES ELEVES
Dimanche 16 Avril 1961 à 7hp.M.

Organisé par le Professeur
Madame Melita LORKOVIC

ACCOMPAGNEMENT AU PIANO : PROF.
ASSTE. MLLE. DELLOSTROLOGO.

PIANO

1 - Soheir Assad - Sec. Sec. I - .... élève du Prof. Asst. PARISI — KHUKAU - Sonatine en do maj. 1er mouv. SCHUMANN- Le gai Laboureur.

2 - Atef Abdel-Hamid-Sec. Sec.2-..... élève du prof. Asst. Mlle. DAMADIAN — BACH - Fuguette en do min. KHULAU - Sonatine en do maj. 2ème mouv.

3 - Samia Wilson - Sec. Sec. I -..... élève du prof. Mmee LORKOVIC — CLEMENTI - Sonatine en fa maj. 1er mouv. SCHUMANN --

CHANT

4 - Amira Kamel - Sec. Sup. 2-....... élève du prof. Mmee RATHLE — PERGOLESI - Se tu m'ami. HAENDEL - Ah mio cor

5 - Youssef Ezzat - Sec. Sup. 2...... élève du prof. Mme. RATHLE — PERGOLESI - Tre 6iorni son che Nina. SCHUBERT - Impatienza

PIANO

6 - Afaf Abbes Helmi-Sec. Sec. 2-.... élève du prof. Asste. Mlle. BLANC — DEBUSSY - Le petit berger. CASELLA - Bolero

7 - Nabil Abdel-Azim - Sec. Sec. 1-.. élève du prof. Mme. Feninger De Rogatis — CLEMENTI - Sonatine en sol maj. 3me. mouv. FENINGER - Mon Dieu les gammes.

OBOI

8 - Kamal Ala-el-Din Hussein- Sup. 1.. élève du prof. Asst. SPANNER — KIRNBERGER-Sonate en si bémol maj. Adagio.

VIOLON

9 - Zoheir Moussa- Sec. Sec. 1-...... élève du prof. KLIMA — VIVALDI - Concerto en la min. 1er mouv. Allegro moderato.

PIANO

10 - Hoda Banoub - Sec. Sec. 1-...... élève du prof. Mme. LORKOVIC — SCHUMANN - Romance. St. Nicolas. SCHUBERT - Scherzo en si bém. maj.

11 - Sonia Yassa - Sec. Sec. 2-.... élève du prof. PUGLISI — MOZART - Fantaisie en ré min. POZZOLI - Matinée de printemps

CHANT

12 - Romano Ferrari - Sup. 1........ MARCELLO - Quella fiamma.
élève de Mme. prof. FROZIER SCHUMANN - Au loin.

13 - Violette Makar - Sup.2-........ CHEROBINI- Ah, che forte
élève du prof. Mme FROZIER SCHUMANN - Ah, viens calmer ma fièvre.

PIANO

14 - Osman Saroit - Sup. 1 ........ CHOPIN - Valse en si min.
élève du prof. SZULC KHAIRAT - Etude lyrique en do min.

15 - Mohammad El- Toukhi - Sup. 1 -.. BRAHMS - Ballade en ré min.
KHAIRAT- Etude lyrique si bém min.

16 - Suzanne Khatchadourian - Sup. 1.. KHATCHADOURIAN- Trois tableaux
- Toccata.

===================================

Z.

وزارة الثقافة والارشاد القومى
المعهد القومى العالى للموسيقى
الكونسرفاتوار

كونسير تلامذة المعهد
حفلة الاداء الأولى للطلبة

الأحد الموافق ٦ أبريل ١٩٦١
فى تمام الساعة السابعة مساء

====================

عزف البيانو المساعد
الأستاذه المساعدة الآنسه ديللوسترولوجو

تنظمها الأستاذه لوركوفيتش

====================

بيانو

١ ـ سهير أسعد ـ تلميذة الأستاذ المساعد باريزى ٠٠٠٠٠ "كولاو" ـ سوناتين ـ الحركة الأولى ـ من مقام دو الكبير.
(القسم الثانوى) ١
"شومان" ـ العامل المرح

٢ ـ طارق عبد الحميد ـ تلميذ الأستاذه المساعدة دهاديان ٠٠ "باخ" ـ فوجيت ـ دو الصغير
(القسم الثانوى) ٢
"كولاو" ـ الحركة الثانية من السوناتين من مقام دو الكبير.

٣ ـ سامية ياسين ـ تلميذه الأستاذه بورونيتير ٠٠٠٠٠ "كليمنتى" ـ الحركة الأولى من السوناتين من مقام فا الكبير
(القسم الثانوى) ١
"شومان" ـ

غناء

٤ ـ أميره كامل ـ تلميذه الأستاذه رسل ٠٠٠٠٠ "برجولييز" ـ (لو كنت تحبنى)
(المرحلة العالية) ٢
"هاندل" ـ (آه يا قلبى)

٥ ـ يوسف عزت ـ تلميذ الأستاذه رسل ٠٠٠٠ "برجولييز" ـ (ثلاثة أيام بعيد عن بيتنا)
(المرحلة العالية) ٢
"شوبرت" ـ (عديم الصبر)

بيانو

٦ ـ عفاف عباس حلمى ـ تلميذه الأستاذه المساعدة الآنسه باذن "ديبوسى" ـ الراعى الصغير
(القسم الثانوى) ٢
"كبالزياد" ـ بوليرو

٧ ـ نبيل عبد الحليم ـ تلميذ الأستاذه فنجرد بروجاتو ٠٠ "كليمنتى" ـ سوناتين من مقام صغير الحركة الثالثة
(القسم الثانوى) ١
"فيننجر" ـ "الساعة الموسيقية يا المهى".

أوبوا

٨ ـ كمال علاء الدين حسين ـ تلميذ الأستاذ المساعد سبانر ٠٠٠ "كيرنبرجر" ـ سوناتا من مقام سى بيمول كبير
(المرحلة العالية) ١
الحركة البطيئة "اداجيو"

فيولينة

٩ ـ زهير موسى ـ تلميذ الأستاذ كيمسا ٠٠٠٠ "فينالدى" ـ كونشرتو من مقام لا صغير الحركة الأولى متوسطة السرعة.
(القسم الثانوى) ١

بيانو

١٠ ـ سعد بانوب ـ تلميذه الأستاذه لوركوفيتش ٠٠٠٠ "شومان" ـ رومانس سان نيكولا
(القسم الثانوى) ١
"شوبرت" ـ سكرتزو من مقام سى بيمول كبير.

١١ ـ سونيا يسى ـ تلميذه الأستاذ بولييزى ٠٠٠٠٠ "موتسارت" ـ فانتيزيا من مقام رى صغير.
(القسم الثانوى) ٢
"بيتزولى" ـ صبح يوم من أيام الربيع.

غنـــاء

٢١ـ رومانو فيرارى ـ تلميذ الأستاذ فروزييه ..... "مارشيللو" ـ "اللهيب"
(المرحلة العالية) ١ "شومان" ـ على مدى الأفق

٣١ـ فيونيت مقدار ـ تلميذه الأستاذه فروزييه ..... "كيروبينى" ـ آه .. القوة
(المرحلة العالية) ٢ "شومان" ـ آه .. تعال عبطى حرارة حبى

بيانـــــو

٢٤ـ عثمان ثروت ـ تلميذ الأستاذ شولتز ....... "شومان" ـ فالس من مقام سى صغير.
(المرحلة العالية) ١ "شيرت" ـ دراسة شاعريـــة.

٥١ـ محمد الطوخى ـ تلميذ الأستاذ شوستز ........ "برامز" ـ بلالاد من مقام رى صغير
(المرحلة العالية) ١ "شيرت" ـ دراسة شاعرية.

٦١ـ سوزان خاتشدوريان ـ تلميذه الأستاذه لوركوفيتش .. "خاتشادوريان" ـ ثلاثة مناظر تركها تمـــا.
(المرحلة العالية) ١

================================

ز.

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ԿԻՐԱԿԻ, 14 ՄԱՅԻՍ 1961

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՌԻՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ'ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

LE CONSERVATIORE NATIONAL SUPERIEUR DE MUSIQUE

Concert d'élèves de la Periode Préparatoire

Deuxième Concert
Dimanche 14 Mai 1961( à 5h: P.m.)
Organise par Prof. Mme. LORENTIC

| | | | ANNEE |
|---|---|---|---|
| 1 - | Rosemarie Kamel Salib<br>Van De Velde : C'est Gentil<br>J'ai Du Bon Tabac. | élève du Prof. Noémi Mèlik. | 1 |
| 2 - | Ahmed Salah El Din<br>Mozart : Valse | élève du Prof. PARISI | 1 |
| 3 - | Mona Abou-Off<br>Feninger : Serenade | élève du Mme. FENINGER DE ROGATIS | 1 |
| 4 - | Sonia Agemian<br>Mirzoyan : Pièce Enfantine | élève du Prof. Mlle. DAMADIAN | 1 |
| 5 - | Diane Habib Sumbaty<br>Beethoven : Sonatine Sol maj. 1er mouv.<br>Henry Van Gaed: Flocons De Neige | élève du Prof. PARISI | 1 |
| 6 - | Amr El Agizi<br>Feninger : Fatma Danse. | élève du Prof. Mme FENINGER DE ROGATIS | 11 |
| 7 - | Omar Khairat<br>Clementi : Sonatine Sol maj.111<br>Burgmueller: Adieu | élève du Prof. TIEGERMAN | 11 |
| 8 - | Kathleen Oghia<br>César Franck. Les Plaintes D'une Poupée | élève du Prof. Mlle DAMADIAN | 11 |
| 9 - | Mohamed Abou-off<br>Bach : Musette<br>Clementi: Sonatine Do maj. 111 | élève du Prof. Mme FENINGER DE ROGATIS | 11 |
| 10- | Effat Abdel Khalek<br>Diabelli: Scherzo sol maj. Et Rondo Do maj. | élève du Prof. TIEGERMAN | 11 |
| 11- | Cherif Chaffey<br>Steibelt: Rondo | élève du Prof. TIEGERMAN | 11 |
| 12- | Latef Chiha<br>Bach : Menuet Re maj.<br>Koehler: Le Petit Soldat. | élève du Prof. Mme. MIARIANOS | 11 |
| 13- | Wafa Salah El Din<br>Kuhlau : Sonatine Do maj. 111<br>Tchaikowsky : Danse Allemande | élève du Prof. Mme. MARIANOS | 11 |

14- Alaa El Din Isaak élève du Prof. Mme. MARIANOS 11

Bach : Menuet Sol maj.

Burgmueller : Ballade

15- Aida Nasr El'Din élève du Prof. TIEGERMAN 11

Schubert : Scherzo Si béuo. maj.

Burgmueller: Adieu

16- Samia El-Zoheiri élève du Prof. Mlle.CHERIGIAN 11

Kuhlau : Sonatine Do maj 1

Bartok: Pour Les Enfants

1- La min. - 2- Re maj.

17- Faten Ali Hassan élève du Prof.Mlle CHERIGAN 11

Beethoven : Sonatine Fa maj. 1 et 11

Kabalevsky: Toccatina

Scherzo

18- Mona Abed élève du Prof. TIEGERMAN. 11

Mozart : Sonate Do maj. 1

19- Ismat Alluba élève Du Prof. TIEGERMAN. 11

Sonatine Kuhlau : Rondo Sol maj.

Khachatourian : The Little Horse.

وزارة الثقافة والإرشاد القومي
المعهد القومي العالي للموسيقى
الكونسرفاتوار

## كونسير تلاميذ المرحلة الإعدادية

الحفلة الثانية
الأحد ١٤ مايو الساعة الخامسة بعد الظهر

تنظمها الأستاذة مدام لورنوفيتش

| الطالب | الأستاذ | البرنامج |
|---|---|---|
| ١ ــ روز ماري كامل صليب<br>السنة الأولى | تلميذة الأستاذة نحومي طيك | فان دي فيلد : ١ــ هذا لطيف<br>٢ــ لدي تبغ جيد |
| ٢ ــ أحمد صلاح الدين<br>السنة الأولى | تلميذ الأستاذ باريزي | موتسارت : فالس |
| ٣ ــ منى أبو عوف<br>السنة الأولى | تلميذة الأستاذة فننجرد روجاتس | فننجر : سرناره |
| ٤ ــ سونيا اجيميان<br>السنة الأولى | تلميذة الأستاذة دمديان | ميرزويان : قطعة للأطفال |
| ٥ ــ ديانا حبيب السمباطي<br>السنة الأولى | تلميذ الأستاذ باريزي | بيتهوفن : سوناتا صغيرة من مقام صول الكبير الجزء الأول<br>هنري فان جود : صقور الثلوج . |
| ٦ ــ عمرو الحجيزي<br>السنة الثانية | تلميذ الأستاذة فننجرد روجاتس | فيننجر : رقصة فاطمة . |
| ٧ ــ عمر خيرت<br>السنة الثانية | تلميذ الأستاذة تيبرمان | كليمنتي : سوناتين من مقام صول الكبير الجزء الثالث<br>بورج ميللر : الوداع |
| ٨ ــ كاتلين أوفيا ( السنة الثانية ) | تلميذ الأستاذة دماديان | سيزار فرانك : شكوى الدميه |
| ٩ ــ محمد أبو عوف<br>السنة الثانية | تلميذ الأستاذة فننجرد روجاتس | باخ : رقصة موزيت<br>كليمنتي : سوناتا صغيرة من مقام دو الكبير الجزء الثالث |

| الطالب | التلمذة | البرنامج |
|---|---|---|
| ١٠ ـ عفت عبد الخالق<br>السنة الثانية | تلميذة الاستاذ تيجرمان | ديابللى : سكرتو من مقام صول الكبير<br>روند من مقام د و الكبير |
| ١١ ـ شريف شافعى<br>السنة الثانية | تلميذ الاستاذ تيجرمان | استايلت : روند |
| ١٢ ـ [illegible]<br>السنة الثانية | تلميذ الاستاذ ماريانوس | باخ : منويت من مقام رى الكبير<br>كهلر : الجندى الصغير |
| ١٣ ـ وفاء تاج الدين<br>السنة الثانية | تلميذة الاستاذ ماريانوس | كولاو : سوناتا صغيرة من مقام د والكبير<br>الحركة الثالثة .<br>تشايكوفسكى : رقصة ألمانية |
| ١٤ ـ علاء الدين اسحق<br>السنة الثانية | تلميذ الاستاذ ماريانوس | باخ : مينويت من مقام صول الكبير<br>برجمولير : بالاد |
| ١٥ ـ عايدة نور الدين<br>السنة الثانية | تلميذة الاستاذ تيجرمان | شوبرت : اسكرتو من مقام سى بيمول<br>الكبير |
| ١٦ ـ سلمية الزهيرى<br>السنة الثانية | تلميذة الاستاذة تشربجيان | كولاو : سوناتا صغيرة من مقام د والكبير<br>الجزء الاول<br>بارتوك : مقطوعات للاطفال<br>رقم ١ من مقام لا الصغير<br>رقم ٢ من مقام رى الكبير |
| ١٧ ـ فاتن على حسن<br>السنة الثانية | تلميذة الاستاذة تشربجيان | بيتهوفن : سوناتا صغيرة من مقام ﻫ<br>الكبير الجزئين الاول والثانى<br>كابالفسكى : ١ ـ توكاتينا توكاتا صغيرة<br>٢ ـ اسكرزو |
| ١٨ ـ منى عابد | تلميذة الاستاذ تيجرمان | موتسارت : سوناتا من مقام د و الكبير<br>الجزء الاول . |
| ١٩ ـ عصمت طوبة | تلميذة الاستاذ تيجرمان | كولاو : سوناتا صغيرة (روند من<br>مقام صول الكبير)<br>خاتشاتوريان : الحصان الصغير |

٢٠١

# AUDITION DES ELEVES

de

## Mlle. NEVARTE DAMADIAN

de l'Ecole Normale de Musique de Paris

Professeur de Piano

au Conservatoire National Supérieur de Musique du Caire

☆☆

CLUB ARTISTIQUE ARMÉNIEN (Salle Tékéyan)

3, Rue Soliman El-Halabi, (ex Doubreh), 7ème étage — Le Caire

**Le Jeudi 22 Juin 1961, à 6 heures 45 p.m.**

*Le programme tient lieu d'invitation*

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| ***Narges Hussein Fadel*** du Conservatoire Nat. Sup. de Musique<br>***Gerald Papasian*** | Non troppo presto (4 mains) | *Wohlfahrt* |
| ***Fathi Hussein Fadel*** du Conservatoire Nat. Sup. de Musique | Etude | *Beyer* |
| ***Naîrie Partamian*** du Conservatoire Nat. Sup de Mvsique | Ecossaise | *Hummel* |
| ***Vahan Kololian*** | Etude No. 80 | *Beyer* |
| ***Hagop Artinian*** | Le petit cosaque | *Kohler* |
| ***Alida Epremian*** | Landler | *Steibelt* |
| ***Suzanne Epremian*** | Rondo | *Ciementi* |
| ***Gerald Papasian*** | Menuet<br>Pièce enfantine | *Bach*<br>*Mirzoyan* |
| ***Sona Agémian*** du Conservatoire Nat. Sup. de Musique | Rondo vivace | *Kulhau* |
| ***Kathleen Oghia*** du Conserratoire Nat. Sup. de Musique | Musette<br>Les plaintes d'une poupée | *Bach*<br>*C. Franck* |
| ***Eugénie Imamédjian*** | Sonatine No. 12 (1er. mouv.) | *Clementi* |
| ***Nora Garabédian*** | Menuet<br>Valse (Le désir). | *Haendel*<br>*Beethoven* |
| ***Chahène Yavrouyan*** | Le petit âne blanc | *J. Ibert* |
| ***Ara Chirikdjian*** du Conservatoire Nat. Sup. de Musique | Petit prélude en Do<br>Saint - Nicolas | *Bach*<br>*Schumann* |

| | | |
|---|---|---|
| *Hilda Samsonian* . . | Pour Elise . . . . . | *Beethoven* |
| *Tony Hovsepian*. . . | Le coucou . . . . . | *Daquin* |

*INTERVALLE*

| | | |
|---|---|---|
| *Vania Chalvardjian*. . | Air varié . . . . . . . | *Haendel* |
| *Betty Ayrassian* . . . | Sonate en sol ( 1er mouv. ) | *Haydn* |
| *Sirvart Agopian* . . . | Marche turque . . . . | *Mozart* |
| *Vera Hatzouny* . . . | Golliwogg's cake - walk . | *Debussy* |
| *Alice Marcarian* . . | Caprice op. 16 No. 1 . . | *Mendelssohn* |
| *Zevart Tachadjian* . . | Valse - Arabesque . . . | *Lack* |
| *Hripsimé Baldjian* . | Etude lyrique op. 2 en do mineur . . . . . | *Abou - Bakr Khaïrat* |
| | Prélude No. 17 en la b maj. | *Chopin* |
| *Jeannette Chirikdjian* . | Polonaise en mi b maj. op. 22 | *Chopin* |



Հայ Գեղարուեստասիրացի տանիքի պարտէզը, 22 Յունիս 1961
Ունկնդրութենէն ետք, Նուարդ Տամատեան (կեդրոնը) իր աշակերտներուն հետ

# INTERESSANTE AUDITION D'ELEVES DE MLLE. NEVARTE DAMADIAN

ANTOINE GENNAOUI

Avec une simplicité qui n'a d'égale que l'ardeur communicative qu'elle vous à sa mission, Mlle. Nevarte Damadian, de l'Ecole Normale de Musique de Paris et Professeur à notre Conservatoire National de Musique, nous a démontré, au cours du récital donné par ses élèves, comment la musique peut faire d'un être humain en chef-d'oeuvre de vie et de joie heureuse. D'ailleurs, plus nombreuses sont les auditions auxquelles nous assistons, et plus nous ressentons de sympathie pour ceux qui s'y présentent. Dieu sait! au prix de quels efforts et de quels sacrifices. Nous avons donc retrouvé, l'autre soir, une fois de plus, avec ses qualités et ses défauts, cette belle jeunesse avide de s'initier aux mystères de l'Art Musical.

Les interprètes, s'ils n'ont pas atteint unanimement à l'allègre perfection qu'exige la musique pour briller de tous ses feux, au moins ont-ils fait preuve d'un zèle et d'un entrain charmant. L'on a pu entendre durant la même soirée des morceaux brillants destinés à mettre en valeur des exercices de vocabulaire, et d'autres qui, tout en détaillant la finesse de l'art classique, imposent leur force expressive et leur intensité d'émotion. Du concours se dégage une impression générale de technique assez poussée que ne domine pas encore une volonté de style bien définie. Mais juger est toujours difficile, juger en art l'est encore bien plus. Et comment reconnaître dans l'espace de quelques minutes, au cours de brèves variations, la valeur intrinsèque d'un exécutant?

Aussi, sans nous attarder à établir des comparaisons entre des talents qui n'ont pas de mesures communes, vu la différence d'âge et du nombre d'années d'études, nous aimerions cependant signaler Mlle. Suzanne Epremian qui a montré beaucoup de qualités dans un *Rondo* de Clementi, M. Gerald Papasian et son jeu plein d'autorité, Mlle. Sona Agémian et Kathleen Oghia qui savent déjà allier à leur technique assez sore une bonne sensibilité. Chahène Yavrouyan a su rendre le caractère changeant et merveilleusement souple du *Petit âne blanc*, de J. Ibert. Ara Chirikdjian et Tony Hovsepian ont un toucher intelligent et nuancé. Mlle. Hilda Samsonian montre un beau tempérament et Vania Chalvardjian a un acquit pianistique qui vaut déjà mieux qu'une promesse.

En résumé, audition fort intéressante qui a permis de déceler plusieurs natures d'"artistes en herbe". L'effort que cela représente est bien le témoignage d'une grande vitalité. Nous ne pouvons donc ne pas rendre hommage à leur professeur Mlle. Damadian pour la part qu'elle prend au rayonnement de la vie musicale.

*Le Progrès égyptien*, 24 juin 1961

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ԴԱՇՆԱԿԻ ԳԵՂԵՑԻԿ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՍՈՖԻ ՇԱԼՎԱՐՃԵԱՆ

Պարզ ու վայելուչ ներկայացմամբ խնամուած պատրաստութիւն մը, անգամ մը եւս եկաւ նշել Փարիզի Էքոլ Նորմալէն վկայեալ եւ Գահիրէի Պետական Երաժշտանոցի ուսուցչուհի Օր. Նուարդ Տամատեանի աշակերտներուն տարեկան նուագահանդէսը, որ տեղի ունեցաւ անցեալ Հինգշաբթի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ:

Խանդոտ հետաքրքրութեամբ մըն է որ տարուէ տարի կը հետեւիմ այդ քաջարի ու «նորաբոյս վիրթիւոզ»-ներու տնկարանին յառաջդիմութեանը՝ դէպի գիտուն դաշնեակները եւ թրեմոլոները Սոնաթներու եւ Քոնչերթոներու, փղձկելէ ետք առաջին ձայնանիշերուն վրայ: Ու միշտ հաճոյքով է որ կը նկատեմ հիմքի իր հաստատուն արժանիքները - երկի կատարեալ ըմբռնում, մեկնաբանելու մտահոգութիւն, յստակ ու պայծառ նուագածութիւն, ոտնակալներու (*փետալ*) խելացի գործածութիւն, զուսպ քնարականութիւն եւ աշխատուած թեքնիք:

Օր. Տամատեանի մանկավարժական ձեռնհասութեան յատկանիշներէն մէկն է իւրաքանչիւր աշակերտի խառնուածքին համապատասխան կտորի մը խելացի ընտրութիւնը:

Նախ եւ առաջ փոքրերն են, որոնք գիտակից հանդէսին կարեւորութեան, իրենց յուզումը ժպիտի մը եւ խոնարհութեան մը ետեւ թաքցնելով, ջանասիրութեամբ կատարեցին իրենց կտորները:

Նարկէս եւ Ֆաթիհ Հիւսէյն Ֆատէլ, որոնց առաջին ելոյթն էր այս, ջանացին հետեւիլ իրենց ուսուցիչին խրատներուն՝ ցուցաբերելով կանոնաւոր եւ կշռութաւոր կատարում մը. առաջինը նուագեց Վոլֆարթէն «քառաձեռք» մը, իսկ երկրորդը՝ *Էթիւտ* մը Պէյէրէն: Այստեղ Ժիրայր Բաբազեան զգոյշ եւ ձեռնհաս նուագակցող մը եղաւ:

Նայիրի Փարթամեան խելացիօրէն երանգաւորեց Հիւմէլի *Էքոսէզ*ը եւ Ալիտա Եփրեմեան ճշգրտութեամբ վերարտադրեց Շթիպելթի *Լէնտլըր*ին աշխոյժ կշռոյթը:

Վահան Քոլոլեան վարպետութեամբ եւ ինքնավստահութեամբ նուագեց Պէյէրի մէկ *Էթիւտ*ը:

Քլեմենթի թիւ 12 Սոնաթինին մէջ Էօժէնի Իմամեճեան խելացի զգայնութեամբ մը երանգաւորեց իր առոյգ կատարումը: Հիլտա Սամսոնեան իր նուրբ հպումներով կարողացաւ պահպանել ամբողջ հմայքը Պեթհովէնի *Ֆիւր Էլիզ* կտորին. իսկ Թոնի Յովսէփեան, որ մեծապէս յառաջդիմած է այս տարի, միանգամայն ապացուցանեց իր թեքնիք կարողութիւններն ու երաժշտական հասկացողութիւնը՝ խելացիօրէն մեկնաբանելով Տաքէնի *Կկու*ն:

Եւ հիմա մասնաւոր յիշատակութիւն այն չորս աշակերտներուն որոնք ամէն տեսակէտով առանձին ուշադրութեան արժանացան - թեքնիք, մեկնաբանելու կարողութիւն, յստակութիւն եւ մանաւանդ կարողութիւն՝ իրենց համապատասխան կտորներու մասնայատուկ նկարագրի յայտնաբերմամբ:

Անոնք են՝ Յակոբ Արթինեան՝ Քէօհլըրի *Պզտիկ քաղաք*ին մէջ, Սիւզան Եփրեմեան՝ Քլեմենթիի *Ռոնտո*յին մէջ, Սոնա Աճեմեան՝ Քիւլիաուի *Ռոնտօ Վիվաչէ*ին մէջ եւ Շահէն Եաւրուեան որ յաջողեցաւ կատարելապէս դաշնակին «նկարագրել» տալ Իպէրի *Ճերմակ իշուկ*ին զուարթ ոստոստիւնները:

Մասնաւոր հետաքրքրութեամբ ունկնդրեցի նաեւ այն աշակերտները որոնք պարտ էին երկու կտոր նուագել. եւ քանի որ անոնցմէ իւրաքանչիւրը պէտք էր ներկայացնէր տարբեր նկարագրով կտորներ՝ կարողացայ անոնց ամէն մէկուն խառնուածքը դատել իւրաքանչիւր կտորը մեկնաբանելու իր եղանակէն: Ժիրայր Բաբազեան քնարական խառնուածք մը ունի. արդարեւ, ան Միրզոյեանի մանկական կտորին մէջ ցուցաբերեց իր նուրբ զգայնութիւնն ու երաժշտականութիւնը: Պախի *Մենիւէ*ին «տիրող գոյնը» ճիշդ էր: Միւս կողմէ Քեթիլին Օղիա եւ Նորա Կարապետեան ունին «մտացի» խառնուածք: Առաջինին կողմէ կատարուած Ս. Ֆրանքի *Պուպրիկի մը բողոքները* կտորը, հակառակ իր ամբողջ նրբութեան, չունէր համոզիչ յստակութիւնը Պախի *Միւզէթ*ին: Երկրորդին կողմէ ներկայացուած Պեթհովէնի *Փափաքը*, հակառակ որոշ սահունութեան, չունէր Հէնտըլի *Մենիւէ*ին կատարեալ ճշգրտութիւնը:

Սովորական դադարէն ետք՝ ստեղնաշարին առջեւ անցնելու կարգը եկաւ մեծերուն: Անոնց մօտ երաժշտական տաղանդի մասնաւոր յատկանիշները աւելի յստակօրէն նշուեցան - անոնց կատարումը աւելի խորունկ է, զգայնութիւնը՝ աւելի սուր, թեքնիքը աւելի կատարելագործուած, բայց, ափսոս, խուսափելիք խոչընդոտները՝ աւելի բազմաթիւ:

Վանիա Շալվարճեան, Հէնտըլի *5 վարիասիոններ*ուն մէջ խելացի ու հաւասարակշռուած նուագածութեամբ, յառաջացող թեքնիքով ու բարձր երաժշտականութեամբ կրցաւ խուսափիլ միօրինակութենէ եւ տալ նրբերանգները հին երաժշտութեան:

Պեթի Այրասեան Հայտընի Սոնաթ ան սոլի իր նուագածութեան մէջ ցոյց տուաւ ստեղնաշարին վրայ իր տիրապետութիւնն ու կշռոյթի զգացումը: Իր նուագածութիւնը խորքով աւելի պիտի շահէր, եթէ աւելի զգացում դնէր իր մեկնաբանութեան մէջ:

Սիրվարդ Յակոբեանի չափազանցեալ յուզականութիւնը արգելք հանդիսացաւ որ կարողանանք գնահատել իր հաստատուն թեքնիք արժանիքները: Ան կենսունակութեամբ մեկնաբանեց Մոցարթի *Մարշ թիւրք*ը:

Վերա Հացունի կարողացաւ ցուցաբերել դաշնակահարուհիի իր ամբողջական կարելիութիւնները՝ խելացի մեկնաբանութեամբ մը ներկայացնելով Տեպիւ-

սիի *Կոլիվոկ'զ քէյք-ուոք*ը: Այս դժուար երկը, որ ունի թելադրական ու քմայքոտ նկարագիր, իտէալ մեկնաբանող մը գտաւ յանձին իրեն:

Իսկ Ալիս Մարգարեան զգացողութիւն եւ խորք դրաւ Մենտելսոնի *Քափրիս* թիւ 1-ին մէջ:

Դաշնակի այս հետաքրքրական ունկնդրութեան մէջ, ծրագրին վերջին երեքը որպէս աշակերտ չէ որ պէտք է դատել, այլ որպէս դաշնակահարուհիներ:

Զուարթ Թաշճեան սքանչելի մեկնաբանութիւն մը տուաւ Լաքի *Վալս-Արաբեսք*ին: Անթերի թեքնիք, խելացութեամբ զօրացուած քնարականութիւն մը, կենսունակութեամբ լեցուն նուագածութիւն եւ մանաւանդ՝ կատարելութեան հետամտութիւն մը՝ կը կազմեն հիմնական արժանիքները այս երիտասարդ արուեստագիտուհիին - արժանիքներ՝ որոնք կը վկայեն լուրջ եւ մեթոտիք աշխատանքի մը մասին:

Հռիփսիմէ Պալճեան առանձնաշնորհումը ունեցաւ ներկայացնելու իր ունկնդիրներուն քիչ ծանօթ երկ մը - Ապու Պաքր Խայրաթի *Էթիւտ լիրիք* ան տօ մինէօրը: Ինչպէս իր անունն ալ ցոյց կու տայ, այս գործը հիմնականին մէջ քնարական գործ մըն է, ուր մինէօր թոնալիթէն արեւմտեան ներշնչումով երկին արեւելեան շեշտ մը կու տայ: Երիտասարդ դաշնակահարուհին, իր հանգիստ եւ հաճելիօրէն երանգաւորուած նուագածութեամբ ու ռոմանթիզմով կրցաւ երկին ամբողջական նկարագիրը տալ: Այս նոյն արժանիքները զինք դարձուցին նաեւ լաւագոյն մեկնաբանը Շոփէնի *Փրելիւտ* թիւ 17-ին:

Գալով Ժանէթ Շիրիքճեանին, ըսեմ թէ հիացումով կ'ունկնդրեմ այս իրաւ երաժիշտին զգաստ նուագածութիւնը: Շնորհիւ անվրէպ թեքնիքի, կատարեալ երաժշտականութեան, վստահ հպումներու եւ մանաւանդ՝ շնորհիւ ուժեղ ու փայլուն նուագածութեան մըն է որ ան կրցաւ կատարելապէս մեկնաբանել Շոփէնի դժուար եւ ապերախտ *Փոլոնէզ* ան մի պեմոլ մաժէօրը:

Կը ներկայացնենք մեր ամբողջական գնահատանքն ու մաղթանքները երիտասարդ արուեստագէտներուն եւ մեր երախտապարտ յարգանքը իրենց ուսուցչուհիին՝ Օր. Նուարդ Տամատեանին, այն բոլոր ճիգերուն համար զորս ան նուիրած է իւրաքանչիւր աշակերտի, պատրաստելու համար արուեստի այս գեղեցիկ ձեռնարկը:

*Արեւ*, 1 Յուլիս 1961, ԽԷ. տարի, թիւ 12.943, էջ 3-4

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1961

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ'ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

LE CONSERVATOIRE NATIONAL SUPERIEUR DE MUQIQUE

Programme du premier Concert des élèves

du Cours Préparatoire - PIANO

Jeudi le 28 Décembre 1961, (à 7h du Soir)

Organisé par Prof. Mme LORKOVIC

1. ALY EL MAHRI - 2e année — élève du Prof. TIGERMAN
   Bach : March in Re
2. ANNA EVANGELIAN - 2e année — élève du Prof. CARRO
   Dussek : Sonatine Sol Maj.
3. SHERIF SHAFEI - 2e année — élève du Prof. TIGERMAN
   Clementi : Rondo Do maj.
   Schumann : Marche
4. DIANA HABIB - 2e année — élève du Prof. PARISI
   Beethoven: Sonatine Sol maj. 1 Mouvem.
   Mozart : Ariette
   Steibelt : Rondino
5. AHMED SALAH EL DIN - 2e année — élève du Prof PARISI
   Schumann : Mélodie
   Kozaluh : Berncise
6. HANAN NASSAR - 3e année — élève du Prof. TIGERMAN
   Wangael : les éteiles d'or
   Les jeunes bergères
7. NOHEIR ABD EL KADER - 3e année — élève du Prof. FOUAD
   Bach : Menuet Sol maj.
   Polonaise sol min.
8. ARA CHARIGIAN - 3e année — élève du Pro. DAMADIAN
   Schumann : Saint Nicolas
   Khatchatourian : The little horse
9. SONIA AGENIAN - 2e année — élève du Pro. DAMADIAN
   Bach : Menuet Sol maj.
   Kabalowsky : playing ball
10. SUZANNE EPREMIAN 1ere année — élève du Prof. DAMADIAN
    Beethoven: Sonatine en Sol maj.
11. FATEN ALI HASSAN - 3e année — élève du Prof.CHARIGIAN
    Kabalewsky : Toccatina
    Petit Scherzo
    Etude
12. HANI HASSAN FOUAD - 2e année — élève du Prof. FOUAD
    Haydn : Sonate Re maj.
    Allegro = Largo - Presto
    Debussy : Doctor Gradus ad Parnassum

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 25 ԱՊՐԻԼ 1962

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ’ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

PROGRAMME

Du 1x Concert D'Elèves Du Conservatoire

Cours Preparatoire

Mercredi le 25 Avril 1962 à 7h.P.M.

MOUFFID WILSON : 1ère année — Mme Rachèle Salib

Van De Velde : Danse Arabe
Bourrée

EYNAS WAHED MOUSTAFA: 2ème année — Mme Noémi Mélik

Bourgmuller : Tarantelle

MUHAMED ABD EL GAFFAR : 2 ème année — Mme Rachèl Salib

Bach : Musetto

TAREK ABD EL BAQUI : 2éme année — " " "

Bartok : A la Yougoslave
Accords brisés

SAFAA ABOU EL SEOUD : 2ème année — Mme Clémance Blane

Rinaldi : Miniuetto

MADIHA MOHI EL DINE : 1ère année — Mme Olga Yassa

Diabelli : Minuetto $ Trio

NAGWA BOUTROS : 2ème année — Prof. Ettore Puglisi

Longo : Galottina della Bambola

RAWYA ABD EL AZIZ : 1ère année — Mme Olga Yassa

Beethoven : Sonatine en Sol majeur
moderato - Romanza

SALMA ABD EL AZIZ : 1ère année — " " "

Diabelli : Sonatine en Re majeur

AMR ALOUBA : 1ère année — " " "

Clementi : Sonatine Op. 36 N° 2
Schumann : Le Gai Labboureur

GIHAD SAMI DAOUD: 1ère année — Prof. Et. Puglisi

Clementi : Sonatine en Sol majeur 1ère mouvement

Rameau : menuet

NAIRIE PARTAMIAN : 2ème année — Mlle. Damadian

Beyer : Etude N° 80
Gretchaninoff: Etude

KATLEEN [illegible] : 3ème année — " "

Bach : Menuet en Sol mineur
Beethoven : Bagatelle

SUZANNE EPREMIAN : 1ère année — " "

Bach : Menuet en ré mineur
Tchaikovski : le chant de l'alouette

SONIA AGEMIAN : 2ème année — " "

Kabalevski : Having fun
Toccatina
Etude

# ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ՅՈՒՆԻՍ 1962

## ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

# AUDITION DES ELEVES

de

## Mlle. NEVARTE DAMADIAN

de l'Ecole Normale de Musique de Paris

Professeur de Piano

au Conservatoire National Supérieur de Musique du Caire

★★

CLUB ARTISTIQUE ARMÉNIEN (Salle Tékéyan)

3, Rue Soliman El-Halabi, (ex Doubreh), 7ème étage — Le Caire

**Le Jeudi 28 Juin 1962, à 6 heures 45 p.m.**

---

*Le programme tient lieu d'invitation*

| Performer | Piece | Composer |
|---|---|---|
| *Roubina Mikaëlian* | Les petits amis<br>La valse rose | *Van de Velde* |
| *Robert Abdel Ahad* | Danse villageoise<br>Boute - en - train | *Van de Velde* |
| *Narges H. Fadel*<br>*du Conservatoire Nat. Sup. de Musique* | Etude No. 51<br>Ecossaise | *Beyer*<br>*Hummel* |
| *Christapor Mikaëlian* | Etude No. 61<br>Bernoise | *Beyer*<br>*Kozeluch* |
| *Fathi H. Fadel*<br>*du Conservatoire Nat. Sup. de Musique* | Etude No. 60<br>Musette | *Beyer*<br>*Bach* |
| *Anaïs Hampiguian* | Menuet<br>Les plaintes d'une poupée | *Bach*<br>*C. Franck* |
| *Naïrie Partamian*<br>*du Conservatoire Nat. Sup. de Musique* | Les soldats de plomb<br>Etude | *Gretchaninoff* |
| *Gerald Papasian* | Air suisse | *Clementi* |
| *Suzanne Eprémian*<br>*du Conservatoire Nat. Sup. de Musique* | Sonatine No. 3 1er mouv.<br>Le chant de l'alouette | *Clementi*<br>*Tschaïkowsky* |
| *Kathleen Oghia*<br>*du Conservatoire Nat. Sup. de Musique* | Bagatelle<br>Mélodie antique française | *Beethoven*<br>*Tschaïkowsky* |
| *Sona Agémian*<br>*du Conservatoire Nat. Sup. de Musique* | Sonatine en fa maj.<br>Allegro assai - Rondo | *Beethoven* |

| Performer | Work | Composer |
|---|---|---|
| ***Suzanne Eprémian*** / ***Sona Agemian*** | Rondo à 4 mains | *Diabelli* |
| ***Hilda Samsonian*** | Rondo | *Hummel* |
| ***Tony Hovsépian*** | Sonatine viennoise No. 6 1er mouv. | *Mozart* |
| ***Ara Chirikdjian*** *du Conservatoire Nat. Sup. de Musique* | Six variations | *Beethoven* |

*INTERVALLE*

| Performer | Work | Composer |
|---|---|---|
| ***Vania Chalvardjian*** | Sonate en ré maj. 1er mouv. | *Haydn* |
| ***Betty Ayrassian*** | Valse en si min. No. 10 | *Chopin* |
| ***Sirvart Agopian*** | Passacaille | *Haendel* |
| ***Vera Hatzouny*** | Scherzo op. 16 No. 2 en mi min | *Mendelssohn* |
| ***Zevart Tachdjian*** | Nocturne op. 72 No. 1 en mi min. | *Chopin* |
| | Essor de l'âme | *Schumann* |
| ***Hripsimé Baldjian*** | Le rossignol | *Liszt* |
| ***Jeannette Chirikdjian*** | Sonatine<br>Allegro giocoso<br>Andante con anima, rubato<br>Allegro mosso | *Khatchaturian* |

# ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԱՄԱՎԵՐՋԻ ԴԱՇՆԱԿԻ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Հ. Ց.

Երաժշտութիւնը ինչպէս եւ արուեստները աղերս ունին մարդկային հոգեկան աշխարհին հետ։ Այն խումբը որ անցեալ Հինգշաբթի Թէքէեան սրահին մէջ տեղ գրաւեց դաշնակին առջեւ՝ նպաստեց երաժշտական երեկոյթին յաջողութեան, այսինքն հոգեկան վայելքի իրագործման, շատերու անթերի, յստակ, ջինջ նուագածութեամբ որ կը համապատասխանէր թեքնիքի, հասկացողութեան արտայայտչական առաւել կամ նուազ տիրապետումին։ Այս դժուարին գործին մէջ շնորհաւորելի աշակերտները իրենց տարած աշխատանքին համար եւ նոյն ինքն ուսուցչուհին որ հմտութեամբ, համբերութեամբ, նուիրումով, առանց վնասելու անհատական խառնուածքին, զարգացուցած է, յղկած է ինչ որ ծնունդով իր հետ աշխարհ կը բերէ մանուկը։ Զարգացնել չի նշանակեր քանդել։ Որքան դժուար եւ ապերախտ գործ է, նիւթականէն՝ աննիւթականին, ձայնէն, նօթէն, երաժշտականէն՝ երաժշտութեան հասնելու ճիգը։ Երաժշտութիւնը ըլլալով աննիւթական, տեւողական, թրթռուն, հոգեկան վայելք մը, ինք եւս, անհրաժեշտօրէն պէտք է լրացնէ որոշ նիւթական պայմաններ, դառնալու համար նիւթին գերազոյն, վսեմագոյն արտայայտութիւնը։

*
* *

Ռուբինա Միքայէլեան չվարանեցաւ իր պզտիկ մատները հատիկ հատիկ ստեղնաշարին վրայ սահեցնելու Վան տը Վելտի *Փոքրիկ բարեկամները* եւ *Վարդագոյն վալս*ի նօթերը տալու։ Ռոպէր Ապտէլ Ահատ դարձեալ նոյն հեղինակէն *Գեղջկական պարը* եւ *Պութ-ան-թրէն*ը նուագեց բաւարար յստակութեամբ։ Նարկէս Հ. Ֆատըլ՝ Պէյէրի *Էթիւտ* մը եւ Հիւմմէլի *Էքոսէզ*ը՝ կշռոյթով եւ ինքնավստահութեամբ։ Քրիստափոր Միքայէլեան քիչ մը աճապարեց, թերեւս յուզումէն, բայց մատներու ուժով յաղթահարեց Պէյէրի *Էթիւտ* թիւ 61-ը եւ Քոզըլիւքի *Պերնուազ*ը։ Նոյնը չէր պարագան Ֆաթիի Հ. Ֆատըլի որուն Պէյէրի *Էթիւտ* թիւ 60-ը եւ *Միւզէթ*ը տրուեցան վարանումով։ Աւելի աշխատանքի պէտք ունի։ Անայիս Համբիկեանի վիճակուած էր Պախի *Մենիւէթ*ը եւ Ս. Ֆրանքի *Պուպրիկի մը դժգոհութիւնները* զորս ներկայացուց ծանրակշռութեամբ, պարզութեամբ եւ իրեն յատուկ շնորհալիութեամբ։ Նայիրի Փարթամեան Կրեչանինոֆի *Կապարէ զինուորները* եւ *Էթիւտ*ը նուագեց այնքան լաւ նուագելու փափաքով, այնքան պերճանքով որ կտորները վնասեցին։ Ժիրայր Բաբազեան կատարեց Քլեմենթիի *Զուիցերիական եղանակ*ը դիւրութեամբ, զգայնութեամբ։ Իր կայքը (թընիւ) լաւ էր, իր նուագածութիւնը՝ ճշգրիտ կերպով երանգաւորուած։ Միւզան Եփրեմեանի Քլեմենթիի Սոնաթին թիւ 3-ը եւ Չայքովսքիի *Արտոյտին երգը* յատկանշուեցան իրենց վստահ եւ վարժ գործադրութեամբ։

Քաթլին Օղիա Պեթհովէնի *Պակաթէլ*ը եւ Չայքովսկիի *Ֆրանսական հին մեղեդի*ն ներկայացուց պարկեշտութեամբ, յստակութեամբ, նախադասութիւնները իրար կապելով, զանոնք ամբողջացնելով։

Սոնա Աճէմեան տիրացած է ստեղնահպումի։ Պեթհովէնի Սոնաթին անֆա

մաժէօրը ուժով էր եւ խռովիչ, զայն իրագործեց զարմանալի դիւրութեամբ մը։ Հիլտա Սամսոնեան՝ մեղմ թելադրիչ, նուրբ էր Հիւմէլի *Ռոնտո*յով։ Թոնի Յովսէփեան՝ ուժեղ, ջղուտ, համարձակ եւ մասնաւոր բծախնդիր՝ Մոցարթի *Վիեննական սոնաթի*նի Ա. մասին մէջ։ Իր թեքնիքը յառաջդիմած է։

Արա Շիրիքճեան փակեց յայտագրին առաջին մասը *Պեթհովէնի 6 վարիասիոններ*ով, կտորը զոր նուագեց եռանդով, առանց վարանելու թեքնիք դժուարութիւններու առջեւ, անսայթաք։ Տարիներու հետ երբ իր գիտակցութիւնն ալ զարգանայ Արան ապահովաբար պիտի հասնի արուեստի բարձրութեան։

Յայտագրին երկրորդ մասին մէջ այլեւս նուագողին խառնուածքը, նկարագիրը, թեքնիքը կու գային ամբողջացնել իրենց երաժշտական ծանօթութիւնները։ Մեկնաբանութեան այս շրջանին չենք կրնար խստապահանջ ըլլալ։

Վանիա Շալվարճեանի հասկացողութիւնը մեծապէս օգնեց իր Հայտընի Սոնաթ ան րէ մաժէօրի կատարման ժամանակ։ Իր հաւասարակշռութեան զգացումը, հմտութիւնը եւ զգայնութիւնը դրապէս սատարեցին իր մեկնաբանութեանց։

Պէթի Այրասեանի Շոփէնի *Վալս*ը եղաւ բնազդաբար զգայնոտ, երազկոտ, ինչ որ կը նպաստէ մթնոլորտ ստեղծելու։

Ջուսպ, կշռութաւոր Հէնտէլի *Փասաքայ* մը հրամցուեցաւ մեզի Սիրվարդ Յակոբեանի կողմէ։ Հարազատութիւնը կարելի է իր մօտ նկատել իբրեւ գլխաւոր յատկութիւն, մինչ Վերա Հացունի Մենտելսոնի *Սքերցո*յով ցուցաբերեց նուագելու դիւրութիւն մը, եւ զօրութիւն։

Ջուարթ Թաշճեանի Շոփէնի *Նոքթիւռն*ը յուզիչ եւ խորունկ էր։ Իր երկրորդ կտորը՝ Շումանի *Հոգիին սլացք*ը կը յայտնէր մեկնաբանութեան մէջ արձանագրած իր մեծ յառաջդիմութիւնը։

Հռիփսիմէ Պալճեան, հաւատարմութեամբ վերցուց Լիստի *Սոխակը*։ Թեթեւ բեմախռովքի մը ընդմէջ, շնորհիւ իր վարժ նուագածութեան եւ ոտնարանի (փետալ) ճարտար գործածութեան, կտորին գեղեցկութիւնը զգացինք։

Ժանէթ Շիրիքճեան ապրեցուց Խաչատուրեանի Սոնաթինը։ Ի՜նչ յստակութիւն եւ որքան թռիչք իր նուագածութեան մէջ։ Ինչ որ մեզ յուզեց եւ հիացուց, դաշնակի իր տիրապետումէն անդին, իր անձնական դրոշմը, իր անձնական նպաստն էր գործին, որով Խաչատուրեանի ամբողջ տաղանդը հարազատօրէն արտաբերելու նպաստեց։ Սոնաթինին երկրորդ մասին Անտանթէ քոն անիմա բուպաթօն ուր ժողովրդական բներգը յաճախակի կը կրկնուէր, մերթ շնորհալի, մերթ զօրեղ, այլեւ երբեմն արձագանգային լլկանքով, իր մօտ եղաւ կանչ մը, էջք մը դէպի ժողովուրդի հոգիին խորքը։

Քաջալերական եւ յուսադրիչ էին բոլոր աշակերտներուն ճիգերը։ Օժտուածէն, նուազ օժտուածը, թեքնիքի տիրացածէն, նուազ տիրացածը, սկսնակէն մինչեւ կատարելութեան հասածը, ամէնքն ալ նպաստեցին երաժշտական անխառն մթնոլորտ մը ստեղծելու։

Երաժշտական այս ընտանիքին նորանոր յաջողութիւններ եւ շնորհակալութիւն՝ ուսուցչուհիին, որուն նուիրական առաջնորդութիւնը կը կայանայ անվթար եւ ապահով ճամբու մէջ պահել իր աշակերտները։ Երաժշտութիւնը հոգեկան սնունդ մըն է, զայն ըմբռնելու, զայն արտաբերելու համար պէտք է նուիրուիլ անոր։

*Արեւ*, 3 Յուլիս 1962, ԽԸ. տարի, թիւ 13.248, էջ 2

# ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ՈՒՐԲԱԹ, 4 ՅՈՒՆՈՒԱՐ 1963

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ'ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

R.A.U.
Ministère de la Culture et
de l'Orientation Nationale.

Conservatoire Nationale Supérieur de Musique
Année scolaire 1962 - 1963.
2ème Récital des élèves de la periode préparatoire
Vendredi 4 Janvier 1963 à 11h30 a.m.
Salle du Conservatoire
Organisé par le Prof. Mme T.Lorcovic

P r o g r a m m e

1. Gihan Mikhail : Piano I classe O. Yassa. Clementi : Thème et variations.
2. Azza Rouchdi Saleh : Piano I classe L.Poulios. Beyer: Etude en Ré maj.
3. May Rouchdi Saleh : Piano I classe L. Poulios. Beyer: Etude en Sol maj.
4. Fatma Abul Séoud : Piano II classe H. Otto. Bartok : 5 Etudes.
5. Samir Saleh : Violon III classe Menachés. Elletrone : Gavotte.
6. Nail Omar Ali: Piano I classe Poulios. Clementi : Sonatine en Do maj. Allegro - Andante - Presto.
7. Soha el Hayari : Piano II classe O.Yassa. Hummel : Ecossaise
Diabelli: Allegretto.
8. Salwa el Hayari: Piano II classe O. Yassa. Beethoven : Bagatelle.
Burgmüller : La Styrienne
9. Mona Mounir Wissa : Piano IV classe R. Sabet. Bach: Menuet en Sol Maj.
Schumann : Première douleur. Le cavalier farouche.
10. Alaa el Din Ishak. Piano IV classe Marianos. Debussy : Le petit négre.
11. Mounir Nasr el Dine : Violon IV classe Menachés. Kreisler: Marche des soldats en bois.
12. Amira Naggar: Piano II. classe Marianos. Gretchaninoff: 1. Les soldats en plomb.
2. Adieux.
3. Hop-hop dada.
13. Nairie Partamian : Piano III classe Damadian. Gretchaninoff: Petite danse.
Sur les prés des bois.
14. Aida Nasr el Dine: Piano II classe Conservatoire Tigerman.
Bach : Solfeggietto.
Mendelssohn : Chant sans paroles.
15. Farés Boulos : Piano III. Classe Puglisi.
Bach : 1. Menuet en Ré min.
2. Musette.
Kuhlau : Sonatine en Do maj. Allegro - Vivace.

= = = = = = = = =

# ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ՈՒՐԲԱԹ, 11 ՅՈՒՆՈՒԱՐ 1963

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ'ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

Conservatoire Nationale Supérieur de Musique
Année scolaire 1962 - 1963.
3ème Récital des élèves de la période préparatoire
Vendredi 11 Janvier 1963 à 11h30 a.m.
Salle du Conservatoire
Organisé par le Prof. Mme Melita Lorcovic

---

Programme

MUSIQUE POUR PIANO

1. BAHIGA RACHID, Classe Sabet, Année III
BACH : Musette.
SCHUMANN : Le gai laboureur.

2. PAULETTE TAHAN, classe Mélik, Année I
BACH : Polonaise en sol min.
BURGMÜLLER : Harmonie des anges.

3. NORA ZOULALIAN, classe Mélik, Année I
KUHLAU: Sonatine en Do maj. op. 55 N°1
Allegro - Vivace

4. AHMED BANOUNA, cl. Conserv. Tiegerman, Année II
BACH : Marche en ré min.

5. SUISSAN EL HACHEMY, classe Conserv. Tiegerman, Année III
BACH : Menuet en Sol maj.

6. HANAN NASSAR, cl. Conserv. Tiegerman, Année II
BURGMULLER : Ballade.

7. FATMA MAHMOUD, classe Mélik, Année II
BURGMULLER : Tarantelle.

8. WAEL WAHID MUSTAFA , cl. Mélik, Année II
MOZART : Valse favorite.

9. EYNAS WAHID MUSTAFA, cl. Mélik, Année III
DIABELLI : Sonatine en Sol maj. op. 151,
Andante cantabile - Scherzo - Rondo.

10. MAGDA ABDEL KADER RACHID, cl. Mélik, Année III
BURGMULLER : La gracieuse.

11. MONA ABDEL KADER RACHID, cl. Mélik, Année III
KUHLAU : Sonatine en Do maj. op. 20 N° 1.
Allegro - Andante - Rondo.

12. SUZANNE EPREMIAN, cl. Damadian, Année III
TSCHAIKOWSKY : 1. La nouvelle poupée
2. Marche des soldats en bois.

13. SONIA AGEMIAN, cl. Damadian, Année III
BACH : Solfegietto.
KHATCHATOURIAN : Little song.
KABALEVSKY : Danse.

14. ARA CHIRIKDJIAN , cl. Damadian, Année IV.
KHATCHATOURIAN : 1. Légende.
2. Etude.

-o-o-o-o-o-o-o-o-o-o-o-o-o-o-o-o-

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ՈՒՐԲԱԹ, 5 ԱՊՐԻԼ 1963

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ՛ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

REPUBLIQUE ARABE UNIE

Ministère de la Culture et de l'Orientation Nationale

Conservatoire Nationale Supérieure de Musique.
Année Scolaire
1962-1963
Organisé par Prof.
Mme.Melita Lorcovic.

6ème récital des élèves de la période préparatoire
Vendredi 5 Avril 1963 à 11h.30 a.m.
Salle du Conservatoire

PROGRAMME: PIANO

1. LOBNA ANWAR EL-SADAT: Ière année, classe O. Yassa.
KOEHLER op. 189 : Deux études.

2. RIMA ALI EL-HIARI: Ière année, classe O. Yassa.
BEYER op. 101 : Deux études.

3. NAGWA EL-SANABAWI: Ière année, classe O. Yassa.
LEBERT ET STARK : Chanson populaire.

4. MADIHA ZAKARIA MOHYI EL-DIN: IIème année, classe O. Yassa.
BACH : Menuet en Sol maj.
SCHUMANN : Le gai laboureur.

5. BAHIGA ABDEL-HAMID RACHID : IIIème année, classe R. Sabet.
BEETHOVEN : Menuet en Sol Maj.
SCHUMANN : Marche militaire.

6. ZEINAB EL-SAYID EZZAT : IIIème année, classe R. Sabet.
BEETHOVEN : Sonate en Sol Maj.
I. Moderato II. Rondo.

7. SAMIRA MICHEL YOUSEF : IIIème année, classe Szulc.
BACH : Deux petits préludes : Fa Maj. - la min.

8. DIANA HABIB EL-SOMBATI : IIIème année, classe Szulc.
DUSSEK : Sonatine op. 20 n°1.
I. Allegro non tanto. II. Allegretto.

9. OMAIMA HASSAN RACHID : IIIème année, classe O. Yassa.
CLEMENTI : Sonatine en Do maj. op. 36
I. Spirituoso II. Un poco adagio III. Allegro.

10. SAMIA MAHMOUD EL-ZOHEIRI: IVème année, classe Cheridjian.
MOZART: Sonatine Viennoise en Do maj.
I. Allegro brillante II. Allegretto III. Adagio
IV. Allegro.

11. NORA ALI MAHMOUD: IIème année, classe Cheridjian.
BEETHOVEN : Sonatine en Fa Maj.
I. Allegro moderato II. Presto.

KABALEVSKY : Deux Scherzos : Fa maj. - Do maj.

Suite du 6ème récital
du Vendredi 5 Avril 1963 à 11h.30 a.m.
Salle du Conservatoire

12. VIKINE BELERIAN : IIIème année, classe O. Yassa.
DIABELLI : Rondo en Sol maj.

13. MOHAMED EZZAT ABOU-AUF : IVème année, classe Kretschmann.
KOZINA : Divertimento nos 1, 3, 7.

14. ARA CHIRIKDJIAN: IVème année, classe Damadian.
KHATCHATOURIAN : Etude.
SCHUBERT : Scherzo en Si bém. maj.

---oooOooo---

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑ

## ՈՒՐԲԱԹ, 15 ԱՊՐԻԼ 1966

## ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ

Ելոյթ կ՚ունենան Նուարդ Տամատեանի աշակերտները

LE CONSERVATOIRE NATIONAL SUPERIEUR
DE MUSIQUE.

COURS PREPARATOIRE.

1er Audition.
Vendredi, 15.4.1966
10 heure.

**PIANO :**

| No. | Compositeur | Œuvre / Élève | Professeur |
|---|---|---|---|
| 1. | BEETHOVEN | Sonate Op.49 N° 1.<br>Adel Saad Wassef - 4e année. | Prof. Fouad. |
| 2. | MOZART | Sonate en do (1er mouv.)<br>Amani Sadek - 5e année. | |
| 3. | HAENDEL | Passacaille.<br>Sameh Saad Wassef - 5e année. | |
| 4. | DEBUSSY | Doctor Gradus ad parnassum<br>Hanan Rouchdi - 6e année. | |
| 5. | CHOPIN | Prelude et Valse.<br>Faten Ali Hassan - 7e année. | Prof. Cheridjian. |
| 6. | HAENDEL<br>SCHUBERT | Fuguette<br>Moment musical<br>Nora Ali Hassan - 6e année. | |
| 7. | BACH<br>KABALEVSKY | Petit prélude.<br>Toccatina.<br>Olfat A. Morsi - 5e année. | Prof. Damadian. |
| 8. | BACH<br>HELLER | Fuguette<br>L'avalanche.<br>Anaïs Hampignian - 5e année. | |
| 9. | BEETHOVEN | Pour Elise.<br>Naïrie Partamian - 6e année. | |
| 10. | DURAND | Chaconne<br>Wael Wahid Moustafa - 4e année. | Prof. Mélikian. |
| 11. | Khachaturian | Study.<br>Magda Abdel Kador Rachid - 6e année | |
| 12. | BACH<br>TSCHAIKOWSKY | Prélude en Mi min.<br>Douce rêverie<br>Nadia Helal - 5e année. | Prof. [illegible] |
| 13. | BARTOK | Variations<br>Hoda Salah Metwalli - 4e année. | Prof. Salib. |
| 14. | BEETHOVEN<br>SCHUMANN | Sonatina en Fa.<br>S. Nicola.<br>Mona Salah Metwalli - 4e année. | Prof. Malta |

Le Recteur.

M° Cesare Nordio.

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԻՆԸ ԵՒ ԻՐ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ ԱԶԳԱՅԻՆ ՇՐՋԱՓԱԿԷՆ ՆԵՐՍ

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Ժամանակին այն ընտանիքը որ կը բախտաւորուէր աղջիկ զաւակով մը ծնողքը առաջին առթիւ կը փութար դաշնամուր մը գնելու, որպէսզի նորածինը երբ մեծնայ՝ դաշնակ նուագել սորվի. կ՚ըսուի թէ նոյնիսկ երբ օրիորդ մը ամուսնանար, փեսային ընտանիքը կը հարցնէր թէ արդեօք հարսը դաշնակ նուագել գիտէ՞ր: Անցեալի սովորութիւններ որոնք անցած են շատոնց բայց դաշնակը չէ դադրած փնտռուած եւ սիրուած նուագարաններէն մին ըլլալէ անկասկած:

Դաշնակի ունկնդրութիւնը մեր սրտերուն կը խօսի քիչ թէ շատ մանաւանդ երբ նուագող դաշնակահարը որոշ հմտութիւն մը ունի մեկնաբանելու միջազգային համբաւի պատկանող երաժիշտներու գործերը: Այդ հմտութիւնը, ճաշակը, մատներու նրբութիւնն ու արագութիւնը կը կարօտին ձիրքի, երկար եւ յոգնատանջ աշխատանքային տարիներու, անվիհատ յարատեւումի:

Ուրեմն արուեստասէրը որպէսզի ապագային ըլլայ փայլուն արուեստագէտ մը, պէտք ունի անշուշտ ուղեցոյցի մը որն է ուսուցիչը, հիմնարկը:

Եգիպտոսի պետական երաժշտանոցի հայ արուեստագէտ ուսուցչուհիներէն մին է հանրածանօթ դաշնակահարուհի Օր. Նուարդ Տամատեանը, որուն ելոյթները անցեալին գնահատուած են օտար թէ հայ արուեստագէտ թէ արուեստասէր հասարակութեան կողմէ. ներկայիս Օր. Տամատեան փնտռուած տարր մըն է երաժշտանոցէն ներս, որուն միջոցաւ պիտի կարողանանք հասկնալ դաշնամուրի դժուարին եւ պահանջկոտ արուեստին կանոնները:

## ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ԵԳԻՊՏՈՍԻ ՊԵՏԱԿԱՆ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻ ԱՐՈՒԵՍՏԱԳԻՏՈՒՀԻ ՕՐԻՈՐԴ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՀԵՏ «ՄԵՐ ԵԳԻՊՏԱԿԱՆ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԸ ԿԸ ՀԵՏԵՒԻ ԲՈԼՈՐ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԵՐԿԻՐՆԵՐՈՒ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԵՐԱԺՇՏԱՆՈՑՆԵՐՈՒ ԾՐԱԳՐԻՆ»

**ՀԱՐՑ.- Ե՞րբ սկսած է յայտնաբերուիլ երաժշտութեան սէրը ձեր մէջ, մասնաւորաբար դաշնամուրի նուագածութեան մէջ:**

ՊԱՏԱՍԽԱՆ.- Փոքր տարիքէս դաշնակի դասերու սկսիլս կը պարտիմ ծնողքիս, որոնք երաժշտութեան եւ ընդհանրապէս բոլոր արուեստներու հանդէպ

իրենց ունեցած սէրը փոխանցած են ինծի:

Մեր տունը, ինչպէս նաեւ մօրեղբօրս՝ Յակոբ Փափազեանի տունը, կը յաճախէին բոլոր արուեստագէտները որոնք կ'այցելէին Եգիպտոս: Մօտէն ճանչցած ենք զիրենք եւ ունկնդրած զանոնք:

Ասկէ զատ, մայրս փոքր տարիքէս, կարելի եղածին չափ զիս նուագահանդէսներու կը տանէր, ինչ որ շատ կարեւոր է: Երաժշտութիւն լսելը շատ կը նպաստէ երաժշտութեան ընդհանուր զարգացման եւ հասկացողութեան: Չի բաւեր շաբաթը մէկ կամ երկու անգամ դասեր առնելը: Այս ասպարէզը կը պահանջէ չարաչար եւ յարատեւ աշխատանք:

**Հ.- Որո՞նք են ձեր ունեցած վկայականները:**

Պ.- 1923-ին ընտանեօք Պէյրութ փոխադրուելով, դաշնակի դասերս շարունակած եմ Պէյրութի Ամերիկեան Համալսարանին երաժշտանոցը, ուրկէ նաեւ վկայուած եմ, ուսուցիչ ունենալով մեծատաղանդ դաշնակահար, ստեղծագործ եւ երաժշտագէտ Արքատի Քուկէլ: Քննութեան առաջին հանդիսանալով, արժանացած եմ կրթաթոշակի մը, կատարելագործելու համար մասնագիտութիւնս Փարիզի Էքոլ Նորմալ տը Միւզիքի մէջ, աշխարհահռչակ դաստիարակ ուսուցիչ եւ դաշնակահար Ալֆրէտ Քորթօի հսկողութեան տակ ուրկէ եւս վկայուելով կը վերադառնամ Պէյրութ, ուր կը պաշտօնավարեմ Ամերիկեան Համալսարանին երաժշտանոցին մէջ:

**Հ.- Ե՞րբ տուած էք ձեր առաջին համերգը:**

Պ.- Առաջին անձնական համերգս տուած եմ 1933-ին, նախ Պէյրութի մէջ, յետոյ Հալէպ, Գահիրէ, ինչպէս նաեւ եգիպտական ձայնասփիւռէն բազմաթիւ ունկնդրութիւններ, նուագելով օտար երաժշտագէտներու կարգին, հայ երաժըշտագէտներու ստեղծագործութիւններ եւս. նուագակցած եմ նաեւ արուեստագէտ ջութակահարներու եւ երգիչներու: 1937-ին հաստատուելով Գահիրէ, կը շարունակեմ դասաւանդել, աշակերտական ունկնդրութիւններ տալով կանոնաւորապէս ամէն տարի, պատրաստելով բազմաթիւ հայ թէ օտար աշակերտներ, որոնցմէ շատեր հասած են բարձր դիրքերու:

**Հ.- Պետական Երաժշտանոցին մէջ ի՞նչ է ձեր պաշտօնը:**

Պ.- 1959-ին Տոքթ. Ապու Պաքր Խայրաթի կողմէ հրաւիրուելով դասաւանդել Գահիրէի նորակազմ Պետական Բարձրագոյն Երաժշտանոցին մէջ, բոլորովին կը նուիրուիմ ուսուցչական ասպարէզին, ուր կը շարունակեմ մինչեւ օրս: Շատ երջանիկ եմ որ իմ երկրորդ հայրենիքիս զաւակներուն վերելքին եւ յառաջդիմութեան մէջ իմ պզտիկ բաժինս կը բերեմ: Ուրախ եմ ըսելու որ մեր երաժշտանոցին մէջ կը դասաւանդեն նաեւ ուրիշ հայ ուսուցչուհիներ, Տիկին Ն. Մելիքեան եւ Տիկին Ճ. Ռաթլը. եւ քանի որ անցեալ տարի կնոջ տարի հռչակուած էր, ըսեմ նաեւ որ երաժշտանոցին այժմու տնօրէնն է Տիկին Սամիհա Էլ Խօլի:

**Հ.- Քանի՞ տարի են երաժշտանոցի դասընթացքները:**

Պ.- Մեր եգիպտական երաժշտանոցը կը հետեւի բոլոր եւրոպական երկիրներու բարձրագոյն երաժշտանոցներու ծրագրին։ Բաժնուած է երեք շրջաններու. նախապատրաստական, երկրորդական եւ բարձրագոյն, ընդհանուրը տասներեք տարի, որմէ յետոյ փայլուն աշակերտները կը ղրկուին կատարելագործուելու Մոսկուա կամ ուրիշ մայրաքաղաքներու երաժշտանոցները։

**Հ.- Կը սիրէ՞ք ուսուցչական ասպարէզը։**

Պ.- Ինչպէս կը տեսնէք, քառասուն տարիներու վաստակ մը ունիմ այս ասպարէզին մէջ։ Ուսուցչական ասպարէզը շատ սպառիչ եւ ապերախտ է. կը պահանջէ անսպառ համբերութիւն։ Ուսուցիչը պէտք է հոգեբան ըլլայ։ Ամէն աշակերտի հետ չէք կրնար նոյն ձեւով վարուիլ։ Միւս կողմէ, որքան հետաքրքրական է փոքրիկին մատիկները տեղաւորել ստեղնաշարին վրայ, եւ առաջնորդել զինքը երաժշտական աշխարհը եւ հետզհետէ հասցնելով զինքը որոշ մակարդակի մը, հետեւիլ իրեն յառաջդիմութեան։ Անշուշտ ամէն աշակերտ չի հասնիր ամենամեծ դիրքերու. բայց եթէ կարողացանք իր մէջ արթնցնել սէրը եւ հետաքրքրութիւնը երաժշտութեան հանդէպ, այդ արդէն մեծ գոհունակութիւն մըն է, եւ յաղթանակ մը դաստիարակին համար։

*

* *

Վաստակաւոր արուեստագիտուհի օրիորդ Նուարդ Տամատեանի հետ մեր ունեցած հարցազրոյցի աւարտին կը մաղթենք իրեն նորանոր յաջողութիւններ, իսկ իր հայ աշակերտներուն՝ յարատեւ աշխատանք եւ յառաջդիմութիւն, միշտ հայուն անունը բարձր պահելու ձգտումով։

*Արեւ*, 31 Մարտ 1976, Կ. տարի, թիւ 17.366, էջ 3

*ԱՐԵՒ* ՕՐԱԹԵՐԹ, ԳԱՀԻՐԷ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ-ԵՐԵՔՇԱԲԹԻ,
**7-8 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1981**

«ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ»
ԹԵՐԹՕՆԻՆ ՄԷՋ ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ ԿԸ ԳՐԷ
ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

## ՏԱՄԱՏԵԱՆ ՆՈՒԱՐԴ (ԾՆԾ. 1910)

Հասարակական անուանի գործիչ Միհրան Տամատեանի կրտսեր դուստրը, ծնած է Աղեքսանդրիա:

Փոքր տարիքէն կը սկսի դաշնակի դասեր առնել իտալացի համբաւաւոր ուսուցչուհի Պոնուիչի Քարլեսիմոյէն: 1923 թ. ծնողքին հետ Պէյրութ փոխադրուելով, դաշնակի դասերը կը շարունակէ տեղւոյն Ամերիկեան Համալսարանին երաժշտանոցին մէջ, ուսուցիչ ունենալով մեծատաղանդ դաշնակահար, յօրինող եւ երաժշտապետ Արքատի Քուկէլը:

1931 թ. կ՚աւարտէ՝ արժանանալով կրթաթոշակի՝ կատարելագործելու համար երաժշտական իր ուսումը Փարիզի Էքօլ Նորմալ տը Միւզիքի մէջ՝ աշխարհահռչակ դաշնակահար եւ մանկավարժ Ալֆրէտ Քորթոյի հսկողութեան տակ: 1932 թ. վկայուելով, կը վերադառնայ Պէյրութ, ուր հինգ տարի կը պաշտօնավարէ Ամերիկեան Համալսարանին երաժշտանոցին մէջ:

1937 թ. հաստատուելով Եգիպտոս՝ Գահիրէ, կը շարունակէ դասաւանդել, պատրաստելով բազմաթիւ աշակերտներ, որոնցմէ շատեր հասած են բարձր դիրքերու:

Լիբանանի, Սուրիոյ եւ Եգիպտոսի մէջ, ինչպէս նաեւ եգիպտական ձայնասփիւռէն տուած է դաշնակի բազմաթիւ ունկնդրութիւններ, նուագելով՝ օտար երաժիշտներու կարգին, հայերու ստեղծագործութիւններ եւս:

Նուագակցած է ծանօթ ջութակահարներու եւ մեներգիչներու:

1959 թ. հրաւիրուած է դասաւանդելու Գահիրէի պետական նորաբաց երաժըշտանոցին մէջ, ուր կը պաշտօնավարէ մինչեւ այսօր:

*Արեւ*, 7 Սեպտեմբեր 1981, 66-րդ տարի, թիւ 18.943, էջ 3. 8 Սեպտեմբեր 1981, 66-րդ տարի, թիւ 18.944, էջ 3

*ԱՐԵՒ ՕՐԱԹԵՐԹԻ ԱՐԱԲԵՐԷՆ ՅԱՒԵԼՈՒԱԾ,*
ԳԱՀԻՐԷ

## ՆՈՅԵՄԲԵՐ 1998

## ԱՐԱԲԵՐԷՆ ՅՕԴՈՒԱԾ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Հայկ Աւագեան, «Նուարդ Տամատեան ուսթազա ուա ՙազեֆաթ ալ-պիանու» [Նուարդ Տամատեան՝ մանկավարժ եւ դաշնակահար], *Արեւ օրաթերթի արաբերէն ամսօրեայ յաւելուած*, Նոյեմբեր 1998, թիւ 11, էջ 14-17

صوت الموسيقى

# نيڤارت داماديان
# أستاذة وعازفة البيانو

بقلم :
هايــج آڤاكـيان



نيڤارت داماديان

تُعتبر نيڤارت داماديان من أبرز الشخصيات الموسيقية فى مصر خاصة فى مجال تدريس آلة البيانو حيث تتلمذ وتخرج على يديها أجيال متواصلة من عازفى البيانو البارعين.

تابعت الصحافة الأرمنية وغير الأرمنية فى مصر ولبنان وسورية وفرنسا المشوار الفنى لداماديان. وأيضاً كتب عنها المؤرخون بإيجاز مثل آفيديس يابوچيان[1] وتسيسيليا بروديان[2] . وكذلك لم تفلت داماديان من القلم المحنك لرئيس تحرير مجلة «كوليس» بالأستانة هوڤهانيس آيڤاز حيث استفاد من زيارته إلي مصر فى إجراء لقاء مع الفنانة ونشر مقالاً وحواراً عنها. وفيهما معلومات قيمة عن داماديان وأبرزا لأول مرة شهرتها فى العالم العربى[3].

وُلدت نيڤارت داماديان بالإسكندرية فى عام ١٩١٠، وهى ابنة المفكر والسياسى مهران داماديان (١٨٦٤-١٩٤٥). تلقت تعليمها الأولى فى مدرستى بوغوصيان الأرمنية والليسيه فرانسيه بالإسكندرية.

بدأت دروسها للبيانو فى السادسة من عمرها على أيدى بونوتشى كارليزيمو.

انتقلت فى عام ١٩٢٤ مع أسرتها إلى بيروت.

فى عام ١٩٢٩ تأسس معهد للموسيقى بالجامعة الأمريكية فى بيروت حيث قُبلت داماديان فى فصل عازف البيانو والمؤلف الموسيقى آركادى كوجيل.

تمت الامتحانات النهائية في صالة «ويست هول» بلبنان فى يومى ١٣-١٤ يونية ١٩٣١ (عزف منفرد ومصاحبة بالتتابع) أمام جمهور عريض من المستمعين. وكانت المنافسة بينها وبين مصباح على حيدر. وفى ذلك الوقت كان يُقام فى لبنان ريستيالات عازف البيانو العالمى ألفريد كورتو. وقد اتفق هذا الأخير مع الجامعة الأمريكية لاعطاء منحة دراسية للفائزة الأولى.

وعلى حسب مقالات النقاد، كانت العازفتان بارعتين ومتقنتين. ولكن تميزت داماديان بموسيقيتها الرقيقة العميقة التى جعلتها تتفوق على زميلتها مما أهلها أن تنال المرتبة الأولى. ونقتطف من ضمن ما كُتب عنها جزءاً من المقالة التى ظهرت في جريدة «لوريان» اللبنانية بقلم ناقدها الفنى: «إن الآنسة داماديان التى عزفت لأول مرة أمام اللجنة الرسمية قد بدأت البرنامج بالمقدمة والفوجا رقم ٢١ لباخ وتبعتها بالآندانتى لموتسارت. أدت بيتهوڤن بشعور فى السوناتا رقم ١٧. ولعبت شوبان برقة فاتنة في البالاد رقم ٣ سريعة ومتحمسة بلمسة فى أسلوب الضربات المتقطعة حيث إن الانتقالات بين الإستكاتو والرباط المضغوط معمولة بطريقة مدهشة للأصابع التى قُيمت بتصفيقات حية»[4].

كان هذا أول تقدير محترف تناله داماديان. وقد ترك هذا النجاح صدى ليس فقط فى الصحافة اللبنانية، بل أيضاً فى الصحافة السورية والفرنسية والمصرية.

تُعد داماديان أول خريجة للمعهد الموسيقى بالجامعة الأمريكية ببيروت. وقد استمر نشاط هذا المعهد حتى عام ١٩٤٨ حينما أُقفل نتيجة لاندلاع حرب فلسطين[5].

أتاح حصولها علي الجائزة الأولي فرصة نادرة لاستكمال دراسات البيانو فى «إيكول نورمال» بباريس لمدة عام (١٩٣١



Յօղուածի առաջին էջին պատճէնը

# *ԾԻԾԵՌՆԱԿ* ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ, ԳԱՀԻՐԷ

# ՀՈԿՏԵՄԲԵՐ 2001

# ՅՕԴՈՒԱԾ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Հայկ Աւագեան, «Մեծավաստակ դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեան», *Ծիծեռնակ*, եռամսեայ երաժշտական յաւելուած *Ջահակիր* շաբաթաթերթի, Հոկտեմբեր 2001, Ա. տարի, թիւ 4, էջ 3-11

# ՄԵԾԱՎԱՍՏԱԿ ԴԱՇՆԱԿԱՀԱՐ ԵՒ ՄԱՆԿԱՎԱՐԺ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆ (1)

Եգիպտահայ երաժշտութեան ամենակարկառուն դէմքերէն է դաշնակահար-մանկավարժ Նուարդ Տամատեան: Փայլուն դաշնակահար եւ մանաւանդ՝ մեծավաստակ մանկավարժ, ան իր ողջ կեանքը նուիրաբերած է սերունդներու երաժշտական կրթութեան, պատրաստելով դաշնակահարներու ամբողջ հոյլ մը:

Եգիպտոսի, Լիբանանի, Սուրիոյ, Ֆրանսայի հայ թէ օտար մամուլը մանրամասն հետեւած է Տամատեանի երաժշտական գործունէութեան, արձանագրած իր ձեռնարկներուն յաջողութիւնները: Իր մասին հակիրճ անդրադարձած են Աւետիս Եափուճեան (2) եւ Ցիցիլիա Բրուտեան (3): Այլեւ Պոլսոյ *Քուլիս* ամսագիրի խմբագիր Յ. Այվազի փորձառու, խուզարկու տեսադաշտէն չէ վրիպած Տամատեանին վաստակը: Իր Եգիպտոս այցելութենէն օգտուելով՝ Այվազ տեսակցած է արուեստագիտուհիին հետ եւ *Քուլիս*ին մէջ հրատարակած կարեւոր յօդուած-հարցազրոյց մը, ուր արժէքաւոր տեղեկութիւններ հաղորդած Տամատեանին մասին եւ առաջին անգամ ըլլալով չնչտած անոր վաստակած համբաւը արաբական աշխարհին մէջ (4):

Նուարդ Տամատեան ծնած է 1910-ին, Աղեքսանդրիա: Դուստրն է յայտնի մտաւորական եւ հասարակական գործիչ Միհրան Տամատեանին: Նախնական կրթութիւնը ստացած է Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգային Վարժարանին եւ Լիսէ Ֆրանսէին մէջ: Դաշնակի դասերը սկսած է վեց տարեկանին՝ Պոնուչչի Քարլեզիմոյի հսկողութեամբ:

1924-ին ընտանիքին հետ կը տեղափոխուի Պէյրութ: 1929-ին Պէյրութի Ամերիկեան Համալսարանին մէջ կը հիմնուի Երաժշտական Հիմնարկ մը, ուր նոյն տարին՝ դաշնակահար-երաժշտահան Արքատի Քուկէլի (5) դասարանը ուսանելու կ'ընդունուի Տամատեան:

Աւարտական քննութիւնները տեղի կ'ունենան 1931 Յունիս 13-ին (մենանուագ) եւ 14-ին (նուագակցութիւն), Պէյրութի Ուեսթ Հոլին (West Hall) մէջ՝ ներկայութեամբ մասնագէտներու հոծ բազմութեան: Հիմնական մրցակցութիւնը կը կայանայ Նուարդ Տամատեանի եւ Միսալխ Ալի Հայտարի միջեւ: Վերջինս ըլլալով Թրքուհի մը, առաջնութիւնը վաստակելու մղումը իր ենթախորքին մէջ կը ստանայ ազգային արժանապատուութեան բնոյթ: Բաց աստի, այդ ժամանակ Պէյրութի մէջ մենանուագներով ելոյթ կ'ունենար անկրկնելի դաշնակահար-մանկավարժ Ալֆրէտ Քորթօ, որ տեղւոյն Ամերիկեան Համալսարանին հետ կը համաձայնի մէկ տարուան կրթաթոշակ պարգեւել առաջնութիւն վաստակող դաշնակահարին՝ կատարելագործուելու Փարիզի Էքոլ Նորմալ տը Միւզիքին (École Normale de Musique) մէջ:

Ըստ քննադատներու յօդուածներուն, երկու դաշնակահարուհիներն ալ կը գտնուէին բարձր մակարդակի վրայ: Սակայն Տամատեան կը գերազանցէր իր խոր երաժշտականութեամբ, որուն շնորհիւ ան արժանաւորապէս կը խլէ առաջնութիւնը: Իր նուագին մասին հիացումով կ'արտայայտուին Պէյրութի հայ թէ օտար մամուլը (6), ընդգծելով յատկապէս իր խոր երաժշտականութիւնը: Այսպէս, *Լորիան* լրագիրին քննադատ Ա. Թոսպաթ կը գրէ.

Յօդուածի առաջին էջին պատճէնը

# ՏԽՐՈՒՆԻ

Տէր եւ Տիկին Երուանդ եւ Նորա Ազատեան (ԱՄՆ), Ժիրայր Բաքազեան եւ Նորա Արմանի (Բարիզ), Տիար Վարուժան Էֆէքճեան եւ ընտանիք (ԱՄՆ), Տիկին Սօնա Տիլէքեան եւ զաւակը (Ռօնի), Տիար Արշակ Թատէոս եւ Էմմա Թատէոս (Գանատա), Տիկին Հէրմինէ Սէրգիս եւ ընտանիք (Լօզան), Տիկին Արմինէ Աւագեան եւ զաւակը Հայկ Աւագեան, Տիկին Սօնա Պուտաքեան եւ ընտանիք (Բարիզ), ցաւ ի սիրտ կը ծանուցանեն իրենց սիրելի մօրաքրոջ եւ ազգականին մահը՝

**Ողբ. Արուեստագիտուհի՝**

**ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ**

որ տեղի ունեցաւ Կիրակի, 19 Սեպտեմբեր 2004-ին, իր բնակարանին մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ունենայ Երեքշաբթի, 21 Սեպտեմբերին կ. ե. ժամը 3-ին Սրբ. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի ամփոփուի, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Գերեզմանատան ընտանեկան դամբարանին մէջ:

Այս տխուր առիթով «Արեւ»ի շրջանակը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ողբացեալի ընտանիքին, հայցելով Ամենակալէն, որ համբերութիւն պարգեւէ սգակիրներուն այս մեծ կորուստին պատճառով:

Տխրունի

*Արեւ*, 21 Սեպտեմբեր 2004, 89-րդ տարի, թիւ 25051, էջ 4

# ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԹԱՂՈՒՄ
# ՈՂԲԱՑԵԱԼ ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ

Վաստակաւոր արուեստագիտուհի ողբացեալ Օր. Նուարդ Տամատեանի յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ Երեքշաբթի, Սեպտեմբեր 21-ին Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ ձեռամբ Հոգշ. Տ. Աշոտ Վրդ. Մնացականեանի, Առաջնորդական Տեղապահ Եգիպտահայոց Թեմին եւ Արժ. Տէր Զենոն Քհնյ. Բարսեղեանի:

Յուղարկաւորութենէն առաջ, ըստ հանգուցեալին ցանկութեան, իր աշակերտներէն Արփի Ճանիկեան, Միտու եւ Հրանդ Քէշիշեան երգեհոնով ու երգով կատարեցին դասական երաժշտութեան կարգ մը ընտիր գործեր:

Յաւարտ եկեղեցական կարգի դամբանական խօսքով հանդէս եկաւ ընկ. Երուանդ Ազատեան, ուրուագծելով հանգուցեալ արուեստագիտուհիին ազգային ու մշակութային ծառայութիւնները եւ իր ոգեկոչման խօսքը աւարտեց ըսելով որ Օր. Տամատեանի հայրը՝ ականաւոր ազգային գործիչ Միհրան Տամատեան 1920 Օգոստոս 4-ին Ատանայէն մեկնած էր սրտաբեկ՝ Կիլիկեան ազգային օճախի երազին վախճանումով, իսկ խորհրդաւոր զուգադիպութեամբ մը Օր. Տամատեանի յուղարկաւորութիւնը կը կատարուէր ճիշտ Սեպտեմբեր 21-ին ներկայ Հայաստանի անկախութեան տարեդարձի օրը. ան աշխարհէն կը մեկնէր այն գոհունակութեամբ որ գոնէ մասամբ իրականացած էր պատմական Հայաստանի վերականգնումի երազը: Ապա իր դագաղին վրայ զետեղեց այն բուռ մը հայրենի հողը զոր հանգուցեալը բերած էր իր Հայաստան այցելութենէն եւ զուրգուրանքով պահած էր իր տան մէջ:

Հանգուցեալին աճիւնները ամփոփուեցան Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Ազգային Գերեզմանատան մէջ, իր մեծանուն հօր՝ Միհրան Տամատեանի եւ անոր սրտակից՝ Վահան Թէքէեանի դամբարաններուն ստուերին տակ:

*Արեւ*ի շրջանակը իր անկեղծ վշտակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին քրոջ աղջկան եւ ամուսնոյն՝ Ընկերուհի Նորա եւ Ընկեր Երուանդ Ազատեաններուն, ինչպէս նաեւ Տէր եւ Տիկին Ժիրայր Բաբազեաններուն, նաեւ համայն սգակիր պարագաներուն:

Ծանօթ.- Կը պատրաստուի յիշատակի երաժշտական երեկոյ մը հանգուցեալ Օր. Տամատեանի աշակերտներուն կողմէ: Ձեռնարկին մանրամասնութիւնները ի մօտոյ պիտի հաղորդուին մամուլով:

*Արեւ*, 24 Սեպտեմբեր 2004, 89-րդ տարի, թիւ 25054, էջ 3

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ,
ԳԱՀԻՐԷ

ՈՒՐԲԱԹ, 5 ՆՈՅԵՄԲԵՐ 2004

ՅՈՒՇԵՐԵԿՈՅ ՆՈՒԻՐՈՒԱԾ
ՎԱՍՏԱԿԱՇԱՏ ԱՆԴԱՄՈՒՀԻ
ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ



ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

Ուրբաթ, 5 Նոյեմբեր 2004, երեկոյեան ժամը 8.00-ին

**ՅՈՒՇԵՐԵԿՈՅ**

*ՆՈՒԻՐՈՒԱԾ*

*ՎԱՍՏԱԿԱՇԱՏ ԱՆԴԱՄՈՒՀԻ*

**ՆՈՒԱՐԴ ՏԱՄԱՏԵԱՆԻ**

(Մանկավարժ դաշնակահարուհի)

իր մահուան քառասունքին առթիւ

Օրուան Բանախօս

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

դաշնակի նուագածութեամբ

**ԱՐՓԻ ՃԱՆԻԿԵԱՆԻ**

**ՄՈՀԱՄՄԷՏ ՆԱՍԷՖԻ**

**ԻՄԱՆ ՇԱՔԷՐԻ**

**ՂԱՏԱ ՇԱՔԷՐԻ**

(Աշակերտներ Նուարդ Տամատեանի)

Ն. Տամատեանի յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ

Յայտարարութիւն

*Արեւ*, 22 Հոկտեմբեր 2004, 89-րդ տարի, թիւ 25073, էջ 4

## ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ*

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)*

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը*

2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան